ՏԵՂԱԳՐՈՒԹԻՒՆՔ



# Ի ՓՈՔՐ ԵՒ Ի ՄԵԾ ՀԱՅՍ

Հ. ՆԵՐՍԻՍԻ ՍԱՐԳԻՍԵԱՆ

ՄԽԻԹԱՐԵԱՆ ՎԱՐԴԱՊԵՏԻ





ՎԵՆԵՏԻԿ

Ի ՏՊԱՐԱՆԻ ՍՐԲՈՅՆ ՂԱԶԱՐՈՒ

1864—ՌՅԺԳ

# ՆԱԽԱԳԻՏԵԼԻՔ

Վասն իրիք իրիք պատճառաց ցարդ անտպագիր մնացեալ ուղևորութիւնս
այս՝ սկսեալ է յամի Տեառն 1843 և աւարտեալ յամին 1853։ Ի տասնամեայ
շրջագայութեանն իւրում՝ Հեղինակն սկիզբն ընթացից արարեալ յարևմտեան
ծագաց փոքուն Ասիոյ, 'ի Զմիւռնիոյ, խաղացեալ է յարևելս ընդ փոքր և ընդ
Մեծ Հայս մինչև ցԱտրպատական, 'ի սահմանակցութիւն բաժնի Պարսից և
Օսմանեանց, ընդ եօթնեւտասն աստիճանս աշխարհագրական երկայնութեան.
իսկ ընդ լայնութիւն չորից աստիճանաց որ ընդ մէջ Ամդայ և Տփխեաց. և բա-
զում անգամ դարձ 'ի դարձ կրկնութիւն ճանապարհին ընդ կողմանս կողմանս,
յերկարելով զմղոնաչափն՝ ընդ նմին հարկաւ բազմապատիկ զանազանէր և
զտեսարանսն և զդէպս ճանապարհորդութեանն՝ յաշխարհս և 'ի գաւառս այն-
պիսիս, որք ոչ միայն հայրենիք մեր գոլով՝ հետաքննադոյնք և անձկալիք են մեզ,
այլ և նորաձև և սակաւածանօթ բնական հանգամանօք երկրին և բնակչացն այլ-
ազգեաց և մերազնէից։ Բայց հեղինակիս ուշ եղեալ զկրկնութիւն ճանապար-
հին և զժամանակի՝ ծախել առաւելապէս 'ի ճշդութիւն նկարագրութեան շի-
նից և մանաւանդ հնացեալ աւերակացն, և 'ի հաւատարիմ ընդօրինակութիւն
արձանաց և յիշատակաց՝ որք 'ի քարինս և որք 'ի պրակս գրոց, ոչ հաճոյ թուե-
ցաւ աւանդել զդէպս անցից ուղևորութեանն՝ ըստ օրինակի շատաշրջիկ և շատա-
խօսիկ Եւրոպէացւոց ոմանց, որք յաճախ թուին ինձ յիշեցուցանել զշնորհուկն՝
զոր այցելութեամբ իւրեանց արարին պատկառելի Մնացորդացն հնութեան։

Արդ զոր կէտ նպատակի եդեալ էր իւր՝ զնոյն հատուցանէ այժմ ուղևորս մեր՝ թախանձողաց և փափագողաց հայրենական հնութեանց և յիշատակաց, հակիրճ և հոծ տեղագրութեամբ, զբաղում ցարդ անծանօթ մնացեալս և զչև ևս յայլոց նշանակեալ չէնս և արձանս՝ գաղափարեալ մտադիւր ջանիւ և խնամով. յորոց ոմանք առ հնութեան և խանգարման մերձ իսկ էին յանհետանալ, և ոմանք անհետացեալ իսկ իցեն կամ կործանեալք՝ յընթացս յետին քսան ամաց՝ յորմէ սկսաւ սորայս ուղևորութիւն։ Բայց գլխաւոր շինից և քաղաքաց զարդիս բարգաւաճելոց՝ ճոխագոյն են նկարագիրք և տեղեկութիւնք ներկայիս։ Նշանաւոր շինուածոց, և յաւէտ եկեղեցեաց, ոչ միայն արձանքն գրաւորք, այլ և յատակագիծք լոկ՝ այլ ճիշդ չափով ընծային, և պատկերք շինից կամ տեղեաց ոմանց 'ի փոքրն Ասիա, ուր յաջողեցաւն գտանել ձեռն պատկերահան։

Մեծաւ խնամով և հաւատարմութեամբ գաղափարեալ են և այլալեզու արձանագիրք ոմանք, յոյն, արաբիկ կամ թուրք և մանաւանդ վրացիք, որքան ներէր անծանօթի նոցին ճշգրտել զտիպսն. յորոց մասն ինչ ջանացաք ըստ նմին գաղափարաց վիմագրել, գիտնոց և հմտից լեզուացն թողեալ զստուգելն և ըզմնացեալսն։ Իսկ զմերոյ լեզուիս հայկական արձանս՝ հրատարակեմք մերովք մեսրովպեան տառիւք՝ անփոփոխ պահելով զհանգամանս ուղղագրութեան նոցին, և զսխալ և զթերի։ Եթէ հետաքննինք և սիրողք այսպիսեաց հայրենի յիշատակաց՝ փորձիցեն բաղդատել զընթերցուած արձանացն ընդ այլոց նախ քան զայս հրատարակելոց յուղևորութիւնս վարդապետաց ոմանց մերազնէից, կամ յօրագիրս և 'ի թարգմանութիւնս եւրոպէացւոց հայագիտաց, առցեն քաջիկ զչափ ընտրութեան սոցին, և բազում անիմանալիք յայլսն՝ սոքօք պարզեսցին։

Թէպէտ և գրեա թէ ընդ համօրէն երկայնութիւն Հայաստանեայցս էանց ուղևորս մեր, այլ ոչ եթէ ընդ բովանդակ աշխարհն շրջեցաւ. յոր սակս ոչ միայն երկարագոյն ժամանակի պէտք էին, այլ և այլոց ինչ իրաց որք դիւրեն զճանապարհն և յերկարեն զժամանակն։ Արդ աշխարհք կամ նահանգք յորս շատ կամ սակաւ շրջագայեցաւ՝ են, նախ արտաքոյ մերոց սահմանաց, ըստ մասնէ՝ Լիւդիա, Բիւթանիա, Գաղատիա, Պափղագոնիա, Պոնտոս, Խաղտիք, Ա և Բ Հայք, դոյզն մասամբ Երրորդին և Եփրատացւոց, Դ Հայք, Բարձր Հայք, Տայք, Գուգարք, Այրարատ, Վասպուրական, Տարօն, Աղձնիք. յորս ուրեք ուրեք հանեալ է և զաշխարհացոյց կամ զչինագիծ գաւառաց, զոր օրինակ զՍեբաստիոյ, զկարնոյ, Բաբերդայ, Թորթումայ, Շիրակայ, զոլորտս ծովուն Վանայ, և այլն, որպէս տեսցին յընթացս գործոյս տախտակք տեղեացն՝ նշանակաւ անուանց, առանց պատկերակերպ ձեւագրութեան լերանց և գետոց։

Արդ զվաստակս զայս տասնամեայ քրտանց և ոչ սակաւ տառապանաց, որոց փորձ են ճանապարհորդք այնպիսի տեղեաց, ընծայելով 'ի վայելս մերոց հայրենասիրաց և օտարաց աշխարհաքննաց, մինչ ակն ունիմք ներողամիտ հաճութեան նոցին ընդ չափաւորութիւն գործոյս, յօժարակամ սիրով և փութով և

մեք՝ ուղևոր և հրատարակող եղբարք, փափագեմք լու 'ի լու ամենայն ընթեր-ցանելեաց և ծանօթից հրապարակել զշնորհակալիս երախտեաց և օգնակա-նութեան՝ ամենայն քաղաքացեաց և շինականաց և վանականաց՝ որք մարդա-սիրապէս տասնչական և ձեռնտու եղեն հեղինակիս 'ի տարադէմ և յանծանօթ կողմանսն, զանուանս նոցին առաւել քան 'ի քարտէն՝ դրոշմեալ 'ի սրտի. յոր-մէ սրտէ և ներողութիւն այնոցիկ՝ որք զիարդ և է հանդիպութեամբ խափան ինչ եղեն յերկարագոյն և մանրագոյն խուզարկութեանց նորին 'ի ցանկալի շէնս և աւերակս, և 'ի համօրէն նիշ և նշխար մերոց հրաշազարդ հայրենեաց. թող-լով զթերին ընուլ բարեբաստիցն քան զմեզ։

ՏԵՂԱԳՐՈՒԹԻՒՆՔ

# Ի ՓՈՔՐ ԵՒ Ի ՄԵԾ ՀԱՅՍ

## ՓՈՔՐ ԱՍԻԱ

### *ԶՄԻՒՌՆԻԱ*

ԾՈՑՆ ԵՒ ՏԵՍԻՒՆ ԶՄԻՒՌՆԻՈՅ Ի ԾՈՎՆ։ — *Խորշն կամ ծոցն Զմիւռնիոյ*[1] *բերանացեալ 'ի յոնիականն ծով ընդդէմ հիւսիսոյ, յարևմտեան ծայր շրթանցն ունի զԳարապուռունն հրուանդան, կեղէնէ նախնեաց, և ձգի ընդ հարաւ մինչև 'ի կողմանս վուռլայի, ուրանօր Հինն կլազոմենէ. և ապա ընդ արևելս՝ մինչև 'ի քաղաքն մեծ 'ի Զմիւռնիա. յորմէ դառնայ ընդ արևմուտս, և անտի 'ի հիւսիս, մինչև 'ի հրուանդանն Փոկեայ, որ է յարևելեան եզր ծոցոյն հանդէպ կեղէնեայ։ Բաց յայլոց մանր գետոց ընդունի ծովածոցն զգետն մեծ Հերմոս՝*[2] *Գէտիզ չայ կոչեցեալ՝ 'ի հիւսիսոյ կողմանէ. և ծովեզերք այդր կողման հարուստ մի տարածութեամբ յարևելս կոյս մինչև ցՄէնէմէն իսկէլէսի չեն նաւարկելիք սակս ծանծաղութեան ջրոյն. նմին իրի անհմուտ ղեկավարացն հանդիպի երբեմն յաւաղուտս խրել զնաւն յանցանելն առ Սանճագ գալէսի կամ Ենի գալէ ասացեալ ամրոցաւ, ընդ որ անձկագոյն է նաւարկելի վայրն քան զայլ տեղեաց։ իսկ խորշն շրջապատեալ է 'ի լերանց, յորոց բարձրագոյնքն են իքի-դարտաշլար յարևմտից կուսէ, և 'ի հիւսիսոյ Եամանլար? Անցեալ ընդ Ենի գալէ, որ 'ի հարաւ կուսէ երկայնեալ ձգի 'ի խորշն, և հասեալ 'ի նաւահանգիստն, հանդիպակաց լինի քաղաքն ամենայն ծայր 'ի ծայր. որոյ դիրք բոլորանիստ 'ի հարաւոյ՝ երկայնեալ ձգին 'ի հիւսիս սրածայր աւարտեալ մինչև 'ի Տառաղաճ ուր հողմաղացն է։ Յաջակողմն քաղաքին է թաղն Ֆռանկաց կոչեցեալ, ուր և բնակարանք հիւպատոսացն են առ ծովեզերն. և 'ի ձախմէ 'ի ծայր քաղաքին զինուորանոցն մեծատարած և նորաշէն, և առ նովաւ գերեզմանոց Հրէից 'ի բլրի, և բարձրաբերձ նոճիքն խիտ առ խիտ 'ի գերեզմանոցին Տաճկաց ոչ շատ հեռի 'ի միւսոյն. իսկ 'ի միջոց վայրի են շուկայքն, իչլեանք, պէզէսթէնք. և 'ի թիկանց նոցին այլ և այլ թաղք իւրաքանչիւր ազգաց. յորոց Տաճկացն և Հրէիցն 'ի ստորոտէ Պագոս լերինն սկսեալ, ձգին 'ի վեր կոյս, տեսարան գեղեցիկ գծեալ նստուածով տանցն՝ որ 'ի բացուստ աստիճանաձև երևին մի զմիով ելևելիւքն. և 'ի գագաթ լերինն ամրոցն Խայրուէֆէ կոչեցեալ։*

1. Σμυρναίων κόλπος. Smyrnaeus sinus.
2. Յորմէ և Սըրման ծոց կոչեցաւ Ἕρμειος κόλπος. որպէս և Մելետոն ծոց՝ վասն՝ Մելէս վտակի 'ի նա թափելոյ։

ՏԵՍԱՐԱՆ ԳՐՈՒԹԻՒՆ ՔԱՂԱՔԻՆ: — *Զմիւռնիա 'ի Նախնի դարուց անտի մեծահամբաւ 'ի ծովեզերեայ քաղաքս փոքուն Ասիոյ վաճառականութեամբն և խուռներնթաց բազմութեամբ արևելեան և արևմտեան ազգաց, անշուք է շինուածովքն,[1] և ոչ վսեմ պարզութեամբ. և փողոցքն մեծաւ մասամբ անձուկք են և անկանոնք. և անհարթ յատակօք, նմին իրի և յանձրևային աւուրս կարի տղմաշաղախ լի-նին. և եթէ յանձկագոյնս 'ի փողոցաց դէմընդդէմ հանդիպեսցին կարաւանք ուղտուց՝ որ անթիւ են անդ 'ի բազմութենէ, և բեռնակիր իշոց՝ որոց սապատք բեռանցն երկուստէք գրեթէ յորմունս փողոցացն հասանեն, հարկ է հանդիպա-կաց կարաւանին դառնալ յետս և կամ ընդ կողմնակի փողոցն անցանել, եթէ հնար իցէ. և վայ եթէ 'ի խառն անդ չփոթիցն հանդիպեսցին և բեռնակիրք փայտի և երկաթոյ և այլոց: Անշուք են ձևք տանցն հնոց, այլ նորոցն վայելուչք զոր և քարակերտս յօրինեն, գրեա թէ առ հասարակ կրկնայարկս: Փայտաշէն պատշգամք տանց անձուկ փողոցացն այնքան մօտ են առ միմեանս՝ մինչև հնար է դիւրութեամբ անցանել 'ի պատուհանէ առ պատուհան. և ընդ երդս տանց սովորութիւն է ունել գրեթէ ամենեցուն բացօթեայ փայտաշէն ճեմելիս, յորս են և ամրաշէնք քարուկիր յատակօք և կողմամբք: Այլ տանցն քան զամենայն ինչ գեղեցիկ են բակքն սալայատակք, մանաւանդ մեծամեծացն՝ որ կճապատ են, և ուրեք սեաւ և սպիտակ մանր խճովք յատակեալք, ձևս գունովքն ձևացու-ցեալ զանազանս. և մանր խիճքս այսոքիկ գան 'ի Քիոս (Սագըզ) կղզւոյ: Ա-ռատութիւն է ջրոյ 'ի քաղաքին աղբերաց և ջրհորոց, և 'ի բազումս 'ի տանցն փողրակօք անցուցեալ զջուրն՝ աղբիւրս յօրինեալ են. համբաւեալ է ջուրն ֆասուլեա սույու ասացեալ 'ի Թաղին Ֆռանկաց, մինչև յառակս լինել թէ որ միանգամ զայդ ջուր ըմպէ, դժուարաւ մեկնի 'ի քաղաքէն:*

ՀԱՍԱՐԱԿԱՑ ՇԻՆՈՒԱԾՔ ՔԱՂԱՔԻՆ. ԵԿԵՂԵՑԻՔ ԵՒ ԴՊՐՈՑՔ: — *Ի հասարակաց շինուա-ծոց քաղաքին երևելիք են մեծ* իչլեանն վէզիր խան, պէզէստէնք *գմբեթա-յարկք և բաղանիք, որ յաւերակաց հնոյն Զմիւռնիոյ ասին շինեալ. իսկ չէնք կրպակաց բովանդակ շուկայիցն փայտաշէնք են և անշուք: Երևելի են և մթե-րանոցքն վաճառականաց և բազմաթիւք, մեծաւ մասամբ նորաշէնք և 'ի Թա-ղի անդ Ֆռանկաց: Մի միայն գործարան է ծաղկէնկար տպեալ կտաւոյ, և է 'ի ձեռս Հայոց. են 'ի նմա աշխատաւորք իբրև չորեքհարիւր: Եւ միւս ևս գործա-րան հասարակ անօթոց:*

*Երեք եկեղեցիք են Լատինացւոց հանդերձ վանորէիւք 'ի նոսին. և են 'ի Թա-ղին Ֆռանկաց մօտ առ միմեանս. առաջինն՝* Աստուածածին *'ի ձեռս Ֆրանչիս-կեանց, յորում է և եպիսկոպոսարանն. երկրորդն* Սուրբ Պօղիկարպոս *'ի ձեռս Քաբուչինաց. իսկ երրորդն* Սիրտ Յիսուսի *'ի ձեռս Լազարեանց. ժողովրդա-պետութիւնն է 'ի ձեռս երկուց առաջնոցն և աշխարհական քահանայից. և պաշտպանեալ են առաջինն յաւստրիական հիւպատոսէն, երկրորդն և երրորդն 'ի գաղղիականէն: Առ Լազարեանս է դպրոց յորում ուսանին մանկունք ձրի զսկզբունս կարևոր ուսմանց 'ի գաղղիական լեզու, և են թուով աւելի քան զե-*

1 · *Որպէս նշանակեցաւ 'ի յառաջաբանին՝ քսան ամաւ յառաջ գրեալ է նկարագիր քաղաքիս, յետ որոյ հրդեհն մեծ և ժամանակ՝ ոչ սակաւ փոփո-խութիւն գործեցին և 'ի նմա. զնոյն է իմանալ և զայլոց քաղաքաց:*

բեքհարիւր ։ Ի կարգէ նոցա են գաղղիացի կուսանքն Քորք գթութեան անուանեալք, թէպէտ և թուով սակաւք, այլ արդիւնք նոցա մեծ. զի է նոցա դպրոց մեծ և վայելուչ յայլ և այլ սենեակս բաժանեալ, յորս աղջկունք իբր չորեքհարիւր կրթին 'ի նոցանէ յաստուածպաշտութիւն՝ ձրի, հանդերձ ստորին դաստուսմամբք 'ի բարբառ գաղղիացի, ուսանին աղէնկար գործել բեհեզս ոսկեթել նկարուք. անխտիր յամենայն ազգաց ընդունին կուսանքս այսոքիկ աղջկունս, նմին իրի և առ հասարակ յամենայն տունս յորոց աղջկունք կրթեալ են առ նոսա, տարածեալ է խօսել և գաղղիարէն ։ Սպասաւորեն նոքա և հիւանդաց՝ երթեալ 'ի տունս նոցա, ոչ խտրելով ոչ զՏաճիկ և ոչ զՀրեայ, այլ ամենեցուն ձրի աշխատին. և եթէ տնանկ ոք իցէ հիւանդն, դրամովք ևս լնուն զկարօտութիւն նորա. նմին իրի և պատկառելիք են առաջի ամենայն ազգաց ։ Իսկ թօշակ նոցա որպէս և Լազարեան կրօնաւորացն մատակարարի 'ի Գաղղիոյ ։ Է և այլ դպրոց մեծ և վայելուչ Քօլէժ Բրոբականտայի ասացեալ, ընդ իշխանութեամբ լատին եպիսկոպոսին. յորում թօշակաւոր մանկունք աւելի քան զհարիւր 'ի քաղաքէն և 'ի շրջակայ սահմանաց՝ ուսանին գաղղիարէն և անգղիարէն լեզուս. դպրոցս այս հաստատեցաւ ամսք յառաջ 'ի Պոնամի եպիսկոպոսէն ։

Եկեղեցիս Յունաց երեւելիք են, Այի Տիմիդրի՝ նորաշէն և փառաւոր, և Ֆօդինի, ուր և առաջնորդարանն է նոցա ։ Եկեղեցին Հայոց շինեալ յանուն սրբոյն Ստեփաննոսի նախավկային, անշուք է. որպէս և առաջնորդարանն. գերեզմանոցն զեկեղեցեաւն է, ուր կան և տապանք նահատակաց ոմանց նորոց, և երկուս գերեզմանք՝ յորոց վերայ երեւին բարձրաքանդակ պատկերք մնացորդք հին շինուածոց քաղաքին 'ի ժամանակս հեթանոսութեան ։ Է և այլ եկեղեցի յանուն Ս. Լուսաւորչին 'ի հիւանդանոցի Հայոց, փոքր այլ վայելուչ ։ Մեսրոպեան վարժարանն Հայոց որմակից եկեղեցւոյ նախավկային, կրկնայարկ. վերին յարկն զատ 'ի մեծի սրահէն, 'ի զանազան սենեակս բաժանեալ է երկուստեք, վասն վարժապետաց այլ և այլ լեզուաց. և գրատունն 'ի նմա փոքրիկ, յորում և հաւաքմունք ուսումնական գործեաց. 'ի թիկանց դպրոցին պարտէզ փոքր և առ դրամբն աղբիւր ։ Դպրոցս թէպէտ ըստ արտաքնոյն պարզ և փոքր, այլ ներքին բարեկարգութեամբ զարգացեալ 'ի ձեռն ջանասէր դաստիարակաց, որոց փոյթ մեծ է կանոնաւոր ընթացիւք դիւրին և սիրելի ընծայել համբակաց զուսումն ։ Առ այս մեծապէս սատար լինի Սիւնեաց ընկերութիւնն որ 'ի սակաւ ամաց հետէ հաստատեալ՝ գուն գործէ յառաջադէմ զարգացման ազգին. միաբանեալ նախ սակաւուց ոմանց՝ յարեցին յինքեանս հետզհետէ զայնոսիկ որք ազատամիտ խորհրդով զերծք էին 'ի կանխակալ սովորութեանց հնոց, և զաղէտս տառապելոյ ազգին ոչ անկարեկիր աչօք տեսեալ, փառաւորութեան նորա և պատկառելի առաջի այլոց ազգաց լինելոյ՝ սրտի մտօք ցանկային, յորդորեալք 'ի դոյն արդարև յոգւոյ ազգասիրութեան ։ Առ որ կարեւորագոյն գիտելով զհրահանգս վարժարանաց, 'ի զարգացումն նոցին տքնին հանապազ. յանձն առեալ զամենայն վաստակ և զծախս, ոչ խտրելով ընդ ազգ և ընդ ազգ. յորոց եթէ և պէտս ունիցին վասն ուսմանց դպրոցացն՝ ընտանենան ընդ նոսա. և զոճ Եւրոպացւոց կա-

լեալ կանոն՝ առաջնորդեն. և թէպէտ յաջողէ նոցա բուռն եռանդեանն, այլ և քաջ զգուշանան զի մի անխորհրդաբար չմարթնոց և անչափից ձեռն մխեալ՝ մշտակայ տևողութեան գործոյն վտանգ ինչ հասանիցէ։ Եւ զի զարգիւնս ազգասէր միաբանութեան նոցա ոչ 'ի քաղաքին իւրեանց եեթ, այլ և յայլս 'ի քաղաքաց տարածեսցեն, հաստատեցին և յայլոց տեղեաց ընդունել մանկունս 'ի վարժարանն. և եթէ ուրեք պէտք լինիցին վարժապետաց, առաքել յիւրեանց անտի դաստիարակս կիրթս։ Ամենայն ուսմանց և լեզուագիտութեանց նախադաս է 'ի դպրոցին հայերէնն. իսկ ուսումն օտար լեզուաց՝ է գաղղիարէն, իտալերէն, յունարէն աշխարհաբառ, անգղիարէն և տաճկերէն։ Է և այլ դպրոց Հայոց վասն աղջկանց, յորում ուսանին հանդերձ այլովք՝ հայերէն, գաղղիարէն և անգղիարէն, և ասղէնկար ձեռագործս։

Ի մզկիթս Տաճկաց անուանի է Հիսար-ձամիսի, բազմագմբէթ, որ 'ի հնումն աթոռանիստ եկեղեցի էր Լատինացւոց. և զայդ անուն էառ 'ի հանդիպակաց դղեկէն առ ծովեզերին, որ և կոչէր դղեակ սրբոյն Պետրոսի. որոյ բանալիքն քանդակեալ են հանդերձ այլ ևս զարդուք 'ի մարմարինի՝ երկուստեք դրանն 'ի բարձու. այլ արդ 'ի ստորև նոցին կայ արձանագիր տաճկերէն. պարիսպքն անկործան կան տակաւին և 'ի ներքս բնակութիւն է հասարակ մարդկան։

Վեց հիւանդանոցք են, չորք Եւրոպացւոց, մին Յունաց և միւսն Հայոց. և տպարանք այլ և այլ 'ի ձեռս երից ազգաց, յորս տպագրին լրագիրք և մատեանք։ Եւրոպացի իջեւանք զոր Լօքանտա կոչեն, հաշուին ութ. յորոց շատից անշուք են բնակարանքն և թերի 'ի կարևոր սպասուց, այլ և թանկագին բնակութիւն նոցին. և են սոքա առ հասարակ 'ի թաղին Ֆռանկաց։ Իսկ հիւպատոսարանք այլոց ազգաց են Գաղղիոյ, Անգղիոյ, Ռուսիոյ, Աւստրիոյ, Պրուսիոյ, Հոլանդիոյ, Պելճիոյ, Շուետաց, Տանիմարքայի, Նէապօլսոյ, Սարտենիայ, Գոսկանայի, Միացեալ նահանգաց, Յունաց և Պարսից։

ԱՇԽԱՐՀԱՄԱՐ. ԲԱՐՔ ԺՈՂՈՎՐԴԵԱՆՆ. ԿԱՌԱՎԱՐՈՒԹԻՒՆ ՔԱՂԱՔԻՆ ԵՒ ԼԵԶՈՒ։ — *Թիւ բնակչաց Զմիւռնիոյ ըստ հասարակ հաշուի է 130 հազար. յորս 55 հազար են Յոյնք, 45 հազար Տաճիկք, 13 հազար Հրեայք, 12 հազար Լատինածէսք հանդերձ ամենայն Եւրոպացւովք, և 5 հազար Հայք. որոց ծագումն է 'ի Հայաստանէ և 'ի Պարսկահայոց, առ Դահմազաւ փախուցեալք այսր։ Օսմանեանք կարի հեզաբարոյք են, մանաւանդ 'ի թաղս այլոց ազգաց։ Իսկ առ Յոյնս տեսանել խռովութիւն և արիւնռուշտ բարք առ ռամիկսն, յորոց և սպանութիւնք պատահեն յաճախ։ Կառավարիչ քաղաքին է միւսէլլիմ ընդ իշխանութեամբ փաշային Այտընոյ. այլ ոչ կարէ ընդարձակ զօրութեամբ 'ի պատճառս բազմութեան հիւպատոսաց և խուռն ժողովրդեան որ 'ի նոցանէ կախեալ են յամենայն ազգէ, թող զբուն Եւրոպացիս. նմին իրի ամենայն պաշտպանեալքն աներկիւղ համարձակեալ և յարգելեալսն, և բուռն հպատակացն ևս սովորեալ 'ի նոսին, ազատութիւն իմն տարածեալ է յամենեսին, որոյ նմանն ոչ ուրեք տեսանի 'ի Տաճկաստան։*

*Հասարակաց բարբառ է 'ի Զմիւռնիա յունարէնն, սակայն և ազգ իւրաքանչիւր գիտակ է իւրումն. և 'ի պատճառս վաճառականաց Եւրոպացւոց երկրորդ-*

համարին գաղղիարէնն և իտալերէն, և յետ այնոցիկ տաճկերէն. իսկ անգղիարէն սակաւուց է ծանօթ։ Ի պատճառս բազմալեզու զրուցատրութեանց հարկաւ ընտանեցեալ ժողովրդեանն ընդ միմեանս, ծանօթացեալ հմտանան միանգամայն բարուց և ընթացից այլ և այլ ազգաց. նմին իրի և 'ի մանկութենէ կրթեալք 'ի համարձակութիւն՝ աչալուրջք լինին և հանճարեղք։

ՕԴ, ԲԵՐՔ ԵՒ ՎԱՃԱՌԱԿԱՆՈՒԹԻՒՆ։ — Օդ Զմիւռնիոյ 'ի ձմերան բարեխառն է յոյժ, մինչև մարթի որոց 'ի ձմերային գաւառս կեցեալ են, առանց կրակարանի անցուցանել. և ձիւն իսկ հազիւ երբէք տեղայ փոքր մի, և այն ոչ յամենայն ամս, թէպէտ և 'ի գագաթունս բարձրագոյն լերանց երևի զձմեռն ողջոյն. բայց 'ի սակս յաճախ անձրևաց գիճին է օդն և անառողջ։ իսկ յամարան 'ի յուլիս ամսոյ մինչև ցսեպտեմբեր լինի տօթ անհնարին. և երբեմն եւս յերկար երաշտութենէ պատառոտի գետինն. բազումք 'ի բնակչացն չհանդուրժեալ տօթոյն խոյս տան 'ի գիւղորէս. իսկ որք 'ի քաղաքին մնան՝ ակն ունին զովութեան արևմտեան հողմոյն շնչելոյ զոր իմպաթ կոչեն։ Անհանդուրժելի է յայնժամ և խոնաւ բազմութիւն մժեղացն. նմին իրի յամենայն տունս սովորութիւն է սրսկապանս արկանել անկողնոց յանօսր կտաւոյ, զի գոնէ 'ի գիշերի զերծ լիցին 'ի խայթմանէ նոցին։

Արգասաւորութիւն Զմիւռնիոյ, որպէս և շրջակայ սահմանացն, համբաւեալ է առ ամենեսին. մանաւանդ թուզն և չամիչն. բայց ունի առատապէս և շուշմա և ձէթ, այնպէս զի ընդ բովանդակ շրջակայ արտորայս քաղաքին մինչև ցգիւղորէս լի են ձիթենիք, և նորօք սահմանին ցանկք անդաստանաց իւրաքանչիւր, փոխանակ անպտուղ ծառոց, որովք վարին յիտալացւոց աշխարհին։ Ամենայն ազգ պտղոց գտանի անդ. այլ նարնջենին անբաւ առատութեամբ. յորմէ յամենայն պարտէզս տանց գտանի. զոր և 'ի մէջ ձմերան գեղեցիկ է տեսանել ակաղձուն պտղովքն զարդարեալ ընդ բովանդակ տարածութիւն պարտիզացն՝ որ արտաքոյ քաղաքին։

Ի վայրս չորքոտանեաց բազում են նապաստակք և դիւրագնի. նոյնպէս և 'ի հաւուց սլէքքաջջի կոչեցեալն։ վաճառականութիւն քաղաքին 'ի նախնի դարուց հետէ համբաւեալ է. զի 'ի պատճառս խորշին և անքոյթ և մեծի նաւահանգստին՝ երթեւեկ նաւաց բազում է անդ յամենայն կողմանց, որպէս և կարաւանաց 'ի ցամաքէ. ամենայն ազգ վաճառաց փոքուն Ասիոյ մեծաւ մասամբ աստ ամբարեալ առաքի յարևմուտս, և անտի ամենայն ձեռագործք այսր ածեալք՝ սփռին 'ի ներքին կողմանս Ասիոյ։

ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ԶՄԻՒՌՆԻՈՅ։ — Զմիւռնիա շինեալ յԱմազոնաց կամ յԵւոլեանց, և նորոգ կառուցեալ հրամանաւ մեծին Աղեքսանդրի, մայր քաղաքաց կոչեցաւ փոքուն Ասիոյ առ Անտիգոնեաւ և Լիւսիմաքեաւ, պատուեալ մեծապէս և 'ի կայսերաց. և յերկրաշարժութենէ կործանեալ յամին 178–180, հոյակապ եւս շինեցաւ 'ի Մարկոսէ Աւրեղիոսէ, գեղեցկագոյն 'ի քաղաքս Յոնիոյ համարեալ. և առ հաւատացեալ կայսերօք՝ երկրորդ գլխի աթոռանիստ քաղաքին, սակս պատկառելի հնութեանն. իսկ առ իմաստասէրն Լեւոնիւ յազատ քաղաքս համարեցաւ իւրով օրինօքն վարեալ։ Եւ իբրև զմի յանուանի ճեմարանաց՝ խմբարան

էր ամենայն իմաստասիրաց, և վարժարանք և դրատունք և արհեստք պէսպէսք 'ի նմա. և օրէնք քաղաքականութեան նորին գաղափար ամենայն քաղաքաց համարէր. նմին իրի ոչ վարկպարազի կոչեցաւ փափկութիւն և Պսակ Յոնիոյ և Զարդ Ասիոյ: Ի մետասաներորդ դարէ մինչև ցերեքտասանն յայլ և այլ պատերազմաց ընդ այլոց քաղաքաց փոքուն Ասիոյ՝ աւերեցաւ և Զմիւռնիա. զոր թէպէտ նորոգեաց Յովհաննէս Անգեղոս կոմնենոս, այլ անկաւ 'ի նախկին վայելչութենէն. և սահմանէր մեծաւ մասամբ Պագոս լերամբն՝ յորոյ 'ի գագաթան է արդ դղեակն: Ի մուտս չորեքտասաներորդ դարուն Այտըն օղլի տեղապահ սուլդան Օսմանայ առաջնոյ՝ տիրեաց քաղաքին, և յետ նորա որդի նորին Եօմէր: Սա մինչդեռ 'ի պատերազմունս դեգերէր, Հռոդացւոց ժամ պարապոյ գտեալ դիմեցին նաւատորմաւ 'ի վերայ քաղաքին, զրազումս 'ի նաւացն այրեալ 'ի նաւահանգստին, տիրեցին մօտ առ նմա դղեկին Ս. Պետրոսի՝ զոր յիշեցաքն 'ի վեր անդր. այլ միւս կողմանք էին 'ի ձեռս Եօմէրայ: Յերկրորդում ամին մինչդեռ Լատինացիք տօն կատարէին 'ի մայր եկեղեցւոջն (որ արդ Հիսար ճամի), Եօմէր 'ի վերայ յարձակեալ սպան զրազումս, և զեպիսկոպոսն եպիսկոպոսական զգեստուքն և զայլս՝ փախուտական արկ 'ի դղեակն, առ որով անկաւ և ինքն: Յետ ոչ բազմաց լուեալ Լէնկթիմուրի եթէ Լատինք և Տաճիկք յար 'ի կռուի կան, յարձակեցաւ 'ի վերայ քաղաքին յամին 1402 ընդ ծով և ընդ ցամաք, զոր վայրապար զամս եօթն պաշարեալ էին սուլդան Մուրատ և Պայէզիտ որդի նորա: հրամայեաց զօրացն իւրոց մի մի քար արկանել 'ի նաւահանգիստն որ արդ կոչի Ալի փաշա վէրանէսի. և յետ չորեքտասան աւուր տիրեալ քաղաքին 'ի հուր և 'ի սուր մաշեաց: Չինայէթ քաղաքապետ կարգեալ Զմիւռնիոյ 'ի Լէնկթիմուրայ, մինչ խորհէր տիրել և այլոց քաղաքաց, սուլդան Մէհէմմէտ Ա յարեաւ 'ի վերայ նորա յամի 1419 և հալածեաց, կործանեալ և զամրութիւն քաղաքին. բայց յետոյ կոչեալ զՉինայէթ՝ ետ նմա վերստին զառաջին պատիւն: Ապա սուլդան Մուրատ նուաճեաց զքաղաքն յամին 1424. և յանուն նորա Զմիւռնացիք դրամ հատին, որպէս Եգիպտոս և Ադրիանուպօլիս, որոց միայն շնորհեալ էր այն պատիւ: Առ Բ Սուլդան Ահմէտիւ վենետիկեցիք ահեղ նաւատորմաւ եկին 'ի վերայ Զմիւռնիոյ. այլ միջնորդելով հիւպատոսացն Գաղղիոյ, Անգղիոյ և Հոլանդիոյ դարձան յետս: Անտի և այսր Զմիւռնիա ոչ ինչ կրեաց յարտաքին թշնամեաց. այլ մահ տարաժամ և երկրաշարժ և հրդեհ բազում անգամ յաւեր ապականութեան դարձուցին զնա:

ՄՆԱՑՈՐԴՔ ԱՒԵՐԱԿԱՑ ՆԱԽՆՈՑՆ ԶՄԻՒՌՆԻՈՅ. — Յաւերակաց հին շինուածոց երևելիք են 'ի Զմիւռնիա, Դղեակն մեծ 'ի գագաթ լերինն Պագոսի, որ է 'ի թիկանց քաղաքին ակներև ամենայն ուստեք, և 'ի Տաճկաց կոչեցեալ Խատիֆէ գալէսի. որոյ 'ի հիւսիսոյ, յարևմտից և 'ի հարաւոյ անթերի կան պարիսպքն, և միւսոյ կողմանն կիսով չափ բարձրութեանն և ուրեք մինչև ցյատակն կործանեալ: Ի հասարակ քարանց է բովանդակ պարիսպն ստուար թանձրութեամբ. և ուրեք ուրեք 'ի հիմանց փոքր մի 'ի վեր նշմարի տարբերութիւն նախնի շինուածոյն քան զկոմնենոսին, զի սա նորոգեաց միայն, այլ ոչ վայելուչ որպէս զառաջինն: Արձանագիր կայր երբեմն 'ի վերայ հիւսիսային դրանն, և երկուստեք արծիւք քանդակագործ. այլ այժմ քակեալ զտեղին 'ի բաց բարձեալ են զարձանն. և աս

թէ գրուածն էր 'ի գովեստ նորին կոմնենեայ : Արտաքոյ արեւմտեան դրանն 'ի ձախմէ կայ սպիտակ մարմարիոնեայ սռուար գլուխ Զմիւռնէ Սիբիլլայի կամ Ամազոնի, ագուցեալ յորմն անկիւնաւոր 'ի բարձու ուղղակի հայելով որոց ընդ դուռնն անցանեն. եւ 'ի ներքոյ արձանին աւազան աղբեր ցամաքելոյ 'ի նոյն քարէ միակտուր, նոյնպէս ագուցեալ յորմն : Իսկ յաջակողմն նոյն դրան իբրեւ քարընկէց մի հեռի 'ի հիւսուած պարսպին 'ի հիմանց մինչեւ ցվերին ծայր նորա սիւնաձեւ յօրինեալ է որմն, եւ է ջրհոր խոր եւ լայն. զորոյ 'ի ներքին կողմանէ դղեկին ոչ միայն 'ի ծայրէ պարսպին՝ մարթ է նշմարել զահաւոր խորութիւնն մերձ կալով բերանոյն, այլ եւ 'ի կէս բարձրութենէ որմոյն ընդ քարեղէն սատիճանսն ելեալ 'ի վեր. այլ առ 'ի չգոյէ յենարանի բերանոյն, եւ ոչ անքոյթ սաընկելեաց իրիք յերկրորդում տեղւոջն՝ վտանգաւոր է յոյժ կանգուն կալով նըշմարել 'ի խորսն, զի առ փոքր մի գթել ոտին կամ խախտել քարին՝ վճարեալ է մարդոյ : Յարեւմտեան դրանէ սատ իբրեւ քարընկէցիւ 'ի ներքս 'ի դղեկին է ջրամբարն՝ աւերակ 'ի միոյ կողմանէ, ընդ որ իջանեն իսկ, եւ է յարկն հաստատ գետնոյ աղիւսակերտ՝ կառուցեալ 'ի վերայ աղիւսեայ քառակուսի սեանց քառասնից հանդերձ որմակից կիսասիւնօք. նմին իրի եւ 'ի Տաճկաց կոչի Գըրք—տիրէկ. ըստ շինուածոյն եւ տարածութեան չէ ինչ զարմանալի : Առընթեր ջրամբարին 'ի հանդիպոյ է փոքրիկ եկեղեցի գմբէթաւոր գծուծ շինուածով, զոր Տաճիկք 'ի մզկիթ փոխեալ են եդեալ 'ի վերայ դրանն արձանագիր տաճկերէն եւ սանդուխս գործեալ 'ի ներքս 'ի հանդիպակաց որմն, որ է տեղի միհրապին, թէպէտ եւ չէ այն ուղիղ ընդ հարաւ կոյս : Այժմ աւերակ է եկեղեցին, եւ միջոց տարածութեան նորա 56 քառակուսի մետր : Որմակից է եկեղեցւոյս յաջմէ նորա եւ այլ շինուած աղիւսակերտ երկայնաձեւ ցած եւ միակամար կամ սաղաշէն, եւ տարածութիւն նորա 25 մետր քառակուսի : Յաւերական անդ 'ի պեղելն գտանին ուրեք ուրեք մանր անօթք եւ արձանք խեցեղէնք հեթանոսական ժամանակաց : Այլ ինչ նշանաւոր ոչ երեւի, զի ամենայն հիմնայատակ կործանեալ է : Առ արեւմտեան դրանն եւեթ 'ի ձախմէ 'ի ներքս անդ պարսպին է աշտարակ բարձր հանդերձ երկաթի աղխեալ դրամբք, յորում պահին թնդանօթք եւ ամբարանոց վառօդի :

**ԱՄՓԻԹԷԱՏՐՈՆՆ ԵՒ ԳԵՐԵԶՄԱՆ ՊՕՂԻԿԱՐՊՈՍԻ.** — Արտաքոյ արեւմտեան դրանն եւ իբրեւ ըմբաձիգ մի 'ի հանդիպոյ նորա 'ի բացէ առ ստորոտով Պագոս լերինն է ամփիթէատրոնն մեծ, ուր սուրբն Պօղիկարպոս նահատակեցաւ. պարիսպ ձախոյ կողմանն ամփիթէատրոնին է ինքն լեառնն, եւ աջոյն որ է 'ի կողմն քաղաքին՝ կամարք. այլ այժմեան մնացորդք են հիմունք կամարացդ. յորոց 'ի ստորին ծայրի որ մերձ է 'ի թաղն Տաճկաց՝ է գերեզման սրբոյն Պօղիկարպոսի, ըստ բընակացն աւանդութեան, պատուեալ ոչ միայն 'ի քրիստոնէից, այլ եւ 'ի Տաճկաց զոր եւ կոչեն Եուսուֆ տէտէ. եւ է տեղին փոքրիկ գերեզմանոց նոցա, յորոց միջի մեծագոյն Պօղիկարպոսի համարեալն, ամենեւին ըստ ձեւոյ տաճկական գերեզմանի, եւ հնութեան 'ի նմա չիք ցոյց եւ ոչ վայելուչ նորութիւն. այլ զգերեզմանօքն փոքր տարածութեամբ երեւի շուրջանակի հիմն շինուածոյ, որ դուցէ 'ի հնումն մատուռն լեալ իցէ նուիրեալ յանուն սրբոյն. իսկ 'ի գլուխ գերեզմանին է ծառ նոճւոյ :

Ի Հանդիպակաց լեռանն 'ի փոքրիկ տափարակի միոջ է ջրհոր նեղաբերան և լի ջրով մինչև 'ի վեր։ Ի գագաթանէ լերինն երևի բովանդակ հարթ տարածութիւն նորին ընդ կողմն Հարաւոյ, անբեր և քարուտ։ փոքր մի ևս անդրագոյն կան երկու անջուր գուբք անգնդախորք իբր քարընկէցիւ հեռիք 'ի միմեանց, հաւասար գետնոյ առանց շրջանակի բերանոյն. քար 'ի ներքս արկեալ՝ այլ և այլ հնչիւն շառաչանք մինչև ցյատակն. և ասեն ոմանք եթէ ոչ միակտուր է փորուածն որպէս զայլոց ջրհորոց, այլ 'ի զանազան ստորերկրեայ ուղիս բաժանեալ, և անտի ազգ ազգ ձայնիցն հնչեցելոց։

Ի կողմանէ Հարաւոյ գեղջկին իջեալ ընդ զառիվայր լերինն ընդ ահագին առապառաժս մինչև 'ի ձորամէջն, 'ի ձախոյ կողմանէ տեսանի ջրանցքն մեծ կոչեցեալ 'ի բնակչաց մեծ քէմէր, ահագին երկայնութեամբ լեռնէ 'ի լեառն կառուցեալ 'ի վերայ երկկարգեան կամարաց երեքտասանից. գետն անցանէ ընդ միով 'ի ստորին կամարացն. և ջրանցքն են 'ի վերին ծայր կամրջին՝ որ հաղորդի 'ի Հանդիպակաց լեռնէն ընդ լերինն Գաղոսի. և անտի անցեալ ջրոյն ընդ ստորոտովն Գաղոսի և պատեալ զամենայն կողմն Հարաւոյ և արևելից նորին ստորերկրեայ հատորակ ազուգայիւք մտանէ 'ի քաղաքն, յայլևայլ առաջս աղբերաց բաժանեալ։ Շինուած կամրջին փառահեղ է և ամուր. այլ 'ի վերոյ ուր ջրանցքն են կամ տաշտն, յանհոգութենէ խարխարեալ են կափարիչ քարինքն. յորոց վերայ մարթ է համարձակ շրջել լեռնէ 'ի լեառն անցանելով. զայս ջուր Քէօփրիւլիւ—օղլու սույու կոչեն։ — Ի հիւսիսային կողմն Գաղոսի 'ի ստորոտ նորա տեսանի Մնացուած նախնի պարսպին հարուստ տարածութեամբ, յորոյ 'ի միջոցին է կամար մեծ Գարա—քէմէր կոչեցեալ, և է արդ հասարակաց ուղի ելանելոյ 'ի լեառն։ իսկ յարևմուտս Հարաւոյ նորա 'ի դաշտավայրի՝ ոչ չատ հեռի 'ի գեղջկէն, երևին ցրիւ կոտորակք հին շինուածոց 'ի կճեայ քարանց՝ յարմարեալ 'ի ձև գերեզմանի Տաճկաց։

ՔԷՄԷՐ ՏԻ ԱՐՁԱՆ ԱՈՒԹԻՍՈՒՆ ԱՌ ՆՈՎԱՒ. — Արտաքոյ քաղաքին ուր բնակարանքն աւարտին անընդմէջ կայ կամուրջ քարաշէն միակամար, ընդ որ հարկ է անցանել ամենայն կարաւանաց. և գետն Մելէս անցանէ ընդ նովաւ, և մտեալ 'ի քաղաքն գնալով ընդ Թաղն Ֆռանկաց թափի 'ի ծով։ Յեզերս գետոյն առընթեր կամրջին իբր երկու ամօք յառաջ 'ի պեղելն գտաւ անդրի կճեայ առիւծու մեծի եդեալ 'ի վերայ մեծատարած սալայատակի. զայն պատկեր տեսեալ Եւրոպացւոց կամեցան առնուլ, և ոչ յաջողեալ գրեցին 'ի Բիւզանդիա հրաման առնուլ 'ի Դրանէն. և եկն պատուէր թաղել վերստին 'ի տեղւոջ իւրում, և թաղեցին. բայց երևին ցայսօր թիկունք նորա վերուստ 'ի վայր, իսկ գլուխն խորտակեալ է։

ՏԻՔԻԼԻ ԹԱՇ. — Ի Թաղին Հրէից և Տաճկաց ուր Նէմազկեահն է, առընթեր նորին կայ շրջափակ տեղի մեծ և անապատ. 'ի նմին կողման յայլում փողոցի կան կանգուն սիւնք վեց քառակուսիք միակտուր 'ի ծիրանեգոյն սօմաք քարէ չափաւոր խորոցաւ հեռիք 'ի միմեանց, որք բացօթեայ գոլով սևացեալք և խորտակեալք են. և ընդ ամենայն մեծատարած տեղին, որ արդ գերեզմանոց է Տաճկաց, կոտորակք կճեայ քարանց և սեանց ցրուեալ կան. զայս աւերակ Մնացորդ ասեն տաճարին Նուիրելոյ Յովհաննու Աւետարանչի։

ՍՏՈՐԵՐԿՐԵԱՅ ՃԱՆԱՊԱՐՀՔ. — Ի Թաղին զոր կոչեն Արապ մահալլէսի, և յանել փողոցին կոչեցելոյ Մաղարալը սօգագ, 'ի տան միում 'ի ներքոյ անկեան որմոյն որ 'ի մեծահատոր քարանց շինեալ է, երևի ստորերկրեայ ուղի, որ տանի ա- սեն մինչև 'ի դղեակն Պագոս լերին։ — Դարձեալ 'ի բարձր փողոցին զոր կո- չեն Այիաճօ մահալէ, 'ի տան միում գոյ ստորերկրեայ ուղի անշուք շինուածով. աղիւսակերտ կամարակապ և ցած քան զմարդաչափ բարձրութիւն. Նախ 13 աստիճան էջք են 'ի վայր, ապա խոտորեալ 'ի ձախ կոյս 15 քայլ, և այլ ևս 15 յաջ, յանկեան ուրեմն եղեալ կայ թզաչափ պատկեր Աստուածածնի նկա- րեալ 'ի վերայ տախտակի հին և խանգարեալ. և ասեն անդ գտեալ զպատ- կերն զայն, և կոչեն քրիֆի փանայիա (ծածկեալ Աստուածածին). յանկեանէ անտի ջուր ծորեալ մտանէ 'ի փոքրիկ ջրամբարն որ կայ առաջի, և զեղեալ ընդ բերանն գնայ ընդ փոքր առուակն ընդ յատակս հանդիպակաց ուղւոյն, որ և երթալով երթայ և անձկանայ մինչև անմտանելի լինել. և զմանէ աւանդեն եթէ տանի հանէ 'ի դղեակ անդր։

ԳԻՒՂՕՐԷՔ ԶՄԻՒՌՆԻՈՅ. — Ի գիւղօրէս Զմիւռնիոյ նախապատիւ է ՊՈՒՌՆՈՎԱ սակս հոյակապ շինուածոց տանց, որոց նմանիք հազիւ ուրեք գտանին 'ի քա- ղաքին և յաղագս բազմամարդութեանն և յաճախ երթևեկութեանց. եկեղեցին Լատինացւոց բոլորշի և փոքրիկ է, և է 'ի ձեռս Ֆրանչիսկեան կրօնաւորաց. իսկ Յունացն մեծ և փառաւոր և արտաքուստ սիւնազարդ և կճապատ. 'ի կողմանէ աւագ դրանն երկուստեք քարաշէն սանդղոք ելանեն 'ի վերնատունս եկեղե- ցւոյն։ Գեղեցիկք են և պարտէզք տանց մեծամեծաց։ — Երկրորդ համարի գիւղն Պուճա, և Գուզլուճա երրորդ, որ է 'ի վերայ բլրոյ և սքանչելի է տեսա- րան նորին, դաշտավայրք պարտիզաց զառաջեաւ նորա, և լերինք 'ի հանդիպոյ։ Ի կողմն Պուռնովայի են Նարլը քէօյ և Հաճիլէր. իսկ Սէվտի-քէօյ յարևմտա- կողմն քաղաքին անկանի, և զայդ անուն թերևս 'ի դրից տեղւոյն առեալ, 'ի թիկանց և 'ի հանդիպոյ ունելով լերինս և զուարճալի վայրս։ Գիւղս այս թէ- պէտ և բազմամարդ, այլ անշուք շինուածով. 'ի շրջակայ վայրսն բազում ուրեք գտանի կաւ կանաչագոյն։

## ՃԱՆԱՊԱՐՀ Ի ԶՄԻՒՌՆԻՈՅ ՅԱՅԱՍՈՒԼՈՒՔ ԵՒ ՅԵՓԵՍՈՍ

Ի Զմիւռնիոյ մինչև յեփեսոս երեքտասան ժամք են. և 'ի կէս ճանապարհին համարի գիւղն Թռիանտա, առ որով անցանէ գետակ մի. հիւղք 'ի նմա քանի մի ցրիւ, կրպակք և իջևան մի։ Յաջմէ ճանապարհին են ապառաժ լերինք բարձ- րաբերձք և անմատչելիք. յորոց 'ի միումն գագաթան՝ ամրոցն Քէչի գալէսի. և 'ի ձախմէ դարձեալ 'ի հեռուստ լերինք բարձունք։ Այս ճանապարհ արահետ ընդ դաշտս տանի մինչև ցգետ մի որ հեռի է յԱյասուլուքայ իբր կէս ժամու. կամուրջ նորա բազմակամար, յորոց ոմանք խցեալ են երկուստեք հողով գետե- ղերն։ Անցեալ ընդ կամուրջն և անցեալ առ ստորոտով հանդիպակաց լերին ապառաժի, ընդ անհարթ ուղին և շրջեալ ընդ ձախմէ, բանին 'ի հանդիպոյ և

*յաջմէ կուսէ լայնածաւալ դաշտավայրք գետոյն Այասուլուքայ. և 'ի հեռուստ, երևի 'ի ձախմէ ճանապարհէն, մեծադիր դղեակ նորին, որոյ պարիսպք սկսեալ 'ի գագաթանէ բլրոյն, ուրանօր միայն անկործան կան տակաւին, համանեն մինչև ցստորոտն մեծաւ մասամբ քայքայեալք. և 'ի բացեայ նորա է 'ի հանդիպոյ ջրանցքն մեծ՝ որոյ կամարացն սիւնք կանգուն կան տակաւին կիսով չափ բարձրութեան: Յաջմէ դղեկին առընթեր պարսպին և առ ճանապարհաւն որ մուծանէ 'ի գիւղն, է մզկիթ հոյակապ, թէպէտ և աւերակ, մեծաւ մասամբ կճապատ ներքոյ և արտաքոյ. մեծամեծ կաւանիտ սիւնքն, յորոց վերայ հաստատեալ էր յարկն, նշխարք են աւերակաց Եփեսոսի: Բաց 'ի մզկթէս կան և այլ մզկիթք փոքունք և անշուք. ևս և կամարակապ աղիւսակերտ բնակարանք, անծանօթք. աղբիւր մի և 'ի հանդիպոյ նորին աւազան միւս ևս աղբեր մեծատարած և միակտուր, անկեալ 'ի բացի: Ընդ բովանդակ տարածութիւն գեղջս, որ արդ աւաւաթիւ հիւղիւք գեղջկաց սահմանի, և դոյզն կրպակօք և երկու փռամբք, տեսնին ցիր և ցան 'ի գետնի և 'ի հիւսուածս տնակաց և յայլ և այլ որմանս կոյտս քարանց՝ յունարէն արձանագիրք, կոտորակք կճեայ սեանց և պէսպէս զարդուց շինուածոց:*

## ԵՓԵՍՈՍ

ԵՕԹՆ ՄԱՆԿԱՆՑ ԱՅՐՆ. — *Հանդիպակաց է Այասուլուքայ Եփեսոս՝ իբր քառորդաւ ժամու հեռի 'ի նմանէ առ կայիստրոս գետով, յայնկոյս Պրիոն և կորեսոս լերանց՝ որ պատեն զնա 'ի թիկանց և 'ի ձախմէ նորա, նմին իրի անտես են յԱյասուլուքայ աւերակք Եփեսոսի: Ջև անցեալ ընդ լերինն, և հասեալ նախ 'ի հանդիպակաց բլուր մի ապառաժ, իբր 'ի կէս բարձրութեան նորին ընդառաջ լինի քարայրն փոքրիկ ուր բնակեցան ասեն եօթն մանկունք Եփեսոսի. բերան այրին ծեփեալ աղիւսօք առ Դեկոսիւ, յետ ժամանակաց բացեալ եղև. երևին ցայսօր նշացորդք աղիւսացն ամրապէս մածուցեալք. և անցեալ 'ի ներքս որ միջաչափ ևեթ խոր է, 'ի բերանոյն սկսեալ յաջակողմն այրին դէպուղիղ 'ի ներքս է կաւուան ուրից իբր երեք մեդրաչափ երկայնութեամբ, ուր մարթ է սակաւաթիւ անձանց նստել, որ և ունի մարդաչափ բարձրութիւն. իսկ յառաջոյ նորա որ է ձախակողմն այրին՝ պատառուած կայ դէպ 'ի ներքս նոյնպէս 'ի բերանոյն սկսեալ, այլ անձուկ և ոչ խորին: Առընթեր այրին յաջակողմն նորին է եկեղեցի յանուն սրբոցն. մուտք նորին քայքայեալ, այլ կամարքն կան տակաւին և է աղիւսակերտ. բայց աւերակօք և հողով ծածկեալ է յատակն մինչև ցվերնախարիսխ կամարացն: Յոյնք շրջակայ վայրաց յամին միանգամ գան անդ պաշտօն կատարել: Մերձ առ եկեղեցեաւն երևին յապառաժի անդ լերին փորուածոյ գերեզմանք:*

ՅՈՎՀ. ԱՒԵՏԱՐԱՆՉԻ ԱՅՐՆ. — *Ի ձախմէ այրի մանկանցն առ ստորոտով բլրոյն է քարանձաւ փոքր ուր աւանդեն գրեալ Ս. Յովհաննու զաւետարան իւր: Սակաւ ամօք յառաջ գտեալ ասեն, չգիտեմ որպէս, յայրի անդ աւետարան մի հին,*

զոր իբրև նշխար ցանկալի փոխադրեն 'ի գիւղն Ջիրքիճէ, որ հեռի է անտի երկու ժամու, և պահի յեկեղեցւոջ Յունաց ընդ փականօք:

ԱՄՓԻԹԷԱՏՐՈՆ ԿԱՄ ՄՐՑԱՐԱՆ. — Անցեալ ընդ գագաթն բլրոյ մանկանցն և իջեալ յայնկոյս ուղղակի, ընդ առաջ լինի 'ի հանդիպոյ և յաջմէ մեծատարած դաշտավայրն Եփեսոսի, և 'ի ձախմէ լերինքն՝ յորոց 'ի ստորոտս են մեծաւ մասամբ նախնի շինուածքն Եփեսոսի: Եւ նախ ամփիթէատրոնն (stadium) մեծ, որոյ աջակողմեան ստուար պարիսպք կանգուն կան տակաւին հարուստ տարածութեամբ, թէպէտ և վերին մասնն կործանեալ. իսկ ձախակողմեան պարիսպ է լեառնն՝ յոր յեցեալն է. Նստարանքն ամենայն՝ փլատակօք աւերակին ծածկեալ են, և փոքր ինչ երևի արտաքոյ գետնոյն: իսկ ճակատ շինուածոյն բովանդակ կործանեալ: Երկայնութիւն ամփիթէատրոնին է 240 և կէս մետր:

ԹԷԱՏՐՈՆ. — Թէատրոնն, յորում աղաղակէր ժողովուրդն 'ի ժամու քարոզութեան Պօղոսի առաքելոյ, «Մեծ է Արտեմիս Եփեսացւոց», է 'ի կողմանէ լերինդ յիշելոյ. և սորա կամար մի և եթ մնացեալ է ամբողջ, և արձանագիրք 'ի նմա այլ և այլ, բայց մեծաւ մասամբ խանգարեալ, և են որ այլ շինուածոց արձանագիրք են և 'ի սորա որմունս յարմարեալ՝ որպէս թուի՝ առ նորոգութեան, զի ոմանք խոտորագիրք են, և այլք յանյարմար տեղւոջ ագուցեալ. և յարձանագրացդ ոմանք յունարէն են ոմանք լատիներէն: — Ի նոյն կարգի թէատրոնին են քարաշէն կամարակապ խորանաձև որմունք որիշ 'ի միմեանց և ահագին բարձրութեամբք, անընդմիջաբար յեցք 'ի լեառնն որ 'ի թիկանց նոցին. վերջինն 'ի նոցանէ, որ կայ յաջակողմն Արտեմեայ տաճարին, և որոյ հիմունք որմոցն ևեթ երևին, կրթարան էր և կամ ճեմելիք. յորոյ միջոց վայրն 'ի ստորոտէ լերինն մինչև ցտաճարն Արտեմեայ, 'ի մեծի տարածութեան անդ՝ ցիր և ցան սփռեալ կան յերեսս գետնոյն սիւնք կրանիտք խորտակեալք, որոց բազումք ընդ հողով թաղեալ՝ ծայրքն միայն երևին:

ԱՐՏԵՄԵԱՅ ՏԱՃԱՐՆ. — Արտեմեայ տաճարն խոպան փլատակ է, և չէ մնացեալ քար 'ի քարի վերայ. այլ բովանդակ շինուածն, որ է 'ի սպիտակ կճոյ, իբրև յամպրոպայ կարկտահար եղեալ բլրակ մի ձևացեալ է խառն հողով և խճով: Տարածութիւն նորա որչափ ինչ աւանդեն նախնիք խոպան աներևոյթ է, զի փլատակ նորա արդ փոքու սահմանի. անշուշտ որպէս բազմաց աւերակաց և սմա հանդիպեալ հողով ծածկիլ 'ի դարուց հետէ: Ի ստուար քարանցն և 'ի թանձր սեանց չերտաձև գործելոց, յորոց միոյն երկայնութիւն (որ և միջակտուր լեալ է) 39 ոտք, և տրամագիծ 4 ոտք և կէս, և յահեղ վերնախարըսխացն՝ յայտնի երևի թէ քանի վսեմ և հոյակապ էր շինուածն: Իսկ զարդաձև մանր քանդակք 'ի քարինսն անդ չերևին բնաւ, բաց 'ի տերևաձև զարդուց 'ի ծայր մեծի սեանն: Թիկունք տաճարիս հանդիպակաց է կորիսոս լերին՝ որ տարածեալ է 'ի ծովակողմն կոյս. և ծովն որ երևի յԵփեսոսէ՝ հեռի է կէս ժամու միջոցաւ:

ԲՈԼՈՐՇԻ ԱՒԱԶԱՆՆ ՄԵԾ. — Հանդէպ տաճարին Արտեմեայ հարուստ մի հեռաւորութեամբ անկեալ կայ 'ի գետնի աւազան բոլորշի ահեղ մեծութեամբ 'ի սպիտակ կճոյ. տրամագիծ նորա 15 ոտք:

ի ձախակողմն կոյս Արտեմեայ տաճարին բացատ 'ի միմեանց կան և այլ որմունք, մնացուածք հոյակապ շինուածոց 'ի մեծամեծ հատարակ քարանց. տամանք յորմոցդ մնացելոց ուղղաբերձք են, այլք կամարաձևք, որոց յեց կան 'ի կողմանէ այլք դիմարգելք առ անկործան ունելոյ զկամարն. և 'ի մին 'ի շինուածոցդ սանդուղք կան 'ի վեր ելանելի, և այլ սանդուղք յիջանել 'ի ստորերկրեայ վայր ընդարձակ։[1] Բաց 'ի քարաշէն աւերակացդ, են և այլ քանի մի աղիւսակերտ կամարաձև շինուածք, որք և մեծաւ մասամբ անկործան կան։

## ՃԱՆԱՊԱՐՀ ՅԷՐՏԷԿԷ Ի ՊԱՆՏԸՐՄԱ, Ի ՄՈՒՀԱԼԸՃ ԵՒ Ի ՊՐՈՒՍԱ

ԷՐՏԷԿ. — *Ծովեզերեայ գիւղ անշուք այլ գինւոյն անուանի, կայ յարևմուտս հարաւոյ Քափուտաղի ցամաքակղզւոյն, յորմէ ընդ ցամաք մինչև ցՊանտըրմա չորից ժամուց ճանապարհ է։[2] Մի և կէս ժամաւ հեռի յէրտէկէ, և իբր քառորդաւ ժամու խոտորեալ 'ի ճանապարհէն ընդ ձախ 'ի վերայ բլրոյ հանդիպի գիւղն Համամլը. և առ նովաւ աւերակ դղեակն Պալգըզ կոչեցեալ, որոյ մնացորդք փլատակացն հասանեն մինչև ցծովեզրն։ Պարանոց ցամաքակղզւոյն ունի լայնութիւն գնացից քառորդի ժամու. և դաշտավայր է բովանդակ տարածութիւնն. ընդ որ անցեալ սկսանին արահետ ճանապարհքն 'ի լեռնավայրի, և ստորոտ նոցա ապառաժուտ, որ և ծովեզր է մինչև ցՊանտըրմա, առ որով կայ յաջմէ ճանապարհին երեք քառորդաւ հեռի 'ի Պանտըրմայէ փոքրիկ գիւղն Մահմուտ-քէօյ։*

ՊԱՆՏԸՐՄԱ. — *Աւան մեծ ծովեզերեայ, յորում չիք ինչ երևելի 'ի շինուածոց, այլ ամենայն անշուք, և տունքն և փողոցքն և կրպակքն. ձեռագործ վաճառ 'ի նմա է միխալթ հատարակ, որ ոչ սակաւ նպաստ է ռամիկ գործաւորացն։ Եկեղեցին Հայոց մեծատարած և կճապատ, և առաջնորդարան առ նմա։ Ի Պանտըրմայէ սկսեալ մինչև ցՊրուսա ամենայն գիւղօրէք մշակեալ են, յորում բաց յորթոց տեսանին անդաստանքն խիտ առ խիտ զարդարեալ թթենեօք վասն շերամոյ։*

ՄՈՒՀԱԼԸՃ. — *Աւան հեռի 'ի Պանտըրմայէ եօթն ժամաւ, մերձ 'ի Գարաասու գետ, զորոյ բնակիչքն ըմպեն զջուր։ Անշուք են և սորա ամենայն շինուածք. և շուկայն մեծ քան զՊանտըրմային, ընդ որոյ ընդ բովանդակ երկայնութիւն երկուստեք շարեալ են արկղաձև քարեայ աւազանք՝ 'ի ջրամբար ժողովրդեանն։*

*Ի Մուհալըճէ կէս ժամաւ հեռի է գետն մեծակամուրջ, ընդ որ անցեալ՝*

1. Վասն ստորերկրեայ տեղւոյս, յորում չյաջողեցաւ ինձ մտանել և գիտել զամենայն վայրսն, աւանդեն գիւղականք տեղւոյն խաղն ընդ առասպելս, թէ բովանդակ վայրն լցեալ իցէ երբեմն պղնձովք. և զգեստք իցեն անգամոր տակաւին. որոց ձեռն հպեցուցեալ անդէն 'ի փոշի լուծանին. և թէ 'ի վերայ միոյ 'ի կամարադրանցն, զի յայլ և յայլ սենեակս բաժանեալ է, իցէ ոսկեգօտ մի զոր ոչ ոք համարձակի 'ի բաց բառնալ։

2. Ընդ բովանդակ ուղին յէրտէկէ ցՊրուսա տեսանին արագիլ անբաւ, որք, զի սպանանելն զնոսա 'ի մեղս համարեալ է 'ի Տաճկաց, բազմանան յոյժ, և այնքան ընտանի են զի յարօրագրել մշակին ըղհետ երթան նորա որոնել ճճիս և սողունս. զբոյն իւրեանց դնեն 'ի վերայ ծխանաց և տանեաց յորինեալ 'ի թանձր խուռնից։

սկսանի աՀագին դաշտավայր անմշակելի և ճախճախուտ, որ տևէ ժամ և կէս մինչև ցՈւլուպար. և է դա բերդ մեծատարած, որոյ Հարաւային պարիսպքն անկործան կան տակաւին և ներքնատունք 'ի նմա կամարաշէնք և առ դրամբն նը-շան խաչի. իսկ 'ի միջոց վայրի բերդին՝ փոքրիկ բաղանիք մի ևեթ աւերակ: կայ և եկեղեցի Յունաց նորաշէն շինեալ 'ի քարանց բերդին, և դուղնաքեայ տունք: իսկ 'ի Հիւսիսոյ կողմանէ անցանէ գետն (Հուիևնտակ) մեծ և նաւարկելի. որոյ կամուրջն կործանեալ, խարիսխք միայն կան Հանդերձ մասամբք կամարաց. Նմին իրի մեծ նաւակաւ անցանեն յայնկոյս ճանապարՀորդք և գրաստք: Յայնկոյս գետոյդ դարձեալ դաշտավայր է ճախճախուտ, թէպէտ և ուրեք ուրեք մշակեալ, մանաւանդ ուր բլրաձև է երկիրն: Յաջմէ երևի Ուլուպար լիճ, առ որոյ եզերբք քերեալ և անցեալ յայնկոյս, ընդ առաջ լինի Խնսիզ—խան ասացեալն, երբեմն գողոց բնակարան 'ի մեծի դաշտավայրին. և է շինուած քարաշէն և՛ ամուր, անկործան մնացեալ ցայսօր, բազմագմբէթ, և յերկս կարգս տրոՀեալ՝ քառակուսի կամարասեամբք. և 'ի միջին կարգին կրկին լուսամուտք, զորովք պատեալ է քառակուսի որմն, 'ի գետնոյ չորիւք սեամբք 'ի վեր ունելով զորմն, և լոյս 'ի միջոյէ չորից սեանցն Հաղորդի տեղւոյն: կղզի կայ 'ի մէջ լճին Հանդերձ աւանաւն Ապուլիոնդ (Abullionte) կոչեցեալ, այն է Ապողոնիա, մերձ ցամաքին՝ որում Հաղորդեալ է փայտեայ կամրջաւ աՀագին երկայնութեամբ. և 'ի Հանդիպոյ կղզւոյն 'ի վերայ ցամաքին է գիւղն Գարա—աղաճ:

Չաթալ աղըլ, գիւղ մեծ որ Հեռի է 'ի ՄուՀալըճէ ութ ժամու. և իջևան կարաւանաց 'ի նմա մեծ: Հեռի 'ի նմանէ իբր 40 վայրկեան, է այլ գիւղ Գարաձաօղլա, և նոյնքան ևս Հեռի գիւղն Գաչքէօյ: իսկ 'ի Չաթալ աղը գեղջէ մինչև ցՊրուսա են ժամք վեց:

## ՊՐՈՒՍԱ[1]

Պրուսացւոց քաղաքն անուանի լեալ Հնութեամբն անգամ 'ի ժամանակաց անտի Աննիբաղայ և Պրուսիասայ Բիւթանացւոց թագաւորի, Հզօր և մեծ Հանդիսացաւ յաւուրս ՄիՀրդատայ, և ընդ փոփոխել զարուց և ժամանակաց ընդ իշխանութեամբ կայսերաց, մինչև եղեւ յետոյ նախաթոռ Օսմանեան թագաւորաց յառաջ քան զառումն Բիւզանդիոյ, յամէ 1325 ցամն 1453:

ԴԻՐՔ ՔԱՂԱՔԻՆ ԵՒ ՋՈՒՐՑՆ ԱՌԱՏՈՒԹԻՒՆ. — Քաղաքս այս գեղեցիկ և վսեմ դիրքն և բազմապատիկ փոփոխ տեսարանօք բնութեան ցանկալի երևեցուցանէ զինքն. և է կառուցեալ 'ի ստորոտս գօտեացն Ողիմպեայ լերին՝ որ 'ի Հարաւոյ նորա, անտես 'ի քաղաքէն, և միայն պարք նորին տեսանին 'ի թիկանց քաղաքին ախաղխեալք 'ի Հարաւ կուսէ. և ստորոտք նոցա ուրեք զառ 'ի վայր և ուրեք Հրուանդանաձև, և այլուր դաշտաձև և ձորամէջ դիրքն՝ նոյնպիսի երևեցուցանեն զայլ և այլ թաղս քաղաքին. որք և բաժանին յերկս գլխաւոր մասունս. բուն քաղաքն յաջմէ, և 'ի ձախմէ թաղն սուլդան Մուրատ մաՀալլէսի. և 'ի միջին տեղւոջ

1. Երկոտասան ամօք յառաջ է տեղագրութիւնս քան զաշխարՀաշարժն. թ. ժամ և խանգարումն քաղաքիս:

Դղեակն: Երես ողջոյն քաղաքին հայի ընդ հիւսիս և արևելս. և առաջի նորա ընդարձակ դաշտավայր մշակեալ և զարդարեալ ծառովք և գիւղօրէք 'ի նմա սփիւռ, և 'ի Թիկանց նոցա յարևելից կուսէ լեառնն Գաբըրլը տաղը կոչեցեալ: Ընդ վսեմ տեսարանաց քաղաքին և բնութեան հրաշալիս համարելի է ամբաւ առատութիւն ջուրցն՝ որոց անսպառ շտեմարանք են լերինքն. Թող զայլ և այլ գետակս և առուս՝ որք ընդ զանազան ձորամէջս քաղաքին հոսին 'ի լերանց անտի վայրապար՝ սակաւուց ումանց աղօրէից և խաղախորդաց 'ի պէտս. ամենայն Թաղք լի են աղբերօք, և յամենայն տան գտանին անհատաբար հոսելով զցայգ և զցերեկ: Բայց յառատութենէ ջուրցն օդ քաղաքին զիջին և Թանձր է, և ջուրքն ևս 'ի հասարակի անպիտանք են և ծանր, Թէպէտ և բնակիչքն խտիր գնեն ընդ այս և ընդ այն 'ի ջրոցն, զի բազմապատիկ աղբերակունք են նոցա, որպէս այն Եէնիսու, այն տէվրէնիէչ, այն կիւմիւշ, և աքճալար և գաւաք, միւֆտի և կէօյտէրէ, ապուհայաթ և փունար պաշի, և այլն. սակայն և առ 'ի նոցանէ խոստովանեալ է Թէ առհասարակ ծանր և անախորժ են ջուրք քաղաքին. և պատճառ զհանքային մասունս առնեն որովք լի են լերինքն՝ յորոց ջուրքն բխեն. 'ի նոցանէ են և հանքային ջերմ ջրոց բաղանիքն անուանիք: Սակայն առ զուարճալի և վսեմ դիրիւք քաղաքին և առ ըքանչելի տեսարանօքն՝ Թեթև Թուի վնասդ, գոնեայ այնոցիկ՝ որոց պայծառ տեսութեամբ ևեթ քաղաքին զբօսնուցուն:

ԴՂԵԱԿՆ. — Ի նախնի շինուածոց քաղաքին դղեակն ևեթ նշանաւոր է, Թէպէտ և մեծաւ մասամբ աւերակ: Եւ է կառուցեալ 'ի վերայ սեպացեալ ապառաժի, որ և ահեղ է բարձրութեամբն 'ի հիւսիսոյ և յարևմտից. այլ 'ի հարաւոյ հաւասար դաշտավայրին՝ որ ընդ մէջ է այնր կողման և լերանցն: Արդ պարիսպք կրկին կողմանցդ չերևին այժմ բաց 'ի մասնէն որ առ արևմտեան դրամբն կայ. զուցէ 'ի բընիկ բարձրութիւն կողմանցն վստահացեալ՝ անօգուտ համարեալ են պարսպօք ամրացուցանել: Արևմտեան դուռն նորա կոչի Քաբըլճա գաբուսու, այնու զի յարևմուտս կոյս քաղաքին են հանքային բաղանիքն միով ժամաւ հեռի 'ի նմանէ. հարաւային դուռն կոչի Չըմտամ գաբուսու, և արևելեանն Եէնի գաբուսու որ և կրկին է: Հանդէպ արևմտեան դրանն է արահետ ուղին, որ 'ի Թաղէն սուլտան Մուրատայ հանէ 'ի դղեակն կոյս առ 'ի կողմն հարաւոյ, և յերկուս բաժանի մի զմիով իբր սանդղաձև յապառաժի անդ. ստորինն տանի մինչև ցփայտեայ կամուրջն փոքրիկ ընդ որով անցանէ գետակ մի ընդ ձորամէջն յաջմէ, իսկ 'ի ձախմէ է պարսպաձև ապառաժ դղեկին, ընդ որ առ կամրջաւն ծակ գործեալ է լայն 'ի բնութենէ, բայց անտի և անդր անգնալի է ուղին, և սեպացեալ ապառաժքն հետզհետէ բարձրանան. յորոց վերայ է վերին ուղին, որոյ նոյնպէս 'ի ձախմէ պարսպաձև ապառաժ և ուրեք ուրեք անձաւք 'ի նմա, և յաջմէ վիհից ահաւորութիւն, տարեալ հանէ 'ի հարաւային դուռնն: Ի դրանէ աստի ընդ բովանդակ երկայնութիւն հարաւոյ կողմանն՝ կրկնապարիսպ է դղեակն որ և անկործան կայ տակաւին, մանաւանդ ներքինն, և բազում ուրեք աշտարակք, բայց մեծաւ մասամբ քայքայեալք: Ի վերայ պարապացդ՝ մանաւանդ ներքնոյն՝ բազում յոյն արձանագիրք կան որ անարատ և որ խանգարեալ, և ուրեք ևս բարձրաքանդակ ծաղկունք 'ի ձև դրասանկաց, ևս և նշանք խաչի. և այդ ամենայն ոչ 'ի պատշաճ տեղւոջ ագու-

*ցեալ յորմն, այլ խառնիխուռն, և ոմանք ևս կողմնակի և այլք գլխիվայր. նմին իրի թուին այլոց աւերակաց հնագունից մասունք 'ի նորոգութեան դղեկին յարմարեալք 'ի նմին :*

ԱՐՔՈՒՆԻՔ ՆԱԽՆԻ ԹԱԳԱՒՈՐԱՑ, ԵՒ ՓՈՂԵՐԱՆՈՑՆ. — *Արքունական ապարանք նախնի թագաւորացն Օսմանեանց զոր կոչեն Էսկի սէրայ, են 'ի ներքս 'ի դղեկին մօտ առ Փայլըրձա գաբուզունու յեզր ահագին ապառաժին. այլ չմնան 'ի նմա կերպարանք արքունեաց, կործանեալ խապառ յանխնութիւթենէ և 'ի հրդեհաց : Եւ զանդղին այժմ ծայր 'ի ծայր անդաստան թթենեաց պարարեալ՝ դուզնաքեայ որմովք պատեալ են 'ի հարաւոյ կուսէ. իսկ 'ի հիւսիսոյ բաց է ամենեւին, որպէս և բովանդակ երկայնութիւն դղեկին այդր կողման : Եւ տեղին այն բարձրութեամբն և յառաջկոյս հրուանդանաձև երկայնութեամբն և ահաւոր վիհիւքն առաջի նորա, և զի ընդարձակ դաշտավայր քաղաքին է 'ի հանդիպոյ և լերինքն արևելից 'ի թիկանց նորա, սքանչելի է տեսարանն, արժանի արքայավայել ապարանից : Իսկ մնացորդք հնութեանց մասանց ապարանիցդ դոյզն որմովք զատուցեալ կան յաջակողմն նորա. և են այլ և այլ սենեակք գմբեթաւորք, զորս փողերանոց կոչեն, ամայի մնացեալք և քայքայեալք, և են նոյնպէս 'ի ծայր ապառաժին, համարձակ մտանելի ամենայն ումեք :*

ԹՕՓԽԱՆԷ, ԵՒ ԵԷՐ ԳԱԲՈՒՍՈՒ. — *Մօտ Եէրգաբուսու դրանն կայ Թօփխանէ, յաջմէ Էսկի-սէրային. և երկուստեք դրանն կիսեղծ բարձրաքանդակ կճեայ պատկերք, հեծելոց առիւծու և ընձու ազդրելոց, և երկուստեք արծուեաց գլխիվեր ուղղահայեաց և թևատարած, որք աղխասակողմանքք ձևացուցեալ յեռեալ են յորմն : Բարձրաքանդակ պատկերքդ գտանին և 'ի վերայ այլոյ դրան որմովք խցելոյ : Արդ զամենայն տարածութիւն Թօփխանէին յանդաստան փոխեալ են որպէս Էսկի-սէրայինն, բայց ուրեք ուրեք երևին աւերակք քարագործ շինուածոց : Ի գագաթան տեղւոյն ուր թնդանօթքն կան, հրաշալի է տեսարան վայրաց և քաղաքին ողջոյն բազմութեամբ գմբէթաւոր շինուածոց, իջևանից, մզկթաց և մինարայից, և պարտիզաց և բարձր բարձր ծառոց : Հանդէպ Թօփխանէի դրանն է մզկիթ մի, և 'ի վերայ քառակուսի բնոյ մինարային փորեալ է քարն բոլորշի թզաչափ տրամագծիւ. զորմէ աւանդեն եթէ 'ի շինութեան մզկթին գրաւ հացի նոյնաչափ մեծութեամբ՝ դանկի միոյ վաճառէր :*

*Եէր գաբուսու զոր յիշեցաք յառաջագոյն՝ կրկին դուռն է, յորոց մին բուն դղեկին ընդ որ իջանեն 'ի քաղաքն. իսկ միջոց երկուց դրանցդ պարսպօք բարձրացուցեալ. և յաջակողմն առ երկոքումբք դրամբքն աշտարակ բարձր : Ի վերայ միոյ 'ի դրանդեաց երկրորդի դրանն կայ խաչ բարձրաքանդակ, և առընթեր փորագրեալ քանի մի բառք յունարէն :*[1]

*Դղեակն՝ բնակութեամբն և այլ և այլ թաղիւքն թուի քաղաք մի փոքր. թէ-*

[1] Ի կողմնակի անկիւնաւոր որմն դրանդ 'ի ձախմէ յելանելն արտաքս՝ կայ վէմ փոքր սուղ ինչ 'ի վեր 'ի գետնոյն, և բազումք չափ փոսացուցեալ. զորմէ ասեն Տաճիկք, Տէվրիշէ ուրումն եկեալ խնդրէ 'ի հաւատակցէ իւրմէ հաց և ջուր, և նա տայ. խնդրէ դարձեալ զգեստ, և նա ոչ զլանայ. և ապա պատարագ պարան անկողնոյ և իջևան, և նա տարեալ 'ի տուն իւր հանգուցանէ զնա : Ցասնու ապա նմա Տէվրիշն թէ ընդէր արար զամենայն կամս նորա. և նա ասէ զի պարտ է բարի առնել այլոց : Ցայնժամ Տէվրիշին կալեալ զձեռանէ առնն առնէ առ վէմն այն, և բազմամբքն հնչեալ և փոսացուցեալ՝ տայ ցնա. զոր ամենայն եկեալ գտցես 'ի փոսեալ քարին ոսկի մի. և նա առնէր այնպէս : Ի բազմանալ ոսկւոյն՝ գո-

պէտ և հասարակաց շինուածքն մզկիթք և բաղանիք անշուք են որպէս և տունքն. շուկայ կամ վաճառանոց և իշխանաց չիք 'ի նմին. փոկ պարտէզք և անդաստանք բազում և մեծամեծ. Մահմէտականք միայն բնակեն 'ի նմա։ Ի նախնի շինուածոց՝ անարատ մնացեալ է անդ Տաւուշլու մանմաուղլը ասացեալ եկեղեցին, զր. մէ տարև լիցին բանք։

Գրուագուց քաղաքն թէպէտ և անկանոն ձևով փողոցաց և տանցն է անշուք, այլ գեղեցկութեամբ և պէսպիսութեամբ դրիցն 'ի ներքոյ և արտաքոյ, զուարճալի է յոյժ, և տեղիք զբօսանաց 'ի նմա ոչ սակաւ. յորս անուանի է փուշնարպաշի հանդէպ հարաւային պարսպաց դղեկին, և թէֆէրուճ յարևելս հարաւոյ, որում մօտ են անուանի ծառք շաղանակի, զանազան քէօշք, և Գարանֆիլլի, և որ այլն ևս։

ՄԶԿԻԹՔ ԵՒ ՄԱՀԱՐՁԱՆՔ ԹԱԳԱՒՈՐԱՑ.— Ի հասարակաց շինուածոց քաղաքին հոյակապ է պէզէսթէնն չորեքտասան գմբէթիւ. մզկիթք ըստ աւուրց տարւոյն առեն 365 եղեալ 'ի հնումն, նոյնչափ և բաղանիք. այժմ հազիւ մի 'ի չորից է մնացեալ։ Անուանիք 'ի մզկթաց որք և թագաւորաշէնք՝ են, առաջին և մեծագոյն Ուլուճամի, զոր շինեալ են երեք թագաւորք Մուրատ, Պայէզիտ և Մէհէմմէտ Առաջինք. թէպէտ և իւրաքանչիւր 'ի դոցանէ մի մի այլ ևս մզկիթս շինեալ են որք յանուն նոցա կոչին, սակայն հոյակապ մեծութեամբն սա զանցանէ զամենեքումբք. լայնութիւն նորա 'ի հիւսիսոյ 'ի հարաւ է 48 մեդր, իսկ երկայնութիւնն 53։ Որ միանգամ 'ի գնին կայ 'ի ներքուստ քառակուսի թանձր կամարաձևեանցն և գմբէթիցն բազմութեան և պայծառ մեծատարած վայրին և անթիւ բազմութեան կանթեղացն և մեծատառ գրուածոցն յորմունս՝ 'ի զարմանս ըմբռնի. 19 են գմբէթքն, և 'ի միջին տեղւոջ նոցա գմբէթաձև պատուհան 'ի հիւսուածոյ մետաղեայ թելէ առանց ապակւոյ. իսկ 'ի ներքս մզկթին ուղղահայեաց պատուհանիդ է շատրուան մեծատարած և մշտաբուխ հանդերձ կճայատակ գաւթիւն ընդլայն։

Տաւուշլու մանմաուղլը, զոր 'ի վերդ յիշեցաք 'ի դղեկին, եկեղեցի էր Յունաց, և ապա փոխեալ 'ի մահարձան շիրմի սուլտան Օրխանայ որդւոյ Օսմանայ։ Կարի բարձրութեամբն անհամեմատ երևի տարածութեան իւրում. այլ անարատ մնացեալ են ցայսօր ներքոյ և արտաքոյ որմունքն ամենայն. 'ի ներքոյ պատեալ է գունագոյն կճօք, թէպէտ և առ հնութեանն ուրեք ուրեք անկեալ կճիցն՝ կրով նորոգեալ է։ Ցեղի խորանին կիսաբոլոր, և նոյնաձև ատեանն գործեալ է 'ի նմա չորեքկարգեան. քառակուսի են սիւնքն. և 'ի վերայ միոյ 'ի ձախակողմեան կամարաձևեանցն որ մօտ է առ խորանն՝ կայ 'ի մթնագոյն քարէ խաչ երկայնաձև ագուցեալ յորմն։ Արկղ մի փոքր եղեալ կայ 'ի վերայ արևմտեան որմոյն մարդաչափ բարձրութեամբ 'ի վեր, յորում առեն պահել մազ մի 'ի մօրուացն Մահմէտի։ Ի հին յիշատակացն Օրխանայ աստ պահէր թմբուկ մի ահեղ մեծութեամբ, որ 'ի ժամանակս հրդեհի այրեցաւ։ Իսկ գերեզմանքն որ գրաւեալ ունին զմիջոց եկեղեցւոյն՝ 23 են թուով, յորոց եղեալն 'ի միջին տեղւոջ մեծագոյն դագաղաւ և ծածկոցովն և մեծ գլխարկաւ է սուլտան Օրխանին. և 21 աստի և անտի՝ թագա-

զանեան գոլը. և 'ի բողոքելն առ գաւառապետն՝ գանեալ և տանջեալ. և հարցեալ թէ ուստի՞ էր նմա ոսկին, պատմէ նոցա. բայց իւրք երկնից վերաքին առնուլ զառօրէականն 'ի քարէ անտի, ոչ ևս գտանէ վասն 'ի վեր հանելոյ զգաղտնիսն։



Ա. Մզկիթ Ղազի հիւնքեար Մուրատ.



Բ. Մզկիթ և Շիրիմ Ղազի հիւնքեար (Մուրատայ Ա.).



Գ. Օրխան Չիւնճիւ կիւզկի բաղանեաց.

թիւն տաճիկ խոշորատառ արձանով յեռեալ, այլ առ հնութեանն խանգարեալ ։ Առ մնարօքն արտաքոյ վանդակին կայ քարեայ կոթող երկթզաչափ, յոր եկեալ նստին ամուլ կանայք և ամենայն բախտախնդիր, և պահապան չիրմին (Թիւրպէտար) ունելով 'ի ձեռին զերկաթի փականս սուլդան Մուրատայ զոր Մուրատ քիլիտի կոչեն, երկթիզ երկայնութեամբ և անսովոր ձեւով, (պահեալ յառանձին արկեղ) և մերձեալ առ բաղդախնդիրն երիցս շուրջ ածէ զգլխովն և բանայ յերրորդում նուագին. և այնու որպէս թէ յաջողին բաղձք խնդրողին։ — Ի գլուխ գագաղին եդեալ է գլխարկ նորաչէն և նորաձև. զի բուն գլխարկ նորա պահի յարկեղ փակմանացն. և է բոլորշի ցած, սպիտակ փաթութիւ ոլոլեալ, և գագաթն նորա կորնթարդ. 'ի նմին արկեղ պահի և վերարկու նորա կանաչագոյն, թէպէտ և նորոգեալ յետ ժամանակաց, որպէս և փաթոյթ գլխարկին, որպէս վկայեաց և պահապանն ինքնին։ Հանդիպակաց գլխոյն առ որմովք զետեղեալ է կահն նորին Մուրատայ հասարակ փայտաչէն քառակուսի, յորմէ և արծաթի զարդքն բարձեալ են։ Մօրթ ընձենի եդեալ կայ 'ի վերայ գահուն հնագոյն յոյժ. յորոյ վերայ ասեն մճարէր Մուրատ զամէնօրական աղօթսն։ Եւ 'ի հանդիպակաց որմն կախեալ՝ կայ մասն զրահի շղթայագործ, որ թուի անշուշտ նորին թագաւորի, այլ Ցանեկք տատապելեն Դաւթի մարգարէի լինել։ Յաջակողմն Մուրատայ եդեալ է Մէհհէմմէտ չէլէպի որդի սուլդան Պայէզիտի Բ. իսկ 'ի ձախակողմն առընթեր միմեանց որդիքն Եըլտըրըմ Պայէզիտայ՝ Մուսա և Իսա չէլէպիք, և առընթեր նոցա Եաքուպ չէլէպի կրսեր որդի Մուրատայ. և յոտս նոցա կին նորին Մուրատայ և դուստրք նորա առ նովաւ։ — Անուանի է յոյժ արտաքին դուռն գաւթի մահարձանին որ է 'ի վերայ փողոցի, 'ի պողպատէ, վանդակաձև քանդակագործ փորուածոյ զարդուք և յեռեալ արծաթի թելիւք. զմանէ ասեն եթէ փոխարէն իցէ միոյ յեւրոպական թագաւորաց առ Մուրատ. որոյ յղեալ էր նմա ընծայ առսեր մի։ Ոմանց յեւրոպացի ճանապարհորդաց կամեցեալ է գնել զվանդակադուռնն զայն 80 հազար դահեկանաց, այլ չեն հաւանեալ պահապանքն օտարացուցանել զերևելի յիշատակն։

Սուլդան Պայազիտ Ա. Եըլտըրըմ որդի Մուրատայ Ա. — Սորա մզկիթն յարեւելակողմն կայ քաղաքին արտաքոյ 'ի մեծ և 'ի գեղեցիկ և 'ի բարձրադիր դաշտավայրի։ Ի հնումն շրջապատ մզկթին պատեալ էր պարսպաւ, կամ ըստ ասելոյ ոմանց ապարանք մեծատարած կային առ տեղեաւն, և աւերակքն երևին ցարդ, և ուրեք եւս կամարաչէն շինուածք քայքայեալք։ Ի հարաւային կողմն մզկթին մնայ աւերակ մեծի և բազմակամար ջրանցից։ Հանդէպ մզկթին 'ի հիւսիսային կողմն նորա 'ի ստորև է մահարձան Պայէզիտայ, որոյ գերեզմանն է 'ի միջին տեղւոյ. 'ի ձախմէ նորա որդւոյ նորին սուլդան Սիւլէյմանի, և յաջմէ 'ի ստորև կնոջն, և երկուց որդւոց։ Երևելի ինչ չիք 'ի նմա բաց յերկուց սուրմաք կարմիր սեանց, որ կան երկուստեք դրան գաւթի մահարձանին։ Քառորդ ժամու հեռի 'ի մզկթէ աստ յարևելս կոյս 'ի վերայ արահետ ճանապարհին է շինուած մեծ զոր յիմարանոց կոչեն, ամայի և աւերակ. կամարաչէն խցկունք երկուստեք, և միջին վայրն անձեղուն, 'ի ծայր շինուածոցն սենեակ մի մեծ և բարձրագմբէթ։ Ի վերայ արտաքին մեծի դրանն կան երկուստեք արձունք աղիւսակողմամբք ձևացուցեալ ըստ

օրինակի դրանն Թօփխանէի զոր յիշեցաք 'ի վերոյ։ Բայց յարձուէնշանացդ այլ ինչ նշան հնութեան չերևի յորմունսն։

Ջէլէպի սուլդան Մէհէմմէտայ Ա որդւոյ Եըլտըրըմայ մզկիթն կառուցեալ է 'ի ծայր քաղաքին յարևելս կոյս 'ի բարձրահայեաց վայրի. տաճիկ ճարտարապետութիւն փայլէ 'ի սմա ներքոյ և արտաքոյ, որոյ նման չգտանի 'ի Պրուսա. հիանալի է՝ շրջապատ արտաքին դրանն, բարձրաքանդակ գրութեամբք 'ի կճի, կարգ մի քիւֆի տառիւք և կարգ մի սովորականաւն, և առ նոքօք 'ի վերոյ և 'ի ներքոյ պէսպէս քանդակք զարդուց, որպէս և խորշիցն որ երկուստեք դրանն հանդէպ միմեանց։ Այլ վսեմութիւն է ներքին տեսլեանն, [?]ող զճոխութիւն զարդուց ներկարուց տեղւոյ միհրապին, որոյ շրջապատն ողջոյն (որ և երկուստեք թևս արձակեալ է՝ անտես ապաքուստ, որպէս զի արտաքին որմունք միահետ ուղղագիծ են) իբր մարդաչափ. և կէս բարձրութեամբ բազմանկիւնի կանաչ յախճապակօք պատեալ է, և յամենեսին 'ի նոսա ոսկեգոյն մանր ծաղկանկարք։ Հանդէպ միհրապին 'ի բարձու 'ի վերայ ներքին դրան է տեղի աղօթից թագաւորին, պատեալ բովանդակ քառակուսի յախճապակօք և 'ի վերայ նոցա պէսպէս զարդք գունազգոյն նկարուք, և բարձրաքանդակ գրութիւնք մեծատառք։ Սոյլին զարդուք են յօրինեալ և երկոքին սեննեկաչափ խորշքն հանդէպ միհրապին երկուստեք ներքին դրանն, միահետ հաւասար գետնոյն, ուր և աղօթատեղիք էին վէզիրին և գենպեաքին։ Զմզկիթս զայս Եէշիլ Ճամի կոչեն. իբր զի նախ մինարէ նորա կանաչ յախճապակօք պատեալ էր. այլ յետ ժամանակաց կայծակնահար եղեալ՝ վերստին շինեցաւ, և արդ բռով սպիտակացուցեալ է։

Մահարձան նորին սուլդան Մէհէմմէտի մօտ է 'ի հարաւոյ մզկթին, բարձրահայեաց քան զնա, ութանկիւնի և բարձրագմբէթ. պատեալ կանաչ յախճապակօք արտաքոյ, իսկ 'ի ներքոյ ըստ չափոյ բարձրութեան մզկթին։ Ի սմա ամենայն զարդք որմոցն համահաւասար է որմոց մզկթին. և միհրապին զարդք և բարձրաքանդակ գեղնագոյն գրութիւնքն 'ի նոսին 'ի վերայ կանաչ նկարէն յախճապակի՝ նման են զարդուց երից սեննեկաց մզկթին։ Արդ գերեզման սուլդանին է 'ի միջին տեղւոյն, և շրջապատ պատուանդանի նորին նոյնօրինակ բարձրաքանդակ տառիւք դրոշմեալ. 'ի առորև նորա առաջին գերեզմանն, որ բովանդակ նոյնպիսի դրոշմածովք է զարդարեալ, է երէց դստեր նորին՝ անուանելոյ Սէլճի դստերն. և վերջինն՝ տախտակամած՝ դայեկին, և 'ի միջի նոցա հարճիցն և այլոց դստերաց։

Սուլդան Մուրատայ Բ մզկիթն է 'ի համանուն թաղի 'ի ձախմէ քաղաքին, և մահարձանք առ նմին բազումք՝ յընդարձակ շրջապատի, յորում և դպրոց և իմարէթ, բովանդակն քարաշէն։ Մզկիթն չորեքգմբեթեայ երևեալ արտաքուստ, երկգմբեթեայ երևի 'ի ներքուստ, ուր և ողջոյն որմունքն մարդաչափ և կէս բարձրութեամբ 'ի գետնոյն պատեալ են կանաչ յախճապակօք. հանդէպ միհրապին է վերնատուն վանդակապատ՝ յորում թագաւորաց միայն օրէն է կալ 'ի ժամ աղօթից։ Ի ձախակողմն մզկթին են մահարձանքն, փոքու խտրոցաւ անջատեալք 'ի միմեանց. մահարձանն Մուրատայ՝ դրանն զարդարուն առաստաղաւ՝ թէպէտ և փայտեայ՝ որոշի յայլոց. առաջի նորա շատրուան և առ նովաւ անուանի սօսին Հայքայլը չինար, իբրու զի. երկու ք յոստոց մեծի ծառոյդ յիրեար եկեալ աղեղնաձև

միացեալ՝ մանաւանդ մի մեծ գործեալ են, և յետ միանալոյն վերստին տրամակեալք 'ի վեր։ Գմբեթեանն Մուրատայ կամ տապանն կճեայ բաց է 'ի վերոյ և լի հողով, յորում ցանեն ցորեան, և տունկ 'ի գմբեթէն որոյ բաց է և կենդրոնն։ Զգլխարկն. նորա բոլորշի ծածկապատ և սպիտակ փայլութիւն որպէս այլոց թագաւորաց և 'ի մէջին տեղւոջ կոնաձև և ոսկեպատ՝ սուլտան Մահմուտ կամեցաւ յաւուրս մեր փոխադրել 'ի թագաւորեալ քաղաքն, և եկեալ որ տանելոցն էր, տեսեն անդացիք, տանջեալ յաներևոյթ զօրութենէ, ձեռնթափ դարձաւ յետս։ Առ միհրապաւն եղեալ է արկղ 'ի բարձու, յորում պահի մազ մի 'ի մօրուացն օրէնսդրի նոցա Մահմետի, որպէս և 'ի Տավուլըքն մանաստըր։ Միջնորմով զատուցեալ է 'ի սմանէ մահարձան Այշէսուլթանայ որդւոյն Մուրատայ սպանելոյ 'ի հօրէն իւրմէ. և առ նմա կան 'ի նմին սենեկի այլ ևս երեք գերեզմանք։ Երկրորդ մահարձանն է Քանունի սուլտան Մուստաֆայի և երից զաւակաց նորա առ նմա. և շրջապատ նորին 'ի ներքուստ պատեալ յախճապակօք։ — Երրորդումն երկու գերեզմանք են հարճից սուլթան Մուստաֆայի, որք ըստ ասելոյ Տաճկաց դստերք են միոյ յեւրոպացի թագաւորաց։ Իցեն թերևս իշխանի ուրուք նուաճելոյ 'ի Մուրատայ։ — Ի չորրորդումն են տապանք երից դստերաց Ցէքիճի, որոց մին կոչի Քօրքուս սուլթան։ — Ի հինգերորդումն կան չորք թագաւորազունք անծանօթք. և մահարձանն պատեալ 'ի ներքուստ յախճապակօք։ — Վեցերորդն կոչի Էսպէ գատըն, դայեկի որդւոց Մուրատայ։ — Եօթներորդն Կիւլ ռուհ, դստեր սուլթան Պայէզիտայ Բ. և առընթեր երեք ևս այլ անծանօթք։ — Ութերորդն Այնէշահ, դուստր նորին Պայէզիտայ. առ որով կան երկու ևս այլ։ — Իններորդ Ճէմ սուլթան, եղբայր նորին Պայէզիտայ. առընթեր կան նորա և երեք ևս այլ. և մահարձանն պատեալ է յախճապակօք։ — Տասներորդ մահարձանն է առընթեր մզկթին յառաջնում տեղւոջ, և է սուլթան Ահմէտի և սուլթան Մուսայի որդւոց նորին Պայէզիտայ. և առընթեր նոցա երկու ևս, և առ նոցա ոտիւքն այլ ևս երկուք, քերց Ահմէտի. մահարձանս այս պատեալ է կանաչ յախճապակօք։ — Մետասաներորդ համարի մահարձանն՝ որ առաջոյ կայ պարապին. և է գերեզման խոհարարին նորին սուլթան Մուրատայ Բ, և անուն նորա Գաւըրշահըրան. զի որպէս պատմեն Տաճիկք 'ի խոհարարութեան իւրում փոխանակ չերեփոյ հողանի բաղկաւն խառնէր զկերակուրն. և առ անհեթեթ քաջութեանն կամ թէ առաւել անզգայութեանն՝ արժանի եղև առանձին մահարձանաւ անմոռաց մնալ։

Էմիր սուլթանն. առ ոչ է 'ի թագաւորաց, այլ 'ի ցեղէն Մահմէտի. եօթնետասներորդ ուխտաւորաց համարեալ առ Տաճիկս և մեծապէս պատուեալ. նմին իրի և չէ մարթ ստորագրեալ մտանել 'ի մահարձան նորա եթէ չզգեցի ընկերակից յարանց եպարքոսին։ Առ մահարձան նորա և մզկիթն շինեալ են հանդէպ միմեանց 'ի բարձրաւանդակ տեղւոջ 'ի հարաւ կուսէ Ըլլերըրմայ։ Մզկիթն չունի ինչ արժանի յիշատակաց. իսկ որմն մահարձան նորա հանդէպ մզկթին պատեալ է արտաքուստ յախճապակօք։ Բազում հարստութեանց ասեն լինել 'ի սմա յաւանդատուն, այլ արդ ոչ ևս։

Ընդ մէջ Եէշիլ-ճամի և Էմիր-սուլթանայ 'ի փոքր գերեզմանոցի Տաճկաց է և այլ մահարձան մի սրածայր գմբեթիւ. բաց են կողմանք նորա քառակուսի



Ապտալ քէօփրիւսիւ ի վերայ Նիլիւֆէր գետոյ (Պրուսա)

ԲԱՂՆԻՔՆ ՀԱՆՔԱՅԻՆ ՋՐՈՑ. — Ժամու միով հեռի 'ի քաղաքէն յարեւմուտս կողմ են անուանի բաղանիքն ինքնաբուղխ ջերմ ջրոց. և են մեծաւ մասամբ 'ի գիւղն Չէքիրկէ մօտ առ միմեանս. կոչին այլ և այլ անուամբ, Պօյուք կիւզէլ, Հիւսնիւ կիւզէլ, Սէվլինաազ, Լսկի-գաբլըճա, Չէքիրկէ՝ յանուանէ գեղջն, որ և օգտակարագոյն համարեալ է: Իսկ Քիւքիւրթլիւ և Եէնի-գաբլըճա են 'ի վերայ ճանապարհին յայլ կուսէ մօտ 'ի գիւղն: Արտաքին տեսիլ Եէնի-գաբլըճայն հոյակապ է յոյժ և բազմազարդ կապարապատ: Իսկ Լսկի գաբլըճայի յաղագս զառամելոյ դրից տեղւոյն՝ յատակն հարթեալ է հորիզոնական և 'ի ներքոյ կամարք բաց թողեալք իբրև ներքնատունք. և ջուրն աւելորդ 'ի բաղանեացն անցեալ ընդ այն թաղս արտաքս, առ տաւսակաւն՝ ընդ որ նախ հոսի, և հանքային մասունքն զատուցեալք քարացեալ դիզանան երկուստեք: Ներքին շինուած բաղանեացդ նման է այլոց սովորական բաղանեաց, գմբէթաշէն և կճեայ, այսու եթէ զանազանեալ՝ զի 'ի սոսա աւազան մեծ գործեալ 'ի միջին տեղւոջ մարդաչափ խորութեամբ, անդր թողուն հոսել զջուրն, յորում և մտեալ լողանան. իւրաքանչիւր 'ի բաղանեացդ ունի մի մի աւազան մեծ կամ թէ աւել լոգարան կճապատ. Միջահոս են ջուրք նոցա զցայգ և զցերեկ: Բաղումք 'ի բաղանեացդ ունին շուրջանակի բարձր և գեղեցկահայեաց սենեակս, ումանք կրկնայարկ՝ այլք եռայարկ. և ամենայն որ 'ի լուանալ գայ 'ի քաղաքէն և կամ 'ի հեռաւոր տեղեաց, մանաւանդ յերիս ամիսս տարւոյն՝ 'ի մայիսի, յունիսի և յուլիսի, 'ի նոսին բնակէ: Զօգտակարութենէ ջուրց բաղանեացս և զայլ և այլ հանգամանաց նոցին բազում ինչ գրեաց գաղղիարէն Պեռնարտոմն, և տպագրեաց 'ի Բիւզանդիոն յամին 1843:

ՊՏՂԱԲԵՐՈՒԹԻՒՆ, ՎԱՃԱՌՔ, ԵՒ ԱՐՀԵՍՏՔ. — Հող երկրին Պրուսացւոց բազում առաւել կարմրագոյն է, մանաւանդ արտաքոյ քաղաքին: Պտղաբերութիւն առատ, և երկիրն մշակեալ ժրաջան աշխատութեամբ. այգեստանք և գինի պատուական. այլ որոց անդաստանք իցեն և պարտէզք՝ փոյթ մեծ է թթենեաց մշակութեան վասն մետաքսի. համօրէն քաղաքն 'ի ներքոյ և արտաքոյ տեսանի թթենեօք զարդարեալ: Եւ զի այլ երևելի շահավաճառ չիք 'ի քաղաքիս բաց 'ի մետաքսէ, նմին կէտ իբրև սկիզբն լինի կենդանանալոյ որդանց չերամոյ՝ ամենայն ժողովուրդն 'ի տանս և 'ի հրապարակս ճառ արկեալ խօսին զառատութենէ կամ զնուազութենէ, զազնուութենէ և կամ զխոշորութենէ մետաքսին. առատագոյն տարւոյ բերք հասուցին մինչև ց'78,000 օգգա, հանդերձ շրջակայ գիւղօրէիւք՝ որ սահմանք են քաղաքին. իսկ ընտրելագոյն համարեալ են բերք Տէմիրթաշ գեղջ, նրբութեամբն և փայլունութեամբ: Մետաքս Պրուսացւոց ոչ միայն առաքի յայլ և այլ քաղաքս Ասիոյ և Եւրոպայ, այլ և 'ի նմին գործի. զի են անդ բազում մետաքսագործք ազգ ազգ կերպասուց, է որ գծանիշ և է որ ծաղկէնկար. թէպէտ և այժմ 'ի նախնի յառաջխութենէն նուազեալ յոյժ 'ի պատճառս յառաջխաղաց ձեռագործաց Եւրոպայ ընդ ամենայն Ասիա: Տէր մետաքսին չկարէ առանձինն կամ 'ի ծածուկ վաճառել. այլ նախ պարտի տանել առ արքունի կշռողապետն զոր կոչեն Միզան, և կշռել. և առ իւրաքանչիւր օգգա և կէս հատուցանել տէրութեան տասն ղուռուշ, և ապա վաճառել որպէս ինչ արժէ մետաքս իւր: Իսկ որ գնէն՝ պարտի վճարել մաքս քսան ղուռուշ:

ԱՇԽԱՐՀԱՀԱՄԱՐ, ԵԿԵՂԵՑԻՔ ԵՒ ԴՊՐՈՑՔ. — *Զցանկից բնակչաց քաղաքին առնեն ոմանք լինել 100,000, որ անհաւատալի թուի. զՀայս 6,000, և զՅոյնս 3,500: Երկու եկեղեցիք են Հայոց. առաջին Աստուածածին, որոյ որմունքն 'ի ներքուստ կիսով չափ բարձրութեան յախճապակօք պատեալ են. և սա է առաջնորդարանն եպիսկոպոսանիստ, գեղեցկազարդ և բարձրահայեաց, շինեալ իբր տասն ամօք յառաջ (իբր 'ի 1833) յեպիսկոպոսութեան Յարութիւն վարդապետի Եդեսացւոյ: Անդ է և դպրոցն մեծ, յորում կան մանկունք իբր վեց հարիւր. այլ ոչ քաջ յառաջադէմ որպէս վայել իսկ էր հնութեան հայազգի ժողովրդոց տեղւոյն քան զայլոց բազմաց, և առ բազմութեան նոցին, և համբաւոյ քաղաքիդ, իբրև նախադաս օտար քաղաքաց՝ յորս գաղթեալ է ազգ մեր: Դաստիարակք թէպէտ և աշխատասէրք իցեն և փոյթք, սակայն և ոչ ժողովուրդն առ հասարակ, զի չև հասեալ մանկան յերկոտասան կամ 'ի չորեքտասան ամ հասակի՝ յորում եռանդն հմտութեանց առնել սկսանի, հանեալ յուսումնարանէն տան յարհեստ ծառայական: Թող զի և հասարակաց լեզու քաղաքին 'ի տունս և 'ի հրապարակս տաճկերէն է. իսկ Հայեցին գրեթէ բնաւ անլուր առ կանայս. բայց սահմանեալ են 'ի դպրոցին հայերէն խօսել: Երկրորդ եկեղեցին է յանուն սրբոյ Լուսաւորչին նորաշէն և փոքր. և առընթեր նորա ժամատուն և դպրոց:*

## ԿԷՄԼԷՑԻԿ

ԿԷՄԼԷՑԻԿ. *որ է ըստ հնոց Կիոս* (Κίος), *աւան 'ի ծայր հարաւային խորշի Մարմառայ ծովուն, որ և կոչէր 'ի հնումն խորշ Կիոյ կամ Կիանոս* (Cianus sinus), *վեց ժամու հեռի 'ի Պրուսայէ. նաւահանգիստ է և երթևեկ չոգենաւուց: Լեռնապատ է խորշն 'ի հիւսիսոյ և 'ի հարաւոյ. և աւանն շինեալ է 'ի ստորոտս հիւսիսային լերանց: Շինուածք նորա տունք և կրպակք հասարակ յոյժ, և բնակիչքն յոյն, որոց են եկեղեցիք երեք: Ցանավաճառ լինի 'ի նմա յաւուրս կիւրակէից: Երկիրն բերէ առատ ձիթենի մինչև վաճառել 'ի պտղոցն ամի ամի 30,000 օխա, և ձէթ 500,000 օխա: Օդ տեղւոյն անբարեխառն և ծանր, և ջուրն անպարի բաց 'ի միոյ աղբերէ: Ունի զբօսարան գեղեցկավայր 'ի թիկանց աւանին 'ի բլրի, զառաջեաւն ամբարձեալ պարսպաւ և 'ի վերայ հարթայատակ, հովանացեալ 'ի բարձրաբերձ կաղամախեաց. և է անդ այազմա որ կոչի Այի Քոսդանիդիս:*

ԱՒԵՐԱԿՔ ՀՆՈՒԹԵԱՆՑ. — *Ոչ սակաւ էին երբեմն շինուածք 'ի սմա 'ի հնումն որպէս յայտնի երևին յաւերակացն: Յարևմտակողմն աւանին ժամու և կիսով հեռի 'ի վերայ արահետ ճանապարհին, յորոյ յաջմէ լերինքն են հանդերձ արտորէիւք և 'ի ձախմէ դարահոս և ափունք ծովուն, 'ի մէջ արտորէից կայ գմբէթաւոր սենեակ մի գետնափոր, զի հողոյ ծածկեալ զնա մինչև 'ի վեր, 'ի միոյ կողմանէ և եթ մտանելի է. և 'ի միջի ստորերկրեայ ուղի լցեալ փլածովք. վերնախարիսխ մի անկեալ կայ ընդ մէջ սենեկին. զայս տեղի կոչեն Յոյնք Գաբագլիսիկ-*

սիդա (աղօղեալ)։ Անդրադարձ կայ բոլորշի չինուած մի աշտարակաձև յարկա- ծածուկ, և հօղն շուրջ զնովաւ բարձրացեալ մինչև 'ի վեր. շատ. ջանացեալ է զեղջկեց մինչ անց զործել առ 'ի ներքս և չեն յաջողեալ. այս վայր կոչի Այի- զեամիս։ Ի հանդիպոյ նորա 'ի կողմն ծովեզերքին երևի մասն ամրոցի իրիք 'ի ներքուստ մինչև 'ի վեր հաստատ ճանապարհին. և այսուր 'ի միջի պարսպեկեց մե- ծատարած աւերակ մի զոր բաղանիս կոչեն, որոյ և զմիջէն կործանեալ՝ որմունք միայն ևեթ երկուց կողմանցն, յորս են խորշք 26 մետրդաչափ բարձրութեամբ- զայս տեղի Ադէբա կոչեն։

Կայ և յարևելակողմն աւանին 'ի վերայ արահետ ճանապարհի կեսով ժամու հեռի յաւանէն առօրեկիլեաց սենեակ մի 'ի տեղւոջն Այդասօֆիա կոչեցեալ. և հուպ նմին սալայատակ քարընկէցին յերկայնութիւն. նոյն առ տեղեաւն զանի երբեմն մեծամեծ խեցեղէն բղուկք գտանեկք և արդ ծածկեալ են ընդ հողով, և երկու այլ 'ի նոցանէ գտեալ փոքր մի 'ի վեր անուր ըստ ջրովք, և ջուրն հեղեալ 'ի վերայ քարանց՝ հոսելով առեն զքարինան։ Նոյն առ տեղեաւն 'ի մէջ պարտիզին անկեալ կայ քար մի. և 'ի վերայ նորա բարձրաքանդակ պատկեր արծուոյ։ Անդրա- դոյն ևս քարանձաւ մի փոքր 'ի ձախմէ ճանապարհին և առ նովաւ քարահանք կը- ճոյ։ Քառորդաւ ժամու հեռագոյն է տեղին Այի Պարասգևի ասացեալ. ուր են նատարանաձև միակտուր քարինք փորուածոյ, և 'ի վերայ քանի մի լաւոին սաղք խանգարեալք. և 'ի վերայ քարածերպ բլրոյն նոյնպէս սահիճանք երկայնաձիգք։ Ցանդատանս ուրեք աւանիս գտան երկու գերեզմանաչափ քարինք, և 'ի վե- րայ նոցա բարձրաքանդակ պատկերք. 'ի միումն կան կին և այլիկ դօղեալք վե- րուստ 'ի վայր, և 'ի միւսումն նաւամարտ։

## ՃԱՆԱՊԱՐՀ Ի ԿԷՄԼԷՑԻԿԷ Ի ՆԻԿԻԱ

Ոչ սակաւ զուարճալի է փոփոխութիւն տեսարանաց վայրացն որ ընդ մէջ Կէմլէյիկի և Նիկիոյ. զի փոքր մի հեռացեալ 'ի Կէմլէյիկէ ընդ արևելս կոյս՝ սկսա- նին երկուստեք զօտիք լերանց, ձորամէջ խորին կալով 'ի միջի հանդերձ գետա- կաւ՝ որ հոսի 'ի Նիկիական լճէն 'ի խորշն Կէմլէյիկի։ Իսկ լերինքդ այգաբեր եր- կուստեք զետակին մինչև ցգագաթունս՝ թէպէտ և անմշակելի, այլ ինքնաբոյսք խիտ առ խիտ և դեղնագոյն ծաղկօք զարդարեալ են։ Ցետ երից ժամուց ճանապարհի՝ բանի անձուկ կիրճ լերանցն, և երևի 'ի հեռաստանէ մեծատա- րած դաշտավայրն Պազարքէօյ օվասը 'ի ձախմէ, և յաջմէ լեառն Գարբըրը տաղը, և ընդ մէջ երկոցուն կողմանցն Լիճն Նիկիոյ ծածանեալ հեզիկ հողմովք։ Շուրջ զլճաւդ բազում են գիւղորէք, և ոչ սակաւք բնակեալ 'ի Հայոց, յորոց ե- րևելի են, յաջմէ՝ Սէօյէօզ, յորում տունք 300, ամենայն հայազգի, հանդերձ կա- րևոր արուեստաւորօք և նորաշէն վայելուչ եկեղեցեաւ յանուն սրբոց Հրեշտակա- պետաց և զպրոցաւ։ Երևելի է 'ի գեղջս խաչուեան տոհմն՝ պատկառելի բազում գիւղօրէից Հայոց և Յաճկաց իսկ։ Ի ձախմէ լճին են Պազարքէօյ, Նոր գեղ

և որ այլն ևս ։ Յաջակողմն լճին անթիւ ձիթաստանք են ցմեծ տարածութիւն ։

Լիճն Նիկիոյ երկայնեալ ձգի յարևմտից յարևելս ինն ժամու գնացից. իսկ 'ի կէսմիջօրէկէ մինչև յեզր լճին հինգ ժամք են ։ Քաղցր է ջուր նորա և ըմպելի, զոր և վարեն յամենայն պէտս շրջակայ գիւղօրէքն. բերէ առաւել քան զբազում ազգս ձը-կանց՝ ոչ միայն մանունս, այլ և մեծամեծս ։ Ի հարաւային եզերս լճին անձ-ցեալ է ջուրն որպէս պատմեն, և ծածկեալ զշինուածս տանց, որոց որմունք մակ հաւասար երեսաց լճայատակին երևին ընդ ջրով յորժամ խաղաղ իցէ լիճն և անալէկոծ ։ Ի նմին կողման լճին երկու ժամաւ հեռի 'ի Նիկիոյ, 'ի վերայ ճանա-պարհին յաջմէ՝ 'ի մեծի տապանաքարին երևի արձանագիր լատին այլ խանգարեալ ։ Թէպէտ և խոր է լիճն՝ որպէս ասեն, սակայն զուգնաքեայ և եթ նաւակք ձկնորսաց գնան 'ի նմա ։

## ՆԻԿԻԱ

ԲԵՐԴՆ. — Բերդաքաղաքն Նիկիա հռչակաւորն 'ի հնումն և առ կայսերօք Հռով-մայ և Բիւզանդացւոց, գիւղաքաղաք մի փոքրիկ է արդ զուգնաքեայ տամբք իբր հարիւր և յիսնիւք. Շինուածոց ապարանիցն ողջոյն կործանեալ և աներևութա-ցեալ՝ պարիսպքն եւեթ անկործան կան տակաւին ահագին տարածութեամբ, տա-կացեալ ընդդէմ բռնութեան ոխերիմ թշնամեաց և սաստիկ պատերազմաց. և զքանչացուցանեն զտեսողս ընդ նախնեացն մեծագործութիւն ։ Բովանդակ բերդն կառուցեալ է 'ի դաշտավայրի, կրկնապարիսպ՝ բաց 'ի ծովակողմանէն, ներքինն բարձր և ստուար, և կից նմին են աշտարակքն ահագին թանձրութեամբ ընդ բովանդակ շրջապատ բերդին, յորոց սակաւք քառակուսի ձևով, այլն առ հասա-րակ բոլորշի ։ Շինուած պարսպացն և աշտարակացն աղիւսակերտ է, բաց 'ի միոյ կողմանէ՝ որ առ Ստամպօլ գաբուսու դրամբ և ձգի 'ի ծովակողմն կոյս. և այդ մասն պարսպին 'ի քառակուսի քարանց շինեալ հանդերձ աշտարակօքն, երևի նախնի հիմնարկութեանն մնացորդ. զի և յայլևայլութենէ ճարտարապետութեանն՝ յայտնի երևի ոչ սակաւ նորոգութիւնս կրեալ 'ի դարս դարս, մանաւանդ առ քրիստոնեայ կայսերօք. զի և 'ի մի յաշտարակացն երևի ցարդ նկարէն պատկեր սրբոյն Գէորգայ յորմն ։ Հոյակապ են և դրունքն ամենայն որ կոչին Լէֆքէ գաբու-սու, Ստամպօլ գաբուսու և Եէնի շէհիր գաբուսու. երկուստեք առաջնոյ դրանն կան բարձրաքանդակ պատկերք խորտակեալք, և առ երկրորդին ևս, ուր և պատ-կեր փրկչին և առաքելոցն. կրկնադրունք են յետին երկուքն ։ Շրջապատ բերդին ողջոյն տևէ ժամս չորս հանդարտաքայլ ընթացիւք ։ Ի կողմն Ստամպօլ գաբուսու դրանն հարուստ մի հեռի 'ի նմանէ յաջմէ՝ 'ի ծայր միոյ յաշտարակացն երևի մնացուած հնաձև յոյն արձանագրութեան աղիւսակողմամբք յարմարեալ յորմն անդ ։[1]

Ընդ ամենայն շրջապատ բերդին, բաց 'ի ծովակողմանէն, և ընդ միջավայր կրր-

1. Տես զարձանդ 'ի ստորև պատկերի պարսպաց Նիկիոյ ։

կին պարսպացն և ընդ միջին տարածութեամբ բերդին բաց 'ի սակաւաթիւ թաղից անդաստան գործեալ են թթենեաց, պտղատու ծառոց և այլ ևս ընդեղինաց:

ՍՏՈՐԵՐԿՐԵԱՅ ԳԵՏՆԱՓՈՐ ՏԵՂԻՔՆ. — Ի բերդին մնացորդ նախնի շինուածոց արժանի տեսութեան և անմահ յիշատակի, որում և ձեռն թշնամի եկաց պատկառ, առ 'ի հանդէս նախնեացն մեծագործութեան և բազմահնար զգուշութեան նոցին' յօրինակ որոց յետ այնքանեկ դարուց են աղբք, են գետնափոր տեղիքն կամ ստորերկրեայ ուղիք. որոց արտաքին ամրութիւնքն թէպէտ և քայքայեալ իցեն, այլ բուն ներքինն անկործան կայ: Եւ են դոքա ոչ շատ հեռի 'ի ծովակողման պարսպէն 'ի միում վայրի առընթեր միմեանց, որմով յիրերաց զատուցեալ. կամարաձև ունելով մուտս նոցին իբրև երեք կամ չորք մետր լայնութեամբ. ներքին վայրն լայնարձակ և կամարակապ 'ի մեծահատոր և 'ի ստուար քարանց. 'ի միջոց վայրի կամարին քառակուսի անցք գործեալ են, ընդ որ մի ոք հազիւ կարէ մտանել, և 'ի ներքս անդ է ստորերկրեայ ուղին նոյնպէս կամարապատ. այլ չէ ուրուք փորձեալ ցոր վայր ձգիցի երկայնութիւն նորա և ուր հասանիցէ: Ի հոյակապ շինուածոցդ որ հինգ են թուով, երկոցուն ևեթ կան գետնափոր ուղիք. այլքն հանդիպակաց որմովքն ևեթ սահմանին: Զարտաքին տարածութիւն տեղւոյս որ 'ի փոքու սահմանի, և քան զսովորական յատակ գետնոյն փոքր մի բարձր է, ապարանս արքունեաց լինել ասեն բնակիչքն, թէպէտ և հետք մնացորդաց չերևին անդ: Ի փողոցս, 'ի հրապարակս և 'ի կիցս ճանապարհաց գիւղաքաղաքիս ցիր և ցան երևին սիւնք և վերնախարիսխք պաճուճելի յօրինուածովք, և հատորք պէսպէս բարձրաքանդակ ծաղկանց և զարդուց, է որ ամբողջ և է որ մնացուածք, ագուցեալ 'ի կաւակերտ որմունս տանց և փողոցաց. ոչ ինչ խտրեալ ընդ կաւն և ընդ պաճուճելի արուեստակերտ յօրինուածն:

ԵԿԵՂԵՑԻՆ ՅՈՒՆԱՑ. — Պատկառելի է հնութեամբ և եկեղեցին Յունաց շինեալ յամին 332 յանուն սրբոյն Դեմետրեայ. յոր բաց 'ի տախտակամած զարդուց խորանին և 'ի գմբէթէն' յայլսն ամենայն փայլէ հնութեամբ. փոքր է ըստ տարածութեան, և 'ի մէջ նորա և արտաքոյ գերեզմանք հինք: Ի ձախակողմեան աւանդատանն կան երկու սիւնակք առընթեր միմեանց 'ի սեաւ մաքուր քարէ. երկայնութիւն միոյ 'ի նոցանէ մետրաչափ և կէս համեմատ նրբութեամբ: Ի նմին կողման առընթեր որմոյ գաւթին կայ գերեզման վիմափոր 'ի թափանցիկ սպիտակ քարէ, և ճրագ թէ մուծցի 'ի ներքս, երևի թափանցանց արտաքս լոյսն, թէպէտ և ստուար է քարն: Պատկերն որ կայ 'ի ճակատ ներքին դրան եկեղեցւոյն յօրինեալ է 'ի միւսիոն քարանց ըստ այնր ժամանակի արուեստին:

Երկրորդ եկեղեցին Յունաց Այա սօֆիա ասացեալն աւերակ է. որոյ արտաքին որմունքն ևեթ կան. և յորմունս աւանդատանն նշմարին տակաւին նկարէն պատկերք:

ԺՈՂՈՎԱՏԵՂԻՆ ՅԺԸ ՀԱՐՑՆ. — Ցանկալի յիշատակ և մնացորդ ժողովատեղւոյ Նիկիական Հարցն' է անընդմիջաբար արտաքոյ պարսպին 'ի ծովակողմն կոյս, անդ ուր բարձրաբերձ կաղամախ ծառքն կան. ոչ այլ ինչ նշմարի 'ի տեղւոջն, բայց միայն քառակուսի շրջապատ որմոցն քայքայելոց, մետրաչափ և կէս բարձրութեամբ 'ի գետնոյն 'ի վեր. և միջոց տարածութեան տեղւոյն' որ և չէ դուգնա-

քեալ ինչ՝ յանդաստան փոխեալ է. միայն երկուստեք 'ի կողմանցն կան մնացորդք քարեղէն սանդղոց. ձախակողմեան հիմն շինուածոյն երկայնեալ ձգի մինչև ցմէջ լճին, յորոյ եզեր շինեալ է քաղաքն:

Ի նոր շինուածոց անուանի է Եէշիլ մինարէ կճանման ձուլածոյ սեամքն որ կան 'ի գաւթի մզկիթին, մնացորդք 'ի հնոց. իսկ շուկայն և բաղանիք և որ այլն են ամենայն հասարակ և ոչ արժանի յիշատակի: Տունք Յունաց 'ի Նիկիա են քառասնիւ չափ, այլքն առ հասարակ Տաճկաց են:

Վեց ժամու հեռի 'ի Նիկիոյ է Թիրզէ լեառն, ուր գտանի քար ինչ կանաչագոյն՝ յարգի առ ռամիկն Տաճկաց, որք ասեն տէվրիշի ուրումն խստակրօնի ծզնել 'ի լերինն, և Թքոյն 'ի քար փոխարկել. 'ի քարէ այտի ուլունս և պէսպէս զարդս յօրինեն:

## ՃԱՆԱՊԱՐՀ Ի ՆԻԿԻՈՅ Ի ԳԱՐԱՄՈՒՍԱԼ ԵՒ Ի ՆԻԿՈՄԻԴԻԱ

Հեռի 'ի Նիկիոյ կէս ժամու է Նոր գիւղ յեզր լճին, նորոգ բնակեալ 'ի Հայոց իբր 'ի յիսուն տանց. որոց է և նորաշէն եկեղեցի վայելուչ յանուն սրբոյ Լուսաւորչի: Բնակութիւն գեղջս եղեւ ճարտարութեամբ միոյ յորդւոց խաչոյեանին Սէօլէօզեցւոյ զոր 'ի վեր անդր յիշեցաք:

Ֆուլաձըգ գիւղ բնակեալ 'ի Յունաց, երեք ժամու հեռի 'ի նմանէ: Է և այլ Նոր գիւղ զոր հասարակաբար Եալախ տէրէ կոչեն, բնակեալ 'ի Հայոց. ունի տունս հարիւր և նոր եկեղեցի Հրեշտակապետ կոչեցեալ:

Կէօզմէրտաճ կէս ժամու հեռի 'ի նմանէ:

Ուղին Նիկիոյ մինչև ցԳարամուսալ լեռնային է, վախուտ և դժուարագնացլի:

Գարամուրսալ հեռի է 'ի Նիկիոյ 10 ժամ, Թէպէտ և այլ կրկին ուղիք կան նորին, միոյն տևեալ ժամս 12 և միւսոյն 8: Եւ է աւան փոքր առ ծովեզեր խորշին Նիկոմիդեայ, յոր աստի ստէպ երթևեկութիւն լինի, մանաւանդ որոց ոչն կամիցին զողջոյն ուղին ցամաքաւ առնել մինչև ցՆիկոմիդիա: Բնակիչք սորա են Տաճիկք և Յոյնք. ունի շուկայ փոքր. մզկիթքն և եկեղեցին ոչ ինչ նշանաւոր:

## ՆԻԿՈՄԻԴԻԱ

Համբաւաւորն 'ի քաղաքս Բիւթանացւոց Նիկոմիդիա, ուր բազում անցք անցին առ Հռովմայեցւովք և առ Յոյնօք, անկեալ է յոյժ 'ի նախնի փառացն, և 'ի շահուց վաճառականութեան, յետ բարգաւաճանաց Զմիւռնիոյ, և յաճախելոյ շոգենաւաց 'ի Սեաւ ծով. զի վաճառականութիւն նորա մեծաւ մասամբ յերթևեկութենէ կարաւանացն էր, ոչ ինչ պտղաբերեալ յինքենէ և ոչ արհեստակերտեալ ձեռագործս ինչ: Արդ քաղաքն Նիկոմիդացւոց կառուցեալ կայ 'ի ծայր հիւսիսական խորշին Մարմառայի, որ երկայնեալ ձգի յարևմտից յարևելս զուգահեռա-

տաճարյ նորա և 'ի ներքս պարաւէզք զուարճալիք։ Բովանդակ շինուածն որ և կըրկնայարկ է, յարևելից յարևմուտս ունի ըստ երկայնն 135 մետր և ըստ լայն 92։ Ուխտաւորաց բնակարանքն միջնորմով և միջնադրամբք զատուցեալ են 'ի բնակարանէ միաբանից։ Եկեղեցին հիմնեալ յանուն Զարխափան Աստուածածնի անեղ է մեծութեամբ, պայծառ և հոյակապ, թէ և ձեղուն նորա և սիւնքն և վերնատունն ուխտաւոր կանանց փայտակերտք։ Երեք են խորանքն, և խաչաձևազարդք նոցա թէ և նոյնպէս փայտակերտք, այլ գեղազարդուածք և ոսկէզօծք, որովք անեղ մեծութիւն եկեղեցւոյն տասնել ևս փայլէ։ Ի գաւթին 'ի ձախակողմն եդեալ կայ պատկեր Աստուածածնի հրաշագործ, որ յառաջագոյն յաւագ խորանին եդեալ էր, և ապա աստ փոխադրեցին սակս դիւրութեան ուխտաւորաց որ անմեկնելիք են հանապազ 'ի տեղւոջէն, ուր և ածեն զախտաւոր հիւանդս. և հաւատովք մերձեցողացն լինի բժշկութիւն. ձև և յօրինուած պատկերին հասարակ է և անարուեստ և ոչ խիկ հին. և փոխանակ նորա եդեալ են յաւագ խորանն այլ պատկեր Աստուածածնի ճարտարարուեստ գործ իտալացի նկարչի։ Առ հրաշագործ պատկերաւն մօտ յորմն թաղեալ կայ Պօղոս եպիսկոպոս կեսարացի մեծահամբաւ առաջնորդ Պրուսայի։ Զամենէ բազում գործք արուեստան պատմին, որովք երևելի հանդիսացաւ 'ի կենդանութեան իւրում, յորժամ խստութիւն բռնաւորաց տիրեալ էր կողմանցն. յանընկճելի քաջուց նորա և յաներկիւղ համարձակութենէն և 'ի վեհանձն և պատկառելի դիմաց նորա չանկանէր բան մի 'ի գետին առաջի կուսակալաց. որ և վարուցն ևս խստակրօնութեամբ ակնածելի արար զանձն առաջի ազգին իւրոյ։ Սորա առաջնորդ կացեալ Պրուսայի, միացոյց 'ի նոյն և զառաջնորդութիւն Նիկոմիդիոյ որ է թեմ Արմաշու. եդ 'ի մտի վերըստին շինել զմենաստանն հին և փոքր, ոչ 'ի գիւղն Արմաշ, այլ 'ի Նիկոմիդիա յաւերակի անդ Երկուց բլրոց. սակայն զմտաւ ածեալ զայս զպէսպէս դժուարութիւնս որոց մարթ էր ծագել 'ի քաղաքին յերեսաց քաղաքապետաց ըստ այնր զառնութեան ժամանակին, լաւ համարեցաւ զառաջին տեղին ընտրել. թէպէտ և նեղութիւն բազում կրեաց յայլազգեաց, սակայն յաղթեալ ամենայնի հիմն արկ եկեղեցւոյն և աւարտեաց ամենայն մասամբն որպէս ինչ ցարդ երևի. այլ չև ձեռն արկեալ 'ի շինութիւն մենաստանին վախճանեցաւ. և ելից զթերին յաջորդ նորա Ստեփան արքեպիսկոպոս Ադանի յորջորջեալ, որ կառոյց զբովանդակ մենաստանն բաց յեկեղեցւոյն։

Վիճակ մենաստանիս մեծ էր յառաջագոյն, այլ արդ 'ի փոքու սահմանի. 35 գիւղք են թեմ նորա հանդերձ Նիկոմիդեաւ. և են գիւղք այգաբեր մեծամասամբ 'ի շրջակայս լճին Նիկիոյ։ Ցամին 1843 դպրոց 'ի մենաստանին հաստատեցին, յորում ժողովեալ զմանկտի թեմի իւրեանց կրթեն յուսումն և 'ի դաստիարակութիւն եկեղեցական վիճակի։ Միաբանքն ամենայն տասնև չափ, բարեկրօնք և բարեհամբոյրք, հիւրամեծարք և սիրելիք, փոյթ մեծ ունին զարգանալոյ ուսմանց և բարեկրթութեան, հրահանգեալ այնու և զմանկտին, յորոց առաքին յայլ և այլ գիւղս 'ի դաստիարակ դպրոցաց նոցին. զի և յամենեսին 'ի նոսա են վարժոցք մանկանց. և հեղինակ այդր ամենայնի է Պօղոս եպիսկոպոս Թաքթաքեան պրուսացի, փոխանորդ նորին Ստեփան վարդապետի։ Զառաջնոյ շինու-

թենէ մենաստանին յիշատակ լինի 'ի ձեռագիր մաշտոցի իրիք անդ այսպէս...
« Ազգս մերային որ եկեալ բնակեալ 'ի գաւառս Նիկոմիդացւոց 'ի սահմանս Ար-
» մաշ կոչեցեալ վանիցն սուրբ Աստուածածնի 'ի գիւղս որ Ղըշլայ յորջորջի, չև ևս
» էին շինեալ յարկս աղօթից և ժամատունս: իսկ 'ի յետին ժամանակիս յետ բա-
» զում ամաց' որ էր թուականն ՌՃԹ (1660) 'ի հայրապետութեան տեառն Յա-
» կոբայ որ 'ի սուրբ Էջմիածին, և յառաջնորդութեան սուրբ Երուսաղեմի տեառն
» Աստուածատրոյ վարդապետի, և 'ի պատրիարգութեան տեառն Մարտիրոսի
» Նորին աշակերտի... մինն 'ի նոցանէ խաւկալցի Ղումրին... եւ.. Երեմիաս..
» եկաք 'ի Նաւակատիս եկեղեցւոյս և 'ի պատճառս ուխտի սուրբ վանից տիրա-
» մօրն Աստուածածնի, և գթերին կցաք...»:

Խաւկալ, գիւղ Հայոց իբր 'ի 50 տանց, միով ժամաւ հեռի յԱրմաշայ. զանուն գեղջս յիշատակէ և այլ ձեռագիր մաշտոց որ 'ի նմին նորաշէն եկեղեցւոջ գեղջն. « ՌԾԸ (1609) 'ի մայրաքաղաքն Ստամպօլ 'ի դուռն կոմրուկու սուրբ
» Նիկողայոսին. առաջնորդութեան կեսարացի Գրիգոր քաջ քարոզապետին.
» Թագաւորութեանն սուլդան Ահմատին. Աստուած զիւր սուրն կորուկ անէ: Զե-
» ռամբ անարժան թոխաթցի Միքայէլին 'ի վայելումն խաւկալցի տէր Միքայէ-
» լին... Արդ գրեցաւ սա 'ի դառն և 'ի դժնար ժամանակիս, զի խեղճ քրիստո-
» նեայքն ճալալեց համար փախեան և եկին 'ի Ստամպօլ. և գրքս այլ կու հալա-
» ծեն 'ի Ստամպօլու»:

## ԱՏԱՓԱԶԱՐ

Հեռի է յԱրմաշայ վեց ժամաւ աւանս այս մեծ և ընդարձակ 'ի դաշտավայրի. զի տունք որիչք են 'ի միմեանց մեծամեծ պարտիզօք զարդարեալ. լայնարձակք են և փողոցքն, և շուկայն նորոգ շինեալ. իսկ տունք հին և հասարակ, մեծաւ մասամբ փայտաշէնք: Թէպէտ այս ամենայն աղքատութեան արդիւնք թուիցին, սակայն ամենայն ոք կարևոր պիտոյիւքն շատացեալ է, փոյթ կալեալ մշակութեան թթենեաց վասն շերամոյ. զի և ծառայ ոք չգտանի անդանօր ըսպասարկու այլոց, լաւ համարեալ յաշխատութենէ ձեռին կեալ քան անարուեստ այլում հպատակել:

Հայոց տունք 1300 հաշուին յԱտափազար, և 4 եկեղեցիք հանդերձ չորիւք դպրոցօք. առաջին և աւագ հնաշէն, Հրեշտակապետ յորջորջեալ, առ որով և եկեղեցատուն վայելուչ. երկրորդ Սուրբ կարապետ. երրորդ Լուսաւորիչ. չորրորդ Սուրբ Ստեփաննոս. երեքեան ևս նորաշէն, բայց սուրբ կարապետ փառաւոր քան զայլսն է և մեծ: կիսով ժամաւ արտաքոյ աւանին անցանէ ջուրն Սագանճայի, որ ապա երթեալ խառնի 'ի Սագարիա. 'ի վերայ ջրոյն այնորիկ փայտեայ անիւ հաստատեալ է ահեղ մեծութեամբ, և դոյլս ագուցեալ 'ի նմա. և 'ի պըտոյտքել անուոյն 'ի բռնութենէ գետոյն' դոյլքն առեալ 'ի ջրոյն թափեն 'ի բարձուէ 'ի խողովակ մի, ընդ որ երթեալ ժողովի ջուրն 'ի մերձակայ ջրամբարն. և

անտի այլ ստորերկրեայ խողովակաւ անցանէ յերկրորդ ջրամբար և անտի յերրորդն. և այնպէս հետզհետէ մինչև ցքաղաքն և 'ի մէջ նորա յայլ և այլ թաղս. քանզի 'ի գետոյն մինչև ցծայր քաղաքին կարգաւ ջրակշիռք կան. և այս ջուր է միայն զոր վարէ աւանն ողջոյն։ Ասա ասացաւ աւանս՝ զի երկուսեաք պատեալ է 'ի ջուրց, մի 'ի նմին գետոյ, և միւս ևս 'ի Սագառիայէ որ անցանէ ընդ միւս ծայր աւանին մօտ առ Ստեփաննոս եկեղեցւոյն, և երթեալ անկանի 'ի Սեաւ ծով ինն ժամու հեռաւորութեամբ յԱտափազարէ։

Ատափազար հանէ յամին իբր 28 հազար օգգա մետաքս, հանդերձ 29 գիւղօրէիւքն, որք են Ընահաարճըլար, Գարաաբտիլէր, Քիրէզճէ, Իրէնլէր, Սարտօվան, Չըպըքլը, Տէրէքեօյ վերին և ստորին, Դաշլըք, Պէլէճիլէր, Ցօղանճըլար, Գըճըլար, Գուրտպէյլէր, Չէրչիլէր, Հասանպէյ, Չայդըշլա, Գամըշլը, Գուտաքլար, Հաճըլար, Թօզլար, Սարըճալար, Աքճագամըշ, Սէօյիւտլիւ, Թամըք, Ֆէրիզլի, Եէնիքեօյ, Ֆընտըքլը, Պէյլիք Դըշլա, Սապանճա, Քիւրտլէր։

## ՆԱՄԷՐՏ ՔԷՕՓՐԻՒՍԻՒ

Մի յանուանի կամրջացն է սա Ասիոյ մեծութեամբ և հոյակապ շինուածովն. կոչի յոմանց և Մոհաւանէք քեօփրիւսիւ. չորեքտասան կամարք են նորա. երկայնութիւնն 400 քայլ և աւելի ևս. բովանդակ շինուածն քարակերտ, ձգեալ յարելից յարեւմուտս բլրոյ 'ի բլուր։ Յառաջին ծայր 'ի գլուխ կամրջին կամար կայ. և 'ի հանդիպակաց կողմն 'ի միւսն ծայր՝ այլ կամարակերտ շինուած բարձր 'ի ձև խորանի որմեալ 'ի թիկանց, և թև մի աստի և թև մի անտի կցեալ ընդ նմա։ Ի ծայրէ աստի առ երրորդ կամարաւ կամրջին կան երկուսեաք կցեալ այլ բազմակամար շինուածք, առ ամրութիւն կամրջին թէ առ այլ ինչ չէ գուշակել. զի կամարք շինուածոյդ թէպէտ և կցեալք են յիրեար, այլ ոմն ուղղահայեաց է կամրջին, ոմն խոտորնակի և միւս ևս այլազգիր. և է շինուածդ յայդմ վայրի ևեթ. իսկ 'ի չորրորդ կամարէն սկսեալ մինչև ցառաջին ծայր կամրջին առ ամենայն միջոցովմ կամարաց երկուսեաք սիւնաձև դիմարգելս եդեալ են բոլորշի ահագին թանձրութեամբ և հաւասար բարձրութեան կամրջին. որք հանդերձ հոյակապ շինուածով կամրջին տեսիլ իմն ահեղ երևեցուցանեն ամենայն անցաւորաց։ Առ նոյն չորրորդ կամարաւն երկուսեաք 'ի վերուստ կամրջին ծակ գործեալ է դէպուղիղ ընդ թանձրութիւն կամրջին, ընդ որ հազիւ մարթի միում ումեք իջանել 'ի ներքս. և չէ մարթ գուշակել թէ առ ինչ իցեն կամրջափոր խորշքդ. այս ինչ յայտնի է, զի նովին ուղղութեամբ յոտս կամարին տեսանի այլ խորշ փոքր և անձուկ. և մարթ է ասել զայնոսիկ անցս արտաքին ջուրց որ 'ի վերայ կամրջին. և կամուրջն ողջոյն չունի խելս երկուսեաք։ Սագառիա գետ ընդ կամրջաւս անցանէր 'ի հնումն, այլ արդ ոչ ևս. և առասպելեն Տաճիկք թէ տէրվիշի ուրումն անցանել կամեցեալ ընդ կամուրջն՝ զլանայ տալ զահմանեալ

տուրս պահապանին, զանընչութիւն իւր պատճառեալ. և բանադրանօք 'ի պահապանէն խոսու, որկանէ զանձն 'ի գետն ատելով.

Մինէէք իչէն քօբմա կիւչիւ, այ սուսամը էյինէ.
Եաբմա բիլբի քեօրկէսինտէ, գօ ասլան նէսին սէնի.
Կէչմէ Նամէրտ քեօփրիւսինտէն, գօ ափարսըն սու սէնի:

Եւ գետոյն վրէժխնդիր եղեալ մահուան սորին՝ փախէ զընթացս իւր, երբ 'ի նզովս համարեալ զկամուրջն ընթացից իւրոց։ Չէ մարթ գիտել զժամանակ փոխելոյ Սադաախայ գետոյն առաւ. այժմ ընդ մի 'ի կամարաց նորա անցանէ այլ գետակ։

Կէօվէ եօթն ժամ հեռի յԱլաշկերտէ, աւան սահմանակից 'ի դաշտավայրի. 'ի բերդ նորա գլխաւորքն են մետաղս և քարինս։

Լէյվէկ աւան սահմանակից. առաջի նորա անցանէ Սադաախա գետ. են 'ի նմա տունք աւելի քան զվեցհարիւր։

ԴԻԼԷՃԻՔ

Աւան մեծ բնակեալ 'ի Տաճկաց և 'ի Հայոց. 'ի դաշտավայրէ սկսեալ և հեռաղձեալ խոնարհեալ ընդ այլ և այլ ձորակս յանդի յանդնդախոր լերանցա մէջն. այնպէս զի թէ 'ի գագաթանց լերանցն՝ որ շրջապատեն զթաղս այնր կողմանց՝ 'ի վայր ոք հայեսցի, անհնար ընբռնել. Նախն երի և օդն չէ առողջարար. Թող զի և երթևեկացն անհնարին նեղութիւն է շրջել ընդ փողոցսն։ Կրկին շուկայք են, վերին և ստորին. տունքն և կրպակքն ամենայն դժուծ։ Ի հասարակաց շինուածոց երևելի է միայն իւիկէ խանն նորոգ շինեալ մեծ և բազմասենեակ, սակս վաճառականաց մետաղսի, որ գլխաւոր բերքն է աւանիս, և բնակիչքն սովոր կեան մեծաւ մասամբ. մինչ զի և մուրացիկ ոք ոչ գտանի անդ։ Չքնաւթենէ աւանիս յայտայնի դժուարանալ վայրի ասանդեն բնակիչքն ոչ միայն հաւանութեամբ եղեալ նախնի բնակչացն. Նախն երի և յառակս է ասել. « Ցիւնեատէ ագըլ պիր օլսա, Դիլէճիքտէ փադար օլմազըտր »։

Դիլէճիքի տունք հաշուին ընդ ամենայն 760, յորոց 532 տաճիկք, և 228 են հայադաւանք. երկու նորաշէն եկեղեցիք են սոցա։ Մի 'ի գլխաւոր տեղեաց համարի աւանս վասն մետաղսի։

Վասն բերոց մետաղսի նշանաւոր են և գիւղօրէքն բնակեալ մեծաւ մասամբ 'ի Տաճկաց, և են սոքա. Սէլավիւք յորում են տունք 76. Տէրէքեօյ 96. Ըլըխունար 32. Չաքըր փունար 32. Տէրէ չէմչէասին 68. Թէփիրլէր 24. Կեօք փունար 52. Խըրթըլար 40. Դէյնէ 60. Եալէանէ 36. Ճիւմալի 48. Թէպէրիք 12. Սարմաշըք 16. Դայըր 132. Կիւնիւք Էօրէն 56. Վէզիր խան 176, որոց 112 են յոյնք, Չուքուր միրան 100. Կիւլիւմպէ 144. Փէլաէօզ 120, որոց 84 յոյնք. Ալպապալըք

72. Փիւլիւ 688, յորոց 440 Յոյնք. Եէնիքեօյ 84. Գուրտ քեօյ 100. Կիւնեա-րըք 12. Եօրէնքեօյ 24. Գէքտէմիր 108. Աչաղըքեօյ 268, որոց 184 յոյնք. Գաչ-քեօյ 340, որոց 116 յոյնք. Ցալէօզ 68։

Ցօնճալը, Ջերմուկ հեռի 'ի կուտինայէ երկու և կէս ժամու. և է բաժանեալ յերկուս լողարանս որիշ 'ի միմեանց արանց և կանանց քարընկէց մի հեռաւո-րութեամբ։ վասն ջրոյ բաղանեացս ծծմբային ասեն, և է սաստիկ ջերմ քան ըզ-միւսոյ ջերմկին որ կոչի Ըլըճա կամ Գզըլճա-համամ, և չորս ժամու հեռի է 'ի կուտինայէ։

## ԿՈՒՏԻՆԱ

ԲԵՐԴՆ, ԵՒ ԳԵՏՆԱՓՈՐ ՑԵՂՔ. — ՔԵՕԹԱՀԵԱ ըստ Ցաճկաց, քաղաք մեծ փոքուն Ասիոյ, 'ի հարաւոյ Պիլէճիքի. Նախ 'ի Քափու-ևէրի տեղւոյն ասեն շինեալ քա-ղաք, որ հեռի է յայժմեան կուտինայէ, և կործանեալ նորա յերկրաշարժու-թենէ՝ շինեցին ուր այժմս է. և 'ի պեղելն զհին քաղաքն գտանեն քարինս և հի-մունս շինուածոց. այլ արտաքոյ յերեսս գետնոյն չերևի ինչ նշանացորդ։ Արդ-կուտինացւոց քաղաքն շինեալ է 'ի ստորոտս սպառուածի լերինն՝ զոր կոչեն Ածէմ տաղը, 'ի հարթ վայրի. և առաջի նորա 'ի հիւսիսոյ և յարևելից դաշտա-վայր ընդարձակ որպէս Պրուսացւոց քաղաքին. և առաջի լերինդ այլ լեառն սպառուած փոքու խոտրոցաւ որիշ 'ի նմանէ և կոչի ճէպէլ հիսառի, յորոյ 'ի գա-գաթան է ԲԵՐԴՆ բազմամթիւ խիտառխիտ և բոլորշի աշտարակօք կառուցեալ։ Առաջին աշտարակն 'ի գագաթն լերինն հիմնեալ, այլք առ հասարակ զհետ զան-երկուստեք մինչև ցվայր յեզր քաղաքին. զի բուն քաղաքն մեծատարած արտա-քոյ բերդին է. իսկ երես բերդին դէպուղիղ հայի 'ի վերայ քաղաքին։ Յառաջին աշտարակէ անտի 120 քայլ 'ի խոնարհ պարիսպ ածեալ է, կամ թէ ասել միջն-որմն, ծայր 'ի ծայր երկուց կողմանց բերդին և դուռն 'ի նմա, որով միջոցդ ե-ռանկիւնի է ձևացեալ. և է ներքնաբերդն կամ իչ գալէ։ Ի նմին վայրի երկուս-տեք դրան ներքնաբերդին կան երկու և երեք գետնափոր տեղիք փոքրատարած և վարկպարազի ճարտարապետութեամբ. 'ի միում յայդոցիկ գտան ամաւ յառաջ բազում նետք մեդրաչափ երկայնութեամբ և սլաք փոքրիկ երկաթի 'ի ծայր նո-ցա։ Առընթեր որմոյ միջնաբերդին արտաքոյ յաջմէ նորա է դուռնն կոչեցեալ Սուլդան պաղը գաբուսու ընդ հարաւ արևմտից, զի Սուլդան պաղը ասացեալ պարտէզն յայնմ կողմանէ կայ կէս ժամու հեռաւորութեամբ։ Ի դրանէ այտի և 'ի հանդիպոյ նորա պարիսպք բերդին շարունակեալ երկուստեք խիտ առ խիտ աշտարակօք ըստ օրինակի միջնաբերդին, ոչ ուղիղ գծիւ, այլ որպէս ինչ հի-մունք քարաժայռ լերինն ձևացեալ են, հասանեն 'ի ստորին սպառուած նորա որ տակաւին բարձր է յոյժ քան զքաղաքն. և ահա 'ի դմին տեղւոջ է առաջին դուռն բերդին Ջարշը գափուսու կոչեցեալ և հայի ընդ հարաւ։ Առընթեր դրանդ կայր երբեմն արձան առիւծու, այլ արդ ոչ ևս. և ուանդեն բնակիչքն՝ առն-

*թեր առիւծուն լինել ռումբ մի մեծ միջափոր և փոկանս գաղտնի ածեալ զնովաւ. գիտացեալ ուրումն թէ զինչ 'ի միջին կայցէ կամ թէ գուշակելով, խոստանայ գերւոյ իւրում ազատել զնա 'ի գերութենէ եթէ զռումբն զայն ածցէ առ ինքն, և նորա ածեալ, բանայ այրն զռումբն և գտանէ 'ի նմա ոսկի լիով. յայտնի լինին իրքն առ ամենեսեան, և այլոց ևս կարծեցեալ թէ և արձան առիւծուն պահարան իցէ ոսկւոյ, խորտակեն զայն, այլ վրիպին 'ի յուսոյ: Ի նմին բերդի հարիւրիւ չափ տունք են բնակեալ 'ի Տաճկաց:*

ԲԵՐԴՆ ՓՈՔՐԻԿ. — *Է և այլ բերդ փոքրիկ 'ի ձախակողմն միւսոյն 'ի նմին կարգի պարսպաց նորա, խոնարհագոյն քան զնա և մերձ 'ի քաղաքն. չիք անցք այտի 'ի վերին բերդն. և մի դուռն է նորա որ հայի յարևելս: Ցած կոյս խաղացեալ 'ի վայր՝ 'ի փողոցին կայ կամարաշէն տեղի մի ուստի ելանէ ջուր կոչեցեալ* Աշաղը ճիւար փուճնարը: *իսկ արձանագիր 'ի դրունս կամ 'ի վերայ պարսպաց կրկին բերդիցդ չիք և ոչ մի:*

ՍՏՈՐԱԳՐՈՒԹԻՒՆ ՔԱՂԱՔԻՆ ԵՒ ԲԱՐՔ ԲՆԱԿՉԱՑՆ. — *Քան զյոլովս 'ի քաղաքաց Տաճկաստանի նուաստագոյն է կուտինա շինուածովք տանցն. ընդ բովանդակ քաղաքն հազիւ գտանին տունք երկու կամ երեք նորաշէնք, այլքն առ հասարակ հնաշէնք են և հնաձևք, անհաստատք և խարխուլք, և որմունք փողոցացն կանգնաչափ 'ի վեր վարկպարազի քարամբք հիմնեալ, միւս մասն մինչև 'ի վեր կաւակերտ: Անշքութիւն տանցդ արդիւնք է աղքատութեան քաղաքին, վկայեալ և 'ի բնակչացն. զի երևելի ինչ բերք գետնոյ և արհեստակերտ ձեռագործ չելանէ 'ի կուտինայէ, բաց 'ի կաւեղէն անօթոց. և ոչ իսկ յաճախ երթևեկք են կարաւանաց. նմին իրի և այլոց քաղաքաց բնակիչ անդ սակաւ եւ եւրոպացի ոք դուն ուրեք. յաղագս այնորիկ և բարք բնակչացն ոչ են կրեալ այլափոխութիւն, զոր օրինակ լինի յաճախ յընտանութենէ ընդ այլոց օտար ազգաց:*

ՍՈՎՈՐՈՒԹԻՒՆՔ. — *Սովորութիւն էր այլազգեաց յաւուրս զատկի և ծննդեան հուր լուցանել 'ի գագաթն լերինն զոր Խտըրըլըք կոչեն, որ կէս ժամու հեռի է 'ի քաղաքէն, իբրու կի յաղտեղութենէ քրիստոնէից մաքրեալք և զտեալք անշաղախ մնացեն. և 'ի նոյն աւուրս մանկտի նոցա եղին առեալ 'ի ձեռին հարկանեն ում և հանդիպին 'ի քրիստոնէից խառնիւ պահանջեալ 'ի նոցանէ 'ի դուրս հանել զինչ և ունիցին 'ի ծոցի: Այլ զայս անդթութիւն խափանեաց Հաֆըզ փաշա: Է և այլ սովորութիւն տաճիկ մանկտւոյն. 'ի միջոցի անդ զոր իւչ—այլար կոչեն, յայլ և այլ խումբս կազմեալ և թմբուկ 'ի ձեռին իւրաքանչիւր պարագլխի՝ շրջին ընդ փողոցս. իբրև անցանեն զոք տեսանեն, թէ տաճիկ իցէ՝ աղաղակեն քեապէ, քեապէ, քեապէ, պահանջելով դրամս 'ի նոցանէ, որպէս թէ մաղթեալ վասն նոցա զի արժանի լինիցին յուխտ գնալ 'ի Քեապէ. իսկ եթէ 'ի քրիստոնէից իցէ անցաւորն բնակ եւ կամ օտար, աղաղակեն* ռձաւպ, ռձաւպ, ռձաւպ. *և է* Ռձաւպն *անուանեալ լեառն մի ոչ շատ հեռի 'ի քաղաքէն, յոր ելանեն Ցոյնք յաւուր տօնի Եղիայ մարգարէին պաշտօն կատարել, և քրիստոնեայն եթէ չտայցէ ինչ մանկտւոյն, քարինս զկնի նորա ձգեն հայհոյութեամբ հանդերձ:*

ՄԶԿԻԹՔ, ԵԿԵՂԵՑԻՔ ԵՒ ԳՈՐԾԱՐԱՆՔ ԱՆՕԹՈՑ. — *Ութևտասան մզկիթք են 'ի քաղաքին, յորոց մինն եւեթ երևելի է մեծութեամբ* Ուլու ճամի *կոչեցեալ կապարա-*

պատ յարկօք: Եկեղեցիք Հայոց երեք են, Աստուածածին, սուրբ Թէոդորոս, և Լուսաւորիչ. և տունք ամենայն Հայոց 450: — Ցանխւ չափ գործարանք կան կաւեղէն բռեալ անօթոց, որ ծանօթ են ամենայն արևելեայց. նիւթ նոցա քար է նման գայլախազի զոր ածեն 'ի մերձակայ լերանց, և յաղօրիս լուեալ մանր և շաղեալ յօրինեն անօթս այլ և այլ ներկուածոյ. 'ի նոյն նիւթոյ են և չինի ասացեալքն 'ի ձև քառակուսի կղմինդրաչափ, կանաչագոյն զարդու, որովք պատեն զորմունս եկեղեցեաց և մզկթաց գաւառացն այնոցիկ: Այս ձեռակերտ է միայն քաղաքին, սակաւուց ոմանց վաճառականաց առ 'ի շահ, զոր և առաքեն յայլ և այլ կողմանս Ասիոյ յորս չիցէ յաճախեալ տակաւին նոյնասեռ գործած Եւրոպիոյ:

ԳԵՏՆԱԲԵՐՈՒԹԻՒՆ. — Ցորեան առատ է 'ի կալուածս, որ մշակի յայլ եւ այլ դաշտավայրս հեռի 'ի քաղաքէն, յորոց մի է և Ալբլնբուլ օվասի: Ի պտղոց անուանի է բալն զոր և չորացուցեալ առաքեն արտաքոյ: Իսկ գինի սակաւագիւտ է, զի խաղողն նախ քան զհասունանալ հարկանի 'ի ցրտոյ: Իսկ լերինքն առ հասարակ որ մօտ են քաղաքին և որ աւուրբք հեռի աստի և անտի՝ ապառաժ են ամենևին անբեր, մանաւանդ արևմտեան կողմանցն. յորոց ոմանք խաւ 'ի խաւ քարինք են, ոմանք դիւրափխրելիք և սպիտակք, եւ այլք երկաթագոյնք անպէտ 'ի շինուած տանց: Ի լերանց անտի ելանէ և կաւ մոխրագոյն զոր վարեն փոխանակ մոխրոյ 'ի լուանալ հանդերձեղէնս:

ՕԴ ՆՈՐԱ, ԵՒ ԱԽՏՔ. — Օդ քաղաքին ցրտագին է յոյժ 'ի ձմերան, և ցրտութեանդ պատճառ զբարձրութիւն գաւառին ասեն, զոր թէպէտ և բնակքն ոչ զգան, այլ օտարն որ 'ի Բիւթանացւոց գաւառէն այսր եկաւորի, միշտ ընդ ղառիվերս լերանց երթեալ հասանէ: Ի հիւանդութեանց աչացաւ բազում է 'ի քաղաքին՝ մանաւանդ 'ի կանայս և յօրիորդս, և պատճառ ախտիդ ասեն զցոլացումն արևուն յամարան յապառաժ լերինս, որ սպիտակք են և դիւրափշուրք, և 'ի հողմոյ և 'ի մրրկէ 'ի փոշի լուծանին. և յերաշտութեան՝ ամենայն ճանապարհք որ ընդ լերանցամէջսն թզաչափ 'ի վեր փոշի են իջեալ 'ի լերանց անտի:

ՋՈՒՐՑՆ ՊԱՏՈՒԱԿԱՆՈՒԹԻՒՆ. — Կուտինայի ջուրցն առատութիւն և պատուականութիւն համբաւեալ է և չկարէ ոք գովել որպէս արժանն է. թեթև, ախորժահամ, մաքուր, առողջարար և ցուրտ՝ ևս և յամառնային ժամանակի. մինչ զի կարօտեալն և տանջեալն յանպիտանութենէ ջուրց Բիւթանացւոց գաւառին աստանօր գոգցես ոգի առեալ կենդանանայ: Գլխաւորք յաղբերականց են Ագփունար ժամ և կէս հեռի 'ի քաղաքէն, քաջ մարսողական, և մաքրութիւնն այնպիսի՝ մինչև թուել զամենայն խիճս յատակին. բխէ 'ի ներքոյ քարանց 50 դրամաչափ[1] թանձրութեամբ: — Ագսու յայլ և այլ ականց բղխեալ 4 օգգա թանձրութեամբ, կիսով ժամու հեռի 'ի քաղաքէն: — Եօնճա փունարը 50 դրամաչափ, և է անընդմիջաբար արտաքոյ քաղաքին: — Ջուքուր չէշմէ 'ի թիկանց բերդին 'ի վերայ ճանապարհի Սուլդան պազըր պարտէզին, առողջարար հիւանդաց: — Քեօ-

1. Սովորական ոճ է կողմանցդ Ասիոյ 'ի բացատրել զյորդութիւն և զնուազութիւն ջուրց աղբերացն, իմանալ զխողովակ կամ զուղղաձիգ ծորակ աղբեր, ընդ որ անցանիցէ ճշգիւ կապարեայ գունտ որոյ ծանրութիւնն իցէ 50 դրամաչափ. ըստ նմին իմանալի է և զայլ դրամաչափս:

վէքէ, կէս ժամ հեռի 'ի քաղաքէն բխեալ 'ի ներքուստ քարանց: — Կուճառուշմի-րաճ բխեալ 'ի ներքուստ քարանց յերից և 'ի չորից ականց մճիտ և ցուրտ: — Ը-լըճա կամ Գզըլճա համամ չէշմէսի. առ որ մերձ է միով քառորդաւ և այլ ջուր Իճմիրլի անուանեալ: — Օլուճաք, հեռի 'ի նոյն Ըլըճայէ քառորդ մի: — Էշմալը փունարնոյնաչափ հեռաւորութեամբ 15 րոպէաչափ: — Ասըլխաս. հինգ վայր-կենիւ հեռի 'ի նոյն Ըլըճայէ. ելանէ իբր 'ի տասն ականց 'ի փոքր վայրէ 'ի քա-րանց, յորոց ոմանք ջերմ են և այլք ցուրտ, որք խառնին ապա 'ի մի աւազան բարեխառնեալ անդ: — Զաքալ չէշմէ և Ուլու ճամի սույու 'ի քաղաքին և այլք:

ՀՆՈՒԹԻՒՆՔ Ի ԳԵՐԵԶՄԱՆԱՑՆ ՀԱՅՈՑ. — Թէպէտ և Կուտինացւոց բերդն զուրկ իցէ 'ի հին արձանագրութեանց, և 'ի քաղաքին ևս չերևիցի ուրեք յիշատակ նախ-նեաց, սակայն որ 'ի գերեզմանատան Հայոց կան չիրիմք ոչ սակաւ պարծանք են, կիսով ժամաւ հեռի 'ի քաղաքէն. և են դոքա գործ նախնի ժամանակաց, և ասին գտեալ յաւերակս Զավորըայ և բերեալ այսր: Բազմատեսակ բարձրա-քանդակ է նոցա, յորոց զգլխաւորս ստորագրեսցուք, և զոմանս յարձանագրու-թեանցն:

Ա. Այր և կին յոտին (կանայք 'ի ձախմէ կան արանց) 'ի մէջ խորանաձև փո-րուածի. ձախոյ ձեռք նոցա փաթութեալ վերարկուաւ և եդեալ 'ի կրծի, և ա-ջինքն առ 'ի կախ: Ի վերայ կամարին կիսարձան 'ի բոլորակի նոյնաձև. և 'ի վե-րայ շրջանակի չիրմին ութք ողկուզալիցք:

Բ. Նոյնպէս, և կնոջն շղաշատեռ արկեալ զգլխով: Եւ 'ի ստորև մանր արձանք կրկին երկուստեք, զգեցեալք կարճ շապիկս:

Գ. Այր և կին նոյնաձև, և փունջ ծաղկանց աղեղնաձև ածեալ գլխէ 'ի գլուխ. և 'ի ներքոյ շրջանակին լուծք եզանց:

Դ. Շիրիմ սիւնաձև քառակուսի. 'ի մի կողմն ձիաւոր, 'ի միւսն կիսարձան, և յերրորդն այլ կիսարձան հանդերձ սրածայր ճառագայթիւք 'ի գլուխն:

Ե. Կին յոտին. ձեռք և զգեստք ըստ առաջնոցն և շղաշատեռ 'ի գլուխ. շրջա-նակ չիրմին 'ի պարզ ծաղկանց:

Զ. Երկմասնեայ, 'ի վերինն կիսանդրի երկու հանդերձ արձանագրօք. իսկ 'ի ստորինն դուռն փակեալ կրկնափեղկ[1], յորոյ վերայ տառք և 'ի ներքոյ գիրք բա-ցեալ և 'ի ստորև լուծ մի եզանց:

Է. Այր և կին յոտին. արձանագիր 'ի շրջանակի, յորում և մանուկ մատաղ առ մարբն:

Ը. Ի չորս մասունս տրոհեալ. յառաջնումն մատեան բացեալ, յերկրորդումն բոլորշի սնակ հարթ, յերրորդումն բաժակ կամ սապատ երկայնաձև և լայնա-բերան, և 'ի չորրորդումն հայելի ուղղաձիգ կանթիւ:

Թ. Ի վերոյ մենամարտութիւն երկուց առիւծուց և կենդանի մի այլ որսա-ցեալ 'ի նոցանէ. իսկ 'ի ներքոյ մատեան բացեալ և դիր 'ի վերայ նորա, թռչուն 'ի վերայ բաժակի կամ սապատի. և 'ի ներքոյ դոցա լուծք եզանց:

1. Ի բազումս 'ի չիրմաց անտի կան քանդակեալ դրունքդ այդպիսիկ. և յոմանս 'ի նոցանէ աղխ ար-կեալ փեղկէ 'ի փեղկ, մին 'ի ծայրից աղխին զարդ է տերևաձև և միւսն բոլորշի. իսկ 'ի վերայ փեղ-կիցն կան ուրեք սրուակաձև անօթք, հայելի կամ սնակ բոլորակ հանդերձ ուղղաձիգ կանթիւ:

Ժ. Թռչուն 'ի վերոյ առ անօթով, 'ի ներքոյ առիւծ, և 'ի ստորև գուռն փակեալ:

ԺԱ. Միանամարտութիւն առիւծուց և ընդ նոքօք այլ կենդանիք և 'ի ներքոյ նոցա չորս կիսարձանք յերկուս կարգս:

ԺԲ. Ի վերն նոյն ընդ նախընթացին, և 'ի ներքոյ գուռն փակեալ:

ԺԳ. Թռչուն 'ի վերոյ թեւատարած և ձկունք երկուստեք նորա:

ԺԴ. Այր և կին յոտին. առն սուր ածեալ ընդ մէջ իւր և զինուորական վերարկու 'ի թիկունս, և զձեռն ձախոյ եդեալ 'ի գլուխ մանկան յոտին կանգնելոյ. աղեղնաձև փունջ ծաղկանց կամ դրասանկ ածեալ դիմէ 'ի գլուխ առն և կնոջն:

ԺԵ. Կիսարձան 'ի վերոյ, և 'ի ներքոյ անընդմիջաբար դրասանկ, և 'ի ստորև թերատ արձանագիր յոյն (Թիւ 1), յորմէ գուշակի նուիրական իմն լինել Արամազդայ ամենահզօրագունոյ:

ԺԶ. Երկմասնեալ. յառաջնումն կիսարձանք երկու 'ի մէջ սրածայր խորշի, և 'ի վերայ նոցա թռչուն կանգնեալ 'ի վերայ սապատի կամ բաժակի. իսկ յերկրորդումն այր մի յոտին կարճ շապկաւ, և արձանագիր ատեր և անտի:

ԺԷ. Շիրիմ անպատկեր և անզարդ, և արձանագիր 'ի վերայ նորա (Թիւ 2), յիշատակ ամուսնոյ առ կենակիցն:

ԺԸ. Ամբողջ անզարդ կնոջ, ուր քանդակեալ 'ի վերայ շիրմի որպէս այլքն, բնական մեծութեամբ, անկեալ 'ի գետնի կիսաթաղ թիկամբն, և պատուանդան ընդ ոտիւք, գլուխն խորտակեալ և չիք առ նմա. զգեստքն զարդեալ զմբջով, և զուտովքն առ 'ի կախ շղթայ քանդակեալ:

## ԶԱՎՏԸՐ

Անցեալ ընդ արևմուտս կուռինայ և ընդ առապարս լերանց՝ որոց ոմանք դիւրափխրելիք են և սպիտակք, այլք խառն 'ի խառն և երկաթագոյնք ևս, և հասեալ 'ի մեծ դաշտավայրն՝ ուր գիւղն է Ցաճկաց Հաձը քեօյ, և կիսով ժամու ևս անդրագոյն ընդ առաջ լինի գիւղն Զավտըր կամ Զավտըր-ճիւար կոչեցեալ, իբր ժամու հեռի 'ի կուռինայէ, դուզնաքեայ տամբք եօթանասունիւ չափ, բնակեալ 'ի Ցաճկաց: Ոչ համդիպեալ բաղդի հնախոյզ ձեռին մանր աշխատութեամբ յերևան գալոյ ամենայն հին շինուածոց, յորոց բաղում այն է զի մասամբ ընդ հողով թաղեալ կան, տակաւին միացեալովքն հրաշալի և հիացուցիչ համդիսանայ[1]:

ՏԱՃԱՐՆ. — Առաջին որ և 'ի հեռաստանէ երևելի է բարձրութեամբն, տաճարն է սիւնազարդ՝ երեսս 'ի հիւսիս. երկոտասան սիւնք յոնիականք բոլորշիք և չեր-

1. Ցարձանագրաց ինչ շինուածոցն ստուգեցաւ Եղանի կամ Աղանի կոչիլ 'ի հնումն, Ἀἴζανοι, յորոյ անուն գաւառին և դրամք հատեալք. և Թարգմանիչն ոմանք յանգագոյն հայումս Ոնի: Ըննող և փրկիչ քաղաքին կոչի յարձանսն Կլաւդիանոս Սարապանիկոս, Թերևս նորոգողն առ Համայեցւովք. յիշէ զքաղաքս զայս Ստրաբոն:

տաձևք վերուստ 'ի վայր՝ ձևացեալ են 'ի ճակատին, և երեք խորանակեալք. որոյ ողջոյն տարածութիւն է 36 և կէս մետր, իսկ կողմանն 21 և կէս. շրջապատ միոյ 'ի սեանցն 3 մետր։ Ի կարգէ սեանցն 3 և կէս մետր միջոցաւ առ 'ի ներքս է սրահ տաճարին. յորոյ աջակողմն արձանագիր յոյն, և 'ի թիկանց որմոյն 'ի նոյն դիրս՝ լատին և յոյն։ Ցարեմտեան կողմանէ տաճարին յառաջնում կարգի կան 4 սիւնք, և 2 ևս առ 'ի ներքս, և 'ի միջոցի դոցա չարայարութիւն սրահին նոյնաչափ լայնութեամբ որպէս առաջի ճակատուն. երկուստեք կրկին սեանցդ են դրունք տաճարին. ձախակողմեանն մուծանէ 'ի տաճարն, աջակողմեանն 'ի ներքոյ նորին. զի ընդ յատակաւն գետնափոր է կամարաձև ընդ որ լինի մտանել ևս և 'ի սրահէ ճակատու կողմանն և յետուստ նորա։ Վերնախարիսխք սեանց ճակատուն որրաձևք են 'ի չորս անկիւնս, և զարդք միջոցի չորից կողմանցն՝ մանրաձև անօթք խիտ առ խիտ շարեալ առ միմեանս. իսկ արևմտակողման սեանց վերնախարիսխք տերևաձևք են։ Ներքնախարիսխք ամենայն սեանցն բոլորշի են և անզարդ, և 'ի ներքոյ նոցա այլ խարիսխ քառակուսի։ Մեծամեծք են վերնաքարինքն յորս ամրացեալ են ծայրք իւրաքանչիւր սեանցն և առ որոց եղերօքն զիկ գործեալ է, երկայնութիւն միոյն որ և անկեալ է 'ի գետին է 5 մետր, լայնութիւնն $^{90}/_{100}$, և թանձրութիւնն $^{70}/_{100}$։ Ամենայն սիւնք արևելակողմանն և հարաւայնոյն հանդերձ որմովք իւրեանց իսպառ անկեալք են, որպէս և յարկն գլխովին։ Շրջապատ տաճարիս հիմնեալ է 'ի վերայ մեծամեծ քարանց և շուրջ զնովաւ հարուստ մի տարածութեամբ այլ հիմունք երևին, յորմէ թուի թէ ասպարէզ տաճարին ձգէր մինչև ցանդր, որ և նոյնպէս մեծամեծ քարամբք հաստատեալ է. և յարևելակողմն նորին երևին խիտ առ խիտ կամարք խցեալք. և 'ի կամարաց այտի որ և եզերք համարին մեծի ասպարիզի տաճարին՝ յատակ գետնոյն բարձր է, այնպէս զի վերին ծայր կամարացն հաւասար է գետնոյն. և թուի թէ ընդ ողջոյն շրջապատ ասպարիզին նոյնօրինակ կամարապատ էր իբրև պարիսպ կամ դիմարգել բռնութեան հողոյն, որ յանցանել ժամանակաց աւերեալ կամ ծածկեալ ընդ հողով, չերևին։ Ամենայն ինչ տաճարիս մեծագործ է, սիւնքն միակտուրք բարձրաբերձք. որմունք թանձր և սրբատաշք, և հասարակ քար բնաւ չերևի 'ի նմա, այլ բովանդակն 'ի կճոյ։ Զիք անցաւոր որ անկարեկիր աչօք հայիցի ընդ նա եթէ փոքր մի ախորժակ հնասիրութեան իցէ 'ի նմա։ Եւ թող զքանչելի շինուած նորա, և զահեղ մեծագործութիւն, ոսկէզօծ ևս էր յառաջագոյն տաճարն բովանդակ մինչև շլացուցանել զտեսողսն 'ի յոյժ հեռաստանէ յորժամ ճառագայթք արեգական հարկանէին 'ի նմա. այնր աղագաւ բազումք յինքնագլուխ և յապստամբ արանց և հինից ստէպ յաճախեալ 'ի գիւղս յայս 'ի տես հրաշալեացն, մանաւանդ առ ագահութեան ոսկւոյն, նեղէին յոյժ զգիւղականսն վասն կերակրոյ և օթևելոյ անդ. ընդ որ չհանդուրժեալ գեղջկացն՝ փայտ բազում ածեալ և դիզեալ զտաճարաւն հուր լուցանեն և հալեալ ապառեն զամենայն ոսկի թիթղունս. և այս իբրև հարիւր ամօք յառաջ։

ԹԷԱՏՐՈՆ. — Քառորդաւ ժամու հեռի 'ի տաճարէն 'ի հանդիպոյ նորա է թէատրոնն որ երկայնեալ ձգի 'ի հիւսիսոյ ընդ հարաւ։ Ծայր թէատրոնին բոլորշի առ 'ի խոր և 'ի ներքուստ մինչև 'ի վեր աստիճանք գործեալք ընդ շրջապատն, բաց

'ի հանդիպոյ կողմանէն, և տակաւ լայնանայ, մինչև վերնոյ աստիճանին հաւասարիլ բոլորաձև գետնոյն. և աստիճանքդ հասանեն մինչև ցերեսուն։ Իսկ հանդէպ բոլորչի տեղւոյդ ճակատ կայր յառաջագոյն սիւնազարդ, որոյ երկուստեք որմունքն կանգուն կան տակաւին, սիւնքն խորտակեալք և ահագին քարինքն մի զմիով անկեալ արհաւիրք տեսողացն լինին, և միօրինակ խռովեցուցանեն զնոսա՝ անդունդ ձեռնն տապալիչ ահեղ շինուածոյն և անկայուն բաղդ աշխարհիս։ Ի բաղումս 'ի տապալեալ մեծամեծ քարանցդ երևին բարձրաքանդակ անարուեստ պատկերք, որք և մեծաւ մասամբ կոփք են աւիծու և եզին։ Ի թիկանց աւերածոյդ անընդմիջապէս կայ այլ որմ հանդերձ դրամբք և է սենեկաձև յօրինեալ, որ գուցէ տեղի գազանաց էր. և է դա միայն 'ի հասարակ քարանց։ Իսկ առաջի նորա է բուն ասպարէզ թէատրոնին կամ թէ ասել ընթացարանն ձորաձև, երկայն 300 քայլ. իսկ աստիճանք կողմանց տեղւոյս խապառ հիմնայատակ եղեալ են. միայն յաջակողմն նորին իբր 'ի կէս ճանապարհին կայ այլ շինուած ցած 'ի վերայ թմբին 26 մետր երկայնութեամբ 'ի վերայ վեցից կամրջաձև կամարաց. Թանձրութիւն պարսպին չորս մետր. են և այլ ևս 3 կամարք հանդէպ այլոցն 10 քայլ խորոցաւ 'ի միջի։ Ի ճակատ կամարաց շինուածոյս կան բարձրաքանդակ գլուխք եզին։ Բովանդակ շինուած թէատրոնին է 'ի կճոյ, բաց 'ի միջին սենեկաձև որմոցն զոր յիշեցաք։

ԿԱՄՈՒՐՋՔ. — Ցարևելակողմն տաճարին են կրկին կամուրջք մօտ առ միմեանս նոյնաձևք հնգկամարեանք. մեծագործութիւն 'ի նոսա թէպէտ և չերևիցի, սակայն ոչ թեթև ինչ է որ ցարդ անաւերատ է մնացեալ. բայց այլ զարմանալիք՝ զի տակք գետոյն (Հռինդակ՝ ըստ նախնեաց) երկուստեք հարուստ մի տարածութեամբ, գուցէ որչափ սահման էր Զավտրբրայ 'ի հնումն, 'ի մեծամեծ կճեայ քարանց յօրինեալ են, և այսօր մեծաւ մասամբ խանգարեալ և քակտեալ՝ արձանագիրք 'ի նոսա և պսակաձև զարդք և պատկերք քանդակագործք. այլ ամենայնն ողորմելի տեսողացն երևի։ Իսկ պատկերք ամբողջ քանդակեալք չերևին ուրեք ոչ 'ի վերայ տաճարին և ոչ 'ի թէատրոնին, և ոչ ընդ երկրաւ գտանին որպէս պատմեն բնակիչքն. այլ պղնձի դրամք ոչ սակաւ 'ի վեր երևին երբեմն ընդ դիպաց։ Ժամու հեռի է և այլ կամուրջ մեծ միակամար 'ի վերայ նոյն գետոյ, և գետն է սակաւաջուր։ — Ոճ շինութեան կամրջացդ հռովմէական է։

## ԷՍԿԻՇԷՀԻՐ

Քաղաքաւան ('ի հնումն Դորիլէոն) բնակեալ 'ի Տաճկաց իբր 'ի տանց վեցհարիւրոց 'ի ստորոտս բլրոյ, և դաշտավայր ընդարձակ առաջի նորա քաջ մշակեալ. ընդ որ անցանէ գետն՝ որ առ Կուտինայիւ ընթանայ, յորմէ ոռոգանին մեծամեծ պարտէզք սեխենեաց և այլոց նմանեաց։ Շուկայն արտաքոյ է աւանին իբրև քառորդաւ ժամու հեռի 'ի նմանէ։ Երթևեկ յայլևայլ կողմանց բաղում է յԷսկիշէհիր, զի 'ի վերայ արահետ ճանապարհի կայ. և երևելի վաճառ նորա է

Սիւլէ–դաշը ասացեալ քարն, զոր վաճառականք յղեն 'ի Բիւզանդիոն և անտի երթայ՝ 'ի Գերմանիա. և է նա հանք բրածոյ որ գտանի 'ի լերինս վեց ժամու հեռաւորութեամբ յաւանէն: Ցովորական դիրք հանքացս երեք կարգ են մի զմիով, յորոց միջինն ընտրելագոյն համարի. և է հանքն մասն մասն՝ յորոց իւրաքանչիւրոց մի մի լիւլէ յօրինի և ոչ աւելի. Թէպէտ և գտանին այլ ևս մեծ հատորք 'ի չափ սափորոյ, այլ դոյն ուրեք: Բրածոյ հատորքն պատեալ են դեղնագոյն կաւային հողով, որ ընդ հանելն կակուղ է և ապա կարծրանայ. և դժնակաւ խորտակեալ զարտաքին նորա, և զմիջին սպիտակն յարկեղս զետեղեալ առաքեն. զոր ապա՝ 'ի Գերմանիա արհեստաւորք յօրինեն, քանդակս այլ և այլ զարդուց յերկրեալ 'ի վերայ: Ի վաճառաց աստի ամի ամի մտանէ յէսկիշէհիր իբր չորսհազար քսակ դրամոց: Բաժ տէրութեանն սահմանեալ էր երբեմն փարաղին վճարել 10 առ 100, և արհեստաւորին որ առնու 'ի ձեռաց նորա՝ 5 առ 100. իսկ վաճառականին առ մէն մի յարկեղացն 70 ղուրուշ: — Ի շինուածոց չիք ինչ արժանի յիշատակաց բաց 'ի քարաշէն և 'ի բազմագմբէթ մէճզիդխանէէն և 'ի միոյ բաղանեաց բնական ջուրց, է և ջուր ջերմահոս աղբեր 'ի միում յիջևանացն:

ՊԷՅՓԱԶԱՐ. Անցեալ յէսկիշէհիրէ ընդ գիւղօրէս Այբը և Պօզաւճ ընդ դաշտավայր ճանապարհս, որ բազում մասամբ քարուտ է և անմշակելի, և հասեալ 'ի Գօյունճ–աղըլ գիւղ շրջապատեալ 'ի լերանց և այգեւէտ, և անցեալ ընդ ապառաժ և կաւային կարմիր մոխրագոյն և սպիտակ աւազախառն լերինս, ընդառաջ լինի քաղաքաւանն Պէյփազար 'ի լեռնամէջս. 1800 տունք հաշուին նորա, ամենեքեան անկղմինոր և անհող, տախտակաւ միայն յարկեալ, և հանգոյն տաճկաբնակ: Անուանի են պարտէզքն սեխենեաց. այլ երևելի բերք նորա այծամազ փափուկ:

Այաշ, աւան 'ի լեռնամէջս բնակեալ 'ի Տաճկաց 'ի 600 տանց: Բերք նորին այծամազ փափուկ. ունի բազմաթիւ բնական ջուրց շինեալ 'ի բարձրահայեաց վայրի արտաքոյ քաղաքին, 'ի վերայ միոյ 'ի լերանցն՝ յորոց շրջապատեալն է:

## ԱՆԿԻՒՐԻԱ

Քաղաք մեծ և անուանի 'ի նախնի ժամանակաց և այժմ, հեռի յէսկիշէհիրէ 44 կամ 48 ժամու. որոյ և 'ի մնացորդաց հին շինուածոց՝ գուշակի նախնի մեծութիւնն:

Յարևմտից կողմանէ քաղաքին Անկիւրացւոց երևի 'ի հեռաստանէ լեառն մի բարձր. 'ի գագաթան նորա բերդ մեծատարած և եռապարիսպ, 'ի ներքս և արտաքոյ տունք և այլ շինուածք կարգ ըստ կարգէ մինչև 'ի ստորոտ նորին 'ի խոնարհ և տարածեալ 'ի դաշտավայրի: Ամենայն պարիսպք բերդին քարակերտք են, ոչ այնքան մեծագործութեամբ քան թէ բարձրութեամբ դիրիցն վեհ երևեալ. 'ի հիւսիսոյ կողմանէ սեպացեալ ապառաժին երկայնեալ ձգին պարիսպքն 'ի

*հարաւ կոյս։ Հիւսիսային ծայրն որ և առ Ագզուլէ բարձրագոյն է քան զամենայն տեղիս, և արտաքուստ զառ 'ի վայրիւք սեպացեալ ապառաժին՝ անհասոր է տեսողաց։ Արտաքին պարիսպն բազում ուրեք կիսով չափ բարձրութեամբն կործանեալ, նորոգեալ է յետ ժամանակաց վարկպարագի քարամբք. Թէպէտ և ներքին պարիսպքն՝ ևս ոչ խուզառ անարատ մնացեալ։ Դրունք բերդին յանուանէ յիշեալքն են Հիսար գաբու, Իչ հիսար գաբու, Տեմիր գաբու, և Արպազար գաբու։ Ի վերայ Իչհիսար գաբու դրան 'ի ներքին կողմանէ կայ արձանագիր յունարէն.*

## ΑΥΤΟΚΡΑΤΩΡΙ ΝΕΡΟΥΑΙ ΤΡΑΙΑΝΩΙ ΚΑΙΣΑΡΙ ΣΕΒΑΣ

*այսինքն*, ԻՆՔՆԱԿԱԼԻ ՆԵՐՈՒԱՑ ՏՐԱՅԻԱՆՈՒ ԿԵՍԱՐՈՒ ՍԵԲԱՍ(ՏՈՍԻ).

*Առ երի դրանդ 'ի ձախմէ է մզկիթ և գերեզմանատուն փոքր առ նովաւ և բարձրադիր քառակուսի քարինք, յորոց 'ի միումն որ հանդէպակաց է մզկթին արձանագիրն (Թիւ 3), և 'ի վերայ միոյ 'ի բարձրադիր քառակուսի վիմաց որ անընդմիջաբար կայ առ երի Իչհիսար գաբու դրան (Թիւ 4). և առ երի Տէմիր գաբուսու դրան 'ի ձախմէ 'ի վերայ պարսպի երկտող արձանագիր կայ յունարէն 'ի ձև երկայնատառ, և քարն յերիս հատուածեալ։ (Թիւ 5)։ Սակայն բազումք յարձանագրացն՝ որ անարատք և որ խանգարեալք, աստ և առ Աթպազար դրամբ, որպէս և այլ ուրեք ուրեք, բաց 'ի վերնագրէ Իչհիսար դրան, այլոց շինուածոց են, և 'ի նորոգութեան պարսպացդ մուծեալ յայն տեղիս, որպէս յայտնի երևի յանյարմարութենէն և 'ի շրջուն դրից քարանցն։*

ՊԱՏԿԵՐՔ. — *Արձանք առիւծուց կան յԱգզուլէ և առ Աթպազար դրամբ, այլ ոչ քաջարուեստք։ Են և այլ քանի մի բարձրաքանդակ առնապատկերք առիւծենի գլթիկամբք, որպէս ինչ նշմարին, և են ագուցեալք հորիզոնաձև 'ի պարսպին մօտ Իչհիսար դրան։*

ԳԵՏՆԱՓՈՐ ՏԵՂԻ. — *Սուլուչ կոչեն բնակիչքն զգետնափոր տեղին զայն որ 'ի պարսպէ բերդին ընդ զառիվայր տանի մինչև ցգետն. որոյ դուռն էր 'ի պարսպին և արդ խցեալ է, այլ արդ մտանեն ընդ փուլս նորին. Թուի վասն ժամանակի պաշարման գործեալ զայն, քանզի 'ի բերդին ջուր ոչ գտանի. և մի աղբիւր ևեթ կայ առ գետեզերբն յորմէ ըմպէ քաղաքն ամենայն։ Գետնափորդ մեծաւ մասամբ քայքայեալ և շինուածն ոչ մեծագործ ինչ։ Ի ստորին ծայր նորա որ առ գետեզերբն դուռն երկաթի կայր, ասեն. այլ արդ աւերակօք խցեալ տեղին՝ ոչ ևս երևի դուռնն։*

ՏԻՔԻԼԻ ԴԱՇ, ԵՒ ԽՕՂՈՒՆ ՏՈՒՎԱՐ. — *Արտաքոյ բերդին է Տիքիլի դաշն բոլորշի և ոչ միակտուր, 'ի հաստարակ քարէ որպէս և քառակուսի պատուանդանք նորա. արձանագիր լատին կայր, ասեն ծերքն, երբեմն առ պատուանդանաւն, այլ արդ ոչ ևս։ — Արտաքոյ քաղաքին մօտ առ Տաճկաց գերեզմանատամբն է այլ աւերակ անծանօթ զոր Խօղուն տուվար կոչեն. այլ և այլ մասունք են թանձր որմոց և կամարակապ ճանապարհ 'ի մէջ որմոցն և ագուգայք ջրոց 'ի նոսա. զայս ոմանք բաղանիս կոչեն։*

ՕԳՈՍՏԵԱՅ ՏԱՃԱՐՆ. — *Անկիւրիոյ մեծ պարծանք են Օգոստեայ տաճարն, որոյ ցարդ անարատ կան որմունք. և են քարինքն բովանդակ 'ի սրբատաշ կճոյ, իւրաքանչիւր միաչափ 'ի ձև երկայն քառակուսի. Մնացեալ են արդ որմունք երկու հանդէպ միմեանց, և 'ի միջի այլ որմ և դուռն 'ի նմա բարձր միակտուր դրանդեօք. չիք վերնայարկ շինուածոյն, զոր ոմանք սեղանատուն Օգոստեայ առնեն և այլք այլ ինչ։ Ի վերայ որմոցն երկուստեք հանդէպ միմեանց արձանագիրք կան երկարք՝ աջակողմեանն լատին, և ձախակողմեանն յոյն. սակայն առ բացօթեայ լինելոյ շինուածոյն մեծաւ մասամբ խանգարեալ են, և ուրեք ևս քարանցն խորտակեալ. և օր ըստ օրէ 'ի խանգարել է արձանագիրն. զորոյ զիմաստ և բովանդակութիւն յայտ առնէ սկիզբն կամ խորագիր արձանիդ որ և մեծատառ դրոշմեալ է, և ունի այսպէս.*

RERVM GESTARVM. DIVI. AVGVSTI. QVIBVS ORBEM. TERrArum IMPERIO. POPVLI. ROM. SVBIECIT. ET. INPENSARVM. QVAS. IN REM. PVBLICAM POPVLVM QVE RomanVM FECIT. INCISARVM IN DVABVS. AHENEIS. PILIS. QVAE. SVNT. ROMAE. POSITAE. EXEMPLAR. SVBIECTVM.[1]

ԱՐՁԱՆ ՊԱՏՃԵՆԻ ՈՐՈՑ Ի ՀՌՈՎՄ՟Ն ԵՐԿՈՒՑՆ ՍԵԱՆՑ ՊՂՆՁԵԱՅՑ, ՅՈՐՍ ԴՐՈՇՄԵԱԼ ԵՆ ԱՐԱՐՔ ԳՈՐԾՈՑ ԴԻՒՑԱԶԻՆՆ ԱՒԳՈՍՏԵԱՑ, ՈՐՈՎՔ ՆՈՒԱՃԵԱՑ ԶՏԻԵԶԵՐՍ Ի ՀՆԱԶԱՆԴՈՒԹԻՒՆ ՏԷՐՈՒԹԵԱՆ ԺՈՂՈՎՐԴԵԱՆՆ ՀՌՈՎՄԱՑ. ԵՒ ԾԱԽՈՒՑՆ ԶՈՐ ԱՐԱՐ ՎԱՍՆ ԱՇԽԱՐՀԻՆ ԵՒ ՎԱՍՆ ԱԶԳԻ ՀՌՈՎՄԱՑԵՑԻՈՑ։

*Զօգոստեան տաճարս զայս Տաճիկք քաղաքին Հաճիպէյրամ կոչեն, իբր զի առ երի կայ նորա մզկիթ և գերեզման Հաճի Պէյրամայ ուրումն յարգի եղելոյ վարուք ըստ դենի նոցա։ Եւ 'ի մզկթի անդ կայ դարան մի յորմն, զոր չատ ջանացեալ են բանալ մրճովք և ուրագօք և չեն կարացեալ, ասեն, և առասպելեն բազում ինչ։*

ՎԿԱՅԱՐԱՆՔ. — *Առ երի Հիսար Գաբուսի դրան 'ի բերդին 'ի ձախմէ կայ եկեղեցի սրբոյն Կղեմայ քայքայեալ, և է 'ի ձեռս Հայոց. գերեզման նորա է առ որմով հանդէպ աւագ խորանին, չիրիմ փոքր օրօրոցաձև։ Ի ձախակողմեան պատուհանի եկեղեցւոյն փոխանակ ապակւոյ կայ քար Թափանցիկ։ Է և այլ գերեզման, զոր ոմանք ասեն լինել Բարսղի փոքրկան, 'ի տան միում։ Նոյնպիսի է և Յակոբայ ուրումն տեղի նահատակութեան յայլում տան 'ի մէջ կամարաձև քարակերտ տեղւոյ, զոր Յոյնք Այիոս Գլիմանդոս կոչեն, և մերձ է առ չարշը պօղազի. է առընթեր տանն այնորիկ և այլ բարձրագմբէթ շինուած՝ ուր ասեն լինել զգերեզման նորին սրբոյ։*

ԱՍԼԱՆԽԱՆԷ. — *Արտաքոյ բերդին է Ասլանխանէ. տեղի գազանաց 'ի հնումն, որ*

1. Թողումք զհետեւեալսն զի Թերևս էր գաղափար հեղինակիս, որպէս և առաջնոյն քան զնա. և զի հերու հրամանաւ Փռանկաց պետութեան առաքեցան Հարտալք և պեղեալ զշինուածոյն ընդօրինակեցին զլայտ և զծածկեալ արձանագիրն. 'ի նոյին վաստակս խնդրեսցեն սիրողք։

և հանդերձ քարակերտ ամրաշէն սեննկօքն յայտնի երևի, թէպէտ և արդ ուրեք աւերեալ և այլուր խցկունս դուզնաքեայս ընդ հին շինուածոյն կցեալ, ընթերցարանս մոլլայից են արարեալ։ Արձանագիր բազում է անդ 'ի ներքս և արտաքոյ նորա, այլ մեծաւ մասամբ խանգարեալ։

ԲԵՐՔ ԵՒ ՎԱՃԱՌԱԿԱՆՈՒԹԻՒՆ. — Եթէ այլք 'ի բերոց պակասէին յԱնկիւրիա, որպէս մեղրն պատուական, ապուխտն, և այլն, շատ էր նմա այծամազն ընտիր փափուկ և ձիւնափայլ։ Աքանչելի տեսարան է յորժամ հօրանք այծից ակաղձուն մետաքսատիպ և խառն 'ի խառն մազովքն ընդ դաշտս և ընդ բլուրս քաղաքին և մերձակայ գաւառացն թինդս տուեալ վաղվաղեն, փայլեալ իբրև զապակի 'ի ճառագայթից արևուն։ Այծամազն այն մանեալ՝ ցփսի ընտիր գործի անուանի ընդ ամենայն Տաճկաստան. աւելի քան զքսան արհեստաւորս ասեն յորոց ձեռն անցեալ այծամազդ կատարէր ամենայն մասամբն. և Անկիւրիա հանէր ամի ամի աւելի քան զ40,000 թօփ 'ի նոյն ցփսոյ. այլ 'ի փոփոխել տարազու տաճկական զգեստուց՝ դադարեաց և գործածութիւն նորին. նմին իրի փոխանակ 40 հազարի հազիւ հազար միայն հանէ. յորմէ դիւրաւ մարթի իմաստասիրել եթէ յոր ճոխութենէ յորպիսի աղքատութիւն իջեալ է քաղաքն։ Թէպէտ և արդ իսկ վաճառի այծամազն և չէ անկեալ 'ի պատուոյն, սակայն անգործ և անօգուտ գնայ յԵւրոպա, յորմէ չիք օգուտ արհեստաւորաց քաղաքին, այլ սակաւուց ոմանց 'ի Տաճկաց որք տեարք են հօտից այծից։ Նմին իրի և բնակիչքն չգտեալ այլ հնարս, շրջին յայլ և այլ քաղաքս վաճառականութեամբ. թէպէտ և՛ է 'ի նոսա հայրենասիրութիւն, այլ առ դիւրութեան անդորր՝ կենաց՝ ուր միանգամ աներկեայ կարծեն յարատևել յանկաւած կեանս, թէպէտ և յաշխարհ հեռաւոր տարաշխարհիկ գնան բնականալ կանամբք և որդւովք. որով և դատարկանայ քաղաքն օր ըստ օրէ։

ԲԱՐՔ ԵՒ ԼԵԶՈՒ. — Աչալրջութիւն Անկիւրացւոց համբաւեալ է. զի աջողակ են յամենայնի մանաւանդ 'ի տուրևառս, և անձանձրոյթ յաշխատութենէ. որով և 'ի սուղ ժամանակի յառաջանան մեծապէս յօտար երկրի առաւել քան զբնակն։ Արևելեան անվեհեր համարձակութիւն առաջի մեծամեծաց՝ անթերի երևի առ նոսա. որով ճարտար են պատկառելի ընծայել զանձինս ծանր բարուք ըստ տաճկական՝ օրինի հանդերձ անշփոթ և պատրաստ պատասխանատուութեամբ։ Հասարակաց բարբառ է նոցա տաճկականն, և այլ լեզու անծանօթ է առ նոսա. յայդմ սովորեալ են նոքա 'ի շատ ամաց հետէ յորժամ մի 'ի փաշայից տիրեալ աշխարհին և կասկածեալ զի մի 'ի ծածուկ ապստամբութիւն ինչ ոք մտաբերիցէ 'ի քրիստոնէից ընդդէմ իւր, խստիւ պատուէր դնէ ժողովրդեան մի զայլ լեզու խօսել, այլ զտաճկերէն եւեթ։ Սակայն առ 'ի բնէ ճարտարամիտ լինելոյ նոցա, և բազմաշրջութեամբ ծանօթանալոյ ընդ ամենայն ազգաց՝ ընդունակք են և յուսումն օտար լեզուաց և սիրողք, այլ ոչ հայրենի բարբառոյ։ Սաստիկ է և հետաքրքրութիւն նոցա, մանաւանդ կանանց, գիտել զել և զմուտ օտարականաց 'ի քաղաքին։ Առ այսոքիւք և հիւրամեծարք ևս են. և վշտանան եթէ զհիւրամեծարութիւն իւրեանց չկարիցեն 'ի գլուխ հանել։ Քահանայասէրք են, և հոգևորականացն պատկառ կան հանապազ։

ԱՅԳԻՔ. — Անուանի են և այգիք Անկիւրիոյ արտաքոյ քաղաքին, ուր յաճախեն և ճոխն և ռամիկն ամենայն ազգաց, ժամանեալ 'ի ժամանակս կթոց. և առ 'ի չգոյէ պարտիզաց և ծառոց 'ի քաղաքին՝ ստիպի է նոցա յոյժ յայգեստանս անցուցանել 'ի խրախութեան աւուրս բազումս 'ի ամարայնի: Այս միակ մխիթարութիւն թողեալ է առ աղքատս, որք ոչ զգան տառապանաց աղքատութեան. զի թէ և կարի ողորմելի ոք իցէ, սակաւութեամբ ապրանացն գոհ է 'ի վիճակի իւրում:

ԵԿԵՂԵՑԻՔ, ԵՒ ԴՊՐՈՑՔ. — Եօթն եկեղեցիք են Հայոց յորս չիք ինչ նշանաւոր. և մի ևս Հռոմէականաց յանուն Աստուածածնի նորաշէն. երկայնութիւն նորա 23 և կէս մետր, և լայնութիւնն 13 և կէս, և առընթեր նորա 'ի գաւթի եկեղեցւոյն փայլելուչ: Են և դպրոցք մանկանց և աղջկանց. յորոց մի է և այն զոր հաստատեաց Եւգինեա Պոլէ Գազղլեանցի ազնուական և հայազգի, և ուսանին անդ գաղղիերէն և իտալերէն, հասոյթս կալեալ ամի ամի վարժապետացն: Մի 'ի դպրոցացն կոչի Քառասուն մանկանց. յորում մանկունքն կրթին յուսմունս եկեղեցական վիճակի:

ՄԵՆԱՍՏԱՆՆ ՀԱՅՈՑ. — Արտաքոյ քաղաքին իբր կէս ժամու հեռաւորութեամբ 'ի հիւսիսակողմն է մենաստանն Հայոց Աստուածածին կոչեցեալ, և առաջի նորա դաշտ ընդարձակ: Եկեղեցի նորին բոլորշի և գմբէթաւոր՝ հիմնեալ ասի յառաքելոյն Պօղոսէ, կամ լաւ ևս ըստ աւելոյ ոմանց մեհեան լեալ յառաջագոյն, և առաքելոյն նուիրեալ և օծեալ յեկեղեցի Աստուծոյ. և ոչ անվայելուչ ինչ երևի կարծիքդ, զի յորմունս եկեղեցւոյն և 'ի գմբէթին խորշս խորշս գործեալ է, իբր տեղի պատկերաց կռոցն: Այլ որպէս և է, պատկառելի է հնութեամբն և ոչ մեծագործութեամբ, զի և փոքր է: Իսկ արտաքոյ եկեղեցւոյն է գաւիթ նոյնաչափ մեծութեամբ: Մենաստանն առ հասարակ ամենայն բնակարանօքն չունի արժանի ինչ յիշատակի շինուածս. զի կարի անշուք է: Անդ նստի առաջնորդ քաղաքին հանդերձ երկու և երեք վարդապետօք:

Հանդէպ մենաստանին 'ի նմին մեծատարած դաշտի է Զինուորանոց նորաշէն և ընդարձակ:

## ՃԱՆԱՊԱՐՀ ՅԱՆԿԻՒՐԻՈՅ Ի ՄԱՐԶՈՒԱՆ

Ելեալ յԱնկիւրիոյ յարևելս հիւսիսոյ և հասեալ զիտրիւ տաւղը լերինս, 12 ժամու ճանապարհաւ, ընդ առաջ լինի Գալէճիկ աւանն. բերդ նորա փոքրիկ 'ի գագաթն ապառաժ լերին, և 'ի ստորոտս նորա շուկայն, և տունքն թուով 900 յորոց 850 տաճիկք են և 50 Հայք, որոց է և փոքր եկեղեցի մի, և 'ի նմին պահեալ պատուով երկաթագիր աւետարան մի թերի, զոր գտեալ ասեն ընդ երկրաւ 'ի նորոգութեան եկեղեցւոյն: Այգեստանք և պարտէզք պտղոց առատ են արտաքոյ աւանին. իսկ երևելի բերք նորա համարի դդում 'ի շրջակայ գիւղօրէից: Տօնավաճառ լինի անդ յաւուրս կիւրակէից: Զպատճառ անուանակոչու-

Թեան աւանիս այսպէս աւանդեն. զամենայն մերձակայ սահմանս, աւեն, համ-
դերձ բերդօրէիւք նուաճեալ ամեենեան պետութեանն, հարցանէ թագաւորն
թէ զիարդ այլ եւս տեղի գրաւելոյ. և աւեն նմա թէ կայ և այլ դղեակ մի. նմին
իրի զնի տիրելոյն կոչեցաւ նա Գալէճիկ։

Միւնկիւբլիւ, կամ ըստ հնչման այնց գաւառացն Ցօնկուբլու՝ աւան մեծ քան
զԳալէճիկ բնակեալ 'ի Տաճկաց և 'ի Հայոց։

Զօռում քաղաքաւան տաճկաբնակ. 2180 տունք են 'ի նմա. բերդ նորա ճէհ-
րի. երկիրն մշակեալ և ցորեան առատ, զի դաշտավայրն յԱպրալ պօտուէ և
այսր վեց ժամու տարածութեամբ ցորենաբեր արտորայ է առ հասարակ։ Ար-
տաքոյ աւանին կայ ամրոց մի փոքր և անշուք. և 'ի հանդիպոյ զինուորանոց նո-
րաշէն։ Անուանի է մի 'ի բաղանեացն յաղագս գունագոյն քարանց յատակին,
որ 'ի Գարսից բերեալ ասեն։

Ի ճանապարհին Անկիւրիոյ մինչև ցՄարզուան գտանի ուրեք ուրեք խոտն զոր
տաճիկք էսրար կոչեն, որբեցուցիչ քան զափիոն. տերևք նորա նման կանեփոյ
և ծանրահոտ յոյժ. զօր և մանրեալ վարեն որպէս ծխախոտ։

## ՄԱՐԶՈՒԱՆ

Գիւղաքաղաք մօտ առ ստորոտով լերանց և առաջի նորա դաշտ ցորենոյ ըն-
ծատարած, 'ի լերանց շրջապատեալ. որոյ երկայնութիւն յարևմտից յարևելս
տևէ իբր ժամս չորս։ Տունք Հայոց ևեթ հաշուին 500 և քանի մի տունք բոշայից։
Եկեղեցին նորաշէն կոչեցեալ Աստուածածին՝ մեծատարած է և փառահեղ, որ
և երկրորդ համարի յետ եկեղեցւոյն Արմաշու. երկայնութիւն նորա մինչև ցբեմն
31 ½ մետր, և լայնութիւնն 19. բարձրութիւնն չէ համեմատ տարածութեանն
որպէս և կամարք խորանացն։ Ընդ շրջապատ եկեղեցւոյն 'ի ներքուստ է շրջա-
նակ բարձր 'ի չափ բարձրութեան վերնատան կանանց, յոր ելանեն 'ի թափօր
յաւուրս հանդիսաւոր տօնից. իսկ դրունք շրջանակիդ են 'ի կողմանէ դրանց ա-
ւանդատանցն. յերկաթին ծայրս շրջանակին են ամփոփք հանդէպ միմեանց. յո-
րոց 'ի միումն ընթեռնուն 'ի պատարագի զգիրս առաքելականս և մարգարէա-
կանս, և 'ի միւսումն զաւետարան։ Գաւիթն եկեղեցւոյն ոչ միայն է առ դրամբն,
այլ և երկուստեք նորա 'ի հիւսիսոյ և 'ի հարաւոյ, և մի մի խորանք 'ի ծայրս նոցա
յարևելս։ Հոյակապ եկեղեցիս շինեցաւ յամին 1835 յառաջնորդութեան Յա-
կոբայ արքեպիսկոպոսի, որ եկաց երբեմն պատրիարգ 'ի Բիւզանդիոն։ Գահին
եկեղեցւոյս յիմնիւ չափ ձեռագիր մատեանք, ճաշոցք, յայսմաւուրք, մաշ-
տոցք, աւետարանք և գանձարան մի։

Ի հասարակաց շինուածոց երևելի է Դաշխանն, քարաշէնր մէտրէսէն և
պէզէզսթէն և ոմանք 'ի մզկիթաց։ Կէս ժամ արտաքոյ քաղաքին 'ի հիւսիսակողմն
է խաղրլըք 'ի վերայ բլրոյ, և է գերեզման մի և 'ի վերայ նորա եղջերք եղանց,
և 'ի կողմանէ աղբիւր բխեալ և աւազան, յոր յաճախեն միօրինակ տաճիկք և
քրիստոնեայք։

Բնաւորութիւն հայազգի ժողովրդոց գիւղաքաղաքիս, հակառակ համբաւոյն հնչելոյ յականջս ռամկին այլոց քաղաքաց, քաղցրաբարոյ է և մարդասէր. առ ևկն անծանօթ փոքր մի ընտանութիւն ցուցեալ յարին և պատուեն հիւրասիրութեամբ. և բնաւորութիւնդ այդ անտի է զի ոչ փոքրատարած քաղաքան իւրեանց չատացեալ՝ շրջին վաճառականութեամբ յայլ և այլ քաղաքս, սովորեալ հանապազ ընդ օտար ժողովրդոց։ Իսկ նիւթ վաճառականութեան նոցա է այլ և այլ ձեռագործ բամպակեղինաց՝ ստորին յոյժ, զոր առաքեն ոչ միայն 'ի շրջակայ սահմանս երկրին, այլ և 'ի Ղրիմ առ Թաթարս, և յԱնափա։ Առատ է և ցորեան նորա զոր ընդ ճանապարհ Սամսոնի յղեն 'ի Պօլիս։

Մենաստանն Հայոց Զարխափուն աստուածածին կոչեցեալ՝ ժամաւ միով հեռի է 'ի քաղաքէն 'ի գիւղն կոչեցեալ Քէօրքէօյ. եկեղեցին նախ հիմնեալ յԱնդրէասայ առաքելոյն, որպէս ասեն, և ապա կործանեալ յաւազակաց՝ վերստին շինի։ Յաւանդութենէ աստի առեալ եղեալ է արձանագիր 'ի ճակատ եկեղեցւոյն։ Մենաստանն ոչ է հնաշէն, և ոչ նշանաւոր ինչ 'ի նմա։ Ուխտաւորաց բնակարանն որիշ է հանդէպ մենաստանին։ Արտաքոյ եկեղեցւոյն առ հիւսիսային որմով է գերեզման Յովհաննու վարդապետի բաղտասեցւոյ վախճանելոյ 'ի Թուիս ՌՄԽԷ, և է շինող մենաստանին։ Առ նովաւ է այլ գերեզման Աբրահամու պատրիարգին Պօլսոյ վախճանելոյ յամի 1819 որ էր յՕրպելեան ցեղէ, որպէս յայտ առնէ արձանագիր շիրմին։

Օդ Մարզուանայ առողջարար է յոյժ։

## ԱՄԱՍԻԱ

Քաղաք փոքր, ութ ժամաւ հեռի 'ի Մարզուանայ և մերձ յներկրորդ Հայս. սահման նորա 'ի հնումն թուի սկսեալ 'ի նեղցէ լերանցն առ որում աւարտի մեծ դաշտավայրն Մարզուանայ. և լերինքդ աղխախեալք ձգին երկուստեք մօտ առ միմեանս, ճանապարհ 'ի միջի ունելով շրջապտոյտ, և պարտէզս թթենեաց և պտղատու ծառոց և այգեաց անբաւ, տևեալ ժամս չորս. և քաղաքն 'ի լեռնամէջս անդ կամ 'ի սպառուածի նոցին շինեալ յերկուս բաժանի, կէս 'ի հարաւոյ 'ի ստորոտ ապառաժ լերինն յորոյ 'ի գագաթան է բերդն, և կէս 'ի հիւսիսոյ 'ի ստորոտ հանդիպակաց լերանցն, գետոյն իռեայ ընդ մէջ անցանելով. և այլ և այլ հաստատուն կամրջաք հաղորդին առ միմեանս կողմանքդ երկոքին։

ՄԻՀՐԴԱՏԱՅ ԿԻՄԱՓՈՐ ԱՅՐՔՆ. — Ամասիա քաղաք թէպէտ և դրիւքն ոչ ցանկալի և օդոյն վատութեամբն անսիրելի, սակայն հիացուցանէ զամենայն տեսողս մեծագործ հնութեամբքն։ Միհրդատ[1] մի 'ի դիւցազանց մերոց կողմնապահ 'ի Կեսարիա կացեալ, տիրապետեաց զԱմասիա, որպէս յայտ առնէ հին պատմու-

1 « Յետ բազում ժամանակաց Միհրդատ քեռ- » այր Տիգրանայ Հայոց արքային կողմնապահ գո- » լով անկերով իւրով 'ի Միժակ քաղաքի որ այժմ » կոչի Կեսարիա, գայ ունի զԱմասիա 'ի Հայս » գրաւելով.. սահմանակալ քաղաք յարգարեաց » ընդարձակագոյնս պարսպեալ առ կատարով լե-

թիւնն . և սահմանակալ քաղաք յարդարեալ զնա փոքուն Հայոց յարեւմտից կող֊մանէ շինուածս մեծամեծս արար 'ի նմա , յորոց մասն մի անջնջելի կան մինչև ցայսօր ժամանակի , անդրդուելի կացեալ ընդդէմ բռնութեան բռնաւորաց և տարերաց հազարամեայ ժամանակաց ։ Արդ Միհրդատայ հնութիւնքն են առ 'ի կողաց բարձու լերինն ապառաժի յորոյ գագաթան է բերդն . և են նոքա զերե֊սօք ապառաժին ուղղահայեաց կռանահարեալ այրք , սեննակաչափ տարածութիւն ունելով 'ի ներքս , քառակուսի բարձրադիր դրամբ . իսկ երկուստեք և 'ի թի֊կանց այրիցդ իւրաքանչիւր փորեալ է ապառաժն 'ի չափ բարձրութեան նոցա վերուստ 'ի վայր փողոցաձև . այնպէս զի հիմն նոցա և վերին կողմն միապաղաղ կցեալ ընդ լերին , շուրջ փողոցաւն զատուցեալ են անտի ։ Երեք են դոքա առ֊ընթեր միմեանց . իսկ այլ երկուցն , որ հինգ վայրկենիւ 'ի բացեայ են 'ի նոցա֊նէ , սանդխաձև է ճանապարհն որ հանէ մինչև ցբարձրութիւնն , խելս և սանդ֊խոցն ունելով ըստ կողմանէ զառ 'ի վայր լերինն , համայն կռանահարեալ և միա֊պաղաղ սանդուխքն բազմաստիճան և խելքն և այրքն և փողոցք նոցա շուրջանակի ։ — Արտաքոյ քաղաքին կան և այլ երկու 'ի նոցանէ . այլ ոչ փողոցաձև շուրջ զա֊տուցեալ 'ի լեռնէ ։ — Են և երկու այլ ևս 'ի կողմն մի քաղաքին փոքր քան զնոսա ։

ԱՇՆԱԿ ՄԱՂԱՐԱ .— Արտաքոյ քաղաքին է և այս քարայր առ արահետ ճանապար֊հաւ . ձևով և մեծութեամբ և փորուածովն ներքոյ և շուրջ փողոցն նման այլոցն [1]. այլ առաւելու քան զնոսա ապակեբռովն որով օծեալ է բովանդակ ներքոյ և ար֊տաքոյ մինչև երևել արտաքին առարկայից 'ի նմա իբրև զհայելի . յայն սակս Ա֊ճաղը մաղարա կոչի 'ի բնակչաց ։ Այդ փայլունութիւն նորա այնքան սաստիկ էր յառաջագոյն , մինչև 'ի ցայտելոյ ճառագայթից արևուն խտտղել աչաց անցաւո֊րացն , վասն որոյ աւեն փաշայի ուրումն յանցանել 'ի հանդիպոյ ճանապարհէն , որ կէս ժամու հեռի է , յայրէն յանկոյս գետոյն , շրտուցեալ երիվարացն , հրա֊մայէ հուր լուցանել շուրջ զայրիւն , յորմէ մթագնի նախկին փայլունութիւն նո֊րա ։ Բուռ այրին այնքան թանձր է և կարծր , մինչև դանակաւ հազիւ մարթ է գծել 'ի վերայ նորա ։ Ի ներքս յայրին նկարէն պատկերք բազում են յորմունս , և տախտակին որիչ երևին 'ի վերայ կամարին երկոտասան առաքելոց . յորմէ յայտ է թէ 'ի ժամանակս քրիստոնէութեան յեկեղեցի փոխեալ են զնա . արտաքոյ 'ի ճակատուն ստուարատառ արձանագրեալ է .

# ΤΗΣ
# ΑΡΧΙ
# ΙΕΡΕΥΣ , այսինքն ԵՐԿՐԻ ( դէց ) ՔՐՄԱՊԵՏ

» րանց երկոցունց կողմանց գետոյն . շինեալ և ար֊
» քունիս ըստ հիւսիսոյ կողմանն գետոյն առ ստո֊
» րոտով քարալեռնակին . և նախ ապառաժիւք
» մեծամեծ հաստավէհր կանգնեալ վիմօք և 'ի վե֊
» րայ զարգունիան կանգնեալ , և արեգակնային
» գնդի անձաւեն շիրիմս քարակոփս և ճանապարհս
» սանդխաձևս և տունս քարայրս գանձուց կառ֊
» ծոյս յօրինեալ համանման ձեռակերտացն Հա֊
» միրամայ 'ի Վան , և խաղնամ կեփայս , զորս լը֊
» ցեալ գանձիւք տիրացաւ ոչ սակաւ ամս մինչև
» 'ի գալն Պոմպէի . ընդ որում մարտուցեալ և
» պարտեալ Միհրդատ և անկեալ 'ի Պոնտոս մե֊
» ռանի 'ի Սինոպ » ։

1 Չափ Աճնալը մաղարայի . մէջն , երկայն՝ մետր 3 . 30 . լայն 3 . 20 . աջակողմեան խորանաձև որիչ տեղին երկայն 2 . 30 , լայն 1 . 15 , բարձր 2 . 30 մեծութիւն դրան , բարձր 1 . 15 , լայն 1 , բարձրու֊թիւն 'ի գետնոյն մինչև ցդուռն 4 . 40 , ճակատն յանկենէ յանկիւն 7 . 50 , լայնութիւն որմաձև սեանց երկոտասնեք 2 ։

Զքարակոփ անձաւացդ Թէպէտ և այլ ընդ այլոյ պատմիցեն ոմանք 'ի բնակչաց տեղւոյն, սակայն 'ի համառօտ բանից հնոյ պատմութեանն բառնի ամենայն երկբայութիւն որպէս կարծեմ. այն ինքն է «չիրիմս քարակոփս .... և տունս քարայրս գանձուց»։ Իսկ որ առ ստորոտով քարալեռնակին զարքունիսն, ասէ, կանգնեալ, Թուի Թէ այն աւերակք իցեն որ առաւել քան զանձաւսն զայնոսիկ երևին, որոց որմունք կան տակաւին կիսափուլ. Թէպէտ և 'ի քարանցն և 'ի շինուածոյն ոչ արժանի ձեռին Միհրդատայ Թուիցին, այլ մարԹի ասել Թէ 'ի վերայ նախնոյ հիմանն շինեալ է յետոյ։

ԲԵՐԴՆ. — Բերդն Ամասիոյ, որպէս ասացաք, 'ի գագաԹան է բարձու լերինն ապառաժի յորոյ 'ի կողաց կան քարակոփ անձաւքն. և է խսպառ աւերակ։ Բնակիչք բազում էին անդ յառաջ ժամանակս իբրև պահապանք, և ազատք 'ի քաղաքական տրոց. զի ճանապարհն որ հանէ անդր՝ երկար է և դժուարին, և առ ամենայն պէտս իւրեանց հարկ էր իջանել 'ի քաղաքն. այլ 'ի բառնալ ազատութեանն այնորիկ՝ ցրուեալ բնակչացն՝ անապատացաւ և բերդն։ Շինուած նորին կամ պարիսպքն, որ մեծաւ մասամբ աւերակ կան, կարի անկանոն են. զի ըստ դրից ապառաժ լերինն հիմնեալ են։ Որպէս փոքր է տարածութեամբ, նոյն զուրկ և 'ի մեծագործութենէ. նմին իրի չմարԹի ասել հաստատեալ 'ի Միհրդատայ մնացորդ. սակայն և փոփոխութիւն ոչ սակաւ կրեալ է ընդ ժամանակս ժամանակս, որպէս երևի և 'ի տաշածոյ և յանտաշ քարանցն։

ՃԼԱՄՓՈՒԼԱ. ԳՈՒԲՆ. — Թէպէտ և ոչ նշանաւոր ինչ են պարիսպք բերդին Ամասիոյ, սակայն ոչ Թեթև ինչ է շինուած ճլամպուլային 'ի մէջ բերդին. և է դա գետնափոր տեղի անդնդախոր, այնպէս կոչեցեալ 'ի բնակչաց, ոչ ուղղահայեաց այլ խոտորնակի կամ առ 'ի շեղ. կամարաձև փորեալ են զապառաժ լերինն բարձր քան զհասակ մարդոյ, և աստիճանս 'ի ներքոյ, որ արդ հողով ծածկեալ են. և է մտանելի 'ի ներքս զգուշեաւ. զյատակէ նորա ասեն Թէ մերձենայ մինչև 'ի ստորոտ լերինն։ Զգետնափոր տեղւոյս ասեն ոմանք եԹէ ջրամբար իցէ, և այլք Թէ տեղի փախստեան 'ի պաշարել բերդին։ — Հանդէպ մտից ճլամպուլային է դուռն յանցաւորաց, Ամասիա զնտանը ասացեալ ծանօԹ ամենեցուն. խորութիւն նորա վեց կամ եօԹն մետր. բերանն հաւասար գետնոյ, քառակուսի խուփ ունելով ընդ որ իջուցանեն չուանաւ զյանցաւորսն. շինուած նորա բոլորշի է իբրև ջրհորոյ և լայն. մի կողմն կից ընդ լերինն և միւսն շինեալ 'ի քարանց. չիք սենեակ 'ի ներքս, այլ դատարկ ամենևին։

ՋՐԱՀՔՆ. — Առընթեր արտաքին դրան բերդին 'ի վերնատան սենեկի ուրեք ամփոփեալ պահին հին զրահք, քառասնիւ չափ. յորս են սաղաւարտք պէսպիսաձև, են որ բոլորշի և սրածայր՝ հովանաձև շրջանակաւ, և են որ ըստ հասարակ ձևոյ զինուորական սաղաւարտից. լանջապանակ, շղԹայաշար զրահք, գըլխանոցք ձիոյ, ամենայնն երկաԹի. դարձեալ և այլք 'ի կտաւոյ մորԹապատ. գոն և սլաքք, այլ խորտակեալ մանր։

Ի ներքս բերդին երևին յաւերական երկու կամ երեք տաճիկ արձանագիր, այլ 'ի վերայ ներքին դրանն է կիսեղծ տող մի յունարէն (Թիւ 6)։ Ի վերայ ճանապարհին յերԹալն 'ի քաղաքէն 'ի բերդն, կան երկու արձանագիր փորեալ 'ի վերայ մեծամեծ քարանց, և են առընԹեր միմեանց. (Թիւ 7–8)։

ԿԷՕՔ ՄԷՏՐԷՍԷ. — *Յարևմտեան կողմն քաղաքին 'ի վերայ արահետ ճանապարհի 'ի ձախմէ կայ մզկիթ մի մեծ. զորմէ հաւանական էր ասել ըստ ոմանց թէ եկեղեցի լեալ իցէ յառաջագոյն, եթէ չհայէր ընդ հարաւ: Իսկ բնակիչքն կեօք Մէտրէսէ կոչեն. և են նորա ինն գմբէթք, և մասն մի որ առ արտաքին դրանն՝ աւերակ: Թէպէտ և անգործածելի է, սակայն պատուի մեծապէս 'ի Տաճկաց և չէ համարձակելի ամենայն ումեք 'ի քրիստոնէից մտանել 'ի ներքս, բայց եթէ բազում աղաչանօք. քանզի 'ի ներքս առ դրանն 'ի ձախմէ է գետնափոր տեղի մի կամարաշէն քարակերտ, յորում եդեալ են 'ի բացի երեք մարմինք մարդոյ անփուտք 'ի դագաղս. միոյն ոսկերոտին եւեթ կայ, և այլոց հանդերձ մարմնովքն. ամենայն մտողաց ցուցանեն զնոսա, բայց ոչ տան ձեռն մխել, այլ աղօթել: Չէ ումեք ծանօթ թէ որոյ իցեն մարմինքս և ուստի:*

ԳԼԻՃ ԱՍԼԱՆԱՅ ՄԱՀԱՐՁԱՆՆ. — *Հանդէպ կեօք մէտրէսէին է մահարձան Գլիճ Ասլանայ, բովանդակ քարաշէն և քան զմզկիթն փառաւոր: Յատակ մահարձանին 'ի ներքուստ բարձր է յերկրէ, և ընդ կողմնակի դուռն մտանելի 'ի ներքս քարակերտ սանդղօք: Գերեզմանն կճեայ է, և տաճիկ արձանագիր բարձրաքանդակ ընդ ամենայն շրջապատ նորա: Առընթեր գերեզմանի նորա կան և այլ ևս ութ գերեզմանք, թերևս կնոջ իւրոյ և որդւոց: Ի վերայ արտաքին որմոյ մահարձանին կան երկու արձանագիր ագուցեալ յանպատշաճ տեղւոջ. մին 'ի թիկանց առ անկեամբ և բարձր. իսկ միւսն 'ի կողաց հաւասար գետնոյն, և է տապանագիրն այս (Թիւ 9): Մերձ առ նոյն մահարձանն 'ի վերայ նոյն փողոցի կան այլ և այլ աւերակք յորս երևին կրկին արձանագիրք (Թիւ 10–11): Առընթեր Գլիճ ասլանայ է և այլ մահարձան մի, և վիմափոր գերեզման 'ի միջի նորա, որոյ 'ի մի կողմն շրջանակին որ հայի ընդ դուռն փորագրեալ կան գլուխք մարդոյ:*

ԹԻՄԱՐԽԱՆԷՆ. — *Աւերակ է Թիմարխանէն որ մերձ է առ մուտս քաղաքին. շինուածն քարաշէն և ոչ հասարակ ինչ. շրջանակ դրանն մեծաւ տարածութեամբ զարդարեալ է մանր փորագրածով ըստ տաճկական ախորժակաց, և արձանագիր տաճիկ 'ի վերայ դրանն: Ծայր շինուածոյն որ հայի յարևելս կոյս խորանաձև է, և երկուստեք սենեակք 'ի վերուստ մինչև ցդուռն. և առաջի սենեկացդ կճեայ սիւնք կարգաւ: Միջին մասն յարկին որ է կողմանէ 'ի կողմն սեանցն, բացօթեայ է, կամ այնպէս շինեալ 'ի սկզբանն: Ի մի յաջակողմեան սենեկացն որ է առ դրանն, աւազան փոքրիկ ագուցեալ կայ յորմն. յորմէ կարծի 'ի ռամկաց ոմանց եկեղեցի լեալ. սակայն կողմնակի սենեակք նորա և զարդք ճակատուն և տաճիկ արձանագիրն չվկայեն այդմ:*

*Առ երի դրանն Թիմարխանէի 'ի ձախմէ կայ աղբիւր, և առ նովաւ հաւասար գետնոյն երևի երկտող արձանագիր յունարէն երկայնատառ. (Թիւ 12): Այլ արձանագիր 'ի փողոցի ուրեք մօտ առ մզկթաւ, ստորին մասամբն կիսաթաղ ընդ երկրաւ, և միջոցն (կիտանիշ) ընդ սեմովք. (Թիւ 13):*

ԵԿԵՂԵՑԻՔ, ԴՊՐՈՑՔ, ՄԶԿԻԹՔ ԵՒ ՀԱՍԱՐԱԿԱՑ ՇԻՆՈՒԱԾՔ. — *Երեք են եկեղեցիք Հայոց. Ս. Նիկողայոս, Աստուածածին, շինեալ 'ի թուին ՌՄԾԴ, և Ս. Յակոբ 'ի ՌՄՂ փառաւոր քան զայլսն, և շրջանակ լայն ածեալ 'ի ներքուստ զորմովք նորա մարդաչափ բարձրութեամբ 'ի գետնոյ վասն թափօրի. որպիսի է և եկեղեցին Մար-*

զուանայ։ Ի վերայ երկուստեք խորանացն կան և այլ երկու խորանք, 'ի շրջանակացն եւամեւլի անդ։ Արտաքոյ եկեղեցւոյն ընդաՀակողմեան որմոյն առաջի մըրտարանին գերեզման խաչատրոյ ուրուք նաՀատակի։ Երեք գալլոցք են Հայոց առ իւրաքանչիւր եկեղեցեաւ։ — Հոյակապ 'ի մզկիթս է Սուլդան Պայէզիտ մեծամեծ կճեայ սեամբք առաջի դրան. և Հրապարակ առաջի նորա մեծ, և է յեզր գետոյն։ փառաւոր են նոյնպէս և Դաշխանն և Պէզէստէնն. և շուկայն մեծաւ մասամբ մաքուր քան զայլ տեղեաց և յատակեալ։ Ի վերայ գետոյն անիւս կառուցեալ են ահեղ մեծութեամբ, որք 'ի բռնութենէ գետոյն Հոլովեալք մեծաշառաչմամբ դուլզքն Հաղորդեն զջուրն յագուգայս, յորոց ոռոգանին պարտէզք և այգեստանք։

ՈՒԽՏԱՏԵՂԻՔ. — Համդէպ Ալիպալը մաղարային յայնկոյս գետոյն է գերեզման Բասիլիոսի եպիսկոպոսին Ամասիոյ զոր յիշէ Խորենացի, Բ, ՁԸ. յառաջագոյն եկեղեցի ասի լինել անդ, այլ արդ ոչ այլ ինչ տեսանի բայց վարկպարազի կոյտ քարանց. և է տակաւին ուխտատեղի։ Զվկայարանէս յիշատակ լինի 'ի ձեռագիր Ցայսմաւուրս որ պաՀի յեկեղեցւոջ Աստուածածնի, այսպէս. «ՊՂ. առ Թագաւորու-
» թեամբ սուլդան Մուրատին Հօր Ֆէթիհ սուլդան Մուրատին նախ քան զա-
» ռումն Պօլսոյ, ոմն իշխան Խըտըր փաշա անուն քակեաց զմնացեալ Հիմունս ե-
» կեղեցւոյն 'ի շինուած բաղանեաց. և անդ յայտնեցան նշխարք սրբոյն Բասի-
» լիոսի 'ի ներքոյ խորանին և էր մնացեալ ամբողջ իբրև զկենդանի զոր տեսեալ
» ոչ մերձեցան այլ կրկին ծածկեալ ամրացուցին. և է անդ 'ի տեղին որ կոչի
» Ալվասիլ»։

ԱՂԲԻՒՐ ՈՍԿԵԲԵՐԱՆԻ. — Ժամու միով Հեռի 'ի քաղաքէն 'ի վերայ ճանապարՀին 'ի ձախմէ գոյ աղբիւր ինքնաբուխ 'ի կողաց լերին, 'ի մէջ փոքր քարայրի. անդ գտեալ ասի զլուխ Ոսկեբերանի. և է տեղին յաճախեալ յուխտաւորաց։

ՄԻՀՐԴԱՏԱՅ ՋՐԱՆՑՔՆ. — Ոչ սակաւ զարմանաց արժանի է և ջրանցքն Միհրդատայ ժամու միով Հեռի յաղբերէն Ոսկեբերանի ըստ ձախմէ ճանապարՀին. և է առու լայն կռանաՀարեալ զերեսօք ապառաժ լերին մարդաչափ բարձր յերկրէ. տեսեալ երկայնութեան նորա աւելի քան զկէս ժամ ոչ ուղիղ գծիւք, այլ խոտորնակի որպէս ինչ գիրք լերինն Համդիպեալ են. սակայն յաւերակս Համարեալ է արդ։ Զսա տաճիկք Ֆէհրատ եափուսու կոչեն, որ այն ինքն է Միհրդատ։ Եւ աւանդելեն ռամիկք այսպէս, եթէ Ֆէհրատ այդ այր Հուժկու եղեալ՝ տարփացեալ է դստեր Թագաւորի ուրուք. և 'ի խնդրել զնա իւր կնութեան, ձեռն արկանէ շինել զջրանցսդ ըստ խնդրոյ Թագաւորին փոխանակ դստեր նորա. այլ յետ շինութեանն ժխտէ Թագաւորն զխոստումն իւր, և Ֆէհրատ առ դառնութեան սրտին զնիգ երկաթի քարաՀատացն 'ի վեր արձակեալ մեռանի 'ի ներքոյ նորա։ Այսպիսի ինչ պատմի յաւանդութենէ և զշինողէ Տէլիքլի դաշին 'ի Տրապիզոն։

## ՃԱՆԱՊԱՐՀ ՅԱՄԱՍԻՈՅ ՅԵՒԴՈԿԻԱ

Իյնէպազար. գիւղ Ցաճկաց վեց ժամու հեռի յԱմասիոյ. երեւելի է շինուած իջեւանին որ 'ի վերայ ճանապարհի, շինեալ 'ի սուլդան Մուրատայ, քարաշէն, մեծ եւ բազմակամար, հանգստարան կարաւանաց:

ԹՈՒՐՀԱԼ կամ Թրհալա, գիւղաքաղաք փոքր, վեց ժամու հեռի յԻյնէպազարէ, գետոյ ընդ մէջ նորա անցանելով. 300 տամբք. շինուածքն կարի հասարակ. առատ եւ անուանի են սեխենիքն:

## ԵՒԴՈԿԻԱ

Ութ ժամու հեռի 'ի Թրհալայ ընդ դաշտավայր ճանապարհ, 'ի հարաւոյ նորին՝ ընդ առաջ լինի Եւդոկիացւոց քաղաքն (ԹՕՔԱԴ) 'ի ձորամիջի, յերից կողմանց պատեալ 'ի լերանց, յորոց յանուանէ յիշատակին Ղըժըլըժ եւ Խաչ–տաղը. եւ տունք եւ փողոցք առհասարակ 'ի ստորոտէ սկսեալ հասանեն մինչեւ ցկէս լերանցդ 'ի վեր, դժուարելանելի 'ի վերին թաղս՝ մանաւանդ որոց չեն սովորեալ: Շինուածք տանցն թէպէտ եւ ըստ արտաքին տեսլեանն անշուք եւ կաւակերտ որմով, զի անդ սակաւագիւտ է քար, սակայն ներքինն զարդարուն է եւ նկարէն ըստ տաճկական ախորժակաց: Օդ քաղաքին, թէպէտ եւ թանձր, սակայն ոչ ինչ համարեալ է այդ առ բնակիչսն. զի պարտէզք բազմապատիկ պտղատու ծառոց, եւ ցանկալի այգեստանքն արտաքոյ քաղաքին, որոց նման սակաւ ուրեք գտանի, բարեխառնեն զամենայն ծանրութիւն բնութեան:

ԲԵՐԴՆ ԵՒ ՃԼԱՄԳՈՒԼԱՏՆ. — Ի գագաթան տապարաձ լերինն, որ է ըստ արեւմտից կողմանէ քաղաքին՝ է բերդն քայքայեալ մեծաւ մասամբ եւ անշուք քան զբերդն Ամասիոյ եւ անմարդաբնակ: Այլ ինչ նշանաւոր չէ մնացեալ անդ, բաց 'ի Ճլամպուլայէն, որ մեծ եւ ահեղ է քան զԱմասիոյն եւ սաստիկ առ 'ի շեղ. եւ մտանել 'ի ներքս վտանգաւոր առ խաւար խանգարելոյ սանդղոցն: Ասի թէ յառաջ ժամանակաւ մինչդեռ անեղծ կային աստիճանքն, որ համարձակէին իջանել 'ի խորս անդ, լսէր զձայն պղնձի ջրամօթոց բաղանեացն որ 'ի ստորոտս բերդին: Ընդ ձախմէ վանդակապատ երկաթի դրան բերդին 'ի ներքուստ է արձանագիր յոյն գրի. (Թիւ 14): Արտաքոյ դրան բերդին կան 'ի գետնի շարեալ յիանիւ չափ մեծամեծ ռումբք քարեղէնք:

ԵՐԵՔԻՆ ԹԻՄԱՐԽԱՆԷՔ կամ ՄԷՑՐԷՍԷՔ. — Նման շինուածոյ թիմարխանէին Ամասիոյ են եւ որ յԵւդոկիա, յորոց մին բնիկ թիմարխանէ կոչեցեալ՝ մեծ է եւ փառահեղ քան զԱմասիոյ, ճոխ ամենատեսակ տաճկական փորուածովք ընդ ողջոյն տարածութիւն ճակատուն. ուր կան տակաւին ամենայն կողմանցի սենեակքն, եւ 'ի

միումն գերեզմանք դագաղաձեւ ։ ի վերայ արտաքին դրանն մեծի երկուստեք պատկերք առիւծու բարձրաքանդակ անարուեստ ։ Երկրորդն թէպէտ և իջևման է արդ ճանապարհորդաց, սակայն եւ նա նոյնատեսակ շինուած էր յառաջագոյն, այսու ևեթ տարբերեալ զի կրկնայարկ է սա և որմունքն յախճապակօք պատեալ. զսա ոմանք Մէտրէսէ կոչեն ։ Իսկ երրորդն կարի փոքր, անշուք 'ի ներքս, և զարդք արտաքին դրանն սակաւ և պարզ ։ Երեքին դոքա 'ի միում թաղի շինեալ են ոչ շատ բացատ 'ի միմեանց ։ Ստորև քան զերրորդն 'ի պարտիզի ուրեք է մահարձան հին սրածայր գմբէթիւ, յորում ասեն զգերեզման որդւոյն Լէնկթէմուրայ ։

ԵԿԵՂԵՑԻՔ. — Ճոխ է Եւդոկիա եկեղեցեօք. յորս առաջին համարի մեծութեամբ Ս. Ստեփաննոս Նորաշէն. նոյնաձև է և Նոր եկեղեցին Աւետման, այլ փոքր քան զնա ։ Իսկ հնաշէնքն են, Աստուածածին, Ս. Մինաս, Ս. Լուսաւորիչ, Քառասուն մանուկ, Ս. Գէորգ, և Ս. Յակոբ այրեալ. հնգեքեան սոքա անձևք են և մթինք, թէպէտ և կուտինացի յախճապակօք պատեալ ոմանց խորանքն և բեմքըն, և Լուսաւորչին՝ ամենայն կողմանքն մինչև ցծայր առաստաղին ։ Գոյ և եկեղեցի մի փոքր՝ սակաւամթիւ Յունաց՝ յանուն սրբոյն Գէորգայ ։ — Հայազգեաց տունք հաշուին 1650 ։

ՄԶԿԻԹՔ. — Առաջին 'ի մզկիթս է Ալիփաշա ձամիսի, առ որոյ գաւթիւն են ութ կճեայ սիւնք, և ներքնախարիսխք նոցա պղնձեայք. է նորա վերնատուն երկուստեք որ հայի 'ի մէջ մզկթին ։ Երկրորդ Մէյտան ձամիսի փոքր քան զմիւսն, և հրապարակ մեծ առաջի նորա. կոչի սա եւ Սուլդանիէ. իբր զի սուլդան Մուրատ որ պատուիրեալ էր շինել զսա համաչափ միւսոյն, 'ի դարձին իւրում 'ի Բաղտատայ տեսեալ զի փոքր է քան զնա, հրամայեաց ոգիս եօթն 'ի գլխաւոր շինողացն սպանանել և քակել զմզկիթն. այլ մայր նորա աղաչեալ զերծուցանէ զնոսա, և զծախս շինուածոյն վճարեալ նմա՝ յիւր անուն սեփականէ Սուլդանիէ ։ Կրկլին մզկիթքդ երևելի համարեալ են քանդակօք դրանցն ։

ՂԱԼԽԱՆԷ. — Երևելի է յոյժ Ղալխանէ, այն է հալոց պղնձոյ, Նորաշէն մեծ և ճարտարարուեստ, շինեալ առ սուլդան Մահմուտաւ ըստ ոճոյ եւրոպացի գործարանաց. Նմին իրի և հինն որ կայր յառաջնմէ, խափանեցաւ ։ Ամենայն հանք պղնձոյ մերձակայ սահմանացն՝ աստ հալին և աստի սփռին յայլ և այլ տեղիս. յայն սակս ճարտարք պղնձեղէնս անօթոց բազմամթիւ են 'ի քաղաքիս ։

ՋՈՒՐՔ. — Առատութիւն ջուրց քաղաքիս նման է Պրուսայի, գուցէ առաւել քան զայն. սակայն ոչ յայլ և այլ ականց իջեալ, այլ 'ի միոյ միայնոյ՝ զոր Պէկզաւռ ասեն. յորմէ գետնափոր ջրանցիւք բաժանի 'ի փողոցս քաղաքին և 'ի տունս, և առաջ մի նորա գնայ 'ի Ղալխանէն ։ Իսկ Իսիս գետ անցանէ արտաքոյ քաղաքին ընդ հինգկամարեան քարաշէն կամրջաւն ։

ՎԱՃԱՌԱԿԱՆՈՒԹԻՒՆ. — Վաճառականութիւն քաղաքիս ծաղկէր երբեմն և մինչդեռ Տաճկաստան չև ճոխացեալ եւրոպացի ձեռագործովք՝ նախնի տարազու վարէր, 'ի յարգի գոլով նկարադրոշմ կտաւեղինաց նորա ընդ ամենայն Ասիա. այլ 'ի դադարել գործածութեան նոցին, թէպէտ և ոչ իսպառ, աղօտացաւ յոյժ և նախկին շուք վաճառականութեան նորա, և հալոց պղնձոյն ևեթ մնաց նմա 'ի

մխիթարութիւն. այլ եթէ 'ի կաւեղէն անօթոյն Եւրոպայ չգործի և Նմա խափանումն իսպառ, գէթ տկարանայ մեծապէս: — Ի պատուականութենէ խաղողոյ այգեացն թէպէտ ընտիր լինի գինի, այլ սակաւատև ասեն. Նմին իրի և խաղող բազում առաքեն այլուր, ուրանօր օգոյն պատուականութեամբն և գինին տևէ անեղծ:

ՍՈՒՐԲ ԱՆՆԱ, ՀԱՅՈՑ ՄԵՆԱՍՏԱՆ. — Մենաստան Հայոց, ժամու հեռի 'ի քաղաքէն ընդ հիւսիս 'ի ստորոտ լերինն Եայլաձըրիս կոչեցելոյ, բարձրահայեաց և գեղեցկադիր. առաջի նորա դաշտորայք և այգեստանք: Վերջին շինութիւն մենաստանիս եղև յամին 1828 յառաջնորդութեան Գէորգայ եպիսկոպոսի որ վախճանեցաւ 'ի 1832, և գերեզման նորա է հանդէպ դրան եկեղեցւոյն: Ամենայն բնակարանք մենաստանիս փայտաշէնք են:

ՎԱՆՔ ՅՈՒՆԱՑ. — Յան վայրկենիւ 'ի բացեայ 'ի Ս. Աննայէ յարևելս կոյս է վանք Յունաց յանուն Վերափոխման Աստուածածնի, 'ի տեղին որ Կէքս կոչի, այն ինքն է ԿՈԿԻՍՈՆ որպէս կարծեմ, ուր աքսորեցաւ երբեմն Ոսկեբերան, թէպէտ և տեղին անբնակ է այժմ 'ի տանց: Զեկեղեցւոյն շինու[illegible] [illegible]ք Թէոդոսի տան և այլք Եւդոքսիայ. կան 'ի Նմա չորս կճեայ սիւնք, [illegible] և կէս մեղր բարձրութեամբ, և պատկեր մի Աստուածածնի Յիսուս որդւովն, որ [illegible] է ասեն յեօթանասուն պատկերաց յօրինակելոց յերից անտի պատկերաց աւետարանչին. իսկ այլ երևելի հնութիւն չիք անդ: Կիսով չափ եկեղեցւոյն վերատին շինեցաւ զայս ամ (1844) հանդերձ առընթեր փայտաշէն բնակարանօք. 'ի նորոգութեանն գտին ընդ երկրաւ խեցեղէն անօթս, և աշտանակ մի մեծ բռեալ, և օղամանեակք 'ի վերայ նորա. և բղուկս մեծամեծս, յորոց 'ի միումն էր գինի վասն պատարագի և 'ի վերայ խեցեղէն խփին դրոշմեալ ձև նշխարի պատարագին Յունաց. իսկ գինին 'ի ջուր լուծեալ, որպէս պատմեցին ականատեսք:

## ԿՈՄԱՆԱ

Երկու ժամու հեռի յեւդոկիոյ յարևելս կոյս է աւերակ ԿՈՄԱՆԱՅ քաղաքին, երբեմն հանգստարան Յոհ. Ոսկեբերանի, ըստ բաւականին մեծատարած երկուստեք գետոյն: Բովանդակ շինուածոյն հիմնայատակ եղեալ ոչ ինչ նշանաւոր երևի անդ, բայց 'ի քարաշէն կամրջէ գետոյն և 'ի միոյ կիսափուլ բաղանեաց և այն անշուք ճարտարապետութեամբ: Ի վերայ քառակուսի բարձրադիր վիմի միոյ խորտակելոյ կայ թերատ արձանագիր յոյն (Թիւ 15). և ընդ առաջին կամարաւ կամրջին այլ երեք արձանագիրք առընթեր միմեանց և չորրորդ մի ևս 'ի ստորև (Թիւ 16):

ՍՈՒՐԲ ԹՌՉՈՒՆ. — Ի վեր քան զաւերակն կոմանայ քառորդաւ միով հեռի առ ճանապարհաւն կայ ապառաժ քար մի միակտուր և մեծ, և անուն նորա Սուրբ թռչուն. զորմէ աւանդեն եթէ նախ 'ի Գրիգորէս գեղջն կայր, որ է յայնկոյս

գետոյն 'ի վերայ գագաթան լերինն բարձու. Գրիգորի սքանչելագործին 'ի քարոզել հեթանոսաց և 'ի չհաւատալ նոցա և նշան խնդրել 'ի հաստատութիւն բանիցն, հրամայէ ապառաժի մեծի վիմին ելանել և տեղափոխել անդ ուր այժմ կայ։ Երկու սենեկաձև փորուածք կան յապառաժին, մին յառաջոյ դժուարամուտ, և միւսն 'ի կողմանէ ընդ ձախմէ յորում կան երկու վիմափոր գերեզմանք դատարկք և միապաղաղ 'ի նոյն ապառաժէ։ Ի ճակատ քարաժեռին կայ արձանագիր տապանի. (Թիւ 17)։ Քառորդաւ միոյ բացագոյն առ նոյն ճանապարհաւ կայ կոյտ մի քարանց յորում ասեն լինել զառաջինն զհանգստարան Ոսկեբերանի. և առ նովաւ աւերակ եկեղեցւոյ որոյ հիմունք ևեթ երևին յեզր գետոյն։

ՊԻԶԵԹԻ. — ՈՍԿԵԲԵՐԱՆԻ ՎԱՆՔ. — Երկու ժամաւ հեռի 'ի կոմանայ է գիւղն Պիզէթի 'ի լեռնամէջս, և տունք 'ի նմա քառասնիւ չափ տաճկի և հայք սակաւ։ Երևելի է 'ի նմա մենաստանն Հայոց Ոսկեբերանն կոչեցեալ, որ վերստին շինեցաւ յամին 1842 յառաջնորդութեան տեառն Յակոբոսի։ Ուխտատեղի է մենաստանս սակս վիմափոր գերեզմանին Յովհ. Ոսկեբերանի անդ եղելոյ, որ բերաւ 'ի կոմանայ։ Բուն եկեղեցին նորաշէն է և գմբէթ նորա փայտեայ։ Յաջակողմեան աւանդատանն որ 'ի մէջկանց խորանին՝ է մատուռն Ոսկեբերանի, և գերեզման նորա առ որմով 'ի միջնագոյն կճոյ, նոյնպիսի է և կափարիչն քանդակազարդ եղերօք։ Ձիք խորան 'ի վերայ գերեզմանին. այլ 'ի կողմանէ նորա կայ խորան յանուն Սուրբ Նշանի. և արևմտեր նորին այլ խորան Պետրոսի և Պօղոսի։ Իսկ 'ի ձախակողմն եկեղեցւոյն գոյ այլ մատուռն անձկագոյն յորում Յոյնք եկեալ պատարագեն երբեմն։ Անծանօթ է ժամանակն յորում բերաւ այսր 'ի կոմանայ վիմափոր գերեզման Ոսկեբերանի։ Թէպէտ և նոյնպէս անծանօթ է ժամանակ բնակելոյ Հայոց 'ի գիւղս յայս, սակայն 'ի գերեզմանատան նոցա երևի թուական մի ի շիրմի ՉԼԵ (1286)։

ՏԱՒՐԱԳՈՒՄ ԼԵՌՆ. — Ի մէջ լերանց կողմանցս այսոցիկ առաջին համարի Տաւրագում լեառն ոչ այնքան բարձրութեամբ քան թէ տարածութեամբ. զի գագաթն նորա տափարակ է ընդարձակ, որ 'ի հարաւոյ 'ի հիւսիս տևէ ժամս երկուս, և յարևելից յարևմուտս երեք։

•

## ՍԵԲԱՍՏԻԱ

Սեբաստացւոց քաղաքն կառուցեալ կայ 'ի դաշտավայրի, առ ստորոտով Տաւրագում լերին, Ալիս գետոյ կիսաժամու 'ի բացեայ անցանելով ընդ կամուրջ մի նորա բազմակամար։ Համօրէն տանց քաղաքին հողայարկ գոլով, քաղաքն ամենայն հողագոյն իմն դաշտավայր երևի 'ի լեռնէն. և որմքն կաւակերտք, շինուածք անշուքք և փողոցք անհնարին աղմաշաղախ յերթևեկութենէ սայլից մանաւանդ յաւուրս անձրևայինս, գիւղաքաղաքի կերպարանս տան նմին, թէպէտ և աթոռ է մեծի փաշայի։ Անուանի էր առ նախնեօք և արքայանիստ իսկ, այլ արդ այնպէս խրթնացեալ 'ի չքոյ զի և ցանկալի հնութիւնքն արքայականք և արքա-

զանք, (զի վկայարան նահատակաց համդիսացաւ ընդ դարս դարս), աւերեալ և գրեթէ անյայտացեալ, դոյզն աւերակօքն ծանօթանան։

ԲԵՐԴՔՆ ՎԱՐԻՆ ԵՒ ՍՏՈՐԻՆ. — Ի վերին գագաթան լեռնակի միոջ կայ բերդն աւերակ. չիք ինչ նշանաւոր 'ի նմա 'ի նախնի շինուածոց. առ երկրորդ դրամբն ևեթ 'ի վերայ պարսպին կան տաճիկ արձանագիրք. և առընթեր նոյն դրան 'ի ձախմէ՝ խեղդան քար, սանդաձև փորեալ 'ի մէջն և 'ի կողմանէ ծակեալ. ընդ որ չուան անցուցեալ եւ եդեալ զգլուխ յանցաւորին 'ի սանդի անդ խեղդէին։ Իսկ ստորին բերդն մեծատարած կրկնապարիսպ է, խրամ լայն ընդ մէջ կրկին պարսպացն ունելով ընդ ոլջոյն շրջապատն. բայց արտաքին պարիսպ նորա կործանեալ է։ Ի բերդի աստ է շինուած ինչ հին անյարկ, որոյ որմունք կանգուն կան տակաւին. ճակատ նորա ոլջոյն քանդակազարդ փառահեղ ըստ ձևոյ զարդուց Թիմարխանէին Եւդոկիոյ, այլ լաւ քան զայն և անեղծ. զոր և գերեզման ասեն Սենեքերիմայ Վասպուրական արքայի. և են իսկ 'ի նմա գերեզմանք։ — Նոյնպիսի է զարդուք և նովին ճարտարպետութեամբ միւս շինուածն արտաքոյ բերդին, զոր արքունիս նորին Սենեքերիմայ ասեն։ Թէպէտ և երկոցուն նոցա կրկնակի մինարէք կան 'ի վերայ պարսպաց ճակատուցն, սակայն յայտ է թէ յետ ժամանակաց շինեալ են այնոքիկ։ Զերկրորդս զայս տաճիկք կեօք մէտրէսէ ասեն։

ԵԿԵՂԵՑԻՔ, ԵՒ ՎԿԱՅԱՐԱՆՔ. — Ի շուք և 'ի պարծանս համարեսցի ոչ Սեբաստիոյ միայն, այլ և ամենայն Ասիոյ՝ նորաշէն եկեղեցին Աստուածածնի ահեղ մեծութեամբն, հոյակապ բազմագմբէթ և բովանդակ քարաշէն։ — Սուրբ Սարգիս, նոյնպէս քարաշէն, այլ փոքր, յորում է գերեզման Ներսեսի կաթողիկոսին Սըսոյ, վախճանելոյ 'ի ՌՂ (1641)։ — Սուրբ Վլաս քարաշէն և փոքրիկ։ — Են և այլ ևս երեք մատրունք անշուք. Սուրբ Մինաս, Ամենափրկիչ, և Սուրբ Վլաս, յորում է և գերեզման նորա յաճախեալ յուխտաւորաց յամենայն ազգէ վասն փողացաւի, յորմէ պօղազ էվլիաաը կոչեն զնա տաճիկք։ — Եւստաթեանց գերեզմանք երեցունց ևեթ՝ առընթեր միմեանց կան 'ի մեծ գերեզմանոցին Տաճկաց, անշուք շիրմօք. իսկ միւս երկոցուն՝ փոքր մի 'ի բացեայ 'ի նոցանէ։ — Սև ճողեր. այսպէս կոչեն զգերեզմանատունն Հայոց որ է 'ի մէջ քաղաքին, սակս անդ կոխան առնելոյ Լէնկթիմուրայ զմանկտին Սեբաստիոյ։ — Լիճն Սեբաստիոյ յորում նահատակեցան քառասուն վկայքն, կոչի Քառաունճ մաևունչկ. սակայն լիճն ցամաքացեալ է այժմ, և յաւանդութենէ միայն գիտեն զտարածութիւն նորին. այլ ակն բխեալ աղբերն կայ տակաւին. զորով որմ ածեալ պատեցին սակաւ ամօք յառաջ, դուռն բաց 'ի միոյ կողմանէն առնելով վասն ուխտաւորաց։ — Մօտ 'ի նա է գերեզմանատուն այլ, զոր և Քառաունճ մաևունչկ կոչեն. յորում ցուցանեն 'ի միում վայրի զգերեզման վկայիցն քառասնից, խորտակեալ շիրիմս առընթեր միմեանց եդեալ անշուք ամենևին և անպատսպար։ — Թաղն Հողքար որ արդ որիշ է 'ի բուն քաղաքէն, խանձարուրք է Մխիթարայ Աբբայի, ծնելոյ անդ յամի 1676։

ՕԴ ԵՒ ՊՏՂԱԲԵՐՈՒԹԻՒՆ. — Թէպէտ և ցրտագին է օդ Սեբաստիոյ, այլ առողջաբար յոյժ. և 'ի ցրտութենէ անտի թերևս անպտուղք են պարտէզք նորա. այլ լիանայ պտղովք այլուստ. իսկ նորա բերք են ցորեան և գարի առատ։

ԱՇՏԸՐ ՎԱՆՔ. — Արտաքոյ քաղաքին 'ի սպառուածի լերին է մզկիթ մի զոր Աշտըր վանքայ դղայի ասեն, և ոմանք 'ի քրիստոնէից Սուրբ Յոհաննէս: Երեք մահարձանք են 'ի նմա. 'ի միումն է գերեզման նորին Աշտըր վանքայի. յերկրորդումն չորից տէրվիշաց նորին, իսկ երրորդն է վճարանք: Առաջնոյն դուռն արծաթի էր, զոր գողոց 'ի բաց տարեալ, վերստին շինեցաւ:

ՍՈՒՐԲ ՆՇԱՆ. — Կիսով ժամու հեռի 'ի Սեբաստիոյ ընդ հիւսիսակողմն է հրաշալի մենաստանն Սուրբ Նշան կոչեցեալ 'ի բարձրահայեաց դաշտավայրի, և աթոռանիստ է առաջնորդի քաղաքին: Երեք եկեղեցիք են նորա փոքունք, Սուրբ Նշան, Սուրբ Կարապետ և Աստուածածին. յերկրորդումն է գերեզման Պետրոսի Գետադարձ հայրապետի, որ 'ի գերեզմանատանէն փոխադրեցաւ այսր[1], և հանդէպ նորա Թէոդորի արեղայի. և առ դրանն հաստատեալ են գիջման քարն որ 'ի լճէն քառամնից բերաւ այսր: — Քառորդաւ հեռի 'ի սուրբ Նշանէ գոյ և այլ մենաստան Անապատ ասացեալ, որոյ եկեղեցին եւեթ կանգուն կայ և արտաքին որմունք մենաստանին. իսկ բնակարանքն իսպառ աւերակք:

ԲՈԴՆԻՔ. — Ի Սեբաստիոյ ժամաւ և կիսով հեռի յարևելակողմն նորա է գիւղն Հայոց ԲՈԴՆԻՔ, յորում են տունք 165, և ոգիք իբր 1300. եկեղեցի նորա յանուն սրբոյն Սարգսի մեծ և նորաշէն և համայն քարակերտ. երկայնութիւն նորին 20 մետր և լայնութիւն 14: Հետաքննին ոմն ուսումնասէր 'ի խնդիր եղեալ ճշգրիտ պատմութեան նախնի բնակութեան Հայոց 'ի գիւղս յայս, և թէ ուստի սերեալ և գաղթեալ իցեն, եգիտ 'ի յիշատակարանի գրոց գրելոց յամին 1631 այսպէս. « Բագրատունիք, այն է Բոդնիք, 'ի սմանէ ասի յոմանց թէ էին 'ի ցեղէն բագրատունեաց, և եկեալ աստ արարին հիմնարկութիւն, և էին տունք իբր եօթն. » և յետոյ 'ի գաւռկաց դարձուցեալ զԲագրատունիքն Բոդնիք. և է իբր ժամաւ » և կիսով հեռի 'ի քաղաքէ Սեբաստիոյ. և այժմ են 'ի սմա տունք իբրև հնգետասան. 'ի թուին Հայոց ՌՁ »: Եւ է գաղթել նոցա 'ի ժամանակս վրդովելոյ աշխարհիս. յորմէ ոմանք 'ի Բագրատունեաց հատուած եղեալ աստ բնակեցան, որպէս և եկեալքն 'ի Խոռխոռունեաց ցեղէ՝ 'ի Խոռխոնն՝ 'ի զուարճալի դաշտին և 'ի ջրարբի, ինն ժամաւ հեռի 'ի Սեբաստիոյ յարևելս կոյս. և Խոռխոռն մականունդ լսի տակաւին 'ի Բոդնիք: Դարձեալ եկեալքն 'ի Պինկէօլ լերանց կարնոյ բնակութիւն կալան երեք ժամաւ հեռի 'ի Սեբաստիոյ յարևելս հարաւոյ նորա, առ աղահանս, և կոչեցաւ տեղին Պինկէօլ մինչև ցայսօր: Հնութեան գեղջն Բոդնիքոյ վկայէ և խաչքարն ՉԺԶ (1267) Թուականաւ՝ որ կայր 'ի հին եկեղեցւոջ, և այժմ ագուցեալ են յորմն նորաշէն եկեղեցւոյն յարևմտից կողմանէ 'ի բարձու: Առաջի բեմին 'ի կճեայ վիմափոր շիրմի ամփոփեալ պահին ոսկերք տեառն Միքայէլի քահանայի նահատակելոյ յամին 1708 'ի 6 մայիսի, որ նախ 'ի հասարակաց գերեզմանատան թաղեալ, և 'ի նորոգ շինութեան եկեղեցւոյն փոխադրեցաւ անդ:

1 Բայց նշխարքն հայրապետին՝ որպէս և արքային Սենեքերիմայ՝ փոխադրեալ երևի 'ի Վարագայ վանս, 'ի [illegible], ուր են երկոցուն եւ գերեզմանք:

ԳԼԽՑԵՂ, ԵՒ ՍԵՒԵՐԻԱՆՈՍԻ ԳՆՐԵՋՄԱՆ. — *Ի հարաւոյ արեւելից Սեբաստիոյ է գիւղն Գլխտեղ, տեղի նահատակութեան Սեւերիանոսի սեբաստացւոյն. այլ գերեզման նորա հեռի է անտի կէս ժամու 'ի նոյն գիւս 'ի վերայ բլրոյ առ ոտամբ մեծի քարաժայռին, և աղբիւր բխեալ առ նովաւ։*

ՍՈՒԽԿԵՐ. — *Ցարեւելից կողմանէ Սեբաստիոյ իբր երեք ժամու հեռի 'ի նմանէ գոյ քարաժայռ մի մեծ սեննեկաձեւ փորեալ 'ի մէջն, զոր կոչեն Սուխկեր կամ Սուխկերի. քանզի ասանդեն բնակեալ 'ի նմա 'ի հնումն երկուց ճգնաւորաց և կերակրեալ սոխով և հացիւ. որոց 'ի բարեկենդանի միս եղեալ առաջի սկսանին վիճաբանել յաղագս պէսպէս խնդրոց մինչեւ ցմեծ հինգշաբաթի, մոռացեալ զկերակուրն. և լուր եղեալ իրացն 'ի քաղաքին, գան առ նոսա վարդապետք և տեսեալ զմիսն առաջի նոցա և գայթակղեալ ընդ լուծումն պահոց, յանդիմանեն. և նոցա պնդեալ թէ ոչ ապաքէն տակաւին օր բարեկենդանի է, չլինեալ մեկնին անտի, զաւուրն ճշդութիւն իմացուցեալ նոցա։ Եւ է քարայրն բաժանեալ յերկուս սեննակս առ երի միմեանց, միոյն կործանեալ առ կակղութեան քարին, միւսն կանգուն կայ տակաւին. որոյ յաջմէ մուտն է արձանագիրս.*

## ՆՈ···ՆԱՅ ԵՍ ՀԱՅՐ Ստեփանոս ՑԱՆԳԱ ՆԿԱՑԱ ԵՒ ՅԱՒՐԻՆԵՑԻ Ս~ՐԲ ՁԵԿԵՂԵՑԻՍ Ի ԹՈՒԱԿԱՆԻՆ ՀԱՅոց : ՌԷ ՅԻՇԱՏԱԿ ԻՆձ

*Գիւղօրէք Սեբաստիոյ ասին լինել 300. յորոց են իբր երիր մասամբն որք 'ի տախտակիդ, որ և աստէն նշանակեալք։ Դավռա, Ջէլէպիլէր, Սէրփիննուք, Շնքուռակ, Մէճիտ, Ղալոին, խմարէթ, Շէհրիստան, իշխանի, Եաշճապէլ, Շէհպէկ, Մէհէմմէճուք, Աճը փունար, Սէյֆիկ, Թախտուբ, Ուլաշ, Հաճի միրզէ, Ղարաճալար, Դդմաճ, Ղուլամ քեօյ, Ղուլ իւսուֆ, Թէօմնիւք, Արմուտլու, Մամալա, Պօղազքէսէ, Մօլօշ, Ջամպախար, Գլխտեղ, Ըժղա, Պինկեօլ, Խոշավէնք, Էմիրխան, Գզըլճագչլա, Թախտաքէման, Տուզասար, Եավլու, Բաղարջ, Քէսիւրիւք, Ճէլալու, Ղարաեռնկ, Ցլընտուր, Թորոսլու, Խորստնա, Ղավրազ, Կէռնէ, Կովտուն, Կավռա, Պետրոսի կամ Խօճասար, Կամիս, Եարասար, Ճիհրին, Թավշանլը, Քոթնի, Տէվրէնտ, Տուզլա կէօզիւ, Բուգնիք, Խանծար, Ջարքուրդ, Էօզէն, Պախճաճուկ, Ողնավուտ, Բրաբերդ, Եէնիճէ, Ճէնճին, Թոտորակ, Տէվէքսէ, Ջառա, Քահրատ, Եաբախ, Գեղկիկ, Պաշը պէօյիւք, Որդուտ, Ղարաճալար, Ալտօղմուշ, Սարը հասան, Վէլլէտին, Ղարաճաէօրէն, Էյնէպէկ, Ջախմախ, Ղալըն, Տիրէքլի, Պէտէլ, Տէրէ քեօյի, Նաւրուզ, Պայաթ, Մէնթէշէ, Ջաղլաղան, Եէնիխան, Ղավախ, Սէրէնկ, Ջալլու, Տաթլուճաք, Խապասախալ, Քիւրտլէր քեօյի։ Խօյլինճիկ. Կէշիլի, Ղայատիպի, Մէնշիւրլիւ, Խանլը, Կէօզմէն, Տէլիքլի Թաշ, Պէքճիւղազ, Տիւկէր, Գարապալըրդ, Օվաճըկ, Ալահաճի, Գուրտլափան, Ատիս, Ղուզէօրէն, Ղաղիքեօյ, Ջէնկիւ, Ագճախան, Սալավաթ, Ղումաճօղլի, Քէրիմլու, Պէյնէպէկ, Ջաշուր, Ջաղլաղան։*

## ՇԷՊԻՆ ԳԱՐԱՀԻՍԱՐ

Տեսիլ գիւղաքաղաքիս 'ի հեռաստանէ նման է Անկիւրիոյ, լեառն քարաժայռ 'ի միջի և 'ի գագաթան բերդ փոքրիկ, զստորոտովն տունք և շուկայք, յորս ոչ ինչ նշանաւոր։ Ցաչալրջութենէ ժողովրդեան տևէ տակաւին վաճառականութիւն նորա առաւել քան յայլ մերձակայ քաղաքս, զի և երթևեկ բազում է անդ։ Բնակիչք նորա Տաճիկք, Հայք և Յոյնք. տունք Հայոց հաշուին 400։ Անուանի է 'ի բերան գառըն գայմակը, որ է սեր չորացուցեալ իբրև զպանիր։

## ԿԻՒՄԻՒՇԽԱՆԷ

Գիւղաքաղաքս այս շինեալ է 'ի լերանցամէջս. տունք, փողոցք և ամենայն շինուածք սկսեալ 'ի բարձանց աստիճանաբար խոնարհին մինչև 'ի ձորամէջս լերանցն որք շուրջ պատեալ են։ Զարմանայ նորեկն ընդ տխուր տեսիլ Կիւմիւշխանէի, զի և տեղի զբօսանաց և անդաստ շրջագայելոյ 'ի նմա չիք և ոչ ուրեք. յո՛ր կողմն և դարձուցանէ զհայեցուածսն, յանդիման լինին լերինք և քարաժայռք ահեղ բարձրութեամբ։ Այլ պատճառք շինութեան գիւղաքաղաքիս զբովսն առեն, որք ոչ միայն արտաքոյ նորին են և 'ի մերձակայ սահմանսն, այլ և 'ի մէջն, 'ի խորշս քարանձաւացն և լերանց։ Գործավարք հանքացն են Յոյնք, որ և բազմաթիւ քան զՏաճիկս. և են հանք կապարի, որ առ օգգա՝ տան մի կամ երկու և դուն ուրեք հինգ տրամ արծաթոյ։ Հայազգիք քաղաքիս են 200 տունք և եկեղեցի նոցա Աստուածածին փոքր և անշուք. այլ վայելուչ է մենաստանն նորաշէն ժամաւ հեռի 'ի քաղաքէն. և 'ի ճանապարհի նորա է հանք փլածոյ. զորմէ աւանդեն յաշխատել գործավարացն փլուզեալ յանկարծ, և 'ի մեռանողացն, զի բազմաթիւք էին, քառասուն գտեալ ոգիս որք Պօղոս անուանէին, յորմէ և տեղին կոչեցաւ Քըրք փաւղի։ Ի պտղոց Կիւմիւշխանէի անուանի են երեք տեսակք տանձի, չէրմայի, շաղկամ արմուտու և համիհամզա։

Ի Կիւմիւշխանէէ փոքր մի ընդ հիւսիս խոտորեալ սկսանին գիւղօրէք Մաչքայ վիճակի մինչև ցսահման Տրապիզոնի, յորոց են առաջիկայքդ, Սէսէրա, Ամպէլա, Վէրէնէ, Իլաքսա, Խածավէրա, Մաւրա, Սօլոյ, Մէքսիլա, Խավա, Սփէլա, Մուլաքա. Փօփառա, Փօօչ, Փօփարզա, Քուսէռա, Տանիա, Խամուրեա, Լալայանտոս, Սախնոյ, Թէրցա, Քունաքալ, Սթամա, Խամսի քէօյի, Նէր քէօփրիւ, Քիլատ, Ջիկանոյ, Զանոյ, Քօղմա, Քափլի քէօյի, Խորտոկոփ առաջին և երկրորդ, Եանանտոս, Փօնտիլայա, Քուէնաստ, Ջավէրա, Աքօփիա, Ալուրսա, Քութուլա, Քօփխտիս, Ավուրղէն, Աքալիդա, Մէյրէմանա, Կալիանա, Վալէնա, Լիվալէ,

*Մանտրանոյ, Մէսօխօր ։ — Ի գիւղն Ներ քեօփրիւ որ մի է 'ի գոցանէ, գետոյն մտեալ ընդ երկրաւ՝ դարձեալ 'ի դուրս ելանէ քառորդ մի ժամու հեռաւորութեամբ. և 'ի վերայ բլրոյն՝ որ սկիզբն է մտից գետոյն, յերկուս տեղիս առընթեր միմեանց ծակ գործեալ բոլորակ, ջուր գաղջ բղխէ խոխոջալով, միօրինակ յամենայն եղանակս տարւոյն. և վիմեղէն շրջապատք ծակուցն 'ի զօրութենէ ջրոյն նարնջագոյն ներկանին, որպէս և տաշտ առուակին ընդ որ հոսի բխեալ ջուրն ։*



# ՄԵԾ ՀԱՅՔ



## ԲԱԲԵՐԴ

Եռօրեայ ճանապարհաւ հեռի է 'ի Տրապիզոնէ քաղաքաւանս այս, երբեմն համարեալ մայր քաղաքաց Խաղտեաց, 'ի բլրաձև դաշտավայրի․ յարևելից և յարևմտից պարսպեալ ցածադոյն լերամբք, իսկ 'ի հիւսիսոյ, որ և ծայր է աւանին, քարալեառն բարձր ձգի յարևմտից յարևելս․ որով 'ի հարաւոյ ևեթ միայ ճանապարհ արահետ՝ որ տանի 'ի Կարին և յայլ գաւառս հարաւային կողմանց․ Թէպէտ 'ի հիւսիսոյ ևս միօրեայ միջոցաւ դաշտավայր է երկիրն։

ԲԵՐԴՆ․ — Արդ 'ի գագաթան քարալերինն՝ որ անմատոյց է յերից կողմանց, արևմտակողմամբն ևեթ կցեալ 'ի ստորոտս բարձանց, է բերդն կրկնապարիսպ երկայնաձիգ ընդ ամենայն տարածութիւն քարալերինն, ոչ ուղղագիծ որմովք ինչ շինեալ, այլ ըստ անհարթութեան քարալերին որպէս ինչ բնութեանն ներգործեալ է՝ արկեալ հիմունս, ուրեք 'ի ցած և առ 'ի ներքս, և այլուր 'ի բարձր և շեղեալ առ արտաքս։ Բազում ուրեք անկեալ պարսպացն, մանաւանդ արտաքնոյն, անապատացեալ է արդ․ ամենայն տուն որ 'ի ներքնապարսպին էին, կործանեալ և քանդեալ առ հասարակ 'ի յարձակման Ռուսաց, անբնակ են 'ի մարդկանէ և 'ի պահապանաց իսկ։ Ոչ սակաւ էին 'ի նմա ամրափակեալ պա-

հարանք, որոց ցարդ կան միայն որմունքն կիսակործան։ Այլ մի 'ի նոցանէ որ 'ի ծայր բերդին է յարևմտից կողմանէ և բարձր քան զներքնապարիսպն՝ անկործան կայ տակաւին. չիք նորա դուռն, այլ 'ի հարաւոյ ևեթ պատուհան մի անձուկ. ընդ որ մտեալ Ռուսաց բազում ինչ հանին 'ի զինուորական անօթոց, ընդ որս և որորան մի արծաթի, որպէս պատմեն։

ՋՐԱՄԲԱՐՔ Ի ԲԵՐԴԻՆ. — Ջրամբարք կրկին կան 'ի բերդին մօտ առ միմեանս, և մուտք նոցին դէմ ընդդէմ իրերաց. և են դոքա ձևով և արհեստիւ նման ջրամբարացն Ամասիոյ և Եւդոկիոյ, առ 'ի շեղ փորեալ 'ի քարալերին վերուստ մինչև 'ի ստորոտս նորա, որ հասանէ յեզր գետոյն, և ջուրն ժողովի 'ի ներքս ընդ բացուածն։ Ցոյժ աւերեալ են ջրամբարքդ, զի և աստիճանք սանդղոցն խախտեալ են խսպառ, թէպէտ և 'ի նմին ապառաժէ կոփեալ և միապաղաղք՝ որ հասանեն մինչև ցյատակս նոցա։ Երկուստեք առաջնոյ դրան բերդին բարձրաքանդակ անարուեստ պատկերք են առիւծու և ընձու։ Իսկ արձանագիր բազում է ոչ 'ի վերայ դրանց միայն, այլ և 'ի վերայ ներքնապարսպին 'ի լեզու արաբացի, յորս վեր 'ի վայր յիշատակի Ղլըճասլան, և թիւ հիճրէթի 'ի միւմն 610։ Սակայն հնութեան բերդիդ յաւուրց անտի քրիստոնէութեան՝ վկայ հաւատարիմ կայ ցայսօր կիսաւեր եկեղեցին 'ի միջավայրի նորա, որոյ չորեքին որմունքն խորանաւն հանդերձ կանգուն կան տակաւին, կամարին ևեթ կործանեալ. և մօտ առ խորանն արձանագիր յոյն՝ թէպէտ և խանգարեալ։ Էր նորա և այլ արձանագիր անեղծ զոր յետ գալստեան Ռուսաց եւրոպացիք բարձեալ տարան անտի և տեղին դատարկ կայ ցայսօր։

Ճորոխ գետոյն ընդ մէջ անցանելով 'ի հարաւոյ 'ի հիւսիս՝ յերկուս բաժանի աւանն, չորիւք կամրջօք կցեալ կողմանցն երկոցունց. և ընթացեալ առ ստորոտով քարալերին բերդին յարևելեան ծայրէ նորա մեծաւ շառաչմամբ՝ և պատեալ զհիւսիսիւ անցեալ գնայ. յորմէ մասն մի աւանին յարևելս միայ և մեծ մասն շուկայիւն հանդերձ բերդիւն՝ յարևմուտս։

Շինուածք տանցն անշուք և ողորմելի են և առ հասարակ հողայարկ. և զի բազում ուրեք բլրաձև է վայրն և յեզերաց գետոյն տակաւ 'ի ստորոտս լերանց և մինչև ցկէս բարձրութեան նոցին ժամանեն տունքն, նմին իրի բազումք 'ի նոցանէ 'ի միոյ և կամ յերկուց կողմանց խրեալ են 'ի գետնի, և տանիք նոցա հաւասար բլրոյն. որպէս զի եթէ ոք 'ի բերդէն 'ի վայր հայեցէ, զաւանն առ հասարակ ամենայն շինուածովքն միապաղաղ ընդ գետնոյ տեսանէ և միագոյն։ Զայդ ձև տանց կիսաթաղ 'ի գետնի ճարտարեալ են բնակիչք առ մեծի ցրտութեան ձմերան. զի և կրկնայարկ տուն չիք անդ բաց 'ի սակաւուց ոմանց, և ոչ վայելուչ պատուհանք. այլ մեծաւ մասամբ իւրաքանչիւր սենեկաց է մի մի լուսամուտ 'ի միջավայրի յարկին։ Ի պատերազմին Ռուսաց բազումք 'ի տանցն քանդեալ, և կան այնպէս մինչև ցայսօր. այլ յականատես ծերունեաց վկայի մեծատարած լեալ Բաբերդոյ յառաջագոյն, մինչև տարածիլ շինին և կրպակաց անդր քան զբերդն ընդ հիւսիս. արդ անդաստան է ամենայն վայրն։

ԵԿԵՂԵՑԻՔ. ՄԶԿԻԹՔ. ԳԵՐԵԶՄԱՆՔ. — Զորից եկեղեցեացն, որք կոչին Հրեշտակապետ, Աստուածածին, Աստուածամայր և սուրբ Յոհան, արտաքին տեսիլ և

պատուհանք նոցա ոչ ինչ խարին 'ի տանցն, և ներքինն խրթին և մթին ։ Ի մշկըթաց Ուղուզ ձամիձ հնաչէն՝ եկեղեցի էր 'ի նախնումն որպէս պատմեն ։ Գէզէսքէնն հոյակապ քառագմբէթ և մթին յոյժ՝ անխախտ կայ, այլ յախոռ փոխեալ ։ Ի դաշտավայր ծայրի արևմտեան բարձանց, ուր և քարահանք են, կան կրկին թիւրպէք ուխտատեղիք Տաճկաց՝ միմեանց առընթեր, և ըստ շինուածոյն ոչ անշուք. մին բոլորշի և անդուռն միով բարձրադիր պատուհանաւ և գմբէթ նորա կործանեալ. և միւսն անկիւնաւոր, դագաղաձև գերեզման մի ունելով 'ի ներքս իբր 10 ոտից երկայնութեամբ ։ Է և երրորդ մի 'ի գերեզմանոցի նոցա ։ Մեծատարած է գերեզմանատուն Հայոց առ 'ի կողաց արևելակողման բարձանցն և հին թուականք 'ի շիրիմսն ՊՁԸ, ՊՁՁ. սակայն երկուց յայնցանէ որ առ երի կան իւրեանց և 'ի բնակչացն իսկ ոչ անծանօթք, թուականքն են լոկ ԺԲ. որք թէ չիցեն խարդախեալ յումեքէ քերելով զառաջին տառն, հարկ է առնել իբր հազար երեքհարիւր ամօք յառաջ բնակեալ աստէն Հայոց ։ Եւ կասկած խարդախութեանդ անտի է զի չափ հնութեան շիրմացն այնոցիկ չվկայէ թուականիդ հնութեան ։

ԱՐԳԱՒԱՆԴՈՒԹԻՒՆ. ՎԱՃԱՌ. — Բաբերդ հանդերձ ամենայն գիւղօրէիւքն առատ է ցորենով և գարւով, և շտեմարան կողմանց Լազիստանու. այլ 'ի պտղատու ծառոց սալորենի միայն գտանի ։ Տօնավաճառ նորա է 'ի մէջն մայիս և յունիս ամսոց՝ եօթնեակս հինգ կամ վեց, յորս յաւուրս շաբաթու և կիւրակէի ոչ 'ի գիւղօրէից նորա միայն, այլ և յայլոց սահմանաց գան խռնին 'ի նմա ամբոխ մեծ հանդերձ վաճառօքն իւրեանց որք են ցորեան և գարի, երիվար, արջառ և ոչխար բազում յոյժ ։ Իսկ ձեռագործ Բաբերդոյ՝ է այլ և այլ տեսակ գորգոյ ։

## ՎԱՐՁՈՒՀԱՆ

Երկու ժամաւ հեռի 'ի Բաբերդոյ յարևմտից հիւսիսոյ նորա է գիւղս հայաբնակ ։ Ի նախնումն գիւղաքաղաք էր սա, և թիւ տանցն հասանէր ցհազար և ութհարիւր որպէս գրեալ է յարքունի դիւանին. այլ յանդադար պատերազմաց յերեսաց Լազից ապստամբողաց քանդեալ, հազիւ արդ քսանիւք տամբք սահմանի. և հիմունք աւերակացն երևին ցարդ ։ Եկեղեցիք յայնժամ 24 հաշուէին 'ի նմա ըստ բնակչացն աւանդելոյ. և նոցին մնացորդք են երեքին կիսաւեր եկեղեցիքն փոքունք այլ գեղեցկաշէնք, առ հասարակ քարակերտք և ճարտարարուեստք, այլ գմբէթքն կործանեալք. ձևով զանազանեալ յիրերաց, զի ոմն խաչաձև է և անսիւն, և այլ ոմն բոլորշի և սիւնաւոր, յորում 'ի վերայ միոյ 'ի սեանցն խաչ քանդակեալ և ընդ նովաւ թուական հանդերձ յիշատակարանաւ այսպէս.

ՁՁԹ — ՍՈՒՐԲ ԽԱՉՍ ԲԱՐԵԽԱՒՍ ·· ՖՈՒԱՆԿԻՆ

Ի սկիզբն դարուս տակաւին անարատ կային եկեղեցիքդ երեքեան, և աւերեցան 'ի յարձակմանէ Լազից ։ Սիւնք նոցա և քարինքն առ հասարակ դեղնագոյն են և կակուղ ։

## ԿԱՐՆՈՅ ՔԱՂԱՔ

Ի լայնածաւալ դաշտավայրի գաւառին Բարձր Հայոց, զոր չորս և հինգ ժամուց բացակայութեամբ շրջապատեն լերինք մեծամեծք և մանունք, 'ի հարաւ կուսէ՝ 'ի կողմն մի լերին կիսաժամու 'ի նմանէ տարակացեալ, ունի զնիստ իւր քաղաքս այս։ Եւ է դաշտավայրդ հարթածաւալ և ամենայն գիւղօրէք գաւառին Կարնոյ մեծաւ մասամբ երևեալք 'ի քաղաքէն, ծով իմն արդարև ցամաքային երևին քաղաքաւն հանդերձ, անարգել յամենայն բլրոց և բնաւ մերկ 'ի ծառոց։

ԲԵՐԴՆ ԵՒ ԱՐՈՒԱՐՁԱՆՆ. — Կրկնապարիսպ է բերդն մեծատարած և բազմաշտարակ, և պարիսպքն ամենայն առ հասարակ ժայռաւորք։ Միջոց կրկին պարսպացդ, Հիւար պիչէն կոչեցեալ, ուրեք լայն և ուրեք անձուկ, դատարկ է 'ի բնակչաց, առ դրամբքն և եթ կրպակս ունելով վաճառուց։ Զարտաքին պարսպաւն շուրջանակի խրամս քարընկէց մի և աւելի հեռագոյն՝ փոս փորեալ է մարդաչափ և կէս խորութեամբ՝ երկուստեք ամրացուցեալ որմովք մինչև ցբարձրութիւն գետնոյն արտաքնոյ, և քարաշէն կամուրջս ածեալ 'ի վերայ՝ անցանել 'ի բերդն, զորով պատեալ է ընդարձակ ճեմելեաց։ Ցանկրպետէ փոսին և այսր շուրջ զբերդաւն ողջոյն շուկայ է երևելի վաճառատեղեօք և արուարձան մեծ. և յաւարտ արուարձանին՝ և ուստի դաշտավայրն սկսանի, այլ փոս փորեալ է դարձեալ շուրջ զքաղաքաւն ողջոյն անուր, զոր 'ի ժամանակս արշաւանացն Դահմազայ ասեն փորեալ. Ճէպիռ գաւփուչ ասացեալքն երկոտասան թուով՝ 'ի վերայ շրջապատութեան այդր փոսի են, ոմանց խախտեալ և այլոց իսպառ անհետացեալ։ Զափ շրջապատութեան փոսիդ, որ և շրջանակ քաղաքին ողջոյն, ժամու և կիսոյ հանդարտաքայլ ընթացիւք։

ՆԵՐՔՆԱԲԵՐԴՆ ԵՒ ԹԷՓՍԻ ՄԻՆԱՐԷ. — Ի հարաւային ծայր բերդին որ բլրաձև բարձրացեալ է քան զամենայն վայրն՝ ներքնաբերդն է, ահեղ և բարձր պատուարաւ անջրպետեալ 'ի հիւսիսոյ և յարևմտից, որ անարգել դիտէ ընդ քաղաքն ողջոյն՝ վասն բարձրութեանն ներքին գետնոյն։ Ներքնաբերդդ որոշեալ է 'ի զինարան պահպանութեան քաղաքին, գուցէ արդեօք նոյն և 'ի հնումն՝ իբրև պատշաճագոյն վայր վասն բարձրութեան դրիցն։ — Թէփսի մինարէ ասացեալն, առ հարաւային որմով կանգնեալ, տեղւոյն բարձրութեամբն համարձակ դիտէ մինչև ցմեծ հեռաստան, զի 'ի հնդից ժամուց հեռաւորութենէ նախ քան զնիստ տարածութեան քաղաքին սա երևի։ Զունիմ որոշագոյնս ինչ ասել զմանէ. և չեմ հաւանեալ թէ մինարէ իցէ մզկթի, որպէս ասէ ռամիկն, և թէփսի կոչէ՝ զի տախտակամած է յարկն, ընդ որով ժամացոյց կայր մեծ և լսելի ընդ ամենայն քաղաքն, զոր Ռուսք 'ի բաց տարին։ Իսկ զանգակատուն ասել ամենևին վայրա-

*պար, զի արաբացի տառիցն կլոռածք քուֆի գրովք աներկբայ վկայ կան հա-գարացի շինութեանն։ Գուցէ հաւանական ևս իցէ դիտարան ասել զնա, զի զայդ-իսկ տայ կարծել բարձրութիւն տեղւոյն, ուստի դիւրագոյն էր համարձակ զննել զպէսպէս հանդամանս թշնամւոյն 'ի ժամանակս մարտից մինչև ցմեծ հեռաս-տան։ Շինուած նորա աղիւսակերտ է և գլանաձև, և մօտ 'ի ծայրն է գրութիւնն աղիւսակողմամբ բարձաքանդակ դրուագեալ 'ի մի տող շուրջանակի, որ է մաղ-թանք բարեբաստութեան Մուղաֆէր պէկի Թոռին Ապէլ Գասիմայ՝ իշխողի քա-ղաքին յ'ԺԲ դարու։*

ՉԻՆԻԼԻ ՄԻՆԱՐԷ. — *Արտաքոյ ներքնաբերդին 'ի կողմն Երզնկայ դրանն՝ յահեկէ նորին կայ այլ շինուած աշտարակաձև գեղեցկատես, յօրինեալ բազմագունի փայլուն յախճապակօք պտուտաձև բարձրաքանդակ վերուստ 'ի վայր։ Անյայտ մնայ թէ զինչ էր և սա 'ի հնումն. զի կործանեալ գագաթանն կամ թէ յայն վայր հասուցեալ զշինուածն՝ ոչ մինարէի նմանի և ոչ զանգակատան։*

ՉԻՖՏԷ ՄԻՆԱՐԷ. — *Իսկ յարևելակողմն բերդին առ Դաւրէզի դրանն շինուած հոյակապ ընդ առաջ լինի Չիֆտէ մինարէ կարդացեալ։ Երկուստեք դրան շի-նուածոյն, որ բազմադրուագ յօրինեալն է շուրջանակի, հանդերձ պէսպէս զար-դուք վիմափոր և բարձրաքանդակ՝ կան և անարուեստ պատկերք ձկանց 'ի վեր բերանաբացք, և առ նոքօք ոստ ծառոց։ Մտեալ ընդ դուռն 'ի ներքս յերկուս առաջս անջատ շինուածն կամարակապ և կրկնայարկ, իւրաքանչիւր կողման ու-նելով կարգաւ սենեակս քսան, տասն 'ի վերնայարկին և նոյնչափ 'ի ստորև, և անձուկ գաւիթ զառաջեաւ իւրաքանչիւր դստիկոնի կամարասիւն յօրինուածով։ Ի ծայր սենեկացդ որ հանդիպակաց է դրանն առ 'ի ներքս, սենեակ մի կայ տա-ճարաձև բազմանկիւն բոլորաշէն չափաւոր տարածութեամբ, և զմբէթ նորա սրածայր աւարտեալ։ Ներքին կողմն դրին առ հասարակ կճապատ դրուագեալ պէսպէս քանդակագործ զարդուք, գեղեցիկ և հոյակապ յոյժ. զդուռն նորա հանդերձ շրջանակօքն և ճակատաւն, որոց նոյնատեսակ քարամբք քանդակա-գործեալ էր յոյժ ճարտարարուեստ որպէս պատմեն ականատեսք, քակեալ Թուանշանաւ Բաքևիչ զօրապետ տարեալ 'ի Բեդրբուրկ։ Յատակ փառա-հեղ սենեկիդ գետնափոր է ամրակամար, որ արդ Թափուր է յամենայնէ և մուտ նորա աւերեալ։ Շինուածս այս ողջոյն կոչի և Ճէպխանէ, զի սենեակքն լցեալ են վառօդովք և այլ ևս կարևորօք պատերազմի. Նախ քան զգալ Ռուսաց կային անդ և վաղեմի զէնք՝ վահանք և սաղաւարտք։ Բնակիչք քաղաքին սովորե-ցին զսա Չիֆտէ մինարէ ասել 'ի պատճառս կրկին մինարէից որ անընդմիջաբար երկուստեք դրանն 'ի ներքին կողմանէ 'ի վեր բարձրանան։ Ըստ արհեստի ճար-տարպետութեան շերտաձև յօրինեալ են դոքա վերուստ 'ի վայր 'ի կարմրա-գոյն և 'ի կանաչ աղիւսոյ. և չիք նոցա շէրիֆէ, այլ ըստ օրինակի առաջնոյն՝ մինչև անդր հասեալ դադարեալ է շինածն։ Բարձրութեամբն հաւասար են մի-մեանց, այլ փայլուն տեսլեամբն մին առաւելու քան զմիւսն։ Եւ աւանդեն ճար-տարապետին նախ շինեալ զմին, և լաւագոյն այլոց դատեալ զմիւսն զոր աշա-կերտն արար, արկանէ ճարտարապետն զանձն 'ի վայր 'ի գագաթանէ աշտա-րակին առ նախանձու և մեռանի. վշտացեալ աշակերտին ընդ մահ նորա, զնոյն*




օրինակ մեռանի և ինքն: Ի բազմաց և այլովք ինքնահնար բանիւք մեկնաբանեալ Ջիֆտէ մինարէ, իւրով պարսիկ արձանագրաւն ծանօթանայ թէ երբ և որոյ հրամանաւ շինեցաւ և յինչ պէտս: Եւ այս թարգմանութիւն է արձանին.

Ծառայք Աստուծոյ, ունկն դիք մտադրութեամբ բանից իմոց. 'ի տիեզերակալութեան Մելիք խանի իջեալ 'ի խորագման և նկեալ յերկիրս Յունաց, բնտրեցի զտեղիս ինձ 'ի բնակութիւն. և ածեալ զմտաւ շինել տեղի օժանդակի յիշատակ ինձ առ յապայ, կանգնեցի զմզկիթս զայս և զսենեակքս 'ի բնակութիւն գիտնոց և ուսումնասիրաց. և հաստատեցի 'ի ծախս նորոգութեան շինուածոյն յաւերժական զհասս նորն կողպակաց և զամենայն վայրացն որ շուրջ զշինուածովն. զի առցեն անխափան ամ ըստ ամէ զհասն յանուն կալուածոց առ յտան Մելիք խանի: Եւ կացուցի ուսուցիչ վարժարանին ըզյաւն և զիմաստուն և զընտիր այր Ցէխամէտտին, կարգեալ նմա ռոճիկ երիս զեօղս, տալ նմա ամի ամի երեք հազար և հինգհարիւր փող, զի աղօրս արասցէ վասն տիկնոջս: Արդ որ յայսմ հետէ խնամ տանի շինութեան և պահպանութեան տեղւոյս, օրհնեալ եղիցի յԱստուծոյ. և որ զսա աւերեսցէ՝ անիծեալ եղիցի 'ի նմանէ: Եղեւ շինութիւն սորա յերեքհարիւր յիսուն և միում թուականի հիճրէթիս:

Արդ յայտ է յարձանագրէդ զի ուսումնարան էր շինուածն վասն կարդացողաց մոլլանաց, և քառանկքին սենեակքըն բնակարան նոցին, և փառազարդ սենեակն տաճարաձև անշուշտ յարկ շիրմի կամ տեղի աղօթից: Իսկ ժամանակ շինութեանն 962 թիւ Քրիստոսի (Հիճրէթի 351):

Մի 'ի մեծագոյն հնութեանց քաղաքիս համարելի է Ուլու ճամին մօտ 'ի Ջիֆ-

տէ մինարէ. ոչ այնքան յարուեստէ վսեմ ճարտարապետութեան երևելի եղեալ, որքան մեծութեամբն. զի երկայնութիւն է նորա 50 մէդր յարևելից յարևմուտս, և 38 լայնութիւն. չիք 'ի նմա այլևայլութիւն ձևոյ կողման և կողման, այլ առ հաւասարակ կարգ ըստ կարգէ կամարք են ձգեալ, և հաշուին կամարասիւնքն 28, և եօթն կարգ կամարաց: ի միջնավայր յարկին էր գմբէթն, որ կործանեալ և արդ փայտակերտ է. շինուածն ըստ բոլորին ցածագոյն է ամենևին անհամեմատ տարածութեանն: ի ռամկաց կարծի սա եկեղեցի լեալ 'ի հնումն, այլ ձև եկեղեցւոյ բնաւ չերևի 'ի շինուածի անդ, և ոչ տեղի խորանի. զի և յարտաքին կողման փոփոխութիւն ինչ ոչ երևի նորոգութեան: Թերևս մատենադարան եղեալ իցէ կամ դիւանատուն առ Յունաց կայսերութեամբ, զոր Տաճկաց 'ի մզկիթ փոխեալ՝ զնշան միհրաբին յաւելեալ են 'ի հարաւոյ, և թողեալ նմին դրունս երկու՝ այլքն որմեալ կան և տաճիկ արձանագիր 'ի վերայ միոյ 'ի դրանցն:

ԴՐՈՒՆՔ ԲԵՐԴԻՆ. — Չորս դրունք են բերդին երկբացիկք, և ոչ հանդիպակաց միմեանց 'ի կրկին պարիսպսն, և կոչին Դէվրիզու դուռն, Երզնկայ դուռն, Նոր դուռն և Կիւրճի դուռն, յորոց ոմանց վերայ են տաճիկ արձանագիրք. իսկ հին արձանագիր յունարէն կայ 'ի վերայ Կիւրճի դրանն ներքնապարսպին մանր և մեծատառ՝ յորմէ մասն անեղծ մնայ.

| | |
|---|---|
| ʼΩ Θεὲ . . . Κύριε | Աճ . . . Տր |
| Βοήθει . . . . . τῷ | Օգնեա . . . . . |
| Δούλῳ . . . . . τῷ | Ծառայի . . . . . |
| Εὐκλε . . . . | Եւկլե . . . . . |
| Τὸ βουρ | Վուր . . . . . |
| Μηνυ | (Ամիս ?) . . . . |
| ʼΈτει ζφ΄. | ի Թուին 6500. |

Թուականդ արարչութեան 6500 որ ըստ Յունաց հաշուի է 992 ամ Քրիստոսի, թերևս պատշաճիցի ներքոյ գրելում արձանի, որ է այս.

| | |
|---|---|
| Κυριε βοηθη τον δουλον σου | Տէր օգնեա ծառայի քո |
| Ρωμανον τον δαλασινον? | Ռոմանոսի (Դալասինոս կամ Թշուառի?) |
| κε κατεπανον της ηβε(ρ)ιας . . . | Եւ կատեպանի (Վրաց?) |

Յերի արձանիս կայ բարձրաքանդակ պատկեր նիզակաւոր հեծելոյ, և հրեշտակի և կուսի. և 'ի հանդիպոյ՝ ընձու:

Սակաւուք անդր քան զդուռնդ յահեկէ նորին 'ի նմին պարսպի իբր տասն ոտնաչափ բարձրութեամբ 'ի գետնոյն՝ կայ և հայ արձանագիրդ աղարտեալ 'ի փոքու քառակուսի վիմի. և

ՅՍ ԱԾ ՈՂՈՐ
ՄԷ ՍՏԵՓԱ
ՆՈՍԻ ԵՒ ՅՈՒ
ՍԵՓ երիցո

այդ տապանագիր թուեցաւ ինձ ածեալ 'ի գերեզմանատանց և մուծեալ այդր 'ի ժամանակս նորոգութեանց. զի անչքութիւն վիմին և գրուածոյն և տեղւոյն անպատկանութիւն չներէ առել եթէ յիշատակարան իցէ շինողին կամ ճարտարապետի պարսպացն: Ջնոյն

տեսմ և գեղանդակագործ խաչիցն որովք առաւել քան յայլ տեղիս լի է մասն պարսպին՝ որ ընդ մէջ Կիւրճի դրանն և Հայ արձանագրին. զի ոչ կարգ 'ի շարս նոցին երևի, և ոչ տեղւոյն յարմարութիւն. այլ խառն 'ի խուռն և անշուք: Յայտ իսկ է զի 'ի վեցերորդ դարէ մինչև ցերեքտասաներորդն բազում անցք անցին ընդ քաղաքս այս 'ի Պարսից 'ի Յունաց, 'ի Թուրքաց, 'ի Վրաց, 'ի Թաթարաց. յորոց հարկ էր խարխալել պարսպաց նորին՝ և նորոգել: Այս միայն յերկբայս արկանէ զհետաքննին միտս, զի 'ի հարաւակողմն արուարձանին արտաքոյ կանգուն կայ տակաւին մասն ինչ հին պարսպի հանդերձ դրամբ, թէ արդեօք նախ քան զթէոդոսեան բնակութիւն կալեալ է անդէն մարդկան, եթէ մասն իցէ դա որ 'ի նմանէն հիմն արկաւ, կամ թէ հարաւային կողմն բերդին մինչև ցանդր հասանէր նախ և ապա զատուցեալ 'ի միջնաբերդէն և անդր՝ յամայութեան մնաց մասն պարսպին, կալցի զայս որպէս ոք ախորժէ. մեք այլոց ևս տեղեաց քաղաքին եկցուք 'ի տես:

ԹՈՒՐԳԷՔ ՍՐԱՃԱՑՐՔ. ՄԶԿԻԹՔ ԵՒ ԱՅԼ ՀԱՍԱՐԱԿԱՑ ՇԻՆՈՒԱԾՔ[1]. — Ի մէջ բերդին և մանաւանդ յարուարձանին 'ի գերեզմանատունս Տաճկաց և 'ի մէջ թաղիցն ևս տասնիւ չափ կան շիրիմք Տաճկաց. յորոց երկուք կոչին Կիւմիւշլիւ գիւմպէթ արտաքոյ արուարձանին: Առ հասարակ քառաշէն են շիրիմքդ և սրածայր գմբէթիւ. ոմանք բոլորշի և այլք բազմանկիւնի և միով դրամբ, մի կամ երկու պատուհան ունելով շուրջանակի, կամ ոչ բնաւ. մեծութեամբ իբրու 'ի չափ միջակ սենեկի, և միհրապ 'ի հարաւոյ, և յատակք նոցա գետնափորք. հոյակապ է որ կայն 'ի գերեզմանատան Եէնի մահալլէին, և դադաղաձև գերեզմանք 'ի նմա երկու: Ի միումն 'ի նոցանէ որ 'ի մէջ թաղին է յարուարձանին՝ կայ հին արձանագիր քիւֆի գրովք: — Ի բազմաթիւ մզկիթս նշանաւորքն են Լալէ փաշա՝ 'ի բերդին, հանդէպ պալատան փաշային, Գուրջուճլու ճամի, յորում տեղւոջ եկեղեցի էր յառաջն յանուն սրբոյն Ստեփանոսի, Ճաֆարիէ, Մուրատ փաշա, Այազ փաշա, Կիւլ Ահմէտ: — Ի կարգի հոյակապ հնութեանց համարելի է և Դաշխանն բազմագմբէթ. որ արդ ամբարանոց է փայտի: Սպահի պազար հանդէպ պալատան փաշային 'ի բերդին, ողջոյն փողոց մի կամարայարկ, և կրպակքն երկուստեք քարակերպք:

ԵԿԵՂԵՑԻՔ. — Առաջինն յեկեղեցիս կարնոյ Հայոցն է Աստուածածին կոչեցեալ, նորաշէն և լայնանիստ որ և մեծութեամբն զանցանէ զբազում եկեղեցեօք արևելից. կառուցեալ 'ի նմին տեղւոջ յորում յառաջագոյն էին երկու եկեղեցիք առընթեր միմեանց: Երեք դրունք են նորին, առաջին յարևմտից քառակուսի պատշգամբ ունելով զառաջեաւ յարկածածուկ, և այլք 'ի հիւսիսոյ և 'ի հարաւոյ: Որմունքն առ հասարակ 'ի կարմրագոյն սրբատաշ վիմաց, քսան ոտամբք. յարկն հինգկարգեան աղիւսակերտ կամարօք: Թէպէտ և ահեղ է մեծութեամբ եկեղեցիս, այլ մերկ յարհեստէ վսեմ ճարտարապետութեան. մանաւանդ զի և ձեղունն ցած է, և երեքին խորանքն ևս ցածագոյնք անհամեմատք մեծութեան եկեղեցւոյն, անձուկ է և բեմն: Է նորա և ամպհոն յորմն հարաւոյ, փայտաշէն և ոսկեզօծ: Գեղեցիկ է յոյժ վերնատունն կանանց, յոր ծախեալ

1 Յորոց շատք կործանեալք և կիսաւերք կամ այլափոխեալք են յետ մեծի սասանութեան քաղաքին եղելոյ յամին 1859:

թուի ճարտարապետին զամենայն ճարտարութիւն իւր։ Արտաքոյ եկեղեցւոյն 'ի հարաւոյ որմնակից է հնաշէն մատուռն քարակերտ և կամարակապ, մնացորդ հնոյ եկեղեցւոյն, զոր և տաճար կոչեն. և սա այն է յորում լեալ է միաբանութիւն ազգիս ընդ Յունաց առ Ներսիւ կաթողիկոսիւ. դռնափակ է տեղին իբրև նուիրական, և բանի յուխտ եկելոցն։ Ի հիւսիսակողմն եկեղեցւոյն է գերեզմանատուն ընդարձակ յոյժ, այլ մերկ խսպառ 'ի շիրմաց. զի զամենայն քարինս 'ի շինուած եկեղեցւոյն ծախեցին։ — Երկրորդ եկեղեցին նոյնանուն կաթողիկացն է՝ կիսով չափ փոքր քան զմիւսն և անսիւն և փայտայարկ. որմունքն նոյնօրինակ 'ի կարմրագոյն քարանց, և դրունքն երեք. իսկ կանանց վերնատունն արտաքոյ է բուն որմոյ եկեղեցւոյն 'ի վերայ որմնագործ կամարասեանց. որով զաւիթ է ձևացեալ առաջի աւագ դրանն ընդ ամենայն երկայնութիւն արևմտակողման որմոյն։ Երեք խորանք են նորա, և բոլորաշէն աւանդատունք կրկին ընդ հիւսիս և ընդ հարաւ։ Եկեղեցիս այս շինեցաւ արդեամբք Աբրահամ ամիրայի Ալլահվէրտեան, որոյ արձանագիր յիշատակին է 'ի ճակատ աւագ խորանին։ — Երրորդ եկեղեցին է Յունաց՝ փոքր՝ սուրբ Գէորգ կոչեցեալ։

ՈՒԽՏԱՏԵՂԻ. — Ըստ քրիստոսական կրօնիցս պարծի կարնոյ քաղաք հանգստարան լինելով սուրբ մարտիրոսացն Սահակայ և Յովսեփայ. տեղի նահատակութեան նոցա արտաքոյ է բերդին մօտ 'ի Դէվրիզու դուռն 'ի տուն Տաճկի ուրուք. յորում՝ առ որմով խցկան բխէ ջուր ցուրտ 'ի քարանց. խրամատեալ է որմն ըստ բաւականի մտանելոյ, և գնացեալ քայլս երիս 'ի ներքս կոյս՝ յաջ կոյս խոտորի խրամն, ուր երևի բխումն ջուրցն 'ի քարանց ծորեալ կաթիլ առ կաթիլ, և ժողովի յաւազանն փոքրիկ որ զառաջեաւ որմոյն, յորմէ ըմպեն ուխտաւորքն։ Ջուրդ այդ հաւաքի յաղբիւրն որ առ ոտիւք կամրջին է և հանէ 'ի Դէվրիզու դուռն։ Սակայն հանգստարան մարմնոց սրբոցս է 'ի բերդին մերձ յՈւլու ճամին, 'ի ծայր փոքր և անել փողոցի 'ի քարակերտ և կամարաշէն խցկան ուրեք. յորում 'ի քարեղէն բարձրաւանդակի կան երկու դագաղաձև քնարանք առընթեր միմեանց, այլ մարմինքն թաղեալ 'ի խորս գետնոյն. տեղին 'ի ձեռս Տաճկաց է և ախեալ, սակայն համարձակ մտանելի է ամենայն ուխտաւորաց։ Ի ներքս և արտաքոյ կան և այլ շիրիմք Տաճկաց։ — Ա՛յլ մատուռ է 'ի շուկայն սուրբ Թորոս ասացեալ, և սուրբ Մինաս՝ շիրիմ ևեթ որորաձև և խաչաքար 'ի սնարից առ տաճարաւ եկեղեցւոյն Հայոց. զորոց չունիմ ասել վասն հաւատո՞յ սպանեալ արդեօք 'ի Հագարացւոց. զի ոչ գրաւոր աւանդութիւնք են ուրեք և ոչ հաւաստի բանք։

ԹԻՒ ՀԱՅԱԶԳԵԱՑ. — Մինչ չև մտեալ Ռուսաց 'ի քաղաքս յայս, տունք ամենայն հայազգեաց հաշուէին իբր չորս հազար. այլ գաղթեալ նոցա առ հասարակ՝ 'ի կողմանս Վրաստանի, և դարձ արարեալ ոմն փախստեամբ և ոմն հրամանաւ, արդ լինին տունք իբրու հազար մի։

ՓՈՂՈՑՔ ԵՒ ՁԵՒ ՏԱՆՑՆ. ԵՒ ՋՈՒԱՐՃՈՒԹԻՒՆ ԲՆԱԿՉԱՑՆ. — Ամենայն փողոցք թաղիցն և շուկայիցն լայնարձակք են 'ի պատճառս երթևեկելոյ սայլից. և սալայատակ է փողոցք բաց 'ի սակաւուց և 'ի շուկայէն, որ և այնոքիկ անհարթ և անշնորհ, այլք առ հասարակ հողայատակք են աղտեղիք և գարշահոտ։ Նմին իրի յերթևեկու-

թենէ սայլիցն՝ փոշւոյն բարձրացեալ յօդս՝ և 'ի հողմոց անարգել մտանէ ընդ պատուհանս տանցն. թող զնեղութիւնն զոր կրեն անտի անցաւորք։ Ընդ ամենայն քաղաքն չիք տեսանել տուն մի հոյակապ կամ գեղեցիկ ըստ արտաքին տեսլեանն բաց 'ի պալատանց հիւպատոսացն. որմունք նոցա թէպէտ և քարակերտք, այլ մեծաւ մասամբ տղմածեփք. գաւիթք առ հասարակ խաւարչուտ, հողայատակ և անհարթ, սենեակք մթին և պատուհանք նոցա մանր. չիք աւելի քան զերկնայարկ տուն բարձր. յորոց որ 'ի գետնի են և առաւել մթին, բնակին 'ի ձմերան առ անհնարին ցրտութեան օդոյն, իսկ վերնայարկքն ամարանոցք են. պատուհանք փոքր և անձևք ողորմելի տեսանելով, և չիք ապակի առ կառկածի բեկանելոյ 'ի ցրտոյ. բայց արդ սովորին զնել և զայն։ Հողայարկ են տունքն առ հասարակ, զի չէ սովորութիւն աղիւսայարկս առնել. հողայատակք են նոյնպէս տանիքն. և յայն սակս սովորեցին հնարել զայդ ամենայն զի տոկալ կարասցեն ձմերային սաստկութեան. Նմին իրի և որմունքն թանձր են, մանաւանդ որք անընդմիջաբար զսենեկօքն կան. և գերանք յարկացն խիտք և ստուարք, զի տոկալ կարասցեն ընդ ծանրութեամբ հողայարկին։ Ի ցրտութենէ անտի բռնադատեալ բնակչացն չածեն ընդ միտ զվայելչութիւն շինուածոցն, և զքարակերտ աստիճանս սանդղոց, այլ միայն խնուլ խցանել զամենայն ծակ ընդ որ մարթի հողմոյն 'ի ներքս անցանել. այնր աղագաւ և դրունք տանցն ցածունք և շրջապատեալ թաղեօք, և 'ի թիկանց քար ծանր ճախարակօք կախեալ որպէս զդրանց բաղանեացն, զի ընդ փակելն բռնութեամբ՝ մի մնասցէ ծերպ։ Համառօտ ասել, քաղաք մի մեծ է հողածեփ, չկայ նորա զբօսարանք ծառաստանք ոչ 'ի ներքս և ոչ արտաքոյ։ Ջուարճութիւն բնակչացն է նուագարանօք զբօսնուլ. 'ի կրպակս գաֆէի և 'ի տունս նուագածուք բաղում են 'ի Հայոց և 'ի Տաճկաց, և նուագարանքն սազ և քէմէնչէ և սանթուռ։ Նորատեսիլ իմն է օտարականի 'ի զնեին կալ հանդիսի նոցա 'ի խմբարանի ուրեք, որպէս չարժումն տան կնդնտոցաց 'ի նախադրունս երգոցն՝ զոր փէշրէֆ կոչեն, որ և այլ և այլ եղանակօքն տևէ կէս ժամ առանց երգոց. ընդ որ ակումբն ամենայն հիացմամբ ակնկառոյց կայ լուռ ևեթ, զգածեալ կրաշարժ տխուր եղանակօքն, որ ախորժելին է ամենայն արևելեայց. և ապա սկիզբն եղեալ կարգի երգոցն, այլ տեսարան յանդիման լինի 'ի նուագածուացն, որոց ոգևորեալ իբրու 'ի վերին զօրութենէ ձայնս արձակեն եղերական հառաչմամբ. և տակաւ յառաջ մատուցեալ աղաղակաւ և կանչիւք վառեալ բորբոքին. կատաղեաց իմն նմանեալ այնուհետև դարձուածովք աչացն, և երակօք փողիցն և ճակատուց սևնաձև ուռուցելովք, և բերանք բացեալ թղաչափ, գոյնք դիմացն ատրաշէկ իբրև արբեցելոց, և գլուխք իբրև 'ի մրրկէ տարուբերեալ՝ հողմավար ծոպիւք փաթութապատ գլխարկացն։ Իսկ բանք երգոցն ամենայն՝ հասարակ ասացուածք են և ոչ ինչ նորալուր. սակայն որ յարիական ոգւոյ անակնկալ լսին բանք, թէպէտ և ոչ զարմանալիք, մեծապէս ախորժելի են բազմականին, մինչև քրքիջ մեծ բառնալ և ազնիւ և անմահ կարդալ զնուագածուն կամ զդիւցազնն որոյ դիմառնութեամբն յերգ անկանի բանն։

ԱՐԴԱՒԱՆԴՈՒԹԻՒՆ ԵՒ ՋՈՒՐՔ. — Մի յարգասաւոր գաւառաց համարեալ է կարին

'ի բերս ցորենոյ և գարւոյ, թէպէտ և յետ գաղթելոյ Հայոց 'ի Ռուսս բազումք յարտորէից դաշտավայրին անխնամ թողեալ մնան: Առատութիւն բերոցդ անբաւական էր նմա յաղագս բազմամարդութեանն, եթէ և արդաւանդագոյնն և հացաւէտն Բասեն ոչ շտեմարանէր նմա զարդիւնս իւր: Լինի 'ի կարին 'ի բանջարեղինաց բազուկ և թարխոն և կաղամբ և այլ այսպիսիք. այլ առաւելապէս շողգամ որ ոչ թեթև մխիթարութիւն է բնակչացն, որոց ըստ ժամանակին խումբ խումբ մեկնեալ 'ի քաղաքէն գնան յարտորայս բանջարոյդ իբրև 'ի պարտէզ սեխեննեաց կամ խնձորոյ և նստեալ ուտեն. թէպէտ և զարդարն ասել, քան զսովորականն այլոց տեղեաց քաղցր է բանջարդ կարնոյ, յորոց լինին երբեմն և մեծամեծք մինչև կշռել միոյն օգգա մի: Այլ 'ի պտղոց ամենևին զուրկ է. զի պտղատու ծառ տնկել չզօրէ ցրտոյն բռնութեան որ վաղաժամեան սկսեալ խամրեալ ապականէ զամենայն: Է զի յամառանն յունիսի իբրև զաւուրս ձմերայնոյ ձիւնապատ սպիտականայ երկիրն, որպէս եղև և յաւուր արևադարձին ամառայնոյ յամին 1845, և տևեաց 'ի նմին սաստկութեան աւուրս հինգ: Անարգասաւորութեամբ ստերջացեալ քաղաքիդ՝ ոչ թերանայ 'ի վայելչոյն. զի բաց 'ի սակաւուց ազգաց պտղոց՝ այլովք ամենայնիւ առատ է, մատակարարեալ լիուլի յԵզնկայ և 'ի Թորթումայ: Բայց առատութիւն ջուրց պարծանք են կարնոյ. յորոց է որ 'ի լերանց իջեալ 'ի հարաւոյ կուսէ քաղաքին և անցեալ ընդ առուակս արուարձանին, խառնի 'ի Շամբն, զորմէ զկնի. և են որ առ տեղեաւն բղխեն թեթևագոյնք և բարեհամք քան զառաջինսն: Նշանաւորք յաղբերացն են Նաճառակի աղբիւրն՝ զոր վերագոյն յիշեցաք, կաթնաղբիւր, ճեճէք փոռնարի և աղբիւրն որ առ դրան պալատան փաշային:

ՎԱՃԱՌԱԿԱՆՈՒԹԻՒՆ. — Կարնոյ քաղաքին թէպէտ և արտաքին տեսիլն և շինուածքն անշուք, և ցրտութեամբ օդոյն անսիրելի, և քաղաքականութեանն մասամբ ոչ քաջ բարգաւաճեալ, սակայն իսկզբանէ և այսր մի 'ի շահավաճառ քաղաքաց արևելից համարեալ է. ամենայն շահավաճառութիւն նորա է 'ի բազմութենէ երթևեկի վաճառականաց 'ի շրջակայ քաղաքաց ևս և 'ի հեռաւոր տեղեաց, և մանաւանդ յանբաւութենէ կարաւանաց Պարսկաստանի, որոց անցեալ ընդ նա իջանեն 'ի Տրապիզոն, և դարձեալ անտի ընդ սա անցանեն 'ի Դավրէժ. կեդրոն համարեալ նորա շուրջ գաւառացն՝ Վրաստանի յարևելից, 'ի հարաւոյ՝ Միջագետաց, յարևմտից՝ Եւդոկիոյ, Սեբաստիոյ և Կեսարիոյ, և 'ի հիւսիսոյ աշխարհին Պոնտացւոց: Ի շահավաճառութենէ անտի բազումք թողեալ զհայրենի երկիրն աստ կալան զբնակութիւն, և շատք ևս որք առ Ռուսս գաղթեալ էին դարձան վերստին: Առ այսոքիւք և այս ևս դիտելի լիցի զի յորմէ հետէ պակասեցին այլք 'ի քաղաքաց արևելից 'ի նախնի փարթամութենէն 'ի պատճառս յաճախելոյ ձեռագործացն Եւրոպայ, ընդ նմին զնոյն վնաս կրեաց և կարնոյ քաղաք. զի թէպէտ և արդ քառամնիւ չափ իջեւանք նորա լի իցեն վաճառականօք, և ընդարձակ տարածութիւն շուկային և ազգ ազգ արհեստագործաց, սակայն ըստ փոփոխել պետութեանն յայլ և այլ օրէնս քաղաքականութեան՝ և նախկին այն եռանդն առևտրոցն պակասեաց:

ՇԱՄԲ ԿԱՐՆՈՅ. — Գարասու գետ՝ որ յայլ և այլ գետակաց միացեալ յիջելոց

յարևելից լերանցն և 'ի ջրոյն Խաչափայտի, յերկուս ընդմիջեալ զդաշտավայրն կարնոյ 'ի հիւսիս և 'ի հարաւ, և միացեալ ընդ գետոյն Սարչամայ՝ առ Գաղտաուխճ գիւղիւ՝ անցանէ ընդ Շողանի ձորն, յարևելակողմն դաշտավայրին ճեղքեալ՝ Սազլըգ կոչի 'ի բնակչաց, զոր Նախնիք մեր Շամբ կարնոյ ասեն. զի 'ի գարնանի առատացեալ ջուրցն բուսուցանէ անբաւութիւն շամբից, զոր և ամառայնի 'ի նուազել ջրոյն հնձեալ՝ 'ի բաղանիս քաղաքին վաճառեն: Ազգ ազգ հաւուց են 'ի շամբիդ անբաւ բազմութեամբ, վկայեալ և 'ի ծերունւոյն Խորնոյ, յորոց անուանի են վայրի.բադ և սագ: Ի վերայ գետոյն երկու կամուրջք են քարաշէնք՝ մեծամեծք և բազմակամարք:

ԳՒՈՒՂՕՐԷՔ, ՋԵՐՄՈՒԿՔՆ ԵՒ ԱՂԲԱՀԱՆՔ ԿԱՐՆՈՅ. — Գիւղօրէք կարնոյ գաւառին սկսեալ յարևելից սփռեալ կան ընդ երեսս մեծի դաշտավայրին ընդ հիւսիս ընդ արևմուտս և ընդ արևելեան հարաւ, սակաւք 'ի ձորամէջս լերանց կամ առ կողիւք բլրոց. զուրկք 'ի ծառոց, մերկ երևին 'ի բազում հեռաստանէ տունք նոցին: Հնութիւնք սակաւ են 'ի գիւղօրէս, և եղեալքն ոչ ինչ յաւելուած առնեն վաղեմի աւանդից հայաբնակ ժողովրդոցն որ 'ի նոսա: Ի Գարարգ տակաւին երևին հիմունք նախնի շինուածոյ քարակերտ և ամրաշէն. և զբլրակն՝ որ 'ի մէջ գեղջն տեղի ամրոցի ասեն լեալ 'ի հնումն. և հաւանօրէն սա է տեղի անուանի շահաստանին Արծն կոչեցելոյ, զոր քանդեցին և 'ի հուր դատեցին Սելճուկ Թուրքք 'ի ԺԱ դարու: փոքր մի հեռի 'ի Գարարգայ 'ի վերայ ճանապարհի Ղուշճի գեղջն խաչքար մի կիսաթաղ անկեալ կայ 'ի գետնի, և կիսեղծ յիշատակարան 'ի վերայ նորա այսպէս.

ԱՆՈՒՆ ԱՍՏՈՒԾՈՅ ԵՍ ՅՈՎԱՆԷ··· ՈՐԴԻ ԶՈՐՏՎԱՆԷԿԻ ԿԱՆԳՆԵՑԻ
ԶԽԱՉՍ ԶԱՅՍ Ի ԺԱՄԱՆԱԿԻՆ ՎԱՍԻԼԷ ԿՈՍՏԱՆԴԻՆ···

Ի Թուչանիչ 'ի բարձրաբլուր եկեղեցւոջն 'ի վերայ խաչքարին որ առ դրամբ կայ նորա՝ 'ի ձախմէ արտաքուստ ագուցեալ յորմն է յիշատակարանս.

ԻԹ· ՈՋԷ· ՔՐԻՍՏՈՍՏՐԻՆ Է ԽԱՉՍ·

Ի գերեզմանատան Հնձուց 'ի ստորև խաչքարին մեծի գրեալ կայ

ՏԷՐ ԱՍՏՈՒԱԾ ՈՂՈՐՄԵԱ ԳՈՐԳԱՑ ԱՄԷՆ·

և 'ի կողաց նորա

ՏԷՐ ԱՍՏՈՒԱԾ ՈՂՈՐՄԵԱ ԱՇԽԱՏՈՂԱՑ ՍՈՐԱ ԱՍՏՈՒԱԾԱՏՐ·· ՊԱՏՈՍ··
ԵՒ ՅԱԿՈԲԱՑ ԵՒ ՄԱՒՐ ՆՈՑԱՑ ԵՒ ՔԵՐՑ Ի ՔՈՒՄ ԳԱԼՍՏԵԱՆԴ ԱՄԷՆ·

Ի Սալաձոր մօտ առ գերեզմանօն խաչքար մի կայ և արձանագիրն յածեալ 'ի բերանս ռամկին որպէս թէ գրեալ իցէ այսպէս. վեց գրիւ աղի ծախել աւուրն 'ի պէտս տան իւրոյ և նմին զուգահաւասար իւղ և հաց և այլ այսպիսի պարէնք, որչափ 'ի տունս Թագաւորաց չծախին. և զայդ առասպել երէց ումն գեղջն խոռին կարդացող, որպէս կոչեն նոքա, ընթերցեալ է 'ի խաչքարին, և տաճիկ բարբառ ես 'ի նմա. սակայն կանգուն կայ ցայսօր խաչքարն և գրուածն 'ի վերայ մեծաւ մասամբ անեղծ, որ է այս.

ԿԱԶՄՈՂ ՍՈՐԱ ԶՅՈՎԱՆՆԷՍ·· ՈՉ ԵՄ ԱՐԺԱՆ·· ՅԻՇԵՍՋԻՔ Ի ՔՐԻՍՏՈՍ
ԶՔԵՌՆ ԻՄ ԶՓՈԽԵՑԵԱԼՆ ԱՌ ՔՐԻՍՏՈՍ·

Քարուշոր է քարաժայռ մի 'ի ծայր ստորոտի լերանց մօտ առ Գրիչք գեղջ.

և փորեալ են 'ի նմա երկու սենեակք իբր երեք մարդաչափ բարձրութեամբ 'ի գետնոյ. տարածութիւն միոյն որ բաց է յառաջոյ կողմանէ՝ 30 մեդր քառակուսի. իսկ երկրորդին որ կից է նմին յահեկէ՝ 16. երկրորդս այս կատարեալ սենեկաձև է դրամբ և պատուհանաւ: Ասի բան զսոցանէ եթէ Ֆէհրատայ ձեռագործք իցեն շինեալ վասն սիրուհւոյն Շիրինայ, որ բնակէր 'ի գիւղն հանդիպակաց, ակնունելով առնուլ զնա 'ի կնութիւն. այլ 'ի կանխել օրհասի մահուն նորա՝ և ինքն Ֆէհրատ ձգեալ 'ի վեր զնիդն երկաթի մեռանի ընդ նովաւ. Նոցին ասին լինել գերեզմանքն երկու որ 'ի վերայ լերինն 'ի վերուստ Քարուորայ:

Ցարեմտակողմն դաշտավայրին 'ի գիւղն Աշխալա է բլուր մի բարձրահայեաց և երկայնանիստ, զորմէ ասեն ամրոց լինել 'ի հնումն, որոյ հետք ևս չերևին արդ:

Ջերմուկք երեք են 'ի գիւղօրէս, յԻլիճա, յԱրճարի և յԱղտաղտ. և չորրորդ մի ցուրտ ջրոյ 'ի Սօուգ չէշմէսի: Առ հասարակ անյարկք են դոքա, դուռնաքեայ որմովք ևեթ շրջապատեալ մարդաչափ բարձրութեամբ. ընդարձակութիւն նոցա իբրև 'ի չափ մեծի սենեկի: Է և փոքրիկ լիճ մի ցուրտ ջրոյ առ Քեօսէ Մէհմէտ գիւղիւ Այղըր կեօլի կոչեցեալ, որ 'ի միջավայրէն բղխմամբ եռայ հանապազ:

Ցարեմտից դաշտավայրին անդր քան զԱշխալա երկու աղաճաճք կան երկուստեք գետոյն. և զջրաղն այսպէս հանեն 'ի վեր. կարգ մի դորակաց ածեալ է գշղթայիւք զոր հոլովէ անիւ մեծ պտուտելով երիվարի. իջանեն դորակքն 'ի խորս անդ ուր շտեմարանն է ջրաղին, և վերացեալ թափեն արտաքս. որ և հոսեալ հաւաքի 'ի փոսս ոչ խորինս, և խառնեալ յարևուն խորտակեալ ժողովեն:

ՎԱՆՈՐԱՅՔ. ՀՌԻՓՍԻՄԵԱՆՑ ՔԱՐԱՅՐՔ, ԵՒ ԽԱՉԱՓԱՅՏ. — Երեք են վանորայք 'ի դաշտավայրին Կարնոյ. առաջինն ժամաւ հեռի 'ի քաղաքէն առ Մուտուրկա գիւղիւ՝ կոչի Լուսաւորչի վանք, բարձրանիստ և բարձրապարիսպ. քարաշէն է եկեղեցին փոքր՝ միախորան և անշուք. այլ է նորա ուխտատեղի յաւանդատան գուբ մի մարդաչափ և կէս խորութեամբ, ուր օթեվանս կալեալ ասի Լուսաւորչի յերթալն յԱրտաշատ: Գուբն պատեալ է շուրջանակի անտաշ քարամբք: Այլ հին արձանագիր չիք նորա և ոչ եկեղեցւոյն, նմին իրի անծանօթ մնայ ժամանակ շինութեանն: Առ երի դրան եկեղեցւոյն արտաքոյ յաջմէ թաղեալ կայ Սահակ վարդապետ Ահագինն կոչեցեալ, և վէմ մեծ և անգիր 'ի վերայ նորա և 'ի մնացից խաչաքար: Բնակարանք ուխտաւորացն փայտակերտք և նորաշէնք են: — Երկրորդն է Կարմիր վանք յանուն Աստուածածնի առ Հինձք գիւղիւ երեք ժամաւ հեռի 'ի քաղաքէն. զառաջին շինութիւնն մեծին Ներսեսի ընծայեն. այլ կործանեալ յերկրաշարժէ վերստին շինեցաւ եկեղեցին որ քան զԼուսաւորչին կրկնաչափ մեծ է և երեքխորանեան. 'ի չորից կողմանց կամարք են ձգեալ և 'ի վերայ ամբարձեալ գմբէթ սրածայր 'ի կարմիր քարանց: Բաց յեկեղեցւոյդ այլ ամենայն շինուածքն անշուք են և ողորմելի: — Կէս ժամաւ հեռի 'ի վանացս 'ի ձորամիջի որ պատեալ է յամենայն կուսէ 'ի կարմրագոյն քարալերանց՝ է ուխտատեղի Հռիփսիմեանց քարայրքն ասացեալ. և են նոքա երկու փոքրիկ քարանձաւք մի քան զմի բարձր յերեսս լերին. մուտ նոցա նախ դիւրամուտ էր, և յետ ժամանակաց, որպէս երևի, հատորք լերինն զերծեալ 'ի մուտ անտի մինչև

'ի վայր, որք և երևին ցարդ 'ի գետնի, անմատչելի գործեցին զքարայրսն. զի քարալերինքն այնոքիկ դիւրափշրելի են և բնութեան տարերց անտոկ։ Սակայն աւանդեն եթէ Տաճկի ուրուք ելեալ իջէ անդ երբեմն 'ի վերին քարայրն անհնարին տառապանօք, և տեսեալ 'ի նմա փսիաթ մի և ափսէ։ Չիք այլ աւանդութիւն զայսցանէ գրաւոր կամ անգիր։ Ի գետնի տեսանին երկու աւերակք մատրանց և խաչքարք և աղբիւր ցուրտ ջրոյ բղխեալ 'ի լեռնէ։ — Երրորդ մենաստանն է խաչկրայ վանք չորս ժամու հեռի 'ի քաղաքէն. փոքր քան զերկու առաջինսն, և եկեղեցին բարձրանիստ։ Չիք 'ի նմա այլ ինչ նշանաւոր բաց 'ի մեծէ խաչքարէն՝ որոյ արձանագիրն է.

### Ի ԹՈՒ ՈՀԸ ԿԱՆԳՆԵՑԱՒ ԽԱՉՍ Ի ՅԻՇԱՏԱԿ ՏԷՐ ԹՈՐՈՍՈՒ ԴԵՐՋԱՆԱ ԵՊԻՍԿՈՊՈՍԻ.

Աւանդութիւն այսպիսի կայ առ բնակիչս եթէ Հերակլի կայսեր առեալ զխաչափայտն և պահեալ 'ի Տուղի լերին, յետ յաղթելոյ նորա թշնամեաց իւրոց և դառնալոյ, սքանչելեօք ջուր բղխեալ գտանէր 'ի տեղւոջն. և մասն մի 'ի խաչափայտէն շնորհէր տիկնոջ ուրումն որ զաւուրս երիս կերակրեաց զզօրս նորա. և զմասնն զայն աւանդեալ ասեն տիկնոջն յայս մենաստան։ Իսկ տեղի պահեստի նշանին սրբոյ է 'ի վերայ Տումլի լերին բարձու, առ որոյ ստորոտով է մենաստանդ երկու կամ երիւք ժամուք հեռի 'ի նմանէ. և է տեղին բոլորաշէն փոս, և ջուրն 'ի նմա մշտաբուխ, այլ եռալ բղխման չերևի բնաւ, որ և ականակիտ է այնպիսի՝ մինչև մարթ է հաշուել զխիճս յատակին։ Հռչակեալ է յոյժ բարեհամ առողջարարութիւն նորա, և ցրտութիւնն անհնարին յոյժ։ Այս վայր է ահա խաչափայտ ասացեալն, և ջուրն խաչափայտի ջուր, որ հոսեալ արտաքս 'ի փոսէն և շրջան առեալ ընդ զառիվայր լերինն եկեալ խառնի առ Կիրակոսակ գիւղիւ 'ի Գարասու գետ Կարնոյ։

### ԻՆՔՆՈՒՐՈՅՆ ԲԱՆՔ ՋԲՈՇԱՅԻՑ ԿԱՐՆՈՅ

Յաղագս ազգաբանութեան և սերնդեան Բոշայից, որ ոչ սակաւք են յերկրիս Կարնոյ, հաստատագոյնս ինչ չունիմ ասել. քանզի և ոչ նոքա հաւաստեաւ ինչ գիտեն զհաւուց և զնախնեաց իւրեանց՝ որոց սերունդք իցեն, և յորմէ աշխարհէ գաղթականք։ Աւանդութիւն ռամկին որ բազում անգամ 'ի նմանութենէ իրացն հաւաստաբանել կարծէ, նոյնասերունդս ասէ զնոսա Չինկեանէ կոչեցեալ խառնաղանճին, զոր եգիպտական ազգին մնացորդս ասեն, և անյիշատակ ժամանակաւ տարաշխարհիկ եղեալ փախստեամբ յերկրէն յայնմանէ. յորոց մասամբ զքրիստոնէութիւն պատուեալ, այլք առ հասարակ դարձան 'ի մահմէտականութիւն։ Զորոց աւանդիցդ թէպէտ և չունիցի երաշխաւորել զաներկբայ ճշմարտութիւն իրացն, այլ այս հաւաստի է զի տարազ կենաց Բոշայիցդ զՉինկեանէիցն տպաւորագոյնս ստուերագրէ. զի նոյն օրինակ շատաշրջիկք են 'ի գիւղօրէս, անտուն և անհաստատ ուրեք, զնոյն արհեստ վարեալ փոքու իւիք շատանան, և ոչ նախատինս անձանց համարեալ զձայնդ Բոշայ. միայն զի չեն իբրև զնոսա վայրենամիտք և անգէտ կրօնիցն զոր ունին. այլ քրիստոնական կրօ-

նիւ մեղմեալ են յոյժ 'ի մասինդ. ժամանէրք են և երկիւղածք և առ 'ի խոր-հուրդս մերձենալ ոչ անփոյթք. և շատք այլովք ևս աստուածապաշտ վարուք չխտրին բնաւ 'ի հայազգեաց քրիստոնէից, այսու ևեթ զատեալ որոշեալ զի խը-նամութեամբ չկարեն խառնիլ ընդ նոսա. չառնու ոք յանձն զդուստր իւր Բո-շայի հարսնացուցանել, կամ զդուստր նորա ածել 'ի տուն իւր։ Զլեզու Բոշայից լուեալ ուրուք թերևս մի 'ի հնոց լեզուացն կարծեալ՝ քննութեան ինչ արժանի համարիցի. զի ըստ նոցին վկայելոյ յանձնէ ճարտարեալ է նոցա զայդ, զոր վա-րեն միշտ երբ զգաղտնի ինչ իրաց զրուցել կամիցին. նմին իրի և յոյժ աղքատ է լեզուն այն և հայերէնիւ խառն։ Ախորժ ինչ արարեալ համարիցիմ, եթէ փոքր մի տաց մերձանել հետաքննին անձանց զոմանս 'ի բառից, յորս նշմարեսցի ոչ սակաւ հանգիտութիւն հնդկագերման լեզուաց։

Մանուս. մարդ. (սանսգր.)
Սիտորով. Թագ. (գլխաւոր).
Որով. իշխան, փաշա.
Սիս. գլուխ։
Աքի. աչք։
Լանք. քիթ։
Մուհ. բերան (Mouth անգղ.)
Գոնճ. մորուք։
Ադ. ձեռք։
Պավ. ոտք։
Պէրը. սիրտ։
Մանճ. մէջք։
Խարի. էշ. (պրսկ.)
Քօրի. ձի. (քուռակ)։
Քօրվավորիք. ձիան։
Խարվավորիք. իշեան։
Լէվալ. Աստուած։
Տրէսուլ. եկեղեցի և եկեղե-
ցական։
Նահլավ. կրակ։
Թէնավ. գետին։
Թուլի. հող։
Վար. քար։
Կահր. փայտ։
Բանի. ջուր։
Մալավ. հաց։
Խաթելու. ուտելիք։
Անքոր. ընկոյզ։
Անսեվ. խնձոր։
Անլօ. հաւկիթ։
Բանդրի. հաւ։

Արավ. ալիւր։
Գիհու. ցորեան։
Զավ. գարի։
Կլառ. պանիր։
Քըլ. եղ։
Խալիվ. միս։
Մանշավ. ձուկն։
Լաւավիչ. վառեկք։
Ճահրի. մաղ։
Զուրի. դանակ։
Գար. տուն։
Բար. դուռն։
Նակավ. երդիք։
Բավկաչ. ոտնաման։
Բարիչ. ագանելիք։
Սիսխօլ. գլխարկ։
Խարվավ. դրամ։
Լեհի. գիւղ։
Քէրավ. քաղաք։
Սուստաֆ. քուն։
Սօլ. լուր.
Լես. կեանք։
Կամ. իր, գործ։
Սամէլ. բարի։
Աք. մի (եէք, պրսկ.)
Լուխ. երկու (Duo).
Լաս. Տասն։
Պամնիչ. հարիւր։
Հէվ. այս։
Հէվակ. այս կոյս։
Հավի. վերստին։

Բարբար. ընդդէմ։
Կեղտուք. ողքան։
Պաշտան. ընդ, 'ի միասին։
Կատէլ. մուր։
Խաթել. ուտել։
Պիել. ըմպել։
Զիել. երթալ։
Սամլիկարել. շինել։
Սօլիկարել. խօսիլ։
Բանել. ասել։
Սընքել. իմանալ։
Լեքել. տեսնել (Look. անգղ.)
Մանկել. կամիլ։
Փարել. զգենուլ։
Նկալել. մերկանալ (Nackt,
մերկ. գերման.)
Վեսել. նստիլ.
Նկլել. ելանել։
Ավել. գալ.
Նասուհել. փախչել։
Վչալել. առաքել։
Զուչել. կռուել։
Բարբարուալուիլ. ընդդիմա-
նալ.
Կուրել. հարկանել։
Մարկարել. սպանանել։
Մուլիլ. մեռանել։
Մանճուհիլ. մնալ։
Պանթել. կապել։
Ուփլել. բանալ. քակել։

## ԹՈՐԹՈՒՄ

Ըստ հիւսիսոյ արեւելից գաւառին Կարնոյ՝ անցեալ փոքր մի անդր քան ըզգիւղն Գզըլքիլիսէ, ակներեւ տեսանի սահմանն որ բաժանէ զԿարին 'ի Թորթումայ՝ ուղղագիծ բարձրութեամբ գետնոյն. յորմէ և անդր ամենայն ջուրք որ 'ի լերանց իջանեն՝ ընդ Թորթում ընթանան, զի յատակ գետնոյն և ձորոցն առհասարակ յոյժ զառ 'ի վայր իջանէ, այնպէս զի և գագաթունք լերանց Թորթումայ չհաւասարեն գետնոյ սահմանագլխոյն. յորմէ դիւրաւ գուշակի բարձրութիւն Կարնոյ գաւառին, և հիացուցանէ զտեսանելիսն անընդմիջական այլատարազութիւն բնութեան կրկին գաւառացդ, առաջնոյն ցորենոյ և գարւոյ առատութեամբ միայն պարծեցեալ, այլովն ամենայնիւ յոյժ ստորին գոլով: Իսկ երկրորդս տեսարան յանդիման առնէ այնպիսի. յորում 'ի բազմակերպ զանազանութենէն չզգայ ոք տաղտուկ բնաւ. զի եթէ դաշտորէից ոք ցանկանայցէ՝ ոչ սակաւս գտանէ անդէն, ոչ ամենեւին տափարակս այլ մանր և վարկպարազի բլրակօք զուարճացեալս. և եթէ ձորոց և խոխոմից, առուակաց և կարկաջասահ գետոց ուրուք իղձ լինիցի՝ անբաւս տեսանիցէ: Զե 'ի սահման հասեալ բլրազարդ դաշտի՝ ընդ առաջ լինին ձորք փոքունք, զուարճալիս առ կողիւք ունելով խիտ առ խիտ դարեւանդս, ճանապարհ հորդեալ հեղասահ ջրոց օձապտոյտ ընթացիւք, որպէս ինչ բնութեանն դիրս ներգործեալ է 'ի նոսա: Մինչեւ անցեալ ընդ սակաւս 'ի բազմութենէ մանունց այտի ջրոցդ, բացեալ լինի ընդ մուտս մանրաձորոցն մեծն այն և լայն ձորամէջ, ընդ որ համանուն գետն Թորթում մանուածաւոր խոխոջմամբ պտոյտքեալ անցանէ, պատեալ երկուստեք 'ի լերանց, ուրեք բարձր և այլուր խոնարհ դիրիւքն, ուրեք 'ի թփոց և 'ի մայրեաց անտառացեալ, և ուրեք խոտաւէտ արգաւանդութեամբ յարօտ պաճարաց: Հասեալ 'ի միջոց գաւառին այլ տեսարան ահեղ ակներեւ լինի. լերինք ապառաժք ամենեւին լերկ 'ի դալարւոյ և 'ի դոյզն փոշւոյ՝ ուղղաբերձք մինչեւ ցգագաթունսն. այլ ախորժելի թէ ոչ տժգոյն դեղնութեամբ երեւէին. ոմանց 'ի դոցանէ մասն մի վերուստ 'ի վայր պատառեալ, քանզի դիւրահերձ է և ոչ կռանելի բնութիւն քարանցն այնոցիկ, թեքեալ կայ առ 'ի կողաց լերինն. և ոմանց դարձեալ մասն 'ի գագաթանէն զերծեալ ցցեալ է արտաքս քան զերեսս լերինն. և այլում բովանդակ զանգուածն հերձոտեալ 'ի չերտս չերտս կամարասեանց շինուածոց նմանեալ: Տեսանին և այլք կիսով չափ բարձրութեանն կամարաձեւ խորտակեալ անկեալ 'ի վայր, վերնոյ մասինն անզերծ արձանացեալ 'ի տեղւոջն: Եւ գլուխ ահաւոր տեսարանացդ, զի յանհնարին բարձրութենէն բազումք 'ի քարալերանցդ զերեսօք իւրեանց վերուստ 'ի վայր 'ի մասունս մասունս խորտակեալ անկեալ են 'ի վերայ ճանապարհին անհեթեթք մեծութեամբ և դիզեալք զմիմեամբք, իբրու թէ ակներեւ կարդեսցեն զառասպելեալ Տիտանայն քարակուիւս: Արհաւիրք պատեն զանցաւորս յահեղ տեսարանացդ, մանաւանդ առ ոտիւք երկնաբերձ քարալերանցդ, զի և չիք այլ արահետ ճանապարհ. սակայն 'ի միւս կողմն դարձուցեալ

զհայեցուածսն՝ նոր 'ի նորոյ ոգևորի ցանկալի տեսարանօք ծառոց և պարտիզաց ։ Որպիսի հեշտական տեսիլ արդարև վայրացն փափկութիւն՝ որով ճոխացեալ են ամենայն ձորամէջք գաւառին, մանաւանդ լայնարձակն այն հովիտ մեծի գետոյն. քանզի 'ի ստորոտէ լերանցն մինչև ցգետեզրն երկուստեք զարդարեալ են պտղատու ծառատնկովք, և երեսք գետնոյն կարճաբուռն սիզովք կանաչացեալ։ Արգասաւորութիւն պտղատու ծառոցն 'ի վեր թուի քան զսովորականն. հիացքանչ իմն է ծիրանեացն բազմութիւն, ակաղձուն պտղովքն ոսկեգունիւք ծանրացեալ 'ի գետին խոնարհեալ։ Նմանօրինակ և բալ և հուն, բազմատեսակ շլորենիք, և թթենիքն անբաւ առատութեամբ. իսկ ընկուզենեացն չիք թիւ և համար, այլ խաղող սակաւ յոյժ ։ Թորթում պտղաւէտութեամբն շտեմարան եղեալ կարնոյ, ինքն զուրկ է յարգասաւորութենէ ցորենոյ. զի չկան նորա ընդարձակածաւալ դաշտորայք, և 'ի սահմանակցութեան անդ կարնոյ՝ ուր չգոն խիտ առ խիտ լերինք որպէս 'ի ստորին կողմն գաւառին՝ մեծաւ մասամբ արօտք են անասնոց. և բազում ուրեք ճահիճք 'ի բազմութենէ գետակաց որ 'ի լերանց իջանեն և որ առ տեղեաւն բղխեն 'ի բլրոց. Նմին իրի բազումք 'ի գիւղօրէիցն գարեհացիւ շատանան ։

ՋՈՒՐՔ. — Ընդ առատութիւն ջուրց և ընդ պատուականութիւն՝ ոչ ումեք 'ի գաւառացն նախանձի Թորթում. զի գետն մեծ և որք 'ի ձորոց իջանեն գետակք՝ ոռոգանեն առ հասարակ զերկիրն. իսկ 'ի ժամանակի երաշտութեան ճարտարեն այսպէս. յանդաստան կամ 'ի պարտէզ՝ զոր ոռոգանել կամիցին, զընթացս միոյ 'ի գետակացն խոտորեցուցեալ և առուակս բաժանեալ 'ի զանազան առաջս՝ լիով ոռոգանեն ։ Բաց 'ի ջրոյ գետոցն բազում ուրեք կան ինքնաբուխ աղբերք, նա և 'ի գետեզերսն որիշ 'ի գետոյն. որք ականակիտ ցրտութեամբն և պատուականութեամբ գերազանցեն յոյժ յոյժ քան զայլս 'ի ջրոց ։

ԼԻՃՆ ԵՒ ՋՐՎԷԺ. — Մեծի գետոյն Թորթումայ անցեալ ընդ ձորս մանուածաւալ ընթացիւք և տակաւ մեծացեալ 'ի գետակաց որ երկուստեք ընդ ձորամէջս լերանց անցեալ խառնին 'ի նա, երթեալ մինչև հանդէպ Իս գեղջն լճանայ. և այլ տեսարան ահաւոր բանի քեզ անդ. բարձրաբերձ լերանց երկուստեք դիմարգել կանգնելով լճի մեծի, զորոյ զխորութիւն չափեալ աւանդեն երբեմն 105 գրկաչափ լարիւ՝ և ոչ գտեալ զյատակն. երկայնութիւն նորա երեք ժամ և լայնութիւն հազիւ կիսաժամ. եզերք նորա քայլաչափ մի առ 'ի ներքս և ահա խորանդունդք են, որպէս զի թէ յանկարծ ոտք ուրուք գլթեսցին՝ անզերծ ըմբռնի ։ Արդ 'ի լճէն այն կամ 'ի վիհէն անդնդախոր հոսեալ համօրէն գետոյն մեծի, 'ի հանդիպակաց ծայրէն՝ ուր երկուստեք լերինքն բլրացեալ և դաշտանան, անձկացեալ վերստին 'ի չափ լայնութեան գետոյն, և քառորդ մի ևս ընթացեալ մինչև ցքարափն, անտի ահեղ խոխոջմամբ թափի 'ի վայր իբրև 'ի քառասուն մեդրաչափ բարձրութենէ. և ահա անդ լրումն է ահեղ գեղեցկութեան բնութեան, և յափշտակին միտք 'ի զնին համօրէն միանգամայն փրփրադէզ կուտակացեալ գետոյն՝ վտակ առ վտակ անհատահոս խաղացմամբ և հեղեղաբար ընթացիւք վազելոյ, սաստկաձայն շառաչմամբ վիժանացն 'ի քարափանցն և ընդ քարայատակն բաղխելոյ, և անսպառ ցնդմամբ ցօղատարափոյ՝ իբրև զծխոյ կամ

գոլոշեաց ընդ այերս 'ի վեր և շուրջանակի զառեղեաւն՝ 'ի ցայտից ջուրցն հիւլէատիպ մրրկեալ յօդս։ Իսկ հոսանք ջուրցն գետացեալ վերստին՝ անցեալ գնան ընդ հիւսիս՝ յԱրդուին, և անտուստ 'ի Պոնտոս։

ԱՂԱՀԱՆՔ. — Երկու աղահանք են 'ի գաւառիս Թորթումայ, մին քարաղի մօտ առ գիւղն Բաայաք, և միւսն ջրաղի 'ի Պար գեղջն. զերկրորդիս զնմանօրինակ սառուցանելոյն ստորագրութիւն հատուցաք 'ի գաւառին Կարնոյ. իսկ առաջնոյն ոչ նոր ինչ տեսիլ է կամ օտար յայլոց աշխարհաց, ուր իցեն լերինք աղի, նոյն գունակ և աստ հատեալ են անցք յաղահանսն և գործաւորք աշխատին նգօք և մրճովք խարխալել զհատորս աղի։ — Զհրաշալիս բնութեան և զօրս երկրագործին քրտամբք 'ի կատարումն հասին՝ ստորագրեալ մեր, տեսցուք և զօրս 'ի ձեռնարուեստէ զարմանալիք։

ԲԵՐԴՈՐԱՅՔ. — Բերդից ահաւորութիւն 'ի Թորթում կարծեմ զանցանէ յոյժ քան զայլոց տեղեաց. որոց թէպէտ և չիցէ ընդարձակութիւն մեծ, կամ պարըսպաց բարձրութիւն կամ ստուարութիւն քարանցն և որ այլ ևս այսպիսիք, այլ զի յատակ նոցա յորոց վերայ հիմնեալ են, դարաւանդք են քարալերանց ահեղ բարձրութեամբ և վախիւք շուրջանակի. 'ի կողմն մի վերելս գտեալ 'ի բնութենէ կամ 'ի ճարտարութենէ ձեռաց և լիր արկեալ մինչև ցգագաթունսն հիմն արկեալ է նոցա. որպէս զի եթէ անցք վերելիցդ կալցին միանգամ և քաջ պաշտպանեսցին՝ չիք հնար թշնամւոյ կռուան ուսից ունել առ տեղեաւն, քանզի և թնդանօթ կամ այլ գործի պատերազմաց սասանել ինչ ոչ կարեն ապառաժ հիմանց նոցա։ Ոմանց 'ի բերդիցդ գետնափոր ուղիք կան իջանելոյ 'ի ներքուստ յեզր գետոյն վասն ջրոյ 'ի ժամանակի պաշարման. զի բազումք 'ի նոցանէ 'ի գետափն կան և յանցս արահետ ճանապարհի. որպէս զի թշնամւոյն անհամարձակելի իցէ անցանել անգամ առ տեղեաւն. սակայն այժմ անբնակ 'ի մարդկանէ են դղեա առ հասարակ։ Բերդորայքդ յանուանէ գիւղիցն յորս կան՝ և կամ ոչ շատ տարակաց են 'ի նոցանէ՝ անուանակոչին, որպէս Ընկուզկայ բերդ, Էշկիձորու բերդ, Քիւչիւքբաէրէի բերդ, Աղջրկու բերդ, Ղալէ տիպի և որ այլն ևս։ Այլ գերազանցէ յոյժ քան զդոսա բերդն Թորթումայ յոր անուն կոչի և գաւառն և 'ի ստորև բերդին գիւղն, աւանացեալն երբեմն որպէս պատմեն, և արդ մի յաղքատին գիւղօրէից՝ տամբք իբրև քսանիւք։ Մեծատարած է բերդս այս քան զայլս և ահեղ, հիմնացեալ յեզր քարափանն որ առ գետոյն, արկեալ պարըսպացն ըստ խոտորնակ ձևոյ քարաժայռին. առաջին դուռնն 'ի հարաւոյ է, յորոյ 'ի ներքս կային այլ և այլ քարակերտ շինուածք և մատուռն մի, այլ արդ առ հասարակ կործանեալ։ Իսկ անտի զառ 'ի վեր ուղի աւերակացն առաջնորդէ 'ի ներքնաբերդն, որոյ պարիսպք շուրջանակի անաւրատ կան. և 'ի հիւսիսոյ կողմանէ արտաքուստ պարսպին են քարաշէն լայնանիստ աստիճանք աճանդրոց անյարկ՝ 'ի մեծէ բարձրութենէ անտի մինչև յեզր գետոյն, ուրանօր կան երկու հնաշէն բաղանիք։

ՎԱՆՈՐԱՅՔ ԵՒ ԵԿԵՂԵՑԻՔ. — Մինչդեռ շէն էր երկիր Թորթումայ և ծաղկեալ քրիստոնէական կրօնիւք՝ շինեցան կրկին վանորայքն հրաշակառոյցք. մին կիսաժամու հեռի 'ի գեղջէն որ այժմ անուանեալ կոչի Իօշք, և միւսն 'ի գիւղն Խա-

խոր. իսկ եկեղեցիք և մատրունք, նշանաւորք և աննշանք ոչ սակաւք: Ժամանակ շինութեան նոցա անծանօթ մնայ առ այժմ, զի արձանագրութիւնք նոցա առհասարակ վրացի են: Մնայ մեզ ուրոյն ստորագրել զնշանաւորսն:



ԽՕՇՔԱՅ ՎԱՆՔ. — Առաջին՝ որ ասի Խօշքայ վանք, կամ լոռ վանք, որպէս կոչի և 'ի Տաճկաց, շինեալ է 'ի վերայ բլրաձև տափարակի զորով պատեալ են բարձունք և առ ստորոտ բարձանց պտղաւէտ ծառաստանք և ինքն 'ի միջավայրի նոցին ամբարձեալ: Շինուածոյն ձև զարմանալի է յոյժ և հոյակապ և ահեղ. կիսաբոլորն կամ թէ ասել խորշ խորանատեղւոյն, որ մի միայն է, հասեալ է մինչև ցբարձրութիւն եկեղեցւոյն. 'ի նմին բարձրութեան են և երկոքին թևքն հիւսիսային և հարաւային, նոյնպէս և միւս կողմն որ երկայնեալ ձգի յարևմուտս կոյս: Ի հաւասար բարձրութեան չորից կամարաձև կողմանցդ՝ առ վերին ծայրիւքն շրջանակ ածեալ բոլորշի զոր վերամբարձ ունին չորեքին սիւնքն ահեղ մեծութեամբ, և 'ի վերայ շրջանակին ամբարձեալ կայ կաթողիկէն հոյակապ ուղղաբերձ ձևով, պատուհանս երկայնաձևս ունելով շուրջանակի, և ապա յամե-

նայն կուռէ 'ի մի ամփոփեալ և աւարտեալ 'ի սրածայր։ Ի ներքին կողմն շրջանակին, այսինքն է ընդ մէջ նորա և կաթողիկէին, ճեմելիք կան շուրջանակի։ Առ խորանաւն երկուստեք աւանդատունք են կրկնայարկք յարևելս կոյս. և դարձեալ այլ աւանդատունք ընդ հիւսիս և ընդ հարաւ առընթեր կրկին թևոցն. և 'ի նոցանէ քարեղէն սանդղօք յերկրորդումն անցեալ և անտի 'ի վերնայարկս առաջնոցն։ Երկուստեք արևմտեան թևոյն են այլ ևս կամարակապ սենեակք կամ պահարանք այլ և այլ ձևովք, 'ի հիւսիսայնոցն ոմն երկայնաձև և այլ ոմն քառակուսի և սիւնազարդ. և 'ի հարաւայնոցն ոմն քառանկիւնի և առ նովաւ գաւիթ փոքր ընդ որ մի 'ի մտիցն է եկեղեցւոյն, և առընթեր նորա միւս ևս սենեակ սիւնազարդ քանդակագործ պատկերօք և զարդուք 'ի սիւնսն։ Չորս դրունք են եկեղեցւոյս, մի զորմէ արդ խսկ ասացի, և երկուք ևս ընդ հիւսիս և ընդ հարաւ 'ի ծայրս թևոցն, առ որովք սիւնազարդ հովանոցք են յարկածածուկք կամարաշէնք. և չորրորդն է աւագ դուռն յարևմուտս, և զուգահաւասար երկայնութեամբ որմոյ կողմանդ՝ այլ որմնածեալ է 'ի հանդիպոյ, անջրպետ 'ի մէջ ունելով չորս և աւելի մեդր և կամար ածեալ 'ի վերայ, թէպէտ կործանեալ այժմ։ Արտաքին երեսք որմոց եկեղեցւոյն երկուստեք խորանին խորշ գործեալ են անկիւնաւոր՝ հարուստ մի բարձրութեամբ, առ վայելչութիւն թէ առ այլ ինչ չգիտեմ ասել. նոյն ձև է և երկուստեք կրկին թևոցն հիւսիսայնոյն և հարաւայնոյ։ Ի հարաւային կողմն ուր աւարտի որմն յարևելս կոյս՝ 'ի վերայ ստուար վիմի կան բարձրաքանդակ պատկերք փառահեղ զգեստուք արևելեայց, և գլխարկ նոցա գտակաձև խոր և անփաթոյթ. 'ի ձեռին միում 'ի դոցանէ տաճարաձև շինուած մի, որ թուի պատկեր եկեղեցւոյն լեալ և ինքն շինող նորա անշուշտ։ Կան և յայլս 'ի կողմանց պատկերք Քրիստոսի և հրեշտակի և արծւոյ. այլ ամենայնն գուրկ 'ի ճարտար արհեստէ անդրիագործութեան. նոյնօրինակ և որ 'ի ներքս կան մնացորդ նկարածոյ պատկերաց սրբոց յորմն խորանին։ Եկեղեցիս 'ի ձեռս Տաճկաց է այժմ. որոց զհարաւակողմն թևն դուռնաքեայ որմով պատեալ 'ի ներքուստ և յարկեալ, և խցեալ զդուռն այնր կողման, վճարեն զաղօթս իւրեանց։



Քարընկէց մի հեռի յեկեղեցւոյդ յարևելս հիւսիսոյ այլ հոյակապ շինուած կայ, զոր յաւանդութենէ խոհարան ասեն լեալ վանացն. յերկուս մասունս բա-

*ժանի չինուածդ. առաջինն մեծ երեսուն մետր երկայն և վեշտասան և կէս լայն. երկուստեք երկայնութեան նորա որմնադիր սիւնք են ութ, կամարաւ կցեալ առ միմեանս իւրաքանչիւր կարգին. այլ յարկ նորա փլեալ է։ Իսկ երկրորդն փոքր՝ և տափակաձև կամարն առկաւին անկործան և անսասան. զսա Nedani կոչեն, յորում և են գետնաթաղ բրուկք։ Ընդ ձոր մի արևելեան կողման եկեղեցւոյն՝ գետակ իջեալ 'ի լերանց անցեալ գնայ։ Ցարձանագրաց եկեղեցւոյն շատք եղծեալ են. քանզի համբերէն չինուածն ոչ միայն 'ի կակուղ քարանց է դեղնագոյն, այլ զի և գրուածքն նկարածոյ են կարմրաներկ գունով. իսկ վիմագրանգակ և ոչ մի. որ յանձրևոյ պատսպարեալն է, անեղծ կայ ցարդ. և որ այնպէս չէ, մի 'ի քառանից հազիւ նշմարի. զի և քարն՝ յորոյ վրայ գրեալն են, զերեսօքն չերտ չերտ 'ի բաց զերծեալ է 'ի խոնաւութենէ օդոյն։ Բայց կարևոր արձանագիրն անեղծ կայ 'ի վերայ հարաւային թևոյ դրանն արտաքուստ, այն է (Թիւ Ա.) յորմէ ուսուցի և ժամանակ չինութեանն և չինողն։ Աւադիկ արձանքն՝ զոր հանեցաւ մեզ նոտրեալ և թարգմանեալ բարեկամ մեր քաջ վրացէան Գրոսէ, և մեր 'ի հայ փոխեալ կարդեսցուք զկնի բնագրին։*

Ա. მოწყალებითა ღთისაჲთა, რომელი სცავს ყოველთა მოშიშთა მი-
სთა და წარუმართებს მოყვარეთა სახელისა მისისათა ყოველთა საქმე–
თა კეთილთა. ამის წმიდისა სამებისა სარწმუნოებითა, და მეოხებითა
წმიდისა დედოფლისა ჩვენისა ღთის მშობლისაჲთა. მადლითა წმიდაჲსა
ძელისა ცხოვრებისაჲ–
თა, შეწევნითა და მეოხებითა დიდებულისა ნათლის მცემელისაჲთა, და
ყოველთა წმიდათაჲთა, რომელნი უკუნითგან სათნო იყვნეს ღმერთსა.
ამათ ყოველთა
წმიდათა სადიდებელად და საქებელად იწყეს ღთივ-გვრგვნოსანთა მე-
ფეთა ჩვენთა შენებად ამის წმიდისა საყდრისა, რათა ამას შინა ალე-
სრულებოდიან დღესა–
სწაულნი და შეიმკვებოდიან კსენებანი წმიდათა, ვითარცა წერილ არს.
კსენებასა წმიდათა ეზიარებოდეთ: ამათ ყოველთა წმიდათა სურვილითა
ამათ დიდებულთა მეფეთა ჩვენთა უშურველ ყვნენ საფასენი წარმავალნი
წარუვალისა მის–თჳს, რათა იგი ყოველნი წმიდანი შემწედ მოეგნენ
და ღმერთ–მან შეეწივნეს ორთავე
ცხოვრებათა: მალითა ღთივ–კურთხეულისა ᲐᲓᲐᲠᲜᲔᲡᲔ კურაპალატცა

ხათა, ბაგრატ ერისთავთა ერისთავ-მან, დავით მაგისტროს-მან, სამება-მან წმიდა-მან

სამნივე დაიფარენ მარჯვენითა თჳსითა, და ადიდენ ორთავე ცხოვრე-ბათა. და მე გრიგოლ ღირს მყო მსახურებასა ამას მათსა ღთისა მიმართ, და მე ვიყ—

აგ სა მესა ხედა მდგომი, და არწმუნა ღმერთ-მან გონებასა მათსა ერთ-გულობაჲ ჩემი მონისა მათისაჲ: ესე იყო გალატოზთა და მოქმედთა მიზდი, და აზნაურთა მექვემე—

თაჲ, რომელ წელიწადსა წარეგებების დრამაჲ :ჳ̃: ათასი. ღვინოჲ ფასი :ჭ̃: რკინაჲ ლიტრა :ჩ̃: ხვარბალი ერივი :ს̃:მ̃:ი̃: გალატოზნი და ხუროჲ და მჭედელი რომელ მარადის შვრებო—

და :ფ̃:ი̃: კარი რომელი ქვასა კრებდა :ლ̃: ჯორი და სხვაჲ აზნაური რომე გრიგოლ წმიდით სპონდიკსა კრებდა :ლ̃: სხვაჲ აზნაური რო-მელს . . . . და :ფ̃:

ჲ და...ერი და მოქმედი :ჳ̃:

---

ბ. + იესო ქრისტე. მეოხებითა
წმიდისა ღთის მშო-
ბელისაჲთა და
წმიდისა იოვანე
ნათლის მცემე-
ლისაჲთა და
წმიდისა მელისა

ცხოვრებისაჲთ-
ა და ყოველთა წმიდა-
თაჲთა დაიდენ
მეფენი ჩვენნი წინაშე შ-
ენსა მამენე
ბელი ამის ეკლ-
ესიისანი ბაგრ(ატ)

---

გ....ნ. განვაშენე და შევკაზმე.. წმიდისა წინა-მორბედისაჲ საფასითა სულ-კურთხეულისა ჯოჯიკ პატრიკისაჲთა. აკურთხენ უფალო, ადიდენ ქორონიკონსა სნვ ბერძ(ენთა)....

---

Դ. ქრისტე მეო ღთისაო, ადიდენ .... მონანი შენნი ბაგრატ და დავით
ორსავე ცხოვრებასა. წმიდაო ნათლის მცემელო, მეოხ და მფარ-
ველ ეყ^ავ აზ-
ნაურნი და მსახურნი მათნი. დაჳცავნ მამაჲ მიქელ და მამაჲ ჳვანე, და
გრიგოლ ყოვლისაგან ბოროტისაგან.

---

Ե. წმიდაჲ მარინე. წმიდაჲ ერინე. წმიდაჲ ეკატერინე.

---

Զ. ✠ მეფისა ნენა ბაგრატ ეჭელოავთალ ენ თავსა.

---

Է. წმიდაჲ იაკობი მმაჲ — წმიდაჲ პეტრე. წმიდაჲ პავლე — უფლისა.

---

Ը. ....მშობელთა ჩვენთა საა...
....ალაცთა და მავისტროს...
....ლო და მაღ და...
....მდე წინაშე შენსა გ...

---

Թ. ადიდენ მეფენი ჩვენნი.

Ժ. წ. მონაჲ...
და ერისთავთ მაღს...
დიდენ...
(ალმაშენე) ბელი ამის წ—
(მიდისა) ეკლესიისაჲ ×

---

*Թիւ Ա. ի վերայ հարաւային դրան եկեղեցւոյն.— Ողորմութեամբն Աստուծոյ որ պահէ զամենայն երկիւղածս իւր, և յաջողէ սիրելեաց իւրոց յամենայն գործս բարութեան հաւատով (Սրբոյ Երրորդութեան), բարեխօսութեամբ Թագուհւոյ մերոյ Սրբոյ Աստուածածնի, շնորհիւ կենարար փայտին, օգնականութեամբ և միջնորդութեամբ փառաւորեալ Յ. Մկրտչին, և ամենայն սրբոց որք 'ի սկզբանէ հաճոյ եղեն Աստուծոյ, 'ի փառս և 'ի գովեստ սրբոցս ամենեցուն. սկիզբն արարին աստուածապսակ Թագաւորքս մեր շինութեան սրբոյ տաճարիս, 'ի կատարել զտօնախմբութիւն և զյիշատակս սրբոցն, որպէս և գրեալն է, եթէ Հաղորդեցարուք 'ի յիշատակս սրբոց. որոց ամենեցուն ըղձակերտք գոլով 'ի պաշտօն՝ գերափառ Թագաւորքս մեր, ոչ խնայեցին յինչս երկրաւորս, երկնաւորին ակն ունելով՝ օգնականութեան սրբոցս այսոցիկ և բարեխօսութեան առ Աստուած 'ի կրկին կեանս. օրհնեալն յԱստուծոյ Ատրներսեհ կիւրապաղատ, Բագարատ իշխանաց իշխան և Դաւիթ Մագիստրոս. որոց հովանի լիցի ամենասուրբ Երրորդութիւնն և բարձրացուսցէ կրկին կենօք։ Եւ զիս զԳրիգոր արժանի արասցէ կալ 'ի նոցա սպասու աստուածահաճոյ ձեռնարկութեանս, որում կարգեալ եղէ վերակացու. քանզի հաճոյացոյց Տէր առ նոսա զհաւատար-*

*մուծիւն ծառայիս Նոցին։ — Եւ այս են վարձք քարագործաց և աշխատողաց և գրաստուց բեռնակրաց, որք լինէին մատակարարին. ամի ամի ԻՌ դրամ. ԵՌ գինւոյ. երկամթոյ լտերս Ծ. ցորեան ՄԽ գրիւ. թիւ քարագործաց, հիւսանց և գարբնաց որ հանապազօր գործէին ՃԿ (կամ Ը.) եզինք քարակիրք Լ. ջորիք և այլ բեռնակիր գրաստք Լ, որք բերէին զ(սպոնգիկ?) 'ի Ս. Գրիգորէ. դարձեալ գրաստք բեռնակիրք.. Ճ.. Կ... և գործաւորք Ջ։*

Բ. Յաչակողմեան դրանդւոյ. — *Յիսուս Քրիստոս, բարեխօսութեամբ Սրբոյ Աստուածածնին, և Սրբոյ Կարապետին, և Սրբոյ կենարար փայտին և ամենայն սրբոց բարձրացո առաջի քո զշինողս սրբոյ եկեղեցւոյս զթագաւորսն մեր, զԲագարատ...*

Գ. Ի գօտւոյ խորանատեղւոյն. — *Շինեցի և զարդարեցի զ՚(մատուռն?) Սրբոյ կարապետիս արդեամբք ամենօրհնեալ Ջօջկայ պատրկի, Տէր Աստուած օրհնեա և բարձրացո զնա։ Ի Թուիս (զատկական) ՄԾԶ (1036), և Յոհնաց...*

Դ. Առ պատուհանաւ խորանին արտաքուստ. — *Քրիստոս որդի Աստուծոյ փառաւորեա զծառայս քո Բագրատ և Դաւիթ կրկին կենօք։ — Ս. Յով. Մկրտիչ, լեր բարեխօս և օգնական ազատաց նոցա և ծառայից, և պահեա յամենայն չարէ զհայր Միքայէլ, զհայր Յովհաննէս ... և զԳրիգոր։*

Ե. — *Ս. Մարիանէ. Ս. Եւինէ (կամ Հեղինէ). Ս. կատարինէ։*

Զ. — *Բագրատ ... Թագաւորի։*

Է. — *Ս. Յակովբ եղբայր Տեառն. Ս. Պետրոս. Ս. Պօղոս։*

Ը. Ի ճակատ աւագ դրանն, մնացուած յ՚ 30 տողից. — *... ազգականաց մերոց ... կուրոպաղատաց և մագիստրոսաց ... մինչև յաւիտեան ... առաջի քո։*

Թ. Առ քանդակեալ պատկերօք. — *Բարձրացո զԹագաւորս մեր։*

Ժ. Ի գլուխ պատկերացն. — *Ծառայ ... իշխանաց ... բարձրացո ... որ շինեաց զտաճարս այս սուրբ։*

ԽԱԽՈՒԱՑ ՎԱՆՔ. — *Երկրորդ վանք Թորթումայ է 'ի գիւղն Խախու, 'ի ղալարագեղ հարթայատակ դաշտավայրի, շրջապատեալ ցածագոյն պարսպաւ. առ որով անցանէ 'ի հարաւոյ գետակ կարկաջասահ։ Արտաքին տեսիլ եկեղեցւոյն նոյնաձև է նախագրելոյդ, մինչև կարծել զերկոսեան միոյ ճարտարապետի ձեռին գործած. այսու և եթ տարբերեալ 'ի նմանէ, զի սա փոքր է քան զնա, և աւանդատունքն երկուստեք խորանին միայն և ոչ աւելի. այլ 'ի հիւսիսոյ ըստ*

օրինակի տաճարոյն և տրա կան պահարանք. կաթողիկէն, կամարքն և սիւնքն չորեքին նմին համեմատ. իսկ դուռն մի միայն և 'ի հարաւոյ կուսէ։ Ի դրանէ անտի ընդ երկայնութիւն կողմանն մինչև ցորմն արևմտակողման գաւիթ գործեալ է քարայատակ և կամարայարկ, հանդիպակաց կողմանն հաստատեալ 'ի վերայ սեանց։ Առ երի դրանդ բարձրաքանդակ պատկերք կան անարուեստք, և առ նոքօք վրացի արձանագիր վիմափոր և տձև. յորմէ եղծեալ և մաշեալ չափք 'ի տողիցն՝ սակաւ ինչ մնայ, յորմէ և գուշակի շինողին կամ բարերարի՝ հաստատել ազգայ.

...ღთისა... ...ძლავი... ...(დავ) დმვ...

և 'ի ներքս յեկեղեցւոջն 'ի վերայ աջակողմեան սեանն որ առ խորանաւն՝ են այս տառք հայ և վրացի.

✠ იესო ...და უხვ– ...ა...

ՍԲ Գ ՅԺԷ. որ իցէ Թերևս սուրբ Գրիգոր, և Թիւն Հայոց (868 ամ Քրիստոսի)։ Ի պատմութեան Վրաց շինող եկեղեցւոյն խախուայ ասի լինել Դաւիթ կուրապաղատ որդի Բագարատայ իշխանապետ Վրաց յամս 876–881. կամ մեծն Դաւիթ կուրապաղատ յելս Ժ դարու։

Այս հոյակապ եկեղեցի ևս 'ի Տաճկաց փոխեալ է 'ի մզկիթ։ Ի շրջապատ պարսպին կան այլ ևս մատրունք տասնիւ չափ 'ի հարաւոյ, յարևելից և 'ի հիւսիսոյ, ոմանք որմակից եկեղեցւոյն և այլք զատուցեալք անտի և յիրերաց. և ամենայնն կամարաշէն և ոչ կաթողիկէիւ։ Քառորդաւ հեռի յեկեղեցւոյն յարևելս կոյս են 'ի մէջ պարտիզաց և այլ երկու և երեք մատրունք գեղեցկաշէնք և մեծադոյնք քան զորս առ եկեղեցեաւն կան, և են արդ շտեմարանք յարդի և խոտոյ և կամ հօտից գոմ։

ԷԳՐԷԿՈՒ ԵԿԵՂԵՑԻ. — Երրորդ եկեղեցին է 'ի գիւղն Էգրէկ, շինուած քառակուսի համակ 'ի կոփածոյ սեաւ քարանց, և 'ի վերայ կաթողիկէ. անարատ է եկեղեցիս ամենայն մասամբ, զի և քար մի չէ անկեալ 'ի նմանէ. այլ 'ի հոյակապ մեծութենէ և 'ի զարմանաշէն ճարտարապետութենէ յոյժ նուազեալ քան զերկուսին նախընթացսն։ Արձանագիրք եկեղեցւոյս յոյն են և վրացի խառն ընդ նմա. առաջինս յարևմտից կայ մնացեալ 'ի մէջ գոմոյ որ կից է նմին.

Της υπεραγιας Θεοτο
κου παρ εμου ΓΡΗΓΟΡΙΟΥ πα
τριχιου και ϛρατη
γου Λαρισης και Μακ
αιδονιας υπο του ΣΥΜΠΑΤΙ
πατριχιου ΚΙΣΚΑΤΖΙ
του ιχνιι (?)

και των εντιμιων
ῳκοδομηθιδε επι Βασι
λειου και Κωνϛαντινου
των μεγαλων βασιλαιων
και αυτοκρατορων
πορφυρογεννητων. ετους
ϚΦΙΕ 6515 = 1007 ?

պատիւքն է.

Ամենասուրբ Աստուածածնի, 'ի ձեռն իմ Գրիգորի Պատրկի և զօրավարի Լարեաց և Մակեդոնիոյ, առ Սմբատաւ պատրկաւ կիսկացեաւ[1] շինեցաւ, եւ ('ի ժամանակս) փառաւորելոց վասլի և կոստանդեայ մեծաց թագաւորաց եւ ինքնակալաց ծիրանածնաց: — Յամի ՑՇԺԵ (1007 ամ Քրիստոսի):

Ի նոյն կողմն երկուստեք պատուհանին և յարեւելակողմն.

წმიდაჲ ნიკოლოზ.   წმიდაჲ მიქელ. წმიდაჲ გაბრიელ მთა-

ΜΗ   ვარ ანგელოზნი.

ΜΡ ΘΥ   (Մայր Աստուծոյ)

Ο' ἅγιος ΝΙΚΟΛ · Ով Ս. Նիկոլ

Յարեւելակողմն.

ო. მ. ყ. მან;

ΓΑΒΡΙ οἱ ἀρχ ... Ս. Միքայէլ. Ս. Գաբրիէլ հրեշտակապետք:

ԽՆԿԻՉՈՐՈՒ ԵԿԵՂԵՑԻՆ. — Զորրորդ եկեղեցին է 'ի գիւղն Խչկիձոր. և տարածութեամբ համեմատ նախընթացին, համակ քարաշէն. արտաքին գաւիթն կամարակապ փլեալ է. 'ի ներքս անեղծ կան տակաւին յորմունս նկարէն պատկերք սրբոց: Շինուած նորա է 'ի բարձրադիր վայրի, յորոյ 'ի ստորև անցանէ գետակ:

Գոն և այլ երկու կիսաւեր եկեղեցիք առընթեր միմեանց 'ի գիւղն Սխտորոտ, այլ նշանաւոր 'ի նոսա և ոչ ինչ: Բաց յայդցանէ ընդ ամենայն գաւառն Թորթումայ արտաքոյ գիւղօրէից յանմարդի տեղիս 'ի վերայ լերանց և դարաւանդից գտանին մանր մատրունք իբրու երեսուն մի. ոմանք 'ի կոփածոյ վիմաց, այլք գուղձաքեայ քարամբք, և առ հասարակ թողեալ անխնամ. ուր գուցէ ուխտատեղիք էին 'ի հնումն:

## ՄԱՍՆ ԳԱՒԱՌԻՆ ԹԱՎՈՒՍԿԵՐԱՑ

Անցեալ ըստ սահման Թորթումայ ընդ ափափայս դժուարին լերանց որ հանդէպ կան գեղջն Թեւայ, և իջեալ ընդ զառիվայր՝ յարեւելս կոյս՝ ընդ առաջ լինին սահմանք Օլթեայ գաւառի. և 'ի Դիւաձոր գեղջէ նորին անցեալ ընդ անձկա-

1 Սմբատս այս որդի Գուրգէնի, եղբօր Աշոտանուշոյ, մեռեալ է յամի 1011. Թէպէտ չիջի նա կիսկացի կոչել, այլ այլ ոք երբեւ դարու յառաջ:

դոյն նեղուց քարալերանց, Տիւնեա պիւզիւկի կոչեցեալ 'ի ռամկէն [1], և անտի
դարձեալ ժամս ինչ ընդ քարանցամէջս լերանց տանի մանուածոյ ճանապարհն
'ի գետ մի՝ որոյ պղտոր են ջուրքն 'ի դոյն դեղին կաւոյ։ Այս գետ է որ բաժանէ
զՕլթի 'ի Թավուսկերայ։ Անցեալ ընդ գետն և ժամս երկու և աւելի ևս ճանա-
պարհ արարեալ ուրեք 'ի դիւրի և ուրեք ընդ կապանս ընդ վախս և ընդ ափա-
փայս լերանց, յահեկէ ունելով զգետն կարկաջասահ, հուսկ ուրեմն ընդ առաջէ
բարձրաւանդակ խորշ մի լայնանիստ ոչ չատ 'ի խոնարհ 'ի գագաթանց լերանց,
որոյ շրջապատեալ է զնովաւ յերից կողմանց, տեղի բարձրահայեաց և յոյժ գե-
ղեցկանիստ լի պարտիզիւք պտղատու ծառոց, կոչեցեալ Իշխանն. այն ինքն է
Իշխանաց գիւղն մերոց նախնեաց։ Սակաւաթիւ են տունք գեղջն և տաճկա-
բնակ. այլ գեղեցկութեան դրիցն զուգահաւասար գտանելի հրաշակառոյց եկե-
ղեցին համակ 'ի գեղնագոյն քարանց որպէս Խօշքայն։ Արտաքին տեսիլ նորա
հանդերձ կաթողիկէիւն և ներքին չորեքին սիւնքն ահեղ բարձրութեամբ և կա-
մարքն և որմունքն և թեւք ընդ հիւսիս և ընդ հարաւ միօրինակ մրցին ընդ Խօշ-
քայ և ընդ Խախուայ հոյակապութեամբն։ Որ տեսեն զերեսին զդրսաւ՝ միոյ ճար-
տարապետի գործած համարի. և անշուշտ այնպիսի եղեալ է, և կարծեմ 'ի նը-
մին միում դարու. որ և 'ի բերանս ռամկին յաւանդութենէ լսելի լինի համա-
պատ, եթէ նուշիրէվանայ Պարսից թագաւորի երեք դստերք էին, և իւրաքան-
չիւր 'ի նոցանէ շինեաց զայդոսիկ։ Արդ այսոքիւք տարբերի սա յերկոցունց ան-
տի՝ զի արևելեան մայրորմն ծայր 'ի ծայր ուղիղ ձգեալ, և մեդրաչափ մի բա-
ցակայութեամբ անտի առ 'ի ներքս խիտ առ խիտ կարակնաձև չարեալ է սեանց
մարդաչափ և կէս բարձրութեամբ, և 'ի վերայ սեանցդ բարձրացեալ բուն խորշ
խորանին մինչև 'ի վեր. և աւանդատունքն երկուստեք խորանին ևեթ։ Ի հիւսի-
սային կողմն եկեղեցւոյն 'ի թևոյն սկսեալ մինչև ցծայր արևմտակողմանն՝ հա-
ւասար թևոյն երկայնութեան այլ պարիսպ ածեալ է և կամարաւ կցեալ ընդ
եկեղեցւոյն։ Երկու են դրունքն, հարաւայինն բաց՝ արևմտեանն խցեալ. յայս կողմն
գաւիթ կայր յառաջագոյն, այլ արդ կործանեալ է։ Իսկ նկարածոյ պատկերքն
սա առաւելու քան զնոսա, որ 'ի ներքս կան յորմունսն, թէպէտ այժմ կիսով չափ
բարձրութեանն եղծեալ. և պատմեն այսպէս 'ի ծերունեացն աւանդութենէ՝ թէ
յորժամ անց 'ի ձեռս Տաճկաց, ոմանք խղճէին մտանել 'ի ներքս վասն աղօթից
'ի տեսութենէ պատկերացն, վասն որոյ միաբան խորհրդով փայտ դիզեալ 'ի
մէջ եկեղեցւոյն շուրջանակի, և հուր հարեալ եղծանեն զպատկերսն, այլ և
մրճով խորտակեն զծեփն ցորվայր ձեռն նոցա հասանէր, կամ թէ 'ի ժամ ա-
ղօթիցն ձգէր տեսութիւն նոցա. այլ վերին կողմանքն մինչև 'ի մէջ կաթողի-
կէին՝ թէպէտ զերծան 'ի հրդեհէն, սակայն կէս մի քարամբք և կէս 'ի բռնու-
թենէ տարերաց մաշեալ են, ոչ իսպառ անհետացեալք։ Զերեցուն եկեղեցեացս
գովեստ յարմարեալ ըստ իւրաքանչիւր շնորհաց կոչեն զմին գեղեցկահայեաց,
զմին գեղեցկադիր, և զմին գեղեցկանկար. Խօշքիւնն պագրըշը. Խախուանըն եա-

[1] Զի երկուստեք այնչափ մօտեալ են լե-
ռինքն երկմարգաչափ և 'ի վեր՝ մինչև հազիւ ծերպ
մի երևել 'ի վերուստ. իսկ 'ի խոնարհ լայնութիւնն
է 'ի չափ գետակին որ ընդ այն անցանէ. ընդ այն
են և անցք ուղևորաց։

*բըշը․ Իշխանըն Ռագըշը․ այլ չետինս արտաքին դեղնափայլ երեւելին ա-ռաւելու յոյժ քան զնոսա։ Հանդէպ հարաւային դրանն կայ մատուռն մի մեծ, զոր արդ կրպակ դարձնաց են արարեալ։ Շուրջանակի զեկեղեցեաւն տակաւին երեւին հիմունք կործանեալ որմոց հարուստ մի բացակայութեամբ, որք անշուշտ մենաստանին էին պարիսպք։ Արձանագիրք բազում էին 'ի ներքս եկեղեցւոյն նկարէնք, որ մեծաւ մասամբ անհետացեալ 'ի հրդեհէն և 'ի խորտակելոյ ծե-փոյն զորմէ ասացի, սակաւք միայն, և այնք ևս թերակատարք, զոր գգուշութեամբ ամփոփեալ եդից աստանօր․ Նոյնպէս և զոր արտաքուստ եկեղեցւոյն է աղեղ-նաձև 'ի վերայ դրանն հարաւայնոյ, և միւս ևս 'ի վերայ դրան մեծի մատրանն նոյնպէս աղեղնաձև, յորոյ 'ի վերջին տողն և հայերէն բառքն և թուականն։ Աւադիկ ուժ սոքա, հանդերձ հայերէն թարգմանութեամբ մերով։*

Ա. . . . . . . . . . . . . . . ადიდენ ღმერთმან უძლეველი მეფეთ მეფე დემეტრე ორთავე შინა ცხოვრებათა. სალოცველად მეფობისა მათისა და საქსენებელად საუკუნოდ თავის უფალ ყვეს სოფელი ლოზნი, მკვიდრი ამის საყდრისა, რომელი ყმათა რათმე უბადოთა ეშენა, სიყვა-რულისა და ერთგულებისა მიზეზითა დი . . . . . . . . . . . .

. . . . ძირა ერთგულებასავე შინა გირჩვოთი. არამედ გამიმადლა ღმე-რთმან და შეწევნამან ყოველთა წმიდათა მან რომელთა . . . .

. . . . . . . . . . . . . . დავსვა იშხანსა კათოლიკე ეკლესია წმიდისა ღთის მშობლისა და წმიდისა სჳმონისა საკჳრველთ მოქმედი-სა, ეგრეთვე მკვიდრად და შეეწირა ვითარცა პირველთა მეფეთა სულ კურთ-ხეულთა მამათა და პაპათა მათთა შემოეწირა. აწ მე მიწამან მეფობისა მათისამან ეგნატე იშხნისა მთავარ ეპისკოპოს მან, რომელი მათვე ღირს მყვეს უღირსი გივადრო გან . . . . . . . . . რომელ ად ჭნათებს. და მცირედ და უკმრად ერთგულებისა თჳსცა ეპისკოპოს მყვეს თანადვე ყოველთა საყდრის შვილთა

. . . . . მიუკნ..ნი და დისა მათისა წ . . . . . . . . . . . ძლიერთა მეფეთა დავითის და გიორგის თჳს პირველად დავკიდენით სანთელნი დღით და ღამით. ერთი მე . . . . . ა ზედა. მეორე წმი-დისა ღთის მშობელსა წინაშე კარისასა. და მესამე წმიდასა სჳმონს წინაშე

საკჳრველთ მოქმედისა. და განეწესათ ალაპი წინაღლეს წმიდისა მოწამისა თეოდორესი :ა: პარასკევი პირ მარხვისა, რომელი დიდს ამ . . . . და კიდევან მწირველნი ვაჩინეთ ორნი ერთად. ელია დის წულის შვილი ელია დეკანოზისაჲ და გრიგოლ ეგრევე

. . . კჳრიაკესა მათთჳს შესწირვიდენ მსხვერპლსა . . . . . . . . . . . . . ფალ წასვენით ესრე ვითა თჳთ მათთა დაწირულთა სანაცრელთან . . . . . . . . არს მეზვ. . . . . . . . . . . უფროს ყოველთა მეფეთა ქვეყნისათა უძლეველი მეფეთ მეფე ႣႤႫႤႲႰႤ. დაჲ მათი დედოფალთა დედოფალი ქვეყნისაჲ და ჭეშმარიტად დედოფალი ცისაჲცა ႧႠႫႠႰ. და შჳლნი მათნი ძლიერნი მეფენი ႣႠႥႨႧ და ႢႨႭႰႢႨ . . . . . . . . . . მათთა ყოველნი და მბრძოლნი მათნი, მცერნი და მიეც ცხოვრება უფალო . . . . ელისა წყობათ . . . . . . . . . . .

. . . . მოდგამნი შენნი ქვეყანისანი. ვინც ესე განგებული ჩვენი სალოცველი მეფობისა მათისა შეცვალოს, იყავნ წყეულ კრულ და შეჩვენებულ ღთისაგან დაუსაბამოჲსი, წმიდათა ათორმეცთა მოციქულთა . . . . . . . . . . . . . . ისა მადლითა, და სჳმონ საკჳრველთ მოქმედისა მადლითა. ხუთთა პატრიაქთა ჯვარითა გაუკსნელად. და ნაწილი მისი იყავნ იუდას თანა ქრისტეს განმც . . . . . . . . . ჲ ღთისაჲ და შეწევნაჲ მათ ყოველთა წმიდათა იყავნ მას ზედა. ქორონიკონი იყო . . . . .

გამოჩნდეს და მეფეთაგან თავის თჳს იჭაჯნეს, ანუ ვინ თანა მოჭაჯე მაწვევლ და გამზრახ ექმნეს ამის საყდრისაგან ლო-ზოთა გამოკვებისა თჳს ესე ზემოჲთნი კრულებანი ყოველნი სრულებით მოზ. . . . . . თ მოღვაწრნი პატრიაქნი კათალიკოსნი ეპისკოპოსნი და სხვანი მღდელმან და წალმართვე სამაველისა ანცისა გამოჩინებამდე, და სხვა მღდლმოდ არიან მათ . . . . ითა წყეულებანი ყოველნი კრულ და შეჩვენებულ სულითა . . . ხბისა დაჭრიდოს ღმერთმან ყოველნი ბრალნი მისნი ალუკოცნ . . . . . . .

---

Թիւ Ա. Ցարտաքին հիւսիսակողման եկեղեցւոյն՝ երկայնատող գրեալ. —
փառաւորեսցէ Աստուած կրկին կենօք զանյաղթն Դեմետրէ արքայից արքայ։ Ի
սակս աղօթելոյ վասն իւր և 'ի յիշատակ յաւիտենական անուան իւրոյ, աղա-
տեաց առատապէս զգիւղն Լոգնի (կամ Լագք) որ էր կալուած եկեղեցւոյս, և
արք անխիղճք ... պատճառանօք սիրոյ և հաւատարմութեան ... 'ի գրաւ ար-
կեալ էին։ Արդ շնորհիւն Աստուծոյ և բարեխօսութեամբ ամենայն սրբոց որք ...
չինեաց յիշխան (գեղջ) զեկեղեցի կաթողիկէ Աստուածամօրն և Սրբոյն Սիմէո-
նի սքանչելագործի, և նուիրեաց կալուածս որպէս տուեալ էր առաջին թագաւո-
րացն՝ հարց և նախնեաց իւրոց։ Արդ ես հող և փոշի (ծառայ) թագաւորիս՝
Իգնատիոս արքեպիսկոպոս Իշխանի? որ գտի շնորհս ... վասն սակաւ և չնչին ար-
դեանցս՝ կարգիլ եպիսկոպոս հաւանութեամբ ամենայն ուխտի մանկանց եկե-
ղեցւոյ ... և քեռ նորա ... և հզօր թագաւորացն Դաւթի և Գէորգեայ. Նախ կա-
խեցաք լապտերս վառել զտիւ և զգիշեր. զառաջինն 'ի վերայ ... զերկրորդն առ
դրանն, առաջի Սրբոյ Աստուածածնիս. զերրորդն առաջի Ս. Սիմէոնի Աքանչե-
լագործի. և հաստատեցաք առնել ագապ 'ի Նախատօնակի Ս. Թէոդորոսի յա-
ռաջնումն ուրբաթու աղուհացից, զոր .... Դարձեալ հաստատեցաք քահանայս
երկու պատարագել 'ի միում ժամու, զԵղլիա զթոռն քեռ աւագերիցուն Եղլիայ
և զԳրիգոր. և պատուիրեցաք նոցա պատարագել զամենայն կիւրակէ վասն նո-
ցին (թագաւորացն), 'ի շնորհս երախտեաց պարգևացն ... Ես տուեալ վասն
գերափառ թագաւորաց աշխարհի, անյաղթն Դեմետրեայ, և քեռ նորա՝ թա-
գուհեաց երկրի և արժանաւոր երկնից դշխոյութեան՝ Թամարայ. վասն որդւոց
նորա՝ հզօր թագաւորաց Դաւթի և Գէորգեայ. որոց տացէ տէր յաղթութիւն 'ի
վերայ ամենայն թշնամեաց և հակառակորդաց ... 'ի պատերազմունս ... ժա-
ռանգք նոցա յայսմ աշխարհի։ Արդ որ լուծցէ զպատուիրեալս առ 'ի մէնջ, զա-
ղօթս զայս՝ վասն թագաւորացս, անիծեալ եղիցի, կապեալ և նզովեալ յԱստու-
ծոյ անսկզբնականէ, յերկոտասան առաքելոցն, զօրութեամբ (Աստուածամօրն),
զօրութեամբ Ս. Սիմէոնի Աքանչելագործի, Նշանաւ հնդից պատրիարքաց, առանց
թողութեան. բաժին նորա ընդ Յուդայի եղիցի ... Քրիստոսիւ ... Օգնականու-
թիւն ամենայն սրբոց հասցէ 'ի վերայ (պահողաց բանիս)։ ... Եղև 'ի թուակա-
նիս .... Որ խնդրեսցէ 'ի թագաւորէս վասն իւր, կամ միաբանեսցի խնդրել և
ջանալ առ 'ի կորզել զգիւղս Լոգնի յեկեղեցւոյս, ամենայն անէծքդ անկցին 'ի
վերայ նորա ... նզովեալ եղիցի յամենայն քահանայապետաց, պատրիարքաց,
կաթողիկոսաց, և յեպիսկոպոսաց, մինչև 'ի գալուստ նեռինն, ... ամենայն անի-
ծիւք և նզովիւք .. կապեալ և ընդ բանիւ եղեալ 'ի հոգի (և 'ի մարմին) ... Իսկ
պլոցն՝ Աստուած լիցի պահապան և քաւեսցէ զմեղս նոցա։

ჩ. . . ღთა მადლითა და შეწევნითა წმიდისა წინამორბედისათა და
წმიდისა მამისა სიმონისათა მ . . . რლსა მეფე ვიორგი და ძლიერისა ბაგრა-
ტვისათა ბედდ მი . . .

რისათჳს ცოდვათა ჩვენთა კათოლიკე ეკლესია ოკ ... აწე ელ ... მილირ-
ხი ... ნთ შმა ...

*Բ. Զգօտեաւ որմոց 'ի Ներքուստ. — ... Շնորհիւ ... բարեխօսութեամբ սրբոյ կարապետին և Ս. Սիմէոնի ... Թագաւորի Գէորգեայ և հզօրին Բագարատայ ...*

գ. ✠ სახელითა ღთისაჲთა მე ანტონი მთავარ ეპისკოპოსმან განვაახ-
ლე და განვასრულე წმიდა
ესე ტაძარი ღთისაჲ კათოლიკე ეკლესიაჲ
სადიდებელად ბაგრატ კურაპალატისა
სალოცველად და საკსენებელად
სულისა ჩემისა და
ცოდვათა ჩემთა შე-
ნდობისა თჳს
ქორონიკონსა სნბ
დავამშენე ქალითა ი-
ვანე მორიაჲსძი-
საჲთა :

*Դ. Ի վերայ հարաւային դրանն. — Անուամբն Աստուծոյ ես Անտոնիոս ? արքեպիսկոպոս նորոգեալ աւարտեցի զկաթողիկէ եկեղեցիս ... 'ի փառաւորութիւն Դաւթի կուրապաղատի, և 'ի յիշատակ աղօթից վասն իմոյ հոգւոյս և թողութեան մեղաց իմոց : Ի զատկական թուիս ՄԾԲ (1032). Շինեցի զսա միջնորդութեամբ իւանէի Մօրախսցեան :*

ե. ✠ იესო ქრისტე ადიდე ორთავე შინა ცხოვრებათა გიორგი
მეფე და შჳლნი მათნი, ამინ :
სახელითა ღთისაჲთა მე გლახაკმან ანტონი ეპისკოპოსმან იშხნე-
ლმან განვაახლე ესე კარისა ბჭე წმიდისა
კათოლიკე ეკლესიისაჲ სადიდებელად მეფეთა გიორგი მეფისა და
შვილთა მათთა, სალოცველად სულისა ბა–

გრძე კურაპალატისა, შენდობისათჳს ცოდვათა ჩუენთაჲსა. წმიდაო
კათოლიკე ეკლესიაო შემწე და
მფარველ გვეყავ წინაშე ღთისა, და ნავთ საყუდელ გვექმენ საში-
ნელსა მა—
ს დღესა მისაგებელისასა წინაშე მსაჯულსა ყოველთ—
ასა და ღირს გვქმნეთ მოცევებასა ცოდვა—
თასა და წყალობასა ღთისასა. ვევედრები
რომელთა შემოვალთ ლოცვასა მომიკსენეთ:

*Ե. Ի վերայ հարաւային դրան. — Յիսուս Քրիստոս փառաւորեա 'ի կրկին կեանս զԹագաւորն Գէորգ և զորդիս նորա։ Անուամբն Աստուծոյ ես եղկելիս Անտոնիոս եպիսկոպոս իշխանաց, Նորոգեցի զգաւիթ սրբոյ կաթողիկէիս, 'ի փառս Գէորգեայ արքայից արքայի և զաւակաց նորին, 'ի սակս աղօթելոյ վասն հոգւոյ Բագարատայ կուրապաղատի, և 'ի թողութիւն մեղաց իմոց։ Ո՛վ սուրբ կաթողիկէ եկեղեցի, օգնական լեր մեր և բարեխօս առաջի Աստուծոյ, տեղի ապաւինի յա-հեղն աւուր հատուցման առաջի դատաւորին ահեղերաց, որպէս զի գտցուք շնորհս քաւութեան մեղաց մերոց և ողորմութեան առ 'ի յԱստուծոյ։ Որք մտանէք ընդ-սա՝ աղաչեմ յիշեսջիք զմեզ յաղօթս։*

Զ. . . ოვიდეს ამას | ლნიც ცსანი | ს | ოც და ათი | სისანი | საუკუნეთა | კლ ეე ¦ მათი | ნების | მიექ

*Զ. Անիմանալի վասն եղծմանն, և է յորմն հարաւոյ։ —*

Է. ბაგრატ | მაგისტროს  Ը. ԹՈԿ ԹՎԿԱ. . .

*Է. Յանկեան ուրեք. — Բագրատ Մագիստրոս։*

*Ը. Ի ՈՂ ԹՎԿԱ (այսպէս հայատառ, որ է 1241 ամ Քրիստոսի)։*

Թ. ✠ სახელითა ღთისაჲთა მე გურგენ მეფეთა მეფემან აღვაშენე ესე
წმიდაჲ ეკლესიაჲ
სახელსა ზედა წმიდისა ღთის მშობლისასა სალოცველად
სულისა ჩემისა. წმიდაო ღთის მშობელო ცალავარ
შექმენ დღესა მას საშჯელისასა

ესე არიან ბჭენი უფლისანი და
მართალნი შევლენან ამას.
რომელთა შემოვალთ ლოცუ-
ვისა მომიკს-
ენ
ეთ:
ქორონიკონი იყო სკვ
Հայոց Թուական Ն (ԾԵ)

Թ. Ի վերայ դրան մատրանն. — Յանուն Աստուծոյ, ես Գուրգէն Թագաւոր Թագաւորաց, կանգնեցի զսուրբ եկեղեցիս յանուն սրբոյ Աստուածածնի, աղօթել՝ վասն հոգւոյ իմոյ: Ո՛վ սուրբ Մայր Աստուծոյ լեր իմ ապաւէն յաւուրն դատաստանի. Այս դուռն Տեառն է, և արդարք մտանեն ընդ սա: Որք մտանէք՝ յիշեսջիք զիս յաղօթս: Յամին ՄԻԶ (1006). ՀԱ ԹՎԱԿԱՆ Ն...[1]

## ԲԱՍԵՆ

Յերկուս բաժանի գաւառդ 'ի Վերին և 'ի Ստորին. սա յարևելից Վերնոյն. բնական դիրքն զանազանին յիրերաց, այնու զի Վերինն ծայր 'ի ծայր համօրէն տարածութեամբն տափարակ է այնպիսի յորում չերևի և ոչ բլուր մի դուզնաքեայ՝ որ արգել հայելոյ լինիցի կողմանէ 'ի կողմն, բաց յոստոյ մի լերինն Ծիրանեաց՝ որ 'ի հիւսիսոյ երկայնեալ ձգի 'ի դաշտ անդր լայնածաւալ: Իսկ Ստորինն ոչ այնպէս է. զի Թէպէտ և չիք լեառն 'ի նմա, այլ բարձունք և բլուրք և ձորք ուրեք խիտ առ խիտ և ուրեք ցրիւ կան. ընդարձակութեամբն առաւելու սա յոյժ քան զՎերինն. այլ արգաւանդութեամբն երկրքին միօրինակ, իմա ցորենոյ և գարւոյ, որով շտեմարանք են գաւառին Կարնոյ, սակայն զուրկ ամենևին 'ի պտղոց և մերկ յանպտուղ ծառոց:

## ՀԱՍԱՆԳԱԼԱ

Գլխաւոր տեղի և աւան 'ի Վերին Բասեն, առ հասարակ պարսպապատ կրկին պարսպաւ. և է շինեալ 'ի ծայր ոստոյ Ծիրանեաց լերինն՝ զոր 'ի վերն յիշեցաք,

1 Յետին բառք և Թուականք հայերէն արձանագրեալ են. և զի յետը չարի բարաւորի գրանն հասեալ է գիրն՝ Թուի Թէրի ...Թուանիշ տառեցն, և առ 'ի զուգութիւն վրացի Թուականին, 'ի գէպ էր լինել ՆԾԵ (1006). և էր արդարև յայնմ ժամանակի Վրաց Թագաւոր Գուրգէն կամ Գորգէ

'ի զառիվայրի նորին դէպ յարեւմուտս, եւ ներքնաբերդն 'ի գագաթան քարալերին. իսկ կրկին պարիսպքն ըստ դիրից աւանին ածեալ են շուրջանակի ցածագոյն, սկսեալ 'ի թիկանց կամ յարեւելից կուսէ քարալերինն բարձու, քանզի փոքր մի եւ անդր ձգի պարիսպն՝ առ երկուստեք զառիվայր լինելոյ լերինն, տարածեալ յարեւմուտս կոյս 'ի խոնարհ 'ի վերայ դաշտավայրին։ Ջիք ուրեք յայտնի կողմանս գեղեցկադիր վայր քան զսա. մինչեւ ելեալ 'ի միջոց անդր բերդին, տեսարան ընդարձակածաւալ դաշտին Բասենոյ հիացուցանէ զաչս. իսկ եթէ 'ի ներքնաբերդ անդր մտանիցէ ոք՝ հասեալ մինչեւ ցծայր շինուածոյն 'ի վերայ անդնդախոր քարափանն կառուցելոյ՝ յափշտակեալ յիմարին միտք ընդ ահեղ եւ վսեմ բարձրութիւնն եւ ընդ անօրինակ ընդարձակութիւնն՝ յոր ձգտի տեսութիւնն. զի ոչ համօրէն վերին Բասեն միայն առաջի նորա նկարի իբրեւ 'ի հայելւոջ, այլ մասամբ եւ Ստորինն. 'ի հանդիպոյ 'ի բազում հեռաստանէ ափափայք լերանցն Թէքմանայ, եւ 'ի դաշտին գետն Մուրց եւ Երասխ մանուածաւալ ընթացիւք պտոյտքեալ։ Ջկարեմ որպէս արժանն է զվսեմութիւն վայրացն 'ի գրի հարկանել, այլ նա միայն գիտէ քաջ՝ որ անձամբ առ տեղեաւն կացեալ եւ չկամի 'ի բաց անցանել։ Ներքնաբերդն դատարկ է 'ի բնակչաց եւ ամայի. ամենայն քարակերտ շինուածք եւ գետնափոր պահարանք քանդեալ եւ կործանեալ. միայն պարիսպքն անեղծ կան։ Է անդ եւ ստորերկրեայ ճանապարհ 'ի վերուստ մինչեւ ցեզր Մուրց գետոյ որ անընդմիջաբար առ բերդիւն անցանէ, սակայն ընդ այլ աւերակսն եւ այն եւս խանգարեալ է, որ եւ արտաքուստ երեւի յանցանելն առաջի բերդին։ Արձանագիր չիք ամենեւին ոչ 'ի վերայ դրանց արտաքնոյ բերդին եւ ոչ 'ի վերայ ներքնաբերդին։ Հայազգի բնակիչք բազում էին անդ. այլ ընդ արշաւանին Ռուսաց գաղթեցին առ հասարակ մինչեւ չմնալոյ 'ի նոցանէ եւ ոչ մի. եւ արդ տաճկաբնակ է։ Տունք եւ այլ շինուածք եւ սակաւաթիւ կրպակքն ըստ օրինի գեղջկաց, եւ ոչ ինչ այլ նշանաւոր 'ի նմա։ Ելանէ աստ աղբորակ։ Ցեզերս Մուրց գետոյն առ աւանաւն երեք ջերմուկք կան, մին անյարկ եւ երկուքն գմբէթաւորք։

## ԿԱՐՍ

Ի գաւառին Վանանդայ՝ 'ի հնումն Անիփայտ եւ վերին Բասեն կոչեցելոյ, կայ քաղաքս այս 'ի ստորոտս լերանց։ Ցերկուս բաժանի, 'ի բերդ եւ յարուարձան. երկոցուն եւս մասամբ 'ի վերայ բարձանց եւ մասամբ 'ի դիւրի կալով։ Բերդն կըրկնապարիսպ է եւ ընդարձակ յոյժ, եւ որպէս զչասանդալէին հարաւային կողմանք պարսպիդ 'ի դիւրոջ նստեալ, կողմանքն արեւելեան եւ արեւմտեան տակաւ ամբարձեալ 'ի վեր որպէս ինչ դիրք քարալերինն մեծի են, երթեալ յանգին յահեղ իմն բարձրութիւն, որոյ հիւսիսակողմն 'ի պարսպէն ցյատակն ձորամէջ խորանդունդք են, ընդ որ գետն անցանէ. նոյնպիսի է եւ արեւմտակողմն. իսկ 'ի կողմն արեւելից անդր քան զպարիսպն երկայնեալ ձգի բլուրն մեծ կիսաժամու տարակայութեամբ։ Ցարեւմտակողմն 'ի գագաթան բարձու ամբարձեալ է միջնաբերդն բարձրապարիսպ եւ երկայնանիստ ընդ արեւելս կոյս։ Են 'ի նմա այլ եւ

այլ տեղիք քարաշէնք և փայտակերտք. է որ 'ի պէտս պատերազմական զինուց և է որ 'ի բնակութիւն պահնակ զօրաց, որ անմեկնելի են անտի։ Ի միջնաբերդէ մինչև ցեզր գետոյն գետնափոր ուղի կայ, այլ արդ քանդեալ խափառ։ Իսկ արտաքոյ միջնաբերդին բնակութիւնք են քաղաքացւոց 'ի մէջն անդ բուն բերդին մինչև 'ի ստորին պարիսպն. և երես նորա զառիվայր շեղեալ 'ի հարաւ կոյս՝ երևելի է ամենայն վայրն յարուարձանացն, որոց ոմն 'ի դիւրի ոմն 'ի բլրի և այլ ոմն 'ի 'ի ձորոյ սկսեալ զառիվեր ամբառնայ բլրաձև։ Յոյժ ստորին են ձևք տանցն, հողայարկք և հողածեփք, ոչ ինչ տեսիլ գեղեցկութեան ունելով ոչ ներքոյ և ոչ արտաքոյ. թող զփողոցացն տղմաշաղախ գարշութիւն յանձրևս։



Կարս

ՀԻՆ ԵԿԵՂԵՑԻՔ. — Առ 'ի նախնեաց մնացեալ նշխարք հնութեանց բաց 'ի պարըսպացն՝ են 'ի բերդին, առաջին՝ մայր եկեղեցին որ անարատ կայ ցայսօր և է 'ի ձեռս Տաճկաց. թէպէտ ոչ շատ մեծ, այլ հոյակապ «վիմարդեան արձանօք, որ» ձաքար պողովատաշ վիմօք բոլորապէս գմբէթաւորեալ պայծառ զարդուք երկ» նանման խորան », որպէս նկարագրէ Ասողիկ։ Արտաքին ձև նորա բազմանկիւն բոլորշի, այլ քառաձև է ներքինն, թև իւրաքանչիւր կիսաբոլոր և զուգահաւասար իրերաց. զգմբէթն թևքն իւրաքանչիւր փոխանակ սեանց 'ի վեր ունին՝ եր-

կայնաձև և սրածայր ըստ օրինակի արևելեան եկեղեցեաց ։ Քարինքն առ հասարակ սևագոյն են ։ Բարձրաքանդակ պատկերք կան նորա երկոտասան շուրջանակի զկաթողիկէիւն անարուեստք . և 'ի Թուոյ նոցա Թերևս կոչեն Առաքելոց եկեղեցի ։ Արձանագիր չիք ուրեք 'ի վերայ եկեղեցւոյս . սակայն առ անեցւոյն Սամուէլի յիշատակի և շինողն և ամ շինուԹեանն 'ի Թուիս ՑՀԹ (930) որ ասէ . « Արաս որդի Սմբատայ շինէ զաստուածաբնակ տաճարն զկաթողիկէ 'ի կարս » հրաշանշան յօրինուածովք » ։ Առընթեր եկեղեցւոյդ կայ և մատուռն մի հնաչէն ։ Իսկ երկրորդ և երրորդ եկեղեցիքն , որ և նոյնպէս 'ի ձեռս Տաճկաց կան , մին գմբէԹարդ է և միւսն կամարակապ . որք Թէպէտ և հոյակապուԹեամբն առաւելին են քան զկաԹողիկէն , այլ հնուԹեամբն ոչ չատ կրսերագոյնք ժամանակաւ ։ Ցարևելակողմն որմոյն առ պատուհանաւ միոյ յերկուց եկեղեցեացդ կայր հայ արձանագիր , այլ առ խանգարանացն անվերծանելի ։ Մօտ 'ի պալատ փաշային երևի և այլ շինուած մի քարակերտ փոքր և կիսաւեր , և Թուի եկեղեցի լինել ։ Զերկուս նահատակի գերեզմանս ցուցանեն . մին 'ի գաւԹի մզկԹի ուրեք և միւսն 'ի ներքնաբերդն , այլ ոչ ուստեք երաշխաւորեալ անշուշտ աւանդուԹեամբք ։

ԱՐՁԱՆԱԳԻՐՔ . Ի վերայ դրանց պարսպին և դրան միջնաբերդին արձանագիրք կան տաճկերէն , յայտ է Թէ 'ի նորոգուԹեան կամ Թէ յետ տիրապետուԹեան յաւելան դոքա 'ի Տաճկաց . քանզի հայ արձանագրուԹիւնքն անկորուստ կան տակաւին 'ի կողմն արևմուից 'ի վեր քան զԹէյրամ փաշա գափուսի դուռն՝ կարգաւ 'ի վերայ աշտարակաց ներքին պարսպին , տեսանելի և արտաքս քան զպարիսպն . և վերուստ ամենեցուն կայ խաչ քանդակագործ զարդարուն ագուցեալ յորմն , և արձանագիրն 'ի ստորև ։ Առաջինն խառն է 'ի վրացերէնէ , և է այս .

✠ მე კარისა ამირა მან რჰ.. | აგამ აგ(აშენე)....მ | ეფობისა | წელსა....

յորում այսչափ ինչ իմացեալ լինի « Ես Ռա .... , աղա , շինեցի .... 'ի Թագաւորութեան .... յամի » ...

կատարեցաւ բրջներս
Ճ..........

✠ ՌՋԵ (Թվին) որ ........ բրջներս երկ
րորդ հրամանա ........ իս ամիրմուշ
րիւ Աբրէհմայ ........ ից արքային ինք
նակալ ըռո ............ յն որ ազավ ի Թագ.
աւորի որ այսմ ամին ..... գաւորութեն իւր

Մխիթար գրիչ՝ եւ նկարիչ

ՌՁԳ

Տր ած զաւր •••• զԹագաւոր
ն մեր ••• լեր ալլազգեց կառ
արեցաւ բրջներս ձեռամբ
Ընձկանն Գազնին եւ Ուլտին

Շնորհիւն Այ եւ ողորմուԹեամբ Թագին մերոյ
լուսաւորդանայ մեք կարուց քրիստոնայքս
մեծ եւ փոքր շինեցաք զբրջներս ի յիշատակ
մեզ եւ պատրոնին մերոյ

Թվիս ՌՁԳ ի Թագաւորութեան լուսաւորդանա
յաԹապակութենն Իւանէի մեք կարուց քրիստո
նէքս շինեցաք զբրջներս ի հալալ արդեանց մերոց

Ի վերայ միոյ բարձր աշտարակի ներքնաբերդին՝ առ որով է փոքրիկ դուռն որ իջանէ ընդ զառիվայր խորանդունդ ձորոյն, արձանագիրս Թերի.

••••••••• լինեց
բուրջ ••••• ի Թե
սո ։ ան •••• ա ••• ի ար
ձեռ ամ | ••• ալարԹաղի
ազինՃա | •••• ոգյողուԹս

Ի վերայ այլում աշտարակի աւընԹեր դրան չուկային.

Ի ՌԼԳ Թուիս շինեցաւ բուրջն •
••••••••••••••

Միւս ևս հայ արձանագիր կայր 'ի վերայ նոյն դրան, այլ զարձանն յերկուս խորտակեալ ագուցեալ են 'ի ձախակողմեան որմն աւընԹեր դրանն 'ի բարձու, զոր չեղև հնար ընԹեռնուլ և ոչ իսկ դիտակաւ, յորում գուցէ յիշատակ լեալ

էր Աբասայ կամ՝ նմանեաց նորա . և փոխանակ այնր տաճիկ յիշատակարան ե֊ դեալ է 'ի վերայ դրանն ։

ԳՆԵՑՆ . Ի թիկանց ներքնաբերդին այլ լեառն ամբարձեալ կայ 'ի հանդիպոյ , և ընդ ձորն խոր որ ընդ նա և ընդ լեառն բերդին՝ ընթանայ գետն , որ և պա֊ տեալ զարեւմուտս և զհիւսիսիւ բերդին՝ անցեալ գնայ ընդ մէջ արուարձանացն , բաժանեալ յայլ և այլ առաջս առուակաց , և կամուրջք են նորա երեք քարա֊ շէնք մեծամեծք ։

ՎԱՃԱՌՔՆ . — Վաճառաշահութիւն կարուց թէպէտ և ոչ հաւասարիցի մեծա֊ ծամեծ քաղաքաց , սակայն և ոչ աննշան ինչ է 'ի պատճառս անթիւ երթևեկաց գեղջէից իւրոյ գաւառին և Շիրակայ և կաղզուանոյ , եւս և 'ի սահմանէն Ռու֊ սաց ։ Բերք նորա ցորեան է և գարի . իսկ պտուղք 'ի կաղզուանոյ գան առա֊ տութեամբ ։ Հանդէպ քաղաքին է ընդարձակ դաշտն Վանանդայ որ յարեւմտից սահմանակից է Բասենոյ՝ յորմէ բաժանի Սօղանլը լերամբ ։

ԱՆՑՔ . Կարս եկաց աթոռանիստ երից թագաւորաց Հայոց , Մուշեղի եղբօր Աշոտոյ Ողորմածի , Աբասայ որդւոյ նորա , և սորին որդւոյ Գագկայ , որ նե֊ ղեալ 'ի Յունաց և 'ի Թուրքաց՝ ետ զաշխարհն 'ի Յոյնս յամի 1064 , առեալ փոխանակ այնր զԾամնդաւ 'ի փոքրն Հայս ։ Յետ այնր Ջարմաղան առաջնորդ Մուղալ Թաթարաց քանդմունս մեծամեծս հասոյց նմա . և յետոյ Թիմուր֊ լէնկ յամին 1394 . Թող զոր Վիրք և Հագարացիք յափշտակելով 'ի ձեռաց մի֊ մեանց . մինչև անց առ Օսմանեանս 'ի վեշտասաներորդ դարու ։

ԳԻՒՄԳԷԹ . — Միով ժամաւ հեռի է 'ի կարուց գիւղս այս ամայի առ Ախու֊ րեան գետով . է հնաշէն եկեղեցի 'ի նմա բազմանկիւնի , որոյ անկեալ է գմբէթն միայն , և գեղեցիկ է ։

## ԱՆԻ .

Ճանապարհ կալեալ 'ի քաղաքէն կարուց յարեւելս հարաւոյ , ընդմիջելով զլայնածաւալ դաշտ քաղաքին , որ այն ինքն է գաւառն Վանանդայ , ընթացեալ ժամս իբրու վեց և աւելի մինչև ցգոյգ բլուրսն Եաղնիլեր ասացեալ , որք սահ֊ ման հատանեն ընդ Վանանդ և ընդ Շիրակ , երևի 'ի հանդիպոյ յարեւելից կուսէ դաշտն Շիրակայ . և փոքր մի ևս յառաջ անցեալ ակներև լինին պարիսպքն Անւոյ 'ի հեռաստանէ ։ իսկ և յեզերս երկնից ակն արկանելով՝ նշմարին միանգամայն յարեւելից եղջերաւորն Արագած սպիտակափառ գագաթամբքն , և 'ի հարաւոյ ալեօրն Մասիս՝ 'ի մառախլապատ ամպոց պքօղեալ երբեմն ցկէս բարձրութեանն , և երբեմն տեսիլ աշխարհի արարեալ զպատկեր դիմացն՝ զահաւորն և զպատ֊ կառելի ։ Յերից այտի ցանկալի տեսարանացդ Բագրատունեացն դաստակերտ կարի մտաւորութեամբն նախահրաւէր լինի որբացելոց որդւոցն . առ որ ուղևո֊ րեալ և մերձ եղեալ 'ի պարիսպն՝ յայլ յայլմէ լինի ոգի հայրենասիրի ։ Ի բարձ֊ րութենէ պարսպացն , յահեղ հոյակապութենէ աշտարակացն և 'ի խնամոտ փու֊

թոյ ազատաձեռն մեծանձնութեան՝ որով այդ ամենայն հիմնեալ կանգնեցաւ առ հասարակ վիմք կոփածոյք ողորկագոյնք, յուշ լինին նմա անդէն Աշոտեանքն և Սմբատեանքն աշխարհաշէն թագաւորք։ Մեծահռչակ դաստակերտքն Արշակունեաց՝ Վաղարշաւան, Արմաւիր, Վաղարշապատ և Երուանդայ ձեռակերտք՝ 'ի ծերութենէ ժամանակաց սպառեալ գրեթէ անհետ եղեն. և եթէ սակաւախօս ինչ բանք յայտարար կացցեն հանդիսի նոցա՝ այն ահա բաւական լինի վերջնոց դարուցս՝ մեծս և տիեզերակալս և աշխարհաշէնս կոչել զնոսա. սակայն տոհմին Բագրատունեաց մեծագործութիւնք առանց ուրուք վկայելոյ ինքնին պատմող լինին ամենեցուն թէ յոր սահման հասին, որ և ընդ ողջոյն գաւառն Շիրակայ ցիր և ցան սփռեալ կան ամենայն ուրեք, կեդրոն և գլուխ այդոցիկ



Անի.

ունելով զԱնի։ Աւաղ, զի խանդացեալ դարուցն այնոցիկ չաւանդեցին 'ի մեր ձեռս գրաւոր նկարագրութիւնս ամենայն վայելչութեանցն Անւոյ որպիսի իղձ լինին հնասէրք ժամանակիս. զի նոքօք առաջնորդեալ 'ի նմա՝ ինքնին վայրքն անխօս վկայութեամբ մատնանիչ առնէին եթէ այս ինչ տեղի գահ է արքայական, և միւսն հայրապետանոց. այս նախարարազանց բնակարան, և այն խորհրդարան աւագանւոյն, և միւսն ճոխից զբօսարան. ս՛ զայս և զայն ձեռակերտեաց և ո դարձեալ հրաշակերտիցն հազարաւոր եկեղեցեաց հիմն արկ։ Զկարևորս զայսոսիկ

լեալ 'ի մէնջ առաջնոցն այնոցիկ՝ զայլոց իրաց ճառ արկեալ հրաշարանսն, թէ լցեալ էր քաղաքն բազմամբոխ բիւրուք արանց և կանանց 'ի հիացումն տեսողաց, մինչև կարծել թէ մեծ մասն աշխարհիս Հայոց անդ իցէ։ Այդպէս ոմն ըղխումն ամբոխէն պատմէ, այլ ոք զեկեղեցեացն բազմութենէ, և այլ ոմն զոսկեձեղուն ապարանիցն։ Զմնաց և ոչ մի յայդցանէ կանգուն կի գոնեայ յարձանագրութեանցն ծանօթ լինէաք. զի և այսոքիկ ոչ են բաւականք 'ի յագուրդ հետաքննին հնասիրաց։ Ի բերանս ռամկին մանաւանդ հեռաւորաց ոմանց բազում առելազանց բանիւք 'ի ճառ արկեալ է քաղաքս հանդերձ առասպելեօք. զոր ոչ գիտեմ ըստ արևելեայց սովորութեան բնաւորեալ իցեն անկարելեաց հաւատս ընծայել՝ եթէ 'ի տիեզերահռչակ անուանէ քաղաքին և յոգւոյ հայրենասիրութեան շարժեալ իղձ լինին թէ այնպէս լեալ իցէ. չածեալ զմտաւ՝ զի ամենայն որ ընդ տարերբք աշխարհիս է, հարկ է ժամանակաց փոփոխութեամբ եղծանիլ։ Եւ ահա ականատես եղեալ մեր ամենայն վայրացն ստորագրեմք մի ըստ միոջէ, սկիզբն 'ի դրից քաղաքին արարեալ և 'ի պարսպացն, և ապա անցեալ 'ի մէջն։

ԴՌՆՔ ՔԱՂԱՔԻՆ. — *Արդ քաղաքն Անի ունի զնիստ իւր յեզր Ախուրեան գետոյ, որ զհարաւով նորա պատեալ՝ յարևելից յարևմուտս ընթանայ. հիւսիսակողմն քաղաքին միահետ հաւասար է յատակի լայնածաւալ դաշտին Շիրակայ, յարևելից դոյզն ձորակաւ զատուցեալ, և յարևմտից լայնարձակ ձորիւ՝ որ այն ինքն է Ծաղկոցաձոր անուանեալն, կամ որպէս այժմ կոչեն Ծաղկաձոր. որոյ սկիզբն 'ի Ծաղկոցի դրանէն առեալ՝ յատակ նորա երթալով երթայ և 'ի խոր յանդեալ դաշտանայ, բաժանեալ անդէն յայլ և այլ թևս, յորոց առաջ մի բոլորեալ ըղհարաւով արևելից՝ երթեալ միանայ ընդ մեծի և ահաւոր խորաձորոյն Ախուրենոյ։ Յասացելոցս 'ի յայտ գայ՝ զի յատակ քաղաքին դաշտավայրիւ սկսեալ 'ի հիւսիսոյ՝ ընդ զառիվայր աւարտի 'ի հարաւակողմն. իսկ արևմտակողմն նորա միշտ դաշտավայր է մինչև ցբոլորումն միջնաբերդին՝ որ է 'ի ծայրն հարաւոյ. և պարիսպ կողմանցդ 'ի ծայր ապառաժ քարափանն կառուցեալ, որ 'ի մեծ բարձրութենէն 'ի խորս անդ Ծաղկաձորոյն հայի՝ ահեղ իմն և վսեմ տեսարանաւ։*

ՊԱՐԻՍՊՔՆ. — *Քաղաքն առ հասարակ պարսպապատ է, թէպէտ և բազում ուրեք խախտեալ, և 'ի հարաւոյ իսպառ հիմնայատակ եղեալ. հիւսիսակողմն որ դիւրամուտ է թշնամւոյն, զի չիք նորա ձոր զառաջեաւ՝ այլ կից է միահետ ընդ դաշտին որպէս ասացի, կրկնապարիսպ է և հզօր քան զայլ կողմանս խիտ առ խիտ աշտարակօքն և որմոցն ստուարութեամբ։ Ներքին պարիսպ այդր կողման որ միահետ շրջապատեալ է զքաղաքաւն՝ ձեռակերտ է Աշոտոյ Ողորմածն անուանելոյ, զոր Վարդան վկայէ և յայտ է յարձանագրէն որ 'ի վերայ միոյ յաշտարակացն, զորմէ զկնի։ Իսկ երկրորդ որ և արտաքին պարիսպն՝ որ 'ի դրանէն Ծաղկոցաց սկսեալ մինչև յարևելից կողմն՝ ձեռակերտ է որդւոյ նորա Սմբատայ Տիեզերակալի։ Միջոց կրկին պարսպացդ ոչ աւելի է քան զքսան քայլ, և ուրեք այլ ևս անձուկ։ Ներքնոյ պարսպին սակաւ ուրեք խախտեալ ակներև ցուցանէ զվսեմութիւն մեծագործ ձեռինն՝ 'ի բարձրութենէ խիտ առ խիտ աշտարակացն, և են դոքա բոլորշի, սակաւուց եթէ քառակուսի եղով. և 'ի նոսա ոմն կրկնայարկ և այլ ոմն եռայարկ, համակ քարակերտ կամարակապ, քարեղէն սանդղօք*

առ շրջապատաւ ներքին կողման որմոցն՝ յարկ ընդ յարկի կցորդեալ։ Բարձրութիւն պարսպիդ և աշտարակացդ չունի տալ զհաւաստիս ճշգրիտ չափոյ. զի և բարձրագոյնն 'ի նոսա և անարատ թուեցեալ՝ տակաւին քանդեալ է ըստ ծայրիցն։ Իսկ արտաքին պարիսպն ուրեք կործանեալ և հողոյ եղեալ հաւասար, և ուրեք կիսով չափ բարձրութեանն և աւելի ևս խաթարեալ է. և որչափ երևին՝ սակաւաթիւ են աշտարակք սորա քան զառաջնոյն. և որպէս 'ի վերն ասացի, 'ի Ծաղկոցի դրանէն սկսեալ հասանէ մինչև ցկողմն արևելից 'ի սկիզբն ձորակին, չգիտեմ թէ և անտի յառաջ շարայարէր այլ ևս մինչև ցգետեզրն. զի 'ի խառնիխուռն քարակոյտ աւերակացն այնր կողման չերևի որիշ թէ ուր դադարի հետ նորա, կամ թէ ո՞յր են աւերակքն՝ սորա՞ թէ ներքնոյն։

Քարինք պարսպացդ դեղնագոյնք են, կակուղ և առ հասարակ կոփածոյ. և չափ մեծութեանն նոցա երկթզաչափ քառակուսի. ուրեք ուրեք մանաւանդ 'ի կողմն Ծաղկաձորոյն 'ի սևաւ քարանց առ իրեարս եդելոց՝ խաչ երկայնաբուն ձևացուցեալ է 'ի շարս անդ քարանց պարսպին. և ուրեք ևս ընդ ողջոյն երկայնութիւն կրկին պարսպացն, մանաւանդ 'ի վերայ աշտարակաց, քառակուսի կանգնաչափ արձան ագուցեալ 'ի նոյն սևաւ կամ 'ի սպիտակ քարէ, և 'ի նոսա արձանագրութիւնք։ Ըստ դեղնագոյն քարանց պարսպացդ, են և քարինք եկեղեցեաց. թէպէտ և 'ի սոսա ոմանք 'ի հասարակ կամ թէ աւել 'ի մթին մոխրագոյն քարանց են կերտեալք, իսկ դեղնագոյնքն ոչ որպէս զպարսպացն բացագոյն են, այլ փոքր մի մթին որ 'ի կարմիր հարկանի։ Սակայն կճեայ քար թզաչափ մի չերևի 'ի հոյակապ շինուածս քաղաքին, և չգիտեմ ո՞րպէս տեսեալ ճանապարհորդաց ոմանց և հաւատարմացուցեալ և 'ի գիր ևս մուծեալ է։

ԴՐՈՒՆՔ. — Հինգ դրունք որիշ երևին 'ի նախապարիսպն. առաջին յարևելս, երկրորդն, երրորդն և չորրորդն 'ի հիւսիս, և հինգերորդն որ է դուռն Ծաղկոցի՝ յարևմուտս։ Իսկ երկրորդի պարսպին երկու միայն մնացեալ են դրունք հանդէպ երկրորդ և երրորդ դրանցն, ոչ դէմ ընդդէմք այլ փոքր մի յարևմուտս խոտորեալք։ Բարաւորք դրանցն կամարաձևք են անզարդք և պարզք ամենևին։

ԱՐՁԱՆԱԳԻՐՔ ՊԱՐՍՊԱՑՆ. — Պարսպացն արձանագրութիւնք մեծաւ մասամբ 'ի վերայ նախապարսպին են և 'ի վերայ աշտարակաց նորա. այլ 'ի վերայ երկրորդին սակաւ յոյժ. զի որպէս ասացի այս պարիսպ բազում ուրեք հիմնայատակ եղեալ է. և ուր կանն՝ չհասանեն 'ի չափ բարձրութեան արձանագրաց տեղւոյ նախապարսպին. յորմէ յայտ է թէ արձանագիրք երկրորդի պարսպին հանդերձ վերնով մասամբն անկեալ են։ Արձանագրութիւնքդ չունին տալ զլիակատար ծանօթութիւն որչափ իղձ լինի հնախոյզ աշխարհագիր, որում ցանկալի է կարևոր հանգամանաց շինուածոյն մանրամասն նկարագիր 'ի նշանաւոր վայրի, որպէս 'ի վերայ դրանց. յորոց 'ի միումն այլ յիշատակարան կայ՝ որ չտայ լոյս հանգամանաց շինութեանն։ Եւ դարձեալ բազումք 'ի նոցանէ ոչ անթերի ունին զբանիցն կարգ. զի թէպէտ 'ի կարծր վիմի են քանդակքն, այլ 'ի հնութենէ ժամանակին կիսեղծք են յոլովք։ Մեծի աշխատութեան պէտք եղեն հաւաքել զնշխարեալ մնացուածս նոցա մինչև ցնշանախեց մի. և ուր իսպառ եղծեալն էր, թէպէտ կարգ բանիցն յայտնէր զիմացուածն, չիշխեցաք յանձնէ տառ մի յաւելուլ 'ի



բանն, կէտանիշ Թողեալ զմիջոցն. և զտարազ ուղղագրութեանն ըստ այնց ժամանակաց կամ ըստ չափոյ հմտութեան փորագրողին՝ Թողաք այնպէս որպէս էրն: Երկու ինչ դիտելի են յարձանագիրս պարսպացն. Նախ զի Թէպէտ Նախապարիսպն Աշոտոյ ընծայի, սակայն աշտարակքն այլ և այլ արանց սեփականեալ են, յորս ստէպ յիշատակի Զաքարիա սպասալար. Նմին իրի յայտ է, որպէս ես կարծեմ, Թէ 'ի շինութեան անդ ոմանք 'ի Նախարարազանց մասնաւորեալ յինքեանս զծախս շինուածոյն՝ զաշտարակսն զայնոսիկ յարդիւնս անձանց սեփականեցին՝ առ անկորուստ մնալոյ յիշատակի անուան նոցա: կամ առ ճշդիւ խօսել, յորժամ մի ըստ միոջէ տիրեցին քաղաքին Յոյնք և Վիրք և Պարսիկք, խաԹարեալ բրգանցն յանդուլ պատերազմաց, յետ այնորիկ որպէս 'ի Թուականէ նոցա յայտնի երևի՝ վերստին շինեցան 'ի նոցանէ՝ զորոց անուանս ցուցանեն արձանքն. քանզի որ յայտնի Թուականաւն է՝ չանցանէ 'ի վեր քան զՌԹ, իսկ յառաջնում նուագին որ անց քաղաքդ առ Յոյնս, Թուականն էր ՆՂԵ: Երկրորդ, ուր ասի՝ շինեցի գբուրջևս, այն է բուրգն կամ աշտարակ, իմանալի է ըստ ասացելումդ. իսկ ուր ասի՝ շինեցի զարձաևս, պարտ է իմանալ զխաչաքարն որ կայ վերոյ նոյն արձանագրին: Արդ նախ զդրանցն արձանագիրսն եդեալ առանձինն, ապա զայլսն կարգեսցուք 'ի Ծաղկոցի դրանէն սկսեալ և 'ի վեր, այն է յարևմտից յարևելս:

Ի վերայ միջնոյ դրան նախապարսպին, զոր ես ախորժեմ աւագ դուռն կոչել, կայ վէմ մի երեք մետր երկայնութեամբ այսու արձանագրաւ.

• • • գթութեամբն մարդասիրին եւ անմահ բանին ա՜յ եւ վասն յերկարկենդանութեան արքայից արքային ա՜ծ ադիր փաթշահին եւ ա՜ծ իմաստ իշխանաց իշխանին աշխարհաշէն եւ 'ի թագաւորութեան վրաց աշխարհիս որ եղեւ մայրաքաղաք անի խասինջու ◯ եւ 'ի տէրութեան քաղաքիս ա՜ծ ասէր պատրոնացն գրիգոր աղին եւ յովաննիսի եւ յեպիսկոպոսութեան տէր յոհաննիսի ողորմածն ա՜ծ հայեցաւ 'ի դժուարութիւն քաղաքիս եւ խորհուրդ բարի ծագեց 'ի սիրտս պարոնացն գրի եւ յովէ: որ զքաղաքս մեր նորոգել չինեցին եւ զամենայն հարկապահանջութիւն երարձին զմ• • եւ զթաղաւ զհեծել զղափչուն զախսրթամարն եւ զդռնագիրն 'ի բաժ ⊙ 'ի դաղմս եւ 'ի մուսայիպն դարձուցին եւ զաթուին հարկն որ յետո 'ի չարաց դրած էր զկապալն յեպիսկոպոսէն բարձին եւ յաւաջին սահմ • • • • • • • • • • • • • • • • • • •

Արձանագիրդ թէպէտ և ընդ այլ բանից խանգարեալ է թուականն, սակայն յանուանցն երևի՝ թէ յետ անցանելոյ տէրութեան քաղաքին 'ի ձեռս օտար ազգաց գրեալ է. յորժամ նախնի հարստութեանն կորուսեալ՝ պէսպէս հարկապահանջութեամբ կեղեքէին զժողովուրդն. որում փոքր մի դիւր առնել խորհեցեալ կրկին պարոնայքն Գրիգոր և Յովհաննէս, ոստիկանք որպէս կարծեմ 'ի կողմանէ օտարազգւոյն կացեալք 'ի քաղաքին, բարձին զայն ամենայն, յառաջին սահման հանեալ որպէս էր առ Բագրատունի թագաւորօք:

Յաջմէ դրանդ անընդմիջաբար ստորև աշտարակին ագուցեալ կան յորմն երեք մեծամեծ խաչաքարք 'ի կարմիր քարանց գեղեցկաքանդակք: Իսկ յահեկէ դրանն զկնի առաջնոյ աշտարակին յեռեալ է 'ի պարսպին բարձրաքանդակ պատկեր մեծ առիւծու 'ի վէմ մի քառակուսի. և յահեկէ նորա 'ի վերայ երկրորդի աշտարակին արձանագիր տաճկերէն քուֆի գրով ծաղկազարդ:

Ի վերայ երկրորդի դրանն որ յաջմէ է նախադրելոյդ չիք արձանագիր. այլ 'ի վերայ աշտարակին որ յաջմէ նորա է՝ կայ խաչաքար մի յորոյ 'ի վերին եզերն է գրեալ

զսարգիս յիշեցէք

և 'ի ներքին եզերն այսպէս

ս՜բ սարգիս աւգնէ սարգսի գէորգա ամէն

Իսկ ստորև՝ խաչաքարին սպիտակ քար արձանագրաւ.

'ի Թուիս ՈԿԴ կամաւք ողորմածին քն̅ 'ի պետութեանս մանդատոր Թախուցէս ամիր սպասալար շահնշահ զաքարիան որդ . . շահնշահ սարգսի ես սարգիս որդի սամուէլի ծառայ քն̅ 'ի հալալ վաստկոց իմոց շինեցի զարձանս 'ի յիշատակ ինձ եւ ծնողաց եւ զաւակաց մերոց որք կարդայք յիշեցէք զմեզ 'ի քս̅

Ի ստորեւ աշտարակիդ գետնոյ հաւասար խորշ կայ քանդակագործ շուրջանակի, այլ մէջ նորա դատարկ. Թուի խաչ լինել 'ի նմա յառաջագոյն կամ պատկեր։

Արդ դարձ արարեալ յարեւմուտս, 'ի Ծաղկոցի դրանէն և 'ի վէր յարեւելս կոյս 'ի նմին պարսպին և յարտաքնումն այս արձանագիրք կան. յորոց առաջինն 'ի վերայ աշտարակի որ 'ի վերայ քարափանն է, առ որով ձորամէջն սկսանի Ծաղկաձորոյն.

'ի ՈԹ Թւ 'ի Թագաւորութեանն փառլնոյ 'ի հայրապետութեանն տր̅ բարսղի ես աբրահամ շինեցի զբուրջս 'ի հալալ արդեանց իմոց յիշատակ ինձ եւ ծնողաց իմոց որք կարդայք զիս եւ զծնողս իմ եւ զառաքեալ վարդապետ յաղաւթս յիշեսջիք

Անտի 'ի վեր յայլում աշտարակի.

'ի Թւ ՈԿԴ շնորհիւն քն̅ 'ի տէրութեանս մանդատոր Թախուցէս ամիր սպասալար շահնշահ սարգսի ես մխիթարիչս գանձակեցի ծառայ քն̅ 'ի յարդար վաստակոց աբրահամու եղբաւր իմոյ շինեցի զարձանս վասն փրկութեան հոգւո նորա եւ յիշատակի մեզ եւ ծնողաց մերոց որք կարդայք յիշեցէք զաբրահամ 'ի քս̅ յս̅

Անտի 'ի վեր յայլում աշտարակի.

'ի Թւ ՈԾԷ շնորհիւն այ̅ 'ի տէրութեան մանդատոր Թախուցէս . . պասալար շահնշահ զաքարի ես սարգ . . . որդ . . ծառա քն̅ շի . . . անս վասն փրկութեան . . . ըն . . . մին եւ զաշխատ . . .

Յաշտարակին որ է հանդէպ վերջնոյ դրանն խցելոյ աւերակօք.

'ի ՈԿԱ զաւրութեամբն քն̅ ես մանդատոր Թախուցէս ամիր

սպասալար շահնշահի զաքարիա շինեցի զարձանս վասն արեւ-շատութեան մեզ եւ որդւոց իմոց

Անտի 'ի վեր 'ի միում բարձր աշտարակի 'ի վերայ քարանց նորա փորագրեալ կանգնաչափ 'ի վեր 'ի գետնոյ բուն արձանագիր ներքնապարսպին համառօտ և հնագոյն քան զամենեսին.

աշոտոյ իշխանաց իշխանի է

Անտի 'ի վեր յայլում աշտարակի.

'ի ՈԿԵ Թու. շնորհիւն ք͞ի 'ի տէրութեանս մանդատոր Թա-խուցէս ամիր սպասալար շահ . . . . . որք կարդայք աղաչեմք զմեզ յիշեցէք 'ի ք͞ս յ͞ս 'ի տ͞ր մեր սիմէոն

Անտի 'ի վեր երկու աշտարակք կան օձապատ քանդակօք, այլոց աշտարակաց 'ի մէջ անկանելով. և են օձապատքդ ոչ յոյժ բարձր, և քարեայ վիշապքն երկու 'ի պարսպէն սկսեալ պատեալ են զաշտարակն գլուխ առ գլուխ եկեալ. և 'ի միջի՝ միոյն՝ գլուխ եզին զոր կամին կլանել, և միւսոյն՝ այլ զարդ. երկոցուն ար-ձանագիր միօրինակ է այսպէս.

'ի Թվիս :. ՈԿէ կամաւքն ա͞յ ես շանուշս կենակից խաչերե-սին անդարձով խաչերեսին շինեցի զբուրջնս յիշատակ մեզ

Ցարևելակողմն պարսպին.

'ի ՈԿԸ Թւ. շնորհիւն ք͞ի ես մամ խաթունս դուստր խաչե-րեսին լաւուեցո անժամ 'ի ք͞ս գնացի յիմ հաւրն 'ի հո . . . . . ամին որ ինչ տուեալ էք . . . անյիշատակ էի շինեցի զբուրջնս յիշատակ ինձ . . . աղաչեմ որ կարդայք մեզ Թող . . .

Անտի 'ի վեր յայլում աշտարակի.

Թու . . կամաւն ա͞յ լուսորա որդի գրիգորո շինեցի զարձանս յիշատակ ինձ եւ ծնողաց իմոց եւ յարեւշատութիւն շահըն-շահի սպարապետի եւ յամիրասութեան վահրամա կատարե-ցաւ բուրջս. տ͞ր ա͞ծ ողորմեա լուսորին ամէն

Անտի 'ի վեր յայլում աշտարակի.

✠ 'ի ՈԾԷ Թւ. շնորհիւն ք͞ի ես մանուչատր Թախուցէս ա-միր սպասալար շահնշահ զաքարիա շինեցի զարձանս եւ զպա-րիսպս վասն յիշատակի մեզ եւ ծնողաց մերոց

ի նոյն կողմն կային և այլ ևս երկու արձանագիրք առընթեր միմեանց, այլ առ յոյժ բարձրութեանն մնացին անվերծանելի։

ՔԱՂԱՔԱՄԷՋՆ. — Ընդ հիւսիսային դրունս, զի այն է արահետ ճանապարհ, մտեալ 'ի ներքս, պատկերանայ յանդիման քաղաքադաշտն անապատացեալ չափաւոր մեծութեամբ. զի ընդ ամենայն երկայնութիւն նորա յարևելից յարևմուտս հազիւ տևէ քառորդ մի ժամու. ամենայն ուրեք լի է քարակոյտ աւերակօք. առ հասարակ կործանեալ են տունքն մինչև չմնալոյ 'ի նոցանէ և ոչ մի. այլ քառակուսի ձև նոցին երևի զերեսօք գետնոյն՝ ուր 'ի կործանելոյ քարանցն անարգել իցէ. զի շատք են որոց հազիւ միոյ յանկեանցն երևելի եղեալ՝ միւս կողմանքն քարակուտիւ ծածկեալ են։ Թանձրութիւն որմոց նոցա աւելի քան զկէս մետրաչափ է, առ հասարակ քարակերտք, աղիւսակերտ և ոչ մի. և ազգ քարանցն սևագոյն և հասարակ, մանր և անտաշ։ Զայդ աւեր որպէս ինչ մնացեալ են յաւուր յայսմիկ. զի ըստ վկայելոյ ժամանակակից յիշատակարանաց հոյակապք էին շինուածք տանցն. և ոսկեզօծ պալատից մեծամեծացն 'ի հարկէ չվայելէր մանր և անտաշ քարանց 'ի հիւսուած որմոցն. սակայն յետ կործանելոյ դոցին օր ըստ օրէ բարձին անտի զմեծամեծս և զպատուականս 'ի քարանց շրջակայ բնակիչքն. զոր օրինակ առնեն մինչև ցայսօր։ Այլ զաւերակացդ և այլուր խօսեսցուք. առ տեղեաւս լիցի մեզ ստորագրել զանկործան շինուածս քաղաքին։

Ա. ԵԿԵՂԵՑԻ, ԿԱԹՈՂԻԿԷՆ. — Ի շինուածս քաղաքին առաջին և գլխաւորն և արժանին անմահ յիշատակաց է կաթողիկէն, հիմնարկեալ 'ի Սմբատայ տիեզերակալէ և կատարեալ 'ի Կատրանիդէ թագուհւոյն, որ էր կին Գագկայ առաջնոյ։ Յունական և իտալացի ճարտարապետութեանն ախորժակաւ վարժեալ աչք 'ի չորս սեանց առ ճակատովն և 'ի զարդ գեղանչելի անդրեաց և 'ի քանդակս պէսպէս ձևոց և ծաղկանց, յորս արհեստ և բնութիւն մրցել երևին արդեօք, թերևս վրէպ ելցեն 'ի կաթողիկէն Անւոյ. սակայն որ միանգամ առ տեղեաւն 'ի զնին կայ նորա, չցաւէ նմա զի անմասն է նա յայդմ ամենայնէ, զի 'ի հոյակապ մեծութենէն հանդերձ անզարդ պարզութեամբն հիացեալ յափշտակի։ Ութ հարիւր և աւելի ամք են յորմէ հետէ շինեալ է դորա, և բիւրապատիկ ձիւնաբերք կուտեալ 'ի գլուխ իւր՝ որ յոխերիմ թշնամեաց մարդկան անկրօնից, և որ 'ի բնութենէ տարերաց, և տակաւին քարինք որմոցն անխախտ կան 'ի տեղւոջէն, մեծամեծք և սրբատաշք 'ի հիմանց մինչև ցգագաթն, առ հասարակ 'ի մթագոյն դեղին քարանց. այնպէս իմն ամրապինդ կցեալք ընդ միմեանս՝ մինչև չերևիլ բնաւ կրով եթէ այլ իմն մածուցիկ նիւթով՝ հիւսեալք իցեն. ո՞ գիտէ թերևս և երկաթի գօտեօք պնդեալք 'ի շինութեան անդ։ Հիմունք նորա չորս կամ հինգ աստիճանօք լայնանիստ տարածին, ոտնաչափ մի լայնութիւն ունելով իւրաքանչիւր, ապա ամբառնայ 'ի վեր բուն որմն։ Երեք են դրունքն. աւագ դուռն յարևմտից, և այլքն 'ի հիւսիսոյ և 'ի հարաւոյ։ Յարտաքին երեսս որմոցն յերկուս միջոցս 'ի հարաւոյ կուսէ որպէս և 'ի հիւսիսոյ, յորս ներքին կողմն որմասիւնքն են, որպէս տեսանի 'ի պատկերիդ, հարուստ մի երկայնութեամբ բարձրութեանն խորշ գործեալ է սրանկիւն առ 'ի ներքս ընդ թանձրութիւն որմա-



Կաթուղիկէն Անւոյ.

սեանցն, և կամարաձև աւարտեալ 'ի վերոյ իբրև ձեղուն իւր գեղեցկաքանդակ ըստ արևելեան ախորժակաց: Նոյն օրինակ է և կողմն արևելից 'ի միջոցս կրկին մատրանցն երկուստեք խորանին: Ներքին տեսիլ եկեղեցւոյս մռաացուցանէ զարտաքինն. սեանցն ահեղ բարձրութիւն և ձգուածք կամարացն, խորանին վսեմութիւն, և գեղեցիկ չափակցութիւն ամենայն վայրացն հանդերձ անզարդ պարզութեամբն հիացուցանէ զտեսողսն: Կիսաբոլոր խորշ խորանին մինչև ցաւատաղն բարձրացեալ կամարաձև աւարտեալ միանայ ընդ կամարագօտւոյն, որ ուղղահայեաց կայ 'ի վերայ բեմին. և 'ի ստորևս որմոյն 'ի գետնոյ մինչև ցմար-

դաշափ մի բարձրութիւն՝ 'ի տասն խորշս բաժանեալ է. յորոց յետինքն որ իրեբաց հանդէպ կան՝ դրունք են 'ի վերին մատրունս ելանելոյ քարեղէն աստիճանօք ընդ մէջ որմոցն. և են մատրունքդ անընդմիջաբար 'ի վերայ ստորին մատրանցն, կամ թէ ասել աւանդատանց, համակ քարակերտք և կամարակապք։ Զորեքին սիւնքն որ 'ի մէջ եկեղեցւոյն՝ չեն միակտուրք, այլ 'ի պէսպէս դեղնագոյն և սեաւ երկայնաձև մեծամեծ քարանց առ իրեարս կցեալ, որ նորատեսիլ իմն գեղեցկութիւն տան նոցա, չերտաձև գործեալ են վերուստ 'ի վայր. և մասունք չերտիցն ոմն կորընթարդ և ոմն անկիւնաւոր, բայց 'ի խարսխացն՝ որք անկիւնաւորք են առ հասարակ. 'ի խարսխաց անտի միահետ ամբարձեալ չերտիցն մինչև 'ի ձգուած կամարացն՝ ապա յայլ և այլ կամարս հաղորդին. օրինակ իմն երեք 'ի չերտից միոյ սեանն յարևմտից հիւսիսոյ՝ հաղորդին չերտից հանդիպա-

կաց սեանն, և երկուքն որ յարեւմտից են. այսպէս իմա և զայլս այլոց կողմանցն։ Բաց 'ի չորից սեանցն են այլ ևս վեց կիսայեցք յորմունս, զորս որմասիւնս կոչեցաք, երկու երկու՝ յարեւմուտս, 'ի հիւսիս և 'ի հարաւ։ Պարզուած չորեցուն կամարացն որ 'ի միջոյ չորից սեանցն ձգեալ են ընդ հիւսիս և ընդ հարաւ ընդ խորանն կոյս և հանդէպ նորա ընդ արեւմուտս դրանն՝ բարձր են և զուգահաւասար. և առ կամարագօտեօք դոցա այլ գօտի ածեալ մանեկաձև, և 'ի վերայ նորա ամբարձեալ գմբէթն. այլ աւաղ զի այն միայն անկեալ և կործանեալ է,



Կողմնական երես կաթուղիկէին Անւոյ.

այս հինգ և վեց ամք են. իսկ կամարքն որ 'ի վերջին սեանցն կցին ընդ որմն արեւմտից՝ ցած են քան զայլսն։ Զդուածք կամարացն որ 'ի վերայ կողմնական դըրանցն երկոցուն՝ յարեւելից յարեւմուտս չեղեալ են. իսկ այլք առ հասարակ 'ի

*հիւսիսոյ ընդ հարաւ։ Պատուհանք հիւսիսակողման երեք են 'ի վերայ դրանն առընթեր միմեանց երկայնաձեւք. և երկու ևս 'ի միջոցին որ անտի 'ի վայր ընդ մէջ որմասեանն և արևմտեան որմոյն, և 'ի դասին այլ ևս երեք, յորոց մին նեղ երկայնաձև նման այլոց, և երկուքն որ վերոյ են նորա՝ բոլորչի. այդպէս է և կողմն հարաւայնոյն. և մի ևս յարևմուտս 'ի վերայ դրանն, և միւս այլ 'ի խորանն։ Այդ ամենայն նիւթական ձևոյն և ճարտարպետութեան արհեստին նկարագրութիւն զհնախօսյզ աշխարհագիր յոգի հարկանէ. այլ առաւել ևս զհայրենասէրն, յորժամ յուշ լինին նմա անցեալ փառք հոյակապ պետութեանն Բագրատունեաց և կարգ և կանոնք եկեղեցական հանդիսից, յորս փայլէր մեծապէս կաթողիկէս։ փոխանակ հայրապետական շքոյ և կարգ ըստ կարգէ պաշտօնէիցն Աստուծոյ և անբաւ մեծագին զարդուցն որովք ճոխացեալ զնա Թագուհին կատարանիդէ, յաւերակս նստեալ կայ արդ մենացեալ 'ի մշտնջենաւոր լռութեան. յատակ նորա առ հասարակ լի քարակուտիւ աւերակաց և աղբիւսովք անբանից ճարակաւորաց՝ արածեալք 'ի վայրենաբարոյ Քրդաց։ Արտաքոյ եկեղեցւոյն յարևելից կուսէ առընթեր որմանկեանն հարաւոյ՝ երևին հնացորդք մատրան զետեղեցկակերտ համակ քարաշէն, որոյ տեղի խորանացն անկործան կայ։ Նոյնպէս և 'ի կողմն հիւսիսոյ առընթեր արևմտեան որմանկեանն այլ մատուռն խաթարեալ և քայքայեալ առաւել քան զմիւսն։ Այլ քարակոյտք աւերակաց բազում են շուրջ զեկեղեցեաւն, որք Թերևս բնակարանք էին եկեղեցականաց հանդերձ հայրապետանոցաւ. այլ արդ և հիմանցն ծածկեալ՝ տեսիլ աղէտալի եղեալ է աշխարհի։ Արձանագիրք կաթողիկէիս են 'ի վերայ արտաքին որմոցն հարաւայնոյ, արևմտից և հիւսիսայնոյն՝ որ անեղծ են տակաւին, և կարևոր յիշատակարանք պատմութեան 'ի նոսա ոչ սակաւք՝ շինողացն և այլևայլ բարերարաց 'ի ժամանակէ անտի շինութեանն մինչև առ Վրաց տիրապետութեամբն, որպէս կարծեմ. և են այսորիկ։ Առաջինն 'ի հարաւոյ կուսէ.*

**'ի ՆԾԹ հայոց ✠ ՄԺԹ Թ հոռոմոց .. .. ..[1] 'ի ժամանակս ա̅ծապատիւ եւ հոգեւոր տ̅ն սարգսի հայոց կաթողիկոսի եւ 'ի մեծափառ թագաւորութեանն գագկա հայոց եւ վրաց շահանշահի ես կատրանիդէ հայոց Թագուհի դուստր վասակա սիւնեաց Թագաւորի յողորմութիւնն ա̅յ ապաւինեալ եւ հրամանաւ առն իմոյ գագկա շահանշահի շինեցի զս̅բ կաթողիկէս զոր էր հի̅մնադրեալ մեծին սմբատա եւ կանգնեցաք տուն ա̅յ նորոգ եւ կենդանի ծնունդ հոգեւոր եւ արձան մշտնջենաւոր զարդարեցի եւ զարդիւք պատուականաւք նուէրք ինձ 'ի ք̅ս եւ զարմից իմ եւ որդոց սմբատա աբասա եւ**

1 Երեք փակագիծ տառք կամ բառք զոր չկարացաք լուծանել։

աշոտո հրամայեալ եմ ես տէր սարգիս սպասաւորայ եկեղե-
ցոյս յետ ելից բարեպաշտ Թագուհոյս զվարդաւարին յիս-
նեակն միով քառասնիւ կատարել անխափան մինչեւ 'ի գա-
լուստն քի եթէ ով զարձանագրեալս անփոյթ առնէ դատա-
պարտեալ եղիցի 'ի քէ

'ի վեց ՌՆԼ եւ Գ ամացն ադամա 'ի Ռ եւ ԲԺ մարմնանալոյ
ածն բանի ՋՐԺ ամի հաւատալո 'ի քն հայոց գրեցաւ յիշա-
տակարանս 'ի ձեռն խմբենէ •

'ի Թուիս 'ի ։ՌՁԳ։ շնորհիւն այ ես զուհալս կարըլցի որդի
գորգկանն միարանեցա մեծափառ տր կաթողիկէիս եւ էտու
աւետարան էսայի շրջառ եւ վառ եւ սպասաւորք սրբոցս
հաստատեցին մեզ 'ի տարին աւր մին պատարագ 'ի տաւնի տր
ածածնին որչափ ես կենդանի եմ իմ եղբաւրն վահրըմայ եւ
յետ մահուան իմոյ ինձ առնեն եւ կենակցին իմոյ տիկնոջն
կատարողն աւրհնեսցի •

Առ երի արձանագրիդ փոքր մի ստորև ժամացոյց արևու գծեալ էր բաժանեալ
յերկոտասան գիծս, և 'ի ծայր իւրաքանչիւրոցն տառքս Ա. Բ. Գ. և այլն, և սպա-
քատեղին 'ի կեդրոնի ։ Յահեկէ հարաւային դրանն առ մուտք.

անուամբն այ ամենակալի • • • ն զայգին որ 'ի ծաղնոցին է ըն-
ծաեցի 'ի • • • արդէվարին պասն հինգշաբաթն աւրն եւ • • •
որդոյն իմո գէորգա առնեն զժամն եւ յե • • • ց կամ յիմոց
կամ յաւտարաց եւ զայգի • • • 'ի քէ եւ 'ի մեղացս եւ իմ • • •

Ի ստորև նորա ընդ խաչիւ.

ով սրբասէր քահանայք եւ սրբամնեալ ժողովուրդք որք
երկրպագէք տիկնո • • • ոգութ • • խնդրեց • • •

Եւ 'ի ներքս 'ի վերայ նոյն հարաւային դրանն Թուականս » Ի Թու ։ ՆՁԲ։
Յահեկէ հարաւային դրանն.

'ի Թուիս ՌԿԲ կամաւքն այ ես տէգրան ծառայ քի շինեցի
հալալ ընչիւք իմով զաշտիճաններս մեծափառ սրբոյ կաթո-
ղիկէիս զոր 'ի բազում ամաց հետէ խարխալեալ էր եւ ե-

տու նուէրք 'ի սուրբ կաթողիկէս զիմ գանձագին կողպակն որ 'ի կատանոցին է եւտու երկու տաւնական եւ սուրբ գրի-գոր մին եւ երկու սկի արծաթիք աւագ խորանին եւ եդի լուծ 'ի վերայ սպասաւորաց սորա 'ի տարին պատարա-գել յանուն իմ մինչեւ 'ի գալուստն քի̃ •

Ի վերայ հիւսիսային դրանն.

Թու ՁԼԵ կամաւն այ̃ ես լուսրէն ծառա այ̃ որդի դավթի եւ Թոռն յոհնա ապաւինեցա յա̃ծ եւ 'ի մեծափառ ս̃ր կաթո-ղիկայս զոր խորհեալ էի եւ կատարեցի եւտու ընծա 'ի սա զիմ գանձագին ձիթահանքն բոլոր մին ակն իւր ամենայն յա-ջողութեամբ որ է մերձ ի • • • նիցն տիգրանա զոր իմ հալալ արդեամբք շինեցի եւ գնեալ էի զինքն 'ի Թոռներուն • • • եւ իշխեցող սորա սարկաւագն եւ այլ սպասաւորքն հատուցին մեզ փոխարէն • • • յն ամի հինկ աւր պատարագ յանուն հաւր իմոյ դաւթի արդ եթէ 'ի մեծաց ոք կամ 'ի փոքունց • • • իմոց կամ յաւտարաց զարդիւնքս մեր հանել կամ խափանել ջա-նա մեղաց մերոյ պարտական եղիցի յատենին մեծի իսկ որք հաստատուն պահեն աւրհնին յայ̃ ։

Յարեւմտից յահեկէ աւագ դրանն.

✠ կամաւք ողորմութեամբ բարերարին այ̃ ես տուաւնս մա-գիստրոս մեծարեալ 'ի մեծափառ Թագաւորութեանցն 'ի գեղ զարդու եւ 'ի տիս մանգութեան իմո եկի յարեւելս 'ի գեղեցկաշէն բերդս յանի բարձրացուցի բաւանդակ զպա-րիսպ սորին կառկառակոյտ արձանաւք եւ հաստահեղյս ամ-րութեամբ եւ 'ի յիմոց մեծածախ գանձուց ածի ջանիւ ջուր յորդաբուխ 'ի մէջ ամրոցիս յուրախութիւն եւ 'ի զովա-ցումն ծարաւեաց ։ բերի ոսկի մատանեաւ գիր ազատութեան զինքնակալ ծիրանեծին Թագուհոյն վասն պախտից տանցքա-ղաքիս եւ Թասսակին զոր տաւին ամ յամէ չափ ութից լտերց այլ եւ 'ի խնդրո իշխանուորացս խափանեցի եւ գծիւտ եր-կուց լտերց զոր տայր մութսիքն զայս ամէն •

✠ անուամբ տ՟ն ամենակալի եւ ողորմութեամբ ն՟ր եւ ինքնակալ թագաւորին կոստանդեա դուկի կամ եղեւ իմ բագրատա մագիստրոսիս եւ արեւելից կատապանիս վխկացոյս ։ առնել ողորմութիւն մայրաքաղաքիս անւո ։ յորժամ առին զտանուտրութիս միխիթար իպատոսն կրտին որդին եւ գրեգոր լապատակս որդին սպաթար կանդիտատն ։ եւ սարգիս արտաւազդ որդին սպաթար կանդիտատն եւ ազատեցին զվեցկէ կոռ ։ եւ զսայլն ։ եւ զկամին ։ եւ զանգարիոն ։ եւ կատապան ով եւ լինի տա սերմ ։ ՟Ո ։ մոդ եւ ծախք զընծելոցն ։ զայլն տանուտէրքն առնեն իւրեանց տամբ որ չհանեն 'ի յանի ոչ ինչ ոյժ ։ եւ գինեւոր անեցի եթէ սայլով եթէ գրաստով՝ բաժն ազատ է եւ անեցի որ իւրենն մորթելիք գնէ բաժն ազատ է եւ շալակաւոր անեցի յամէն ցաղ բաժին կէսն ազատ է ։ եւ 'ի կապճին տա ին գաշեկանին ։ ՟Դ ։ դրամ այմոան ։ ՟Դ ։ ՟Ե ։ ազատ է ։ եւ մսագործի եթէ պախրէի լինի գլուխ եթէ ոչխարի զկէսն տա կէսն ազատ է ։ եւ 'ի նստ ո ին կարլէն ո դրամն ազատ է ․

Բ. ԵԿԵՂԵՑԻ, ՓՐԿԻՉ. — Երկրորդ եկեղեցին փրկիչ անուանակոչեալ՝ յարևելից կուսէ կայ մեծի կաթողիկէին։ Զսմանէ թէպէտ չյիշատակի առ մատենագիրս ժամանակին, սակայն յարձանագրաց նորա վկայի շինեալ յԱպլղարիպ մարզպանէ։ Տարածութեամբն յոյժ փոքր է քան զմիւսն, բայց այլաձև ճարտարապետութեանն մասամբ մի 'ի հոյակապ եկեղեցեացն. ձև նորա բոլորշի և 'ի մեծահատոր քարանց, և կաթողիկէն դեռ անկործան։ Քարինք հիմանցն նախ կանգնաչափ 'ի վեր 'ի գետնոյն ամենևին բոլորշի, յետ այնորիկ 'ի զանազան կողմանս բաժանին տափարակ երկայնաձև ստուար վիմօք, և առ անկեամբ իւրաքանչիւր սիւնակս ձևացուցեալ նուրբս յեղերաց քարանցն այնոցիկ. և արձանագիրքն ամենայն 'ի վերայ կողմանցն այնոցիկ չուրջանակի։ Ներքին կողմն եկեղեցւոյս յութ կիսաբոլորակս բաժանեալ է, և առ անկեամբ իւրաքանչիւր սիւն միակտուր. և 'ի վերնախարսխաց սեանցն այնոցիկ և համօրէն կողմանցն տակաւ ամփոփեալ առ 'ի ներքս 'ի մանեկաձև բոլորակն՝ ապա ամբառնայ 'ի վեր գմբէթն երկայնաձև համանման այլոց եկեղեցեաց, երկոտասան երկայնաձև պատուհանօք չուրջանակի։ Դեռ ևս նշմարին յորմունս նորա նկարէն պատկերք։ Երկու դրունք են նորա, և աւանդատունք երկու անձուկ և երկայնաձև առ 'ի ներքս որմոցն՝ որչափ ինչ տարեալ է ստուարութիւն նոցին, զի չելանեն արտաքս քան զբոլորակութիւն եկեղեցւոյն։ Ի կէսն անդ բարձրութեան միոյ 'ի կիսաբոլորակացն՝ որ

հանդէպ է հարաւային դրանն, որմ ածեալ ամպխնաձև տեղի յօրինեալ է, քարակերտ ելանելիս ունելով 'ի կողմանէ ընդ մէջ որմոյն մինչև անդր, և անտի մինչև 'ի տանիս եկեղեցւոյն: Տրամագիծ եկեղեցւոյս է 13 $\frac{6}{10}$ մետր, և կիսաբոլորակացն իւրաքանչիւր 2 $\frac{8}{10}$, բաց 'ի խորանատեղւոյն՝ որ փոքր մի մեծ է քան զայլսն: Եւ արձանագիրքն այսոքիկ.

✠ 'Ի ՆՁԳ Թուականիս ես ապլղարիպ մարզպան եդի Հրովարտակ 'ի սմպատա շահանշահի եւ կայսրն յունաց միխել 'ի կոստանդինուպոլիս եւ շատ ջանիւ եւ մեծածախ գանձիւ բերի մասն 'ի սուրբ խաչէն եւ եկեալ կատարեցի զտաճարս զայս եւ զնշանն յուսո կանգնեցի 'ի պսակ հարսինս քի եւ եդի լաւծ սպասաւորաց եկեղեցւոյս զկիւրակէին աւրն գիշերապաշտաւն աւնել մինչեւ 'ի գալուստն քի եւ քահանա որ մեռանի 'ի սուրբ փրկչիս Ծ մի կալցեն յեկեղեցիքդ եւ եթէ ոք 'ի քահանայից եկեղեցոյս եւ յիմ սպասուցս եւ կամ 'ի գրենոյս յափշտակէ կամ ծախելով կամ զինչ եւ իցէ պատճառանաւ եւ կամ զագահութեան զհետ երթա եւ զեկեղեցոյս մուտքս խորէ եւ Տր փրկչիս 'ի պէտս ոչ անցուցանէ 'ի յԺԸ հայրապետացն նզովեալ լիցի եւ որ զգրգոր երեցու որդիքս յեկեղեցպանութենէ հանէ կրկին անիծիցդ պարտական լիցի իսկ կատարիչ գրիս աւրհնեալ լիցի: զգէորգ գրիչ յիշեսջիք 'ի տէր.

✠ յամս տծապատիւ եւ հոգեւոր տն պետրոսի հայոց կաԹողիկոսի եւ 'ի Թագաւորութեան սմպատա որդւոյ գագկա շահանշահի 'ի ՆՁԵ Թուականիս ես ապլղարիպ մարզպան որդի գրիգորի իշխանի եւ Թոռն ապուղամրի եւ եղբայր վահրամա եւ վասակա շինեցի զՏր փրկիչս 'ի մայրաքաղաքս յանի շատ ջանիւ եւ մեծամեծախ գանձիւ եւ գնեցի հալալ ընչից իմոց կուղպականի: Դ: եւ ձի . . . եւ այգի եւ հողեար եւ ետու 'ի Տր փրկիչս եւ . . . րեցի ոսկւով եւ արծաթւով եւ ականբք պատուականաւք եւ ետու աւետարան եւ տաւնական եւ նո . . . ին եւ նոր կտակարանաւք եւ կանգնեցի միլ աւ . . . բկչիս արդ եթէ ոք 'ի մեծաց կամ 'ի փոքունց . . .

տուեցս եւ կամ յայլ իրացս որ եւսու եւ յանչտ... խափան լիցի յԺԸ հայրապետացն նզովեալ լիցի ... ց իմոց յաշխար-հէս եղի լուծ 'ի վերայ սպասաւորաց ե ... զվարդեւառուն ն̃ ունեն անխափան կատարել մին ... տն քն̃ ընդ նմին եւ զ ... դւո գագկա սմբատա շահանշահի.

'ի ՆՁԵ թուականիս հայոց եւ 'ի մեծափառ թագաւորու-թեանս հզաւր եւ տիեզերակալ սմբատա որդւո գագկա հայ-ոց եւ վրաց շահայնշահի կամ եղեւ ինձ տն̃ պետրոսի հայոց կաթողիկոսի տալ զայգին մշնկի (կարմաշնկի) որ 'ի մեր կոր-իդո արկած էր քն̃ասէր մարզպանին ապլղարիպա որդւո գրի-գորո պալհաւունո վասն առաւել սիրոյն եւ երախտեացն զոր ծառաեալ էր զն̃ր լուսաւորչի աթոռս արդ տուաք որմով եւ ծառովք պտղաբերովք եւ անպտղաւք եւ խոտադետովք եւ Է̃ աւր ջաւր աղատ 'ի խալաճ եւ 'ի գեղջէ յամենայն հա-սուց եւ գրեցաք մեծաւ հաստատութեամբ զկտակս զայս իսկ նա ընծաեաց յիւր շինեալ եկեղեցին 'ի ս̃բ փրկիչս բաժակի վասն փրկական խորհրդոյն յիշատակ հոգւո իւրո արդ եթէ ոք զապարանսդ զոր շինեալ է ապլղարիպա առ ս̃բ փրկչիս աւ կամ զոր ինչ տուեալ է 'ի պէտս եկեղեցւոյդ եւ որոշէ ոք եւ կամ յապարանսդ բնակի եւ զեկեղեցւոյդ հոգսդ զոր ինչ պիտո լինի եւ երկեւղիւ ա̃յ ոչ հոգա 'ի սուրբ լուսա-ւորչէն եւ 'ի նորին աթոռակալացն մինչեւ ցմեզ յամենեցուն նզովեալ լիցի իսկ կատարիչ գրոցս աւրհնեալ լիցի.

✠ 'ի ՆՂԹ 'ի հայրապետութեան տեառն պետրոսի հայոց կաթողիկոսի եւ թագաւորութեանն սմբատա որդւո գագ-կա շահանշահի ես քրիստափոր ծառա ա̃յ ապաւինել յողոր-մութիւնն ա̃յ եւ 'ի ս̃բ փրկիչս ետու զիմ գանձագին հայրե-նիքս Է̃ տուն 'ի ս̃բ փրկիչս վասն մեղաց իմոց թողութեան եւ հոգւո փրկութեան եւ պարտին քահանայք ս̃բ փրկչիս յամէն ամի 'ի չորս եկեղեցիքս յեկեղեցին Է̃ աւր ժամ ար-նել անխափան մինչեւ 'ի գալուստն քի̃ արդ եթէ ոք յիմոց

կամ աւտար որ հակառակ հոգւո իմ յայտնեսցի եւ զարձա-
գրեալդ. անփոյթ առնէ. եւ իմ աններոյս յապշտակէ դատա-
պարտեալ եղիցի 'ի քէ եւ մեղաց իմոց պարտական լիցի 'ի
դալստեանն քո եւ անէծս մշանջենականս ժառանգեսցէ իսկ
կատարիչ գրիս աւրհնեսցի •

✠ ՆՂԹ ես շահիկս եւ իմ որդիս վարդս տուաք զմեր
կորդս շինած տունս եւ զբակս 'ի ս͞բ փրկիչս եւ 'ի ս͞բ յո-
հաննէսն յիշատակի •

յամս ա͞ծապատիւ եւ հոգեւոր ս͞ն բարսղի հայոց կաթո-
ղիկոսի եւ յամիրապետութեանն բարխանուն սուլթանի որդի
ամիր մահմուտի թոռն մանուչէի : յամի : ՈԻԲ : թու : արդ ես
տրդատ քահանա որդի սոսթինիս քահանաի թոռն պէորգա
աւագ երէցս արճոյ եւ զուգակից իմ խուշուշ աղախին ք͞ի
յուսալով յողորմութիւն ա͞յ շինեցաք վերստին զմեր գան-
ձագին հայրենիքս զս͞բ փրկիչս շատ աշխատութեամբ եւ նո-
րոգեցաք յառաջին պայծառութիւնն ոչ ունելով զոք աւգ-
նական այլ միայն զբաւականն յաւենայնի որով կարողացաք
եւ կատարեցաք այլ եւ ընծայաբեր եղաք 'ի սա 'ի սորին շը-
նորհէ շնորհս զնորս հնոյն ա͞ծապիծ պատգամաւ նա եւ ըզ-
զարդս սպասուց 'ի քառեսին խորանսն որք կանխեցին հա-
նին 'ի սեղան զարդարեւ ուխտեալ զհաճելին կամացն հաւր
պատարագ շինեցաք սմա ժամատունս ամարանո եւ ձմերանո
եւ 'ի կեանս մեր պաշտեցաք 'ի սմա զեկաւորս ճավազս հաց
արդ ես տրդատ երէց եւ ըծակից իմ խուշուշս 'ի մեր հայ-
րենի ժառանգութենէց 'ի սպաս ղխտոից հացի եւ գինւոյ տուաք
չորս այգի յարուճ զսաղար եւ զշլիկն եւ զկովկրածն եւ ըլար
խաչկայն եւ է͞ տուն եկեղեցւոյն դիմաց մեծ արտք եխենցն ճ͞
կապճով մին 'ի միջէան 'ի ջրփողին բեխենցն այս է 'ի պղպղի
արդ ընդ այսր աշխատութեան եւ պարգեւի պարտին ժա-
ռանգորդքն զկնի մեր կատարել ամենայն ամի : խ : մի Ս͞ աւր-
դատա Ս͞ տիկնին խուշուշին եւ : բ : սարգսկանն որդւո սողո-

մինչ անխափան կատարել զյիշատակս մեր մինչեւ ցծագումն որդւոյն ա̃յ եւ մի ոք իշխեսցէ շրջել յարդեանցս Հաստատելոց 'ի սուրբ փրկչէս ապա թէ ոք զատուսցէ և որոշեսցէ զյիշատակս մեր եւ ինքն որոշեսցի 'ի փառաց որդւոյն ա̃յ յԺ̃ըրիցն նզովեալ եղիցի 'ի մահ եւ 'ի կեանք կատարիչք գրոյս աւրհնեալ եղիցին ամէն ·

'ի թու · ՉԽ · ես մխիթար որդի շերասցի որդի զուսի միսալուքենց ս̃բ նշանս եւ 'ի ս̃բ ամենափրկիչս եւ բերի զանգականիս եւ շինեցի զանկակատունս 'ի հալալ արդեանց իմոց որք զվարձանէք 'ի ձայնից սորա ասացէք տ̃ր ա̃ծ ողորմեա մխիթարա եւ ծնողաց իւրոց սպասաւոր սորա Մ̃ մատուցէ պատարագ ։ ա̃ ։ ս̃բ գ̃րի ·

թվ · ՉՂԱ · շնորհիւ եւ ողորմութեամբ բարերար եւ մարդասիրին ա̃յ ես աթապակ վարհամ որդի իւանէի որդւոյն մեծին եւ հզաւրին զաքարիաի վերստին նորոգեցի զկումբէթ ս̃բ փրկչիս վասն երկար կենդանութեան իմոյ եւ յիշատակ մեզ եւ նախնեաց մերոց Օ աւր ես վասիլս որդի գրիգորո առաքեցա պատրոնին հրամանաւն աթաբակ վարհամա եւ եկել կատարեցի մեծ ջանիւ եւ աշխատութեամբ զհրամանըս ինձ եւ սպասաւորք ս̃բ փրկչիս ընձա մատուցին մեզ զվարդավառին կիրակէն ը̃ պատարագ ·

Գ. ԵԿԵՂԵՑԻ ԼՈՒՍԱՒՈՐԻՉ. — Եկեղեցին յանուն սրբոյն Գրիգորի Լուսաւորչին յարևելից հարաւոյ կայ նախագրելոյդ 'ի ծայր զառիվայրին որ տանի յԱխուրեան գետ ։ Զսա շինեալ է Տիգրան ոմն Սմբատեանց 'ի թուին ՈԿԴ որպէս յայտ առնէ արձանագիրն ընդարձակ ։ Ա՛յլ է 'ի սմանէ սուրբ Գրիգոր յիշատակեալն յԱսողկայ և 'ի Կիրակոսէ, զորմէ բանք լիցին զկնի ։ Եկեղեցեացն Անւոյ սա միայն անարատագոյն մնացեալ է ամենայն մասամբք ներքոյ և արտաքոյ հանդերձ կաթողիկէիւն ։ Ար խորանաւն երկուստեք մատրունք են. լայնութիւն եկեղեցւոյն ընդ հիւսիս և ընդ հարաւ անձուկ է տարածութեամբ. որմասիւնքն հանդերձ կամարագոտեօք իւրեանց և թևոցն և խորանին ամբառնան 'ի վեր զգմբէթն. իսկ տարածութիւնն որ զկնի կամարասեանցն՝ անձկագոյն ևս է քան զթևոցն ։ Նկարէն պատկերք դեռ ևս անարատ կան յորմունսն մեծաւ մասամբ ։ Արտաքոյ եկեղեցւոյն դաւիթ կայր սիւնազարդ և կամարաշէն. այլ արդ կործանեալ կամարքն՝ սիւնքն միայն կան 'ի տեղւոջն ։ իսկ յաջմէ դաւթին այլ մատուռն



Ս. Լուսաւորիչ Անւոյ.

է, որոյ կործանեալ՝ կամարին որմունքն եւեթ մնացեալ են։ Եկեղեցիս թէպէտ և փոքր է, սակայն 'ի պատիւ անուան սրբոյն մեծագին սպասուք ճոխացեալ էր 'ի շինողէն, և շուրջանակի վանականաց բնակարանօք անուանի եղեալ, հասոյթս ըստ նմին համեմատութեան հաստատեալ վասն նորա 'ի նմին Տիգրանայ, որպէս վկայէ լիով արձանագիրն։ Յետ իբր հարիւր ամաց անցանելոյ 'ի շինութենէ անտի, չգիտեմ որպէս, անց 'ի ձեռս Վրաց, զոր օրինակ պատմէ երկրորդ արձանագիրն, որ և յայտ է 'ի յոյն և 'ի վրացի գրութեանցն 'ի ճակատ դրանն։ Իսկ բնակարանք վանականացն և իշխանաց զոր ասեն, ոչ ևս երևին. զի 'ի հիւսիսոյ նորա քարակոյտք աւերակաց խառն հողով և խճով դիզեալ բլրացեալ են այնքան՝ մինչև հաւասարել բարձրութեան եկեղեցւոյն։ Յարևելից նորա երևին մնացորդք կամարակապ ներքնատան թաղեալ 'ի գետնի հաւասար հողոյ. կամ լաւ ևս ասել աւերակք հիւսիսակողմանն իջեալ ծածկեալ են զնա։ Արձանագիրս 'ի հարաւոյ է արտաքուստ.



✠ Թվ. ՈԿԴ. շնորհիւն եւ ողորմութեամբն այ յորժամ տիրեց քաղաքիս անոյ ։ Հզաւր եւ տիեզերակալ ամիր ըսպասլար եւ մանդատուր Թախուցէս զաքարիայ եւ որդին նորա շահնշահ ես տիգրան ծառայ այ որդի սմբատաւրենց սուլեմա ։ յազգէ հոնենց վասն յերկար կենդանութեան տանց իմոց եւ որդոց նոցայ շինեցի զվանքս սր գրիգորոյ որ 'ի հինն մատուան ածածին կոչիւր որ էր քաղաքին եւ մացաւ տեղի աէտ զոր իմ հալալ գանձով գնեցի 'ի հերէնէտիրաց եւ բա-

զում աշխատութեամբ եւ գանձով պարսպեցի շուրջանակի շինեցի զեկեղեցիս յանուն ս̄բյն լուսաւորչին գրիգորի եւ զարդարեցի բազում զարդիւք փրկան նշանաւք ս̄բ խաչիւ ոսկեք եւ արծաթեք եւ պատկերագործ խաչերով զարդարել ոսկով եւ արծաթով եւ ակամբք եւ մարգրտաւ եւ կանթեղաւք ոսկի եւ արծաթի եւ նշխարաւք ս̄բց առաքելոց մարտիրոսաց եւ մասամբ ա̄ծընկալ եւ տէրունական խաչին եւ ամենայն ցեղ սպասք յոսկւո եւ արծաթոյ եւ բազում զարդաւք շինեցի զամենայն ցեղ զբնակարան վանականաց եւ իշխանաց եւ կարգեցի 'ի սմայ քահանայք պատարագողք մարմնոյ եւ արեանն ք̄ի որ անխափան պատարագ մատչի վասն արեւշատութեան տանց իմոյ շահնշահի եւ որդոց իւրոց եւ վասն թողութեան մեղաց իմոց եւ ետու ընծայս 'ի վանքս ս̄բ գրիգորոյ հայրենիք զոր գնել էի գանձով եւ վճռամբ հայրենէտիրաց եւ զոր ես 'ի հիմնէ շինել էի զայսոսիկ գաւռախոնեց գեղին կէսն քարհատին է̄ դանկն մշակունեց կէսն կապղուցն կէսն ցամաքծոյն բոլոր խուզած մահմունդի կարուց յերկիրն ու ցլնդոյ բ̄ դանգն խաչորկանն եւ փնդուկն 'ի քաղաքիս հայրենիք բաղնիսն ու միլն 'ի մոդանի սխանապատն կուղպակնոյն ու կամարակապ փնդուկն ու մարագն հետ բաղնեցն տ̄ր սարգսի ախոռն ու մարագն զոր գնեցի կալն եւ բ̄ ակն ձիթահանք եւ ախոռնի ու մարագնի վանիցս 'ի դռանս վանիցս առջեւ պահեզն ու լանջն ինչուբմէ գլխորի դուռն ինչմէ գետն ու դետեզերն պահեզն զոր գնել էի եւ շինել դմնադռանն կէս ակն ջաղաց թարփ մի բոլոր ու մին այլ թարփին շ̄ար բ̄ աւր գլխձորին ջաղաց ա̄ թարփն շ̄ար բ̄ աւր 'ի բէշքէնակապէն ինչուբմէ կարմունջն գետին կէսն իմ գնած է պապենց խանաբարն դ̄ դանգն ու դռան կուղպակն բոլոր տներ հատեցոնց զուկակն քաղաքիս դռանս բազում հողեր գնած այգի ա̄ յերեւան այգի ա̄ յոշական այգի ա̄ կոշ էգի ա̄ յարուճ որ սաղոան կոչի այգի ա̄ 'ի մրեն այգի

տ՜ 'ի ծմակին որ կաթողի հող կոչի զայս որ գնած է եւ այլ բազում գրաւկնած էր զոր ոչ արձանագրեցի վանացս էի տվել ու թէ տէրքն թափեն ոսկին վանացս զոր ուրիշ իմ անդարձագրին եմ գրել եւ զվանքն ընխենց կոչեցել զոր ես շինեցի եւ նորոգեցի ընձայաւք փարթամացուցի ամէ-նայն սուրբ գրիգորոյ վանացս հոգացողս հոգայ զորպիսու-թիւն արդ եթէ ոք 'ի մեծաց կամ 'ի փոքունց յիմոց կամ աւտարաց զոր ինչ արձանագրիս է խափանել ջանա կամ թէ իւք շորթէ յարդենցս որ 'ի սմա հաստատել է կամ զյիշա-տակ զմեղուցել ծառայս տ՜յ խափանէ զինչ եւ իցէ պատճա-ռաւք այնպիսին ուրոշել լինի փառացն որդոյն տ՜յ եւ զպա-տիժս կաենի եւ զյուդայի ժառանգեսցէ 'ի գլուխ իւր եւ երեք ճ՟ր ժողովն եւ Թ դասուց հրեշտաց նզովել եղիցի եւ մեր մեղացս համարս տացեն առաջի տ՜յ եւ կամարարքն եւ հաստատուն պահողքն աւրհնին յ՜տյ ✠ ԻԴ ԳՋ

Յարեւելից կուսէ.

Թվ. ՋԾԹ. աթապագի ամիր սպասալար շահանշահի մծխկ-նաւ բարթուխուցէս մաթէս եւ իմ կենայկիցս թէնի եւ իմ եղբէր մարկոս յայսժամս որ պարոն ողորմեցաւ զվանքս մեզ էրետ վաղ բարեպաշտ տիգրան ջուր էր բերել 'ի վանքս ու 'ի յանտիրութենէ խաղտել էր ու կորել մէք վասն արեւ-շատութեան պարոն շահանշի եւ խուանդզին եւ իրենց որ-դուն զաքարի եւ վասն մեր հոգուս յիշատակ բերաք զջուրս եւ հաստատեցաք յիշեցէք 'ի ք՜ս.

վերոյ դրանն աղեղնաձև երկտող յոյն և վրացի ներկագիր.

........ Κύριε ἠγάπησα εὐπρέπειαν ὄικου σου καὶ τόπον σκηνώματος δόξης σου.

որ է Սաղմոսն. Տէր, սիրեցի զվայելչութիւն տան քո և զտեղի յարկի փառաց քոց:

ესე არის ბჭჱ უფლისაჲ და მართალნი შევლენან ამას შინა.

այսինքն է. Այս դուռն Տեառն է, և արդարք մտանեն ընդ սա:

Դ. ԵԿԵՂԵՑԻ։ — *Այս եկեղեցի յարեւելից կայ նախընթացիդ եւ հեռի 'ի նմանէ եւ մօտ առ գետեզրն. անծանօթ է յանուանէ, զի չունի եւ ոչ մի արձանագիր։ Հիանալի է հոյակապ եւ մեծագործ ճանապարհն որ տանի անդր. զի 'ի վերուստ մինչեւ յեկեղեցին զառիվայր ճանապարհն առհասարակ ամրափակեալ է երկուստեք որմով, վերոյ կամարակապ եւ ստորեւ աստիճանք սանդղոց, ամենայնն քարակերտ. ոչ ուղղագիծ ձգեալ այլ խոտորնակի ցայլ եւ այլ կողմանս մինչեւ յեկեղեցին. առ ամրութեամն մեծի շինուածոյն արդեօք զայդ օրինակ արհեստաւորեալ, թէ առ փոքր մի մեղմելոյ զառիվայր դժուարութիւնն' չունիմ ասել։ Ուրեք ուրեք լուսամուտք բացեալ են յորմունսն, մանաւանդ յանկիւնս իւրաքանչիւր խոտորմանցն. մօտ եկեղեցւոյն իբրու քարընկեցիւ եւ աւելի անցեալ ընդ դուռն մի լայնանիստ ուղին, եւ որմունքն երկուստեք քաջ քան զճանապարհին մաքուրք են եւ քարինքն սրբատաշք, թէպէտ եւ յարկ նորա կործանեալ, որպէս եւ բազում ուրեք կամարք ճանապարհին խաթարեալք։ Ի ծայր վերջնոյ ճանապարհիդ կառուցեալ է եկեղեցին ամենափոքր 'ի վերայ քարափանն որ հայի 'ի գետն կոյս. գմբէթ նորա եւ ամենայն կողմանքն ներքոյ եւ արտաքոյ անարատ կան ցայսօր։ Եւ են դոքա երկու մատրունք կից առ միմեանս համակ 'ի կարմիր քարանց աղիւսագոյն. մի մի խորանք 'ի ներքս, զի անձկութիւն տեղւոյն չտանի այլ ինչ։ Զիք ուրեք յիշատակութիւն 'ի գիրս մեր շինուածք են եւ որոյ հրամանաւ. եւ զարմանս է ինձ թէ էր աղագաւ այնքան գանձ սպառեալ 'ի կերտուած ճանապարհին եւ կամարաց նորա, եւ զեկեղեցին մատրանաչափ սահմանեալ։ Աւանդութիւն 'ի բերան ռամկին է, եթէ արժան իցէ հաւատալ ամենայն զրուցաց, թէ 'ի պէտս դստեր թագաւորի յօրինեալ իցէ այդ ամենայն. այլ թէ մեր 'ի թագաւորաց ոչ ոք գիտէ։ Այս եւեթ յայտնի է զի յարեւելից կուսէ առընթեր եկեղեցւոյն երեւին մնացորդք որմոց բնակարանի իրիք, զորմէ ասեն թէ պալատ էր նորին դստեր թագաւորի։ Իսկ քարակոյտ աւերակաց վայրաց անբաւ է. զարմանք այն են զի եկեղեցին զերծ կայ տակաւին յանդուլթ ձեռանէ' 'ի բանութենէ տարերացն կացեալ աննկուն։*

Ե. ԵԿԵՂԵՑԻ, ԱՌԱՔԵԱԼՔ. — *Դարձ արարեալ վերստին յարեւմուտս կոյս անդր քան զկաթողիկէն, հինգերորդ եկեղեցին ընդ առաջ լինի Առաքեալք անուանակոչեալ։ Մի 'ի հոյակապ եկեղեցեացն է եւ սա, ոչ մեծութեամբ այլ ամրաչէն եւ այլատարազ կերտուածովքն. չիք նորա գմբէթ իբրեւ զայլոցն, այլ կամարաւ եւեթ յարկեալ։ Ձեւ եկեղեցւոյն քառակուսի է. եւ 'ի չորից կողմանց կամարագօտի ածեալ, գրեթէ տափարակ եւ ոչ քաջ աղեղնաձեւ, միանան 'ի կեդրոնի. եւ միջոց գօտեացդ մեծամեծ քարամբք յարկեալ։ Այդ կամար եկեղեցւոյն անխախտ կայ ցայսօր անսիւն։ Տեղի խորանին ոչ իբրեւ զայլոցն է կիսաբոլորակաւ եւ բեմիւ զատուցեալ, այլ հարթ հաւասար իբրու զայլ կողմանսն, քանդակս եւեթ ունելով պէսպէս ձեւոց եւ խաչից, նոյնպէս եւ արտաքոյ նորին կողմանն. որք եւ այնչափ անարատք են մինչեւ կարծել թէ այն ինչ քանդակագործ արհեստաւորին մեկնեալ է անտի։ Սակայն այդ զարմանաչէն եկեղեցի հանդերձ բազմաքանդակ դրուագօքն առաւել քան զայլս 'ի վերոյգրելոցդ խաթարեալ է, ոչ այնքան ժամանակին հնութեամբն, որպէս կարծեմ քան 'ի բռ-*

նութենէ աշխարհաւեր ձեռաց. և վկայ ասացելոցս՝ յարևելակողմն նորա արտաքոյ՝ 'ի քանդակագործ քարանցն 'ի գետնոյ և 'ի վեր 'ի բաց փրթուցեալ է որչափ ձեռն հասանէ. իսկ յայլ կողմանս նոյնօրինակ 'ի մեծամեծ քարանց բարձեալ են, և շատք ևս անկեալ և խորտակեալ, և եկեղեցին պատեալ շուրջանակի յաւերակաց անտի: Ըստ հիւսիսոյ կից ընդ եկեղեցւոյն կայ աւերակ մատրան հոյակապ յոյժ որպէս երևի 'ի մնացորդացն և 'ի մեծամեծ քարանց անկելոց մի զմիով: Հոյակապ է դարձեալ և միւս մատուռն մեծագոյն քան զնա երկայնեալ 'ի կողմն արևելից 'ի հիւսիսոյ եկեղեցւոյն: Որմունք այսր մատրան 'ի տեղիս տեղիս կանգուն կան. և տեղի խորանին և հատուած մի արձանագրի 'ի վերայ նորա, որպէս տեսցի ստորև: Թէպէտ և բազում են արձանագրութիւնք եկեղեցւոյս ներքոյ և արտաքոյ, սակայն կարևորն 'ի նոսա յորում յիշատակեալ էր արդեօք և շինողն և ժամանակ շինութեանն՝ չկայ. զի դրունք և բարաւորք նորա հանդերձ այլ ևս բազում մասամբ՝ այնքան խաթարեալ են և քանդեալ, զի կամ բարձեալ է արձանն այն և կամ ընդ աւերակացն անկեալ և խորտակեալ. իսկ մնացեալքն այսպիսիկ են, յորոց 'ի միումն յիշատակ լինի զմահուանէ անապատաւորի ուրուք անծանօթ եղելոյ 'ի մարդկանէ: Եւ նախ ներքինքն.

ՆԶ. Թու. շնորհիւն ա̅յ ես աբողամբ որդի վահրամա իշխանաց իշխանի ետու զկանոն տիարտն 'ի ս̅ր առաքելքս վասն եղբաւր իմ գրիգորոյ առողջութեան եւ կենացն յերկարութեան.

ա̅ծահաճոյ եւ ընտրեալ ս̅ր միայնակեացն գանձակեցի զծ̅ե ամ յանապատի կեցեալ խոտաճարակ եւ անտես 'ի մարդկային տեսութենէ եկն 'ի քաղաքս մեր 'ի տուչութենէ ա̅յ առժամայն հրաման 'ի տեառնէ հասեալ փոխեցաւ 'ի մշտնջենաւոր կեանսն եւ թաղեցաւ պանդխտաւրէն 'ի գերեզմանս աշխարհականաց եւ դիրք ս̅ր ոսկերաց նորա բժշկութիւն առնէ ամենայն ախտաժետաց եւ ես տ̅ր գրիգոր սահմանեցի զա̅ծածնին կիւրակէն աւրն յանուն նորա պատարագել զք̅ս ով զնմա մուտքն 'ի յաթոռէս հանէ կամ յուզել իշխէ կայէնի եւ յուդայի չափն նզովեալ եղիցին.

յանուն ա̅յ ես խաչատուր ետու զիմ գանձագին սարաւոյթով տունս 'ի ս̅ր առաքելքս իմ ոգոյս եւ իմ ծնողաց եւ պարտին ապասաւորք սորա 'ի տարւոյն : Ե̅ : աւր ժամ արնեն անխափան եւ եթէ ոք հակառ կայ գրոյս այսորիկ յաւագաց

կամ 'ի յընտանեաց կամ յաւտարաց ։ յԺը ։ Նզովեալ եղիցի հոգւով եւ մարմնով անլուծանելի ․

Թվ․ ՋԾ ․ շնորհիւն այ ես աղբուղէս որդի իւանէի Թոռն մեծացն զաքարիայի եկի յանի հրամանաւ շահնշահի տեսայ զքաղաքս աղքատացեալ եւ խիստ 'ի վէր մնայել զի շատ հարկ էր 'ի վերայ դրած որ իսկզբանէ չէր եղել ես ։ Գ ։ հարկ 'ի վեր կալա վասն յերկար կենդանութեան եւ արե-շատութեան եղբարցն իմոց շահնշահի եւ իմ եւ վասն իմ նախնեաց գերեզմանին համար Թողի զեզինն հաղըն զկովին համբրեկէն զոչխրին աղլհակն եԹէ ոք յիմ ազգէ եւ Թէ այլ ուստեք որ զյիշատակս մեր հաստատուն պահէ աւրհնի յամենակալ բանէն այ ․

կամաւքն այ եւ հրամանաւ պարոն աղբուղին ես մխիԹար որդի գրիգոր խուցիմին որ անոյ տաղմաՃի էի վասն պարոնաց ա-րեւշատութեան Թողի զՋաղացնոյս ամենոյ զդամղէն եւ զդա-հեկ վասն պարոն զաղին հոգոյն եԹէ ոք 'ի մեծաց կամ 'ի փոքու զայս արձանս խափանէ մարդն էն Նզովել եղիցի յԺը հայրապետացն մասն եւ բաժին զյուդային եւ զկայենին առ-ցէ եւ որ հաստատուն պահէ աւրհնի յայ ․

✠ շնորհիւն այ ես գէշս որդի պայկանն որ պարոնացն հրամանաւն անոյ դաղմաչ ․ ․ եւ վասն պարոն աղբուղին ա-րեւշատութէն եւ եւս վասն պարոն զազախին հոգոյն Թողի ըզ-քասանկին զդամղէն քաղաքիս եւ որ 'ի դրուց գայ որ յա-ռաջն չէր լել եւ ներկարարն զմաՃառիկն քասանիկ չառ-նեն ․ ․ ․ ով որ զայս արձանս խաբանէ դատի յայ մասն եւ բաժին զուդային առցէ հաստատուն պահողքն աւրհնին յայ․․ այս բանի առաջնորդ մուղանէտէն եւ քնտուր եղեն ․

Թվ․ ՋԿԹ ․ ողորմութեամբն այ ես խուանդղէս զուգա-կից աԹաբակ շահնշահի որ յայսմ ամի եկ յաշխարհէ եւ

տրտմութիւն մեծ եղեւ մեզ եւ աշխարհիս արեւելից եւս ա-
մուսին նորա դուստր շամշադին սահիպ գիւանին եւ պա-
րոն ... իւանէ աթաբակին եւ իմ որդիս իմ զաքարիայ ա-
ղաքս պարոնին հոգոյն փրկութեան եւ եղբարց իմոց յեր-
կար կենդանութիւն 'ի մեր հայրենիք քաղաքս 'ի յանի թո-
ղաքս զկովերոյն եւ զիշանկուն զհամբրելէն եւ զդռնագիրն
մեծի եւ զփոքու որ եւ զմեր աւանդս խափանել ջանայ թէ
հայ լինի կամ վրացի կամ տաճիկ հանդատի եւ դատապար-
տի յա̃յ մասնակից եւ գեհենակից սատանի եղիցի եւ վրացին
կրուլ եւ անիծած լիցի եւ տաճիկն 'ի յա̃ փառաւորել փե-
ղաքարացն ամաւթով եւ սեւերես լինի իսկ որք հաստատուն
պահեն զաւանդս մեր մինչեւ 'ի կատարած աշխարհի աւրհ-
նին յամենակալէն ա̃յ որք այս բանիս հակառակ կենան նզովի
որպէս զուդա եւ զկաեն այս բարիս եւ ողորմութիւնս հաս-
տատեցաւ 'ի յամիրաութեան պարոն լիպին ։ ⊙ պտուղ
գրէչ ։

* Թվ. ՉՂԷ. կամաւքն ա̃յ եւս շապադինս որդի յովանիսի
եսու ընձա 'ի մ̃ը աւաքեալքս զմ̃ը ստեփանոս իւր ժողովր-
դոմն իւր կալերոմն զոր յառաջն շրթել ին եւս ։ ԷՃ ։ սպ̃ ։
տվի եւ յառաքեալքս դարձուցի այլ եսու զխաչով պահեզի
կէսն որ 'ի հոմթըլթվանց դնել էի եւ մէկ կուղպակ որ 'ի
յամեր հասնա գնել էի 'ի գտակկրոցի խանապըրի դռանն դի-
մացէ վասն յիշատակ ինձ եւ ամուսնոյ իմոյ ավաք խաթու-
նին եւ գեղեցկատեսիլ եւ բարեպաշտ որդոյ իմոյ յովանիսին
եւ պարտին սպասաւորք սորա յամենայն ամի ժ̃բ աւր պա-
տարագ ։ դ̃ ։ աւր շապադինին ։ դ̃ ։ աւր աւաք խաթունին ։
դ̃ ։ աւր յովանիսին կատարողքն աւրհնին յա̃յ հակառակքն
դատին յա̃յ ։

Արտաքոյ յարեւելից կուսէ.

շնորհիւն ա̃յ 'ի տէրութեան քաղաքիս եւ յառաջնորդու-
թեան տ̃ր սարգսի եւ 'ի մելքութեան փախրադինին եւս մը-

խիթար եպիսկ տեղերեցի 'ի ցասմանէ շարժի աւուրբս բար-ձաք զկիրակէի վաճառն 'ի փողոցէ ով այս գրիս հակառակ կայ թէ մեծ թէ փոքր քաղաքիս մեղացն տէր է .

յուսոյն որ առ ած և սէր նորին ես պարոն աղբուղայս որդի ամիր սպալար շահնշահի թոռն մեծին զաքարիայի եւ ես պարոն թամարս դուստր իշխանաց իշխանի պարոն բուղ-տային տեսաք զանոյ աթոռս եւ զիրեցանիս որ հարկ էր 'ի վերէնին զոր մեր նախ ( յաջորդն թերի թողեալ էր )

շնորհիւն այ ես նուրայդին քոթիթս իմ ընկերաւքս եկի յանի տամղիս վերայ տեսայ զանոյ իրեցանուս զի աւղե-խին հրամանքն ոչ խսկըանէ բաժ ու տամղա չէին ավել ես այլ հաստատեց իմ ընկերաւքս որ ոչ բաժ տան ու ոչ տամ-ղայ զինչ 'ի աւղեխին հրամանքն էր թողաք վասն յերկար կեն-դանութեան փաթշահին ով որ այլ բաժ ուզէ կամ տամ-ղայ այու խնդեթվոր լինի ու նզոված է յԺԸ հայրապետացն մասն զյուդային եւ զկայենին առցէ հաստատուն պահաւղքն աւրհնին այ .

ԶԺԲ էլչանին . շնորհիւն այ մեք տաղմաձիքս վասն յեր-կար կենդանութեան եւ վասն պատրոնաց մերոց սահիպ դի-ւանին եւ սահմատին եւ քարիմադինին բարձաք 'ի յանո իրի-ցանուս զբաժն զոր խսկըանէ առաւ էր մեք վերատն այլ հաստատեցաք չունի ոք իշխանութիւն բաժ ուզելու ոչ ինչ ազգ ով խցէ որ կապէլ որ լինի ով այլ խաւաք առէ կամ աղ-մաննէք աժի ուզելու : յԺԸ հայրապետացն նզոված է հաս-տատուն պահողքն աւրհնին յայ . ԻԷԼԳ .

Ցարևելից կուսէ մեծի մատրանն .

. . . կ 'ի միւսում ամի որ էր թուականս ՈԿԶ կա . . այ ես տէր գրիգոր որդի ապուղամրի արհիեպիսկոպ . . . եցաք առնալ զերդեալ հարկ 'ի մեր դաւառէս ջերակս եւ . . . աքիս եկեղեցեացս յանոյ զի սահման էր խսկըանէ յամենայն գե-

ղէ երկու դրիւ հաց յաթոռս տալ եւ 'ի քաղաքիս յամենայն եկեղեցիս մորթի մին զատկին տաւն արդ ես յաղագս յերկար կենաց պատրոնացն իմոց եւ ազգականաց եւ եղբարց իմոց եւ վասն հոգւոց ննջեցելոց մերոց թողի զայս հացս ամենայն դեղի մեծի եւ փոքու եւ զատկի մորթին ամենայն եկեղեցոյ եւ չունի ոք իշխանութիւն պահանջել մինչ 'ի գալուստն քն ապա եթ ։ • • • կատարիչք յիշատակիս • • • ցին յմյ եւ յամենայն մրց • • • կեանդանութեան եւ տուղ • • • աց իւրեանց •

Զ. ԵԿԵՂԵՑԻՆ, Ս. ԳՐԻԳՈՐ. — Վեցերորդ եկեղեցին յարեւմտից կայ Առաքելոց յանուն սրբոյն Գրիգորի ոչ շատ հեռի յարքունի պալատէն 'ի ծայր քարափանն որ հայի 'ի վերայ Ծաղկոցաձորոյն, 'ի բարձրահայեաց և 'ի գեղեցկատեսիլ վայրի. առաւել քան զայլսն յեկեղեցեաց։ Յայդմ վայրի զեկեղեցւոյ իրք յիշատակ լինի առ Ասողկայ, և արժան համարիմ յառաջ բերել անթերի զբանս նորա, որ է այսպէս. « Զմեծաշէն եկեղեցին որ 'ի Քարուդաշտի անուամբ սրբոյն Գրիգորի շինեալ, որ էր փլեալ և կործանեալ, կամեցաւ (Գագիկ) նոյնաձև չափով և յօրինուածով յարդարել 'ի քաղաքին Անւոյ, հիմնարկեալ 'ի կուսէ Ծաղկոցաձորոյն 'ի բարձրաւանդակ տեղւոջն, տարփատենչ տեսողացն. մեծատաշ վիմարդեան կոփածոյ վիմօք մանուածոյ քանդակեալ յօրինէ, լուսանցոյց պատուհանօք, երրակի դրամբք, պքանչատես տեսմամբ գմբէթաւորեալ գունակ գերամբարձ և երկնանման գնդին »։ Զբանս Ասողկայ ընդ մերոյս տեղագրութեան համեմատեալ՝ չէ պարտ նոյն համարել. զի թէպէտ տեղին նոյն իցէ որպէս ասէ « Ի կուսէ Ծաղկոցաձորոյն 'ի բարձրաւանդակ տեղւոջն տարփատենչ տեսողացն », նոյն և անուն սրբոյն Գրիգորի, սակայն բազում այլ բանք են որ անպատկան են նմին. նախ զի մեծաշէն չէ, այլ փոքր յոյժ. և երկրորդ ոչ 'ի Գագկայ շինեալ, այլ յԱպլղարիպայ մարզպանէն, և եթէ զԱպլղարիպայն նորոգութիւն միայն և ոչ հիմնարկութիւն ասիցեմք, որպէս իմանամ յարձանագրէն, սակայն և այնպէս հօր նորա Գրիգորոյ սեպհականի շինութիւնն և ոչ Գագկայ. այս յայտ է և 'ի թուականացն, յորոց Ապլղարիպայն է ՆՁԹ, և միւսն որ հասոյթս սահմանեալ է եկեղեցւոյն ՆԽԴ. որով յայտ լինի թէ անկեալ է թուական հիմնարկութեանն 'ի Գրիգորէ, և մնացեալ Ապլղարիպայն որդւոյ նորա նորոգողի. ապա շինեալն 'ի Գագկայ սուրբ Գրիգոր՝ իսպառ կործանեալ, յետ ժամանակաց 'ի նմին տեղւոջ և 'ի նոյն անուն կառուցեալ է սա ոչ մեծանիստ և արքայավայել, այլ 'ի փոքու սահմանեալ որչափ բաւական էր ձեռն իշխանին հիմնարկողի։ Գեղեցկութեանն մասամբ և ճարտարապետութեանն արհեստիւ ոչ ինչ թերութիւն նըշմարի 'ի նմա. այլ դըրիցն վսեմութիւն մոռացուցանէ զամենայն։ Ի հիւսիսոյ նորա կայ աւերակ մատրանց գեղեցկաշէն. թերևս զոցանէ իցէ երկու սեննակ առացեալն յարձանագրին։ Երկք յարձանագրացն են 'ի ճակատ դրանն օրինակ զայս.

կամաւքն այ 'ի ՆԽԴ թւ ես շուշան տիկնաց տիկին զու-
գակից գրիգորոյ իշխանի եւտու զմրուանա կուղպակս 'ի սուրբ
գրիգոր իսկ որ հակառ գա յիմոց կամ յաւտարաց յԺԸ իցն
նզովեալ է հոգով եւ մարմնով.

✠ կամաւքն այ ես վահրամ իշխանաց իշխան եւտու զիմ
որդոյն զապուխամրի ոգերաժին եւ գնեցի Է կուղպակ զլո-
րադոյնին եւ զորսաւտին 'ի ոշականց եւտու 'ի սբ. գրիգորի եւ
քան եկեղեցիքս որ ունին 'ի տարին Դ քառասունք արդ է թէ
ոք հակառ գա յիմոց կամ յաւտարաց նզովեալ եղիցի 'ի հաւ-
րէ եւ յորդո եւ 'ի սբ հոգոյն յԺԸ հա. եւ ապուխամրի մե-
ղայն պարտական եղիցի առաջի այ.

✠ ես սարգիս լարարարս եւտու զիմ տունս 'ի սբ գրիգոր
որ արնեն ինձ ժամ... աւր իսկ որ հակառ գա եւ զիմ յի-
շատակս խափանէ յամենա... նին այ... եւ մարմնո ամէն.

Յարեւելից կուսէ.

'ի ՆՁԹ թուականիս ես ապլղարիպ հաոց մարզպան որդի
գրիգորո եւ թոռն ապուղամրի հայոց իշխանաց թեպէտ եւ
անտես էի 'ի հաւրէ իմէ յաղագս կրսերութեան այլ հար-
կեցա 'ի ծնողական սիրոյն և շինեցի զայս հանգստարան հաւր
իմոյ գրիգորո եւ եղբաւր իմո համզէի եւ քեռ իմո սեդաի եւ
շինեցի սենակ Է զսբ ստեփաննոս եւ զսբ... պայման քա-
հանայիցդ այս է որ զամէն ուրբաթի սբ... ժամն իմ մաւրն
շուշանա արասցեն եւ զշաբաթն իմ հաւրն գրիգորո եւ 'ի
սբ քրիստափոր զամէն ուրբաթ իմ քեռն սեդաի եւ զշա-
բաթն իմ եղբաւրն արնէ համզէի եւ առաջաւորացն ուրբա-
թին եւ աղցացն ուրբաթանոյն փոխան յարձակ աւուրքն ա-
րասցեն Է աւր արդ եթէ ոք 'ի քահանայից եկեղեցեացդ
զայդ ժամդ խափանէ եւ կամ պղերգա եւ աւր անցնէ նզո-
վեալ լիցի 'ի հաւրէ եւ յորդւո եւ 'ի սբ հոգւոյն եւ յԺԸ

*հայրապետացն եւ բաժին նորա ընդ յուդայի մատնչին առցէ իսկ կատարիչ գրոյս աւրհնեալ լիցի .*

*ի հարաւոյ կուսէ .*

*✠ քս̃ ած̃ յորժամ գաս փառօք հաւր 'ի նորոգել զերկիր ողորմեա գրիգորո ծառաի քո .*

Է. ԵԿԵՂԵՑԻ. — *Եօթներորդ եկեղեցին 'ի միջավայրս անդ քաղաքին է մօտ առ Առաքելոյն: Սա որչափ ինչ յաւերակացն նշմարի, մի 'ի գեղեցկաշէն եկեղեցեաց էր. այլ արդ հիւսիսային կողմն միայն կայ հանդերձ մասամբ խորանին, այլոցն առ հասարակ փլատակ կուտեալ շուրջանակի: Եկեղեցիս թէպէտ և փոքր է տարածութեամբ, այլ այնու առաւելու քան զայլս զի ընդ յատական ծայր 'ի ծայր ներքնատուն է գետնափոր կամարակապ և ցարդ անկործան: Արձանագիր չերևի ուրեք 'ի մնացորդ մասունս նորին:*

Ը. ԵԿԵՂԵՑԻՆ. — *Ութերորդ եկեղեցին ամենափոքր 'ի վերայ ճանապարհին կայ որ հանէ 'ի միջնաբերդն: Եւ սորա քանդեալ երից կողմանցն՝ տեղի խորանին հանդերձ կողմնակի դրամբն կանգուն կայ ցարդ վայելուչ յօրինուածովք:*

Թ. ԵԿԵՂԵՑԻՆ. — *Անցեալ 'ի միջնաբերդն ընդ առաջ լինի 'ի հարաւոյ կուսէ նորա իններորդ եկեղեցին 'ի զառիվայր տեղւոջ և մօտ 'ի պարիսպն, որ և բարձրահայեաց դիտէ յԱխուրեանն գետ: Եւ սա միջակ մեծութեամբն հոյակապ է և այլատարազ ձևովն, վասն հանգամանօքն ճարտարպետութեան, և գմբէթին և ստուարութեամբ քարանցն առ հասարակ և առերի գեղեցկաշէն մատրամբն. այլ աւաղ զի մեծաւ մասամբ քայքայեալ մնացորդ մասունքն յոգւոց հանել տան հնախոյզ հայրենասիրին որ չհանդարտէ անթաց աչօք և անկարեկիր սրտիւ մեկնիլ 'ի տեղւոջէն:*

Ժ. ԵԿԵՂԵՑԻՆ. — *Տասներորդն է 'ի կողմն մի միջնաբերդին 'ի հիւսիսոյ նախասացեալ եկեղեցւոյն 'ի վերայ բլրի. ձև նորա կամարակապ, որմունքն հասարակ և ոչ նշանաւոր ինչ 'ի նմա:*

*Այդոքիկ տասնեքին եկեղեցիքդ որ կանգուն և որ կիսափուլ երևին 'ի քաղաքին. թէպէտ և գտանիցին այլ ևս երկու կամ երեք, այլ խսպառ հիմնայատակ եղեալ անծանօթ մնան թէ որպիսի իցեն շինուածք:*

ՄԶԿԻԹՆ. — *Բաց 'ի տասանց անտի եկեղեցեաց կանգուն կայ տակաւին և Մզկիթ մի 'ի հարաւոյ կուսէ քաղաքին ոչ շատ հեռի 'ի միջնաբերդէն, 'ի ծայր զառիվայրին որ տանի 'ի գետն: Զհանգամանաց սորա չունիմ որոշակի ինչ ասել յեկեղեցւոյ արդեօք 'ի մզկիթ փոխեալ, եթէ հիմնարկեալ իբրու մզկիթ. քանզի եկեղեցւոյ ձև չերևի 'ի նմա, ոչ տեղի խորանի և ոչ յորմունսն նշան քրիստոնէութեան խաչի կամ հրեշտակաց. սակայն և գլխաւոր վայր մզկթի միհրապն չիք 'ի նմա, զի որմն հարաւոյ միայար անշեղ ամբառնայ ծայր 'ի ծայր: Նմին իրի թուի ինձ նախ յայլ պէտս սահմանեալ շինուածդ, և ապա առ Թաթարօք կամ Պարսկօք 'ի մզկիթ փոխեալ է, յաւելեալ նմին մինարէ և արձա-*

Նադիր-ղորոց զննի։ Զև նորա է երկայն քառակուսի յարևելից յարևմուտս և երկու կարգ սեանց 'ի նմա երեք երեք, որով յերիս միջոցս բաժանի շինուածն։ Ցարկ նորա 'ի մէջ իւրաքանչիւր սեանցն ուրեք տափակաձև կամարօք յարկեալ և ուրեք ամենևին 'ի ձև առաստաղի, քառակուսի մեծամեծ քարինս՝ չգիտեմ որպէս՝ առ իրերաց եդեալ շուրթն առ շուրթն։ Ի հիւսիսոյ յատակ նորա հաւասար է արտաքին գետնոյն, յորմէ անընդմիջապար զառիվայր շեղեալ 'ի ձորն կոյս՝ 'ի հարաւոյ կուսէ հիմնարկեալ է հարաւակողման որմոյն 'ի խորոց անտի ձորոյն մինչև ցհաւասար բարձրութիւն յատակի հիւսիսակողմանն. և ապա 'ի վեր ամբարձեալ հարազատին որմն մզկթին հանդերձ մեծամեծ պատուհանօք որ բարձրահայեաց դիտեն ընդ Ախուրեանն գետ։ Ընդ յատակաւ մզկթիս ներքըննատունք են կամարաշէնք՝ միջնադրունս ունելով իւրաքանչիւր անցանելոյ 'ի միոյ 'ի միւսն։ Մինարէ նորա սովորական ձևով, և կայ յարևելից կուսէ կցեալ ընդ անկեան հիւսիսային որմոյն։ Ցարկ մզկթիս անկործան է. այլ յորմոցն՝ արևմըտեանն կիսով չափ անկեալ և հիւսիսայինն առ մինարէիւ քայքայեալ փոքր մի, և խանգարեալ գետնափոր տեղիքն։ Արձանագիրք ամենայն 'ի հիւսիսոյ կան արտաքուստ. յորոց նախ արաբացի կամ պարսկերէն է բազմատող. յետ այնորիկ տող մի քուֆի խոշորատառ և ծաղկազարդ։ Երկատեսակ գրութիւնքդ բարձրաքանդակք էին, զորոց չմարթացայ առնուլ զհաւասարն. և զի բարձր էր տեղին, և ջանդխոցն դժուարդել լինելոյ անպատկան՝ թէ կամէի թրջեալ թղթովք պընդեալ 'ի վերայ առնուլ զպատկեր գրոցն։ Սակայն ստորև դոցա կան այլ ևս եռատեսակ համառօտ յիշատակարանք. նախ վրացի և դարձեալ տաճիկ և ապա հայ. զհայերէնդ և զվրացերէն որպէս կարծեմ բանի տուեալ են գրել քրիստոնէից 'ի վերայ մզկթին. և են այսոքիկ.

ქორონიკონსა უჩწ (      ) მე ათაბაგს ზაქარიასა მომცკულებია:

Այսինքն. «Ի թուիս ՆՄԸ (1258). ես Աթաբէկ Զաքարիա հաստատեցի»։

سهور سنة ص . . .

صنکر اتلبك زکريا بن المرحو

## ՀԱՍՏԱՏՈՒՆ ՊԱՀՈՂՔՆ ԱՒՐՀՆԻՆ ԱՍՏՈՒԾՈՅ.

Է և այլ մինարէ մի գրեթէ 'ի միջակէտ քաղաքին բարձր՝ այլ չիք նորա մզկիթ, և ոչ աւերակքն երևին 'ի տեղւոջն։ Հայ արձանագիրն որ կայր 'ի վերայ նախասացեալ մզկթին, կայ և 'ի վերայ այսր մինարէի հանդերձ քանի մի տաճկերէն տողիւք։

ԱՐՔՈՒՆՆՔ. — Ի մեծագործ շինուածոցն Անւոյ մի է և արքունի պալատն կառուցեալ յարևմտակողմն քաղաքին 'ի ծայր քարափանն բարձու որ հայի 'ի վերայ Ծաղկոցաձորոյն յարևմտից և 'ի հիւսիսոյ, որպէս ինչ առաջք ձորոյն ձևացեալ են 'ի տեղւոջն. և է մօտ 'ի սուրբ Գրիգոր փոքր եկեղեցին զոր վեցերորդ կոչեցաք 'ի կարգս եկեղեցեաց։ Նիստ արքունեացս և տեսարան նորա, որմունքն և ներքնափոր վայրքն յոյժ պճաւոր են. յարևելից կուսէ կանգնեալ է դուռն

պալատանդ գեղեցկաքանդակ՝ ըստ արևելեան ախորժակաց, և է այսպիսի. 'ի շրջապատ նորա հարուստ մի տարածութեամբ երկուստեք և 'ի վերոյ ունի քառակուսի թղաչափ ստուար քարինս ադուցեալ յորմն 'ի դոյն դեղին և սեաւ, և քանդակեալ 'ի նոսա պէսպէս զարդս և ձևս խաչի. որ 'ի հեռաստանէ և 'ի մօտոյ հաճոյական տեսիլ ընծայեն աչաց: Հիմն որմոյ դրանդ հաստատ է արտաքին գետնոյն և անդէն չեփի ընդ զառիվայր Ծաղկաձորոյն. և ահա յայնմ կողմանէ մօտ 'ի յատակ ձորոյն 'ի վերայ քարաժայռիցն հիմնարկեալ արևմտեան և հիւսիսային որմոցն՝ ուղղաբերձ 'ի վեր ամբառնան բարձրադոյն քան զպարիսպս բերդին: Ցերկուս մասունս բաժանեալ են ապարանքդ որչափ ինչ յաւերակացն նշմարի, արևմտեան և հիւսիսային. երկրորդիդ արտաքին որմունքն միայն կան և 'ի ներքսն իսպառ խախտարեալ. իսկ առաջնոյն որոյ էր և դուռն զոր ասացաք, անկործան կան տակաւին և բաժանիչ որմունքն կամ անջրպետք սենեկացն թուով յոյժ սակաւուց և ոչ մեծամեծաց. անյարկ և մերկ են 'ի նըկարուց որմունքն, որոց լոկ քարինքն երևին երկթղաչափ քառակուսի առ հասարակ դեղնադոյն՝ որպէս զպարսպաց բերդին: Ընդ այն յոյժ զարմացեալ եմ, զի յորմունս պալատանդ մի միայն տեսի լուսանցոյց պատուհան որ հայէր 'ի Ծաղկոցաձորն. յորմէ գուշակեմ թէ սովորութիւն ժամանակին ոչ էր 'ի կողմանէ, այլ ձեղուանցն լուսամուտք լուսաւորել զսենեակս. որպէս և 'ի բազումս 'ի քաղաքաց ասիականնն պահի ցարդ սովորութիւնս այս, թէպէտ և առ նոքա անշուք եղանակաւ հեծանս գերանաց մի զմիով եդեալ չուրջանակի և տակաւ առ իրեարս մերձեցուցեալ յամենայն կողմանց՝ զմէջն իմն ձևացուցանեն 'ի կեդրոնին բաց: Սակայն յարքունի պալատանս թէպէտ և պահեալ ևս էր այդ սովորութիւն, այլ ո՛ գիտէ թէ որպիսի կամարք յարկեալ և գմբէթ մեծաշուք կայր 'ի կեդրոնի սենեկացն իւրաքանչիւր՝ փեղկօք և պատուհանօք չուրջանակի: Ներքնատունք արքունեացս անհեդադոյնք են քան զվերնայարկն: Ի հարաւոյ կուսէ դրանն վերնոյ խոտորեալ ընդ զառիվայր գետնոյն, ուր աւերակօք և անհարթ ելևէջիւք խանգարեալ է վայրացն և արահետ ուղւոյն աներևութացեալ է իսպառ, յանդիման լինին մուտքն հարաւահայեաց. և են այսպիսի. յարևմուտս ընդ երկայնութիւն պալատանդ կարգ մի կամարաց ձգեալ՝ որմասեամբք զատուցեալ է յիրերաց, և երեք նոցա ուղղահայեաց ըստ որմոյ վերնայարկին. և մեդրաչափս իբրև երկու առ 'ի ներքս նոցա որմ ածեալ ուղիղ՝ խորանաձև յօրինեալ են կամարավայրքն. և յորմն անդ՝ ոչ յամենեսին՝ մուտք բացեալ փոքու տարածութեամբ. ընդ որ անցեալ 'ի ներքս տեսանին անձուկ փողոցք, և 'ի փողոցացն առաջնորդեալ այլ և այլ խաւարչտին ներքնատունք, ոմանց անձուկս ունելով դրունս և ցած, և ոմանց արձակս: Առ հասարակ կամարաշէնք են ներքնատունքդ. ոմանք բարձր մինչև ցյատակ վերնայարկին հասեալ, և ոմանք ցածունք. և միւս ևս անցք որ հանէ ընդ զառիվայր Ծաղկաձորոյն, թէպէտ և քանդեալ և աւերեալ, որպէս բազում ուրեք որմունք ներքնատանցդ քայքայեալ և մեծամեծ քարանցն չեղջակուտեալ առ եաւեղ: Քանդմունք այնպիսի կան 'ի տեղւոջն յայնմիկ, զի և գեղջուկ տխմար տեսեալ վկայէ թէ ոչ տարերաց բռնութեան արդիւնք են այնպէսիկ և ոչ պատերազմաց, այլ վայրա-

վայրին մարդոց և մնոտիախալայց դատարկապորտաց, թէ գանձս դրամոց գտանել մարթասցեն յորմունս ներքնատանց, որպէս և ցայսօր 'ի նոյն մոր կայ խուժան գեղջկեցն շուրջանակի։ Քանզի ոչ միայն զյատակ գետնոյն վերիվայր արարեալ են, այլ և յորմունսն որք 'ի մեծամեծ քարանց շինեալ են և ոչ որպէս զվերնայարկին՝ և անխախտ կան հիւսուածք նոցա, ուստեք ուստեք քարանցն բռնի և երկաթի գործեօք զերծուցեալ է 'ի շարիցն, և զթանձրութիւն որմոյն փորեալ վերիվայր. չգիտեմ քան զխիճ և զփոշի զինչ այլ տեսեալ իցեն։ Արձանագիր չիք ուրեք յորմունս արքունեաց. այլ այս միայն նախնի յիշատակ, զի 'ի հիւսիսակողման մասին 'ի վերայ որմոյն արտաքուստ՝ 'ի կուսէ Ծաղկոցաձորոյն՝ 'ի բարձու կայ բարձրաքանդակ պատկեր առն զինուորականի. գլուխ նորա խորտակեալ է, և տարազ զգեստուցն՝ ամղան զինուորի զգեցեալ որ մինչև ցծունկսն իջանէ, և գօտեաւ զսպեալ զմէջս. մի ձեռն տարածեալ՝ գաղափար մի ունելով շինուածոյ իրիք, թերևս զարքունեացն։ Զաս պատկեր Թագաւորի կոչեն, այլ չէ յայտ ոյր 'ի թագաւորաց։

ՍՏՈՐԵՐԿՐԵԱՅ ՍԻՒՆ.— Ցարևելակողմն քաղաքին առ կողիւք եկեղեցւոյն Լուսաւորչի իջեալ փոքր մի ընդ զառիվայրն և շրջեալ զարևելիւ՝ տեսանին զկողիւք դարաւհոսին վարկպարազի անձաւք երկու առ միմեանս, և յառաջ անցեալ քայլս ինչ յանդիման լինին մուտք ստորերկրեայ ուղւոյն. նախ 'ի քաղաքն կոյս փորեալ, և ապա շեղեալ ընդ հարաւ 'ի գետն կոյս։ Որ զՆեղոկնոյ, զԱմասիոյ և զԲաբերդոյ գետնափոր տեղիս տեսեալ իցէ, նմա դիւրին է զառաւելութիւն նոցին ճանաչել քան զտորայս, որք հոյակապութեամբն մասամբ ահեղք են, լայնարձակք և 'ի մուտից անտի մինչև ցյատակն առ 'ի չեղ, կամար 'ի վերայ կոփեալ 'ի բուն անդ ապառաժի և աստիճանք սանդղոց ստորև. այլ սա անհամեմատ է նոցին. մի զի գետինն 'ի նմին վայրի խճաքար է դիւրափուլ և ոչ ապառաժ, և դարձեալ անձուկ և ցածուն, որպէս զի չմարթի և կորաքամակ ընթանալ 'ի նմա, այլ հարկ է և զծունկսն թեքել։ Զայս ասեմ որպիսի ինչ նախ առաջին երևին. Իսկ անտի և անդր անծանօթ է ինձ. և զի՞ չկայր առ իս փորձ ուղեցոյց, չհամարձակեցի անփորձ արամբ մտանել 'ի ներքս և շրջել յամենայն կողմանս։ Աւանդութիւն 'ի բերանս ամենեցուն այսպիսի է. փոքր մի յառաջ անցեալ 'ի ներքս կոյս՝ յայլ և այլ առաջս բաժանի ուղին յայսկոյս յայնկոյս, 'ի քաղաքն և 'ի գետն. որ 'ի քաղաքն կոյս ուղղեալ են՝ հարթք են զի ընդ դաշտավայրիւք են, այլ որ 'ի գետն կոյս՝ անհնարին զառիվայր, որպէս ինչ արտաքին ձորամէջն երևի։ Մի յառաջից ուղւոյն, ասեն, տանի 'ի ներքուստ Ախուրեան գետոյ և հանէ 'ի հանդիպոյ ձորեզերն բարձու։ Եւ այս չէ սուտ. զի մինչև ցայսօր 'ի հանդիպակաց եզերն՝ ուր սահման է Ռուսաց, 'ի գագաթն բլրակի միոջ աշտարակ կայ, և անդր հանէ ուղին. թէպէտ և այժմ կիսակործան կայ աշտարակն և ելք նորա խցեալ 'ի Ռուսաց, զի մի ոք գաղտ աստի անդր փախիցէ։ Պատմեն ևս զի Ցանկի ուրուք անհաւան գտեալ պատմելեացն թէ ուղին այն 'ի ներքուստ գետոյն յայնկոյս տանիցէ, կամեցեալ իցէ անձամբ զփորձ առնուլ զիրացն. մտանէ 'ի ներքս ամենայն կարևոր կազմութեամբ, և բազում տառապանօք յառաջ անցեալ՝ սկսանին շիթք ջրոց կաթիլ վերուստ 'ի խոնարհ, և իմացեալ հաւաստեաւ թէ կշիռ ընդ գետովն կայ՝ դառնայ յետս։

ԲԱՂԵՍՈՒՌՆ. — Ի հիւսիսոյ կողմանէ նորին Լուսաւորչի եկեղեցւոյն կայ Բաղանիք մի աւերակ։ Ի բաղանեաց աստի դիւրին է գուշակել որչափ կուտեալ թանձրացեալ է աւերակաց ամենայն ուրեք յԱնի. քանզի զբաղանեօքդ շուրջանակի այնչափ թանձրացեալ է աւերակաց մինչև հաւասարել յարկաց նորա, և վերուստ 'ի վայր 'ի քանդեալ մասանցն լինի իջանել 'ի ներքս. որոյ այսպիսի է ձև։ Նախ բոլորշի սենեակ գմբէթարդ, և շուրջ զնովաւ չորս ևս այլ սենեակք դէմ ընդդէմ միմեանց քառաթև՝ դրունս ունելով իւրաքանչիւր ցածունս անցանելոյ 'ի նոսա 'ի միջին սենեկէն. և ձև նոցա լայնանիստ 'ի կցուածս անդ ընդ միջ նոյն, և աւարտեալ յաղեղնաձև սրանկիւն, կամ լաւ ևս ասել տերևաձև. ըստ նմին ձևոյ և կամարայարկքն են յօրինեալ։ Տեղի ծորակաց ջրամբարիցն կան տակաւին, այլ ամենայնն խախտեալ։

Այդպիսիկ են ահա ամենայն մնացորդք շինուածոց քաղաքին Անւոյ որ երևին որիշ, թէպէտ առաւելագոյն մասամբ կիսեղծք իցեն։ Սակայն յաւերակն երևին ուրեք ուրեք և մասունք սաւար որմոց, կամարաձև շինուածոց, կէս մի քայքայեալ և կէս մի թաղեալ ընդ հողով. ուրեք մեծամեծ անտաշ քարինք մի զմիով կուտեալ՝ նշան ձիթահան գործարանաց 'ի տեղւոջն։ Այլ 'ի տանց չէ մնացեալ և ոչ մի. զի աւերակ նոցա հողոյ հաւասար՝ հիմունքն եւեթ երևին քառակուսի՝ ոմն մեծ և ոմն փոքր զերեսօք գետնոյն, և քարինք նոցա կուտեալ 'ի ներքս և արտաքոյ։

Իսկ այն զոր ասեն հազար և մի եկեղեցի յԱնի, պարտ է իմանալ և արտաքոյ պարսպին 'ի հիւսիսակողմն[…]ի թէ 'ի ներքս 'ի պարսպին էին ամենքին, ոչ մնայր տեղի և ոչ տան միոյ, և եթէ կիսով չափ միայն, սակայն և այնպէս անհնարին էր թէ տանէր անձկութիւն տեղւոյն։ Նմին իրի զի մեք զհասարակաց աւանդութեամբն արհամարհիցեմք, մանաւանդ զվկայութեամբ ժամանակակից մատենագրացն Մատթէոսի և Կիրակոսի, հարկ է ասել թէ բնակութիւն քաղաքին ձգեալ և արտաքս քան զպարիսպն ընդ ընդարձակութիւն դաշտավայրին տարածէր ընդ հիւսիս և ընդ արևելս։ Ի հիւսիսակողմն քառորդաւ միով ընդ տարածութիւն դաշտին երևին ցայսօր նշանք աւերակաց, այլ ոչ որպէս 'ի ներքս, զի մանր են քարինքն և ծածկեալ ընդ հողով, և յատակեալ հարթեալ վայրքն ամենայն 'ի բազում երթևեկութենէ սայլորդաց. և մեծամեծ քարանց անտեսութիւն՝ զի օր ըստ օրէ հարկաւ բարձեալ անտի և սպառեալ է, զի ամենայն վայրքն մօտաւորագոյն են շրջաբնակացն քան ներքին կողմն քաղաքին։ Այն ևս հաւաստէ զասացեալս զի 'ի նոյն կողմն քառորդաւ հեռի 'ի քաղաքէն կառուցեալ կայ փոքր եկեղեցի մի Ջօպրան քիլիսէսի ասացեալն՝ բոլորաշէն և երկայն գմբէթիւ. և նախ քան զայդ այլ մնացորդք աւերակաց երկուց մօտ 'ի քաղաքն։ Իսկ 'ի կողմն արևելից նոյնօրինակք աւերակ խճից բազում են. և ասեն թէ այդ կողմն շինեին հասանէր մինչև 'ի Խաչիբձորն երեք քառորդաւ հեռի 'ի քաղաքէն, և այլք թէ մինչև 'ի Հոռոմոսի վանսն, այն է Խօշավանք ասացեալն։ Հանդերձ այնու զոր ասացաք, ոչ միայն աշխարհագրի առն՝ այլ և ամենայն մարդոյ քաջ կշռեալ միանգամ զտարածութիւն պարսպապատ քաղաքիս, հաւատալ չմարթի նմա այնքանոյ բազմամարդութեան զոր պատմիչքն ասեն, թէ բազմամբոխ

էր քաղաքն և բիւրք բիւրուց 'ի նմա յամենայն կարգէ և 'ի դասուէ 'ի հիացումն տեսողաց մինչև կարծել թէ մեծ մասն աշխարհիս Հայոց անդ իցէ ։ Քանզի եթէ տասնեակս ասիցես լինել զտունս, տակաւին անտար է շատութեան պատմելեացն. զի բաց 'ի տանց՝ այլ բազմապատիկ շինուածոց հարկաւ լեալ էր անդ ըստ օրինի ծաղկեալ մայրաքաղաքացն. բազում և այլ դատարկ վայրաց, հրապարակաց, զբօսարանաց, զինարանաց, զինուորանոցաց, դիւանաց, և այլ զի՞ գիտեմ քանիպատիկ տեղեաց, որոց գրաւեալ ունէին զմեծ մասն քաղաքին. և եթէ այդ ըստ մեր հաշուով չանկանի, զհազար և մի եկեղեցին ո՞ւր զետեղել կարասցուք ։ Վասն որոյ 'ի տիեզերահռչակ անուանէ քաղաքին գուշակեալ և 'ի վկայութենէ ժամանակակից պատմչաց՝ թէ անբաւ մարդկան էր խմբարան, ըղջէնս քաղաքին արտաքոյ պարսպին՝ հարկ է ասել տարածեալս յարևմտից մինչև ցկէս ճանապարհին Ալաճա և Ղօշլիճա գիւղից, զի և յայդ կողմն չպակասին աւերակք մանր քարանց ցրուելոց ընդ երեսս դաշտին, որպէս 'ի հիւսիսոյ և յարևմտից՝ զոր վերոյ ասացաք ։ Որպէս զի թէ զարտաքին մասն տասնպատիկ աւելի քան զներքինն ասասցուք տարածութեամբ, հաւանին միտք առ 'ի մատենագրաց պատմելեացն. յորմէ և զայն հաւաստեաւ ասել ոչ երկբայեմ, թէ ներքինն զինուորական դասուց, նախարարազանց, իշխանաց և ազնուականաց էր բնակութիւն, ըստ վկայելոյ փոքր 'ի շատէ յիշատակարանի իրից, և արտաքինն հասարակ մարդկան. և շինուածք տանց և եկեղեցեաց ներքնոյն հոյակապք են, և արտաքնոյն ոչ այնպէս, յորմէ անհետ եղեալ են իսպառ բաց 'ի հովուաչէն եկեղեցւոյն ։

ԾԱՂԿՈՑԱՁՈՐ, ԵՒ ԿՐԳԱՆՔ Ի ՆՄԱ. — Որպէս յիշեցաք յառաջագոյն, Ծաղկոցաձորդ սկիզբն առեալ յարևմտեան դրանէ բերդին, որ այն ինքն է Դուռն Ծաղկոցի, երկարեալ երթայ և զառիվայր աւարտի մինչև 'ի չափ մի, և նովին չափովն դաշտանայ՝ բաժանեալ յայլ և այլ առաջս, 'ի հիւսիս, յարևմուտս, և 'ի հարաւ՝ որ յԱխուրեանն հանէ գետ. և լայնութիւն նորա ուրեք քարընկէց մի և աւելի, և այլուր անձկագոյն ևս ։ Ցատակ ձորոյդ թէպէտ հողային և մեծաւ մասամբ մշակեալ, սակայն կողմանք նորա քար են, ոչ ապառաժ, այլ խճախառն որով և դիւրամաշ ։ Գեղեցկութեամբ և ահաւորութեամբ այլք 'ի ձորոց այլոց գաւառաց առաւելուն արդեօք քան զսա յոյժ. սակայն որով սա անուանի գտաւ՝ ոչ մի ոք ընդ նմա մրցել զօրեսցէ. քանզի քարեղէն կողմանք իւրաքանչիւր առաջից երկուստեք դէմ՝ ընդ դէմ միմեանց առհասարակ փորեալ են անթիւ բազմութեամբ 'ի չափ կրպակաց ոմն մեծ, ոմն փոքր, ոմն երկայնաձև առ 'ի ներքս և այլ ոմն յայլ և այլ սենեակս բաժանեալ, և մուտք դրանց 'ի միոյ 'ի միւսն անցանելոյ. շատից լուսամուտ բացեալ 'ի վերուստ առ 'ի շեղ, և այլոց դրանն լուսով շատացեալ. բազում ուրեք շարք կրպակացդ երկկարգեան են 'ի վերայ միմեանց ։ Իսկ ուղին որ առաջնորդէր 'ի շարս իւրաքանչիւր կրպակաց 'ի ժամանակին՝ ոչ ևս է. որ 'ի ստորին կարգին են հաւասար՝ գետնոյ եղեալ յաւերակացն կամ փոքր մի 'ի վեր՝ դիւրամուտք են, և որք 'ի վերինն՝ դժուարամատոյցք ։ Քանզի ժամանակաց հնութեամբ 'ի բռնութենէ տարերաց մանաւանդ քան թէ աշխարհակործան մարդոց՝ այնքան մաշեալ և փլեալ են երեսք կրպակացն, կամ թէ

ասել կողք ձորոյն, զի և ձևոյ վայելչութիւն չէ մնացեալ 'ի նոսա. օրինակ իմն որպէս յօճառի որ այլ և այլ ձևս փորագրեալ է տապա յանձրևի դիցէ, զնոյն-օրինակ անցս կրեալ կարծիցես զկրպակսդ: Զի դրունքն մաշեալ շուրջանակի կո-րուսեալ են խապառ զձևս անկեանցն, և ճակատքն անհարթք 'ի զերծելոյ մասանց քարին 'ի տեղւոջէն. որպէս և դրունքդ 'ի բնական ուղղահայեաց ձևոցն թիւրեալ՝ ոմն առ 'ի չեղ յերկինս հայի և ոմն առ 'ի չեղ 'ի գետին. ոմն թիկունս դարձուցեալ ընկերին և այլք դէմ ընդդէմ դարձեալ. և մասունք փլածոյն որիշ երևին որ ան կեալ դիզեալ կան ուր շատ և ուր սակաւ յեզերս ձորոյն: Սակայն ոչ միայն երեսք փորածոյ կրպակացդ անչքացեալ են 'ի կործանմանց անտի այլ և ներքին նոցա ոչ վայելչաձև ինչ է. զի դիւրին էր արտաքնոյն 'ի հեղեղաց յայդ չափս խշանել տձևութեան, այլ ներքինն ոչ նոյնպէս. և թէ չեցէ ոխերիմ ձեռին մխեալ 'ի նա թշնամութեամբ, հարկ է ասել թէ 'ի սկզբան 'ի նոյն ձև փորեալ իցեն որպէս ինչ տեսանի ցայսօր, ոչ կանոնաւոր կողմանք իւրաքանչիւր և ոչ անկիւնաւորք, շատ համարեալ 'ի քարեղէն փորուածի վերիվերոյ նմանութիւն բերել ընդ փայ-տակերտ շինուածոյ՝ առաստաղամածն ձեղունամբն 'ի վերոյ, և կողմանցն և ան-կեանցն զգալի երևութիւք: Զսոցանէ թէպէտ և չունիցիմք ստոյգ գրաւոր վը-կայութիւն կրպակս ասելոյ, և զնոյն ինքն զԾաղկաձորն ողջոյն վաճառանոց քա-ղաքին, սակայն ոչ արհամարհելի է և աւանդութիւնն որ ցարդ անմեկնելի է 'ի բերանոյ շրջաբնակացն: Եւ այն ևս հաստատուն ապացոյց է կրպակաց, զի 'ի բա-զումս 'ի նոցանէ անեղծ կան ցայսօր պատուհանաձև մանր դարանք փորեալ յոր-մունս, յումեմն սակաւ և յումեմն բազում և խիտ առ խիտ միմեանս. զոր օրինակ տեսանի 'ի կրպակս դերձակագործաց՝ տեղի տփոց խորշս խորշս գործեալ:

ԱՌԱՍՊԵԼՔ. — Զառասպելացն որ զքաղաքէն Անւոյ չունիմ ասել յումմէ ճար-տարամտեալ զառաջինն հաս կալաւ զմիտս խառնազանձ մարդկանն, ևս և աշ-խարհատես մարդոց ոմանց և 'ի գիր ևս մխեցաւ: Ոմանք յառասպելացդ ամե-նեքին սուտ են՝ զի և հակառակ են բնութեան. այլք կերպարանափոխ եղեալ տասնպատիկ յաւելուածով: Թէպէտ չէր արժան և յիշել իսկ զնոսին, այլ զի մի անյիշատակ առնելով 'ի նոյն կանխակալ սովորութեան թողցուք զռամիկ մար-դիկն, համառօտիւք յիշել արժան համարիմ: Առաջին զվաճառանոցէն առաս-պելաբանեն թէ յաւուրց անտի Անեցւոց պէսպէս ադանելիք կայցեն 'ի նմա, և պուրակք այլ և այլ ձեռագործաց կտաւոց դիպակաց կերպասուց նովին դրիւք շարեալ 'ի դարանս և նովին գունովն որպէս ինչ ի սկզբանն էր. և յորժամ ձեռն ածէ ոք առ նոսա զննել, զի մաշեալ և փտեալ են՝ իսկոյն 'ի փոշի լուծանին: Երկրորդ թէ ընդ երկրաւ պէսպէս իջևանք կայցեն և տունք փառահեղք, յո-րում տակաւին ամենայն կարասիք ողջ կան 'ի նոսին մանաւանդ անօթք կերա-կրեղինաց պղնձիք և կարգաւ շարեալ 'ի դարակս շուրջանակի. և ըստ դիպաց գտեալ ումեմն զմուտ նոցա, և չհամարձակեալ առանձինն 'ի բաց առնուլ 'ի նոցանէ, ելանէ արտաքս և գտեալ զոմանս իւր օգնական կամեցեալ իցէ վերս-տին մտանել անդր և բառնալ որ զինչ և կամիցի. այլ աւուրս երիս խնդրեալ զմուտ նոցին և ոչ գտեալ, զի յաներևոյթ ուրուց փակեցաւ դուռն առաջի նոցա, և ունայնաձեռն յետս դարձան: Երրորդ թէ չպակասեն 'ի քաղաքի անդ չարք-

տանի դաշտանք, և յաւերակն լի են օձք մեծամեծք։ Եթէ ճշմարիտք էին այդ գրքին, չէր հարկ Անւոյ միայն սեփականել զայդ ոսկի զի յաւերակ և յանմարդի տեղիս երևոյթք գաղանացդ չեն պակաս. սակայն իմ աւուրս բազումս շրջեալ 'ի քաղաքին յառաւօտէ մինչև ցերեկոյ ոչ 'ի ձմերան և ոչ ամարանի չտեսի և ոչ զմի 'ի նոցանէ։ Զորորդ զգուշեաւ պատուիրեն որ շրջագայելոցն է 'ի նմա, զի ընդ ամենայն քայլափոխս շուրջ հայեսցի թէ ուր դքայլս ուրեք դնէ. զի բազում գուբք են 'ի նմա՝ սանդ՝ խորինք և ջրհորք և ջրամբարք, և բերանք նոցա գետնոյն հաւասարք և ծածկեալ 'ի մացառաց որ անտառացեալն է անդ։ Ես այս դարձեալ սուտ. զի ոչ մացառօք անտառացեալ է վայրն և ոչ խորանդունդ փոսք երևին ուրեք կամ ջրհորք. Թէպէտ չպակասեն 'ի նմա գուբք, այլ յոյժ սակաւք և խորութիւն նոցա ոչ աւելի քան զմարդաչափ և կէս, յորոց ոմանք լցեալ և ծածկեալ են յաւերակաց[1]։ Զառասպելսդ ամենայն 'ի դերև հանեալ, երկիւղ գողոցն և աւազակաց թերևս ահ արկանիցէ առ հեռաւորս. այլ այդ երկիւղ ոչ միայն յԱնի, այլ և յամենայն անմարդի տեղիս տիրէ, մանաւանդ յերեսաց Քրդաց. բայց որ ծանօթ և զինեալ ուղեցուցիւ շրջագայի, նմա չիք երկիւղ և ոչ մի. քանզի և խաշնարածք բազում անգամ չպակասեն անդ, և գողոյ չէ համարձակելի զինելոց և անձանց աւելի քան երկուց ընդդէմ ելանել։ Այլ այսու ամենայնիւ ոչ անխորհրդաբար ոք ինչ գործէ եթէ զգոյշ լիցի ձիոյն և կարասեացն յազանելն ուրեք, զի 'ի նոսին առաւել ագահեն աւազակաբարոյ Քուրդք։

Վերջ տուեալ տեղագրութեան քաղաքին Անւոյ և որ անընդմիջաբար զնովաւն էին արտաքոյ պարսպին, անցանեմք յարևելս նորա 'ի նմին գաւառին Շիրակայ։

## ՀՈՌՈՄՈՍԻ ՎԱՆՔ, ԱՅԺՄ ԽՕՇԱՎԱՆՔ

Տիեզերահռչակ մենաստանն Հոռոմոսի ժամու հեռի յԱնւոյ յարևելս նորա կառուցեալ է 'ի վերայ երկայնաձև բլրի, որ խրու ցամաքակղզի ձգեալ է յարևելից յարևմուտս, 'ի հարաւոյ նորա անցանէ Ախուրեան գետ ընդ ձորամէջն խորանդունդ, որպէս առ Անւով, և շրջան առեալ զարևմտիւ նորա անցեալ գնայ 'ի կողմն Անւոյ։ Իսկ 'ի հիւսիսոյ պատանի բլուրն այլով դաշտավայր ձորամիջով, զորմէ զկնի։ Զշինութենէ նորա և այլատարազ անուանակոչութենէն չպակասեն յիշատակարանք առ մատենագիրս մեր Ասողիկն և Վարդան և Կիրակոս։ Ի տասներորդ դարուն հիմնարկեալ մենաստանիս 'ի ձեռն Յոհաննու ուրումն որ պատուոյն աստիճանաւն անծանօթ եղեալ՝ բարեպաշտութեամբն մա-

1 Համբարանք են այդ գուբքն ցորենոյ. որպէս մինչև ցայսօր պահի սովորութիւնդ յամենայն գիւղորէս Շիրակայ. զի փոս փորեն 'ի գետնի նեղաբերան և լայնափոր 'ի ձև բղկոց, զոմանս վարկաբողի քարամբք շրջապատեալ և զոմանս առանց այնր. և յամբարեն 'ի նոսա զցորեան շուրջանակի պատեն յարդիւ. և քար 'ի բերան եդեալ ծեփեն, և անեղծ պահի ցորեանն 'ի նմա։

սամբ անուանի գտաւ 'ի ժամանակին, ծանօթութիւնդ այդպիսի աւանդութեամբ եհաս առ մեզ 'ի ձեռն մատենագրացդ զոր յիշեցաք. սակայն յառաջնոյ արձանագրէն՝ յորում Յովհաննու թագաւորին սեփականի, թուի ինձ 'ի բանից անտի նորին արձանագրի մենաստանին՝ շինեալ յառաջագոյն 'ի տասներորդ դարուն, յետ այնորիկ զեկեղեցին շինեաց Յովհաննէս թագաւոր որ էր 'ի սկիզբն մետասաներորդ դարու: Արդ որպէս և է, հիմն արկեալ մենաստանիս յանուն սրբոյն Յովհաննու, որպէս տեսցի ստորև 'ի խուռն արձանագրացն, սեփականեցաւ նըմին և անուն այլ՝ Հոռոմոսի. իբր զի ընդ աւարտիլ շինուածոյն կամ փոքր մի զկնի՝ կրօնաւորաց ոմանց 'ի Հայոց յերկրէն Հոռոմոց փախուցեալ 'ի պատճառս հալածանացն Յունաց, եկեալ բնակեն աստ. և անտի այսր մականուանեալ կոչեցաւ Հոռոմոսի վանք: Ի վաղեմի շինուածոց մենաստանիս անկործան կան ցայսօր, առաջին՝ եկեղեցին, երկրորդ՝ տապանատունն և առ նովաւ փոքր մատուռն և կամարակապ տեղիքն, և երրորդ՝ նշխարատունն: Արևելեան որմ եկեղեցւոյն սահման է վանացն յայնմ կողմանէ. և երկուստեք նորա չափաւոր միջոցաւ պարիսպ ածեալ ամրաշէն 'ի սրբատաշ դեղնագոյն քարանց, յայնմ կողմանէ 'ի հարաւոյ և յայսմ կողմանէ 'ի հիւսիսոյ, յորում է և արտաքին դուռն վանաց, սահմանի յարևմտից կուսէ երկայն և հոյակապ իջեվանիւ, այն է քերվանսարայ ասացեալն 'ի հիւսիսոյ 'ի հարաւ: Յարտաքին դրանէն որմ ածեալ 'ի հարաւակոյս՝ միանայ ընդ շինուածոյ վանացն, և յորմն անդ է ներքին և բուն դուռն մենաստանին. որպէս զի արևելեան մասն յանջրպետէ այտի ներքին և բուն սահման մենաստանին է, և արևմտեանն մինչև ցիջեվանն՝ գեղջկից տունք էին, արդ առ հասարակ քայքայեալք յետ գաղթելոյ նոցա առ Ռուսս: Ցուցաք արդ մի առ մի զարհեստ ճարտարապետութեան մեծագործ շինուածոց նոցա:

ԵԿԵՂԵՑԻՆ. — Արտաքին տեսիլ եկեղեցւոյն չորիւք սահմանի կաթողիկէիւք. իսկ ձև նորա որպէս ճշգրիտ երևի 'ի պատկերէդ յերկուս բաժանեալ է, նախ գաւիթ կամ որպէս առ նախնեօք կոչէին՝ ժամատուն, և ապա տաճար, միջնադրամբ հաղորդեալ միմեանց, և յիրերաց ոչ շատ տարբերեալ մեծութեամբ: Գաւիթն սիւնազարդ է և հոյակապ յոյժ. երկոտասան 'ի սեանցն առ որմովք կան շուրջանակի, և չորս ևս այլ 'ի միջավայրին, յորոց վերայ ամբարձեալ կաթողիկէն առաջին որ և զանգակատուն է սիւնազարդ շուրջանակի: Որմակամարք միջին չորից սեանցն ուղղաբերձ ամբարձեալ նախ, ապա կողմանքն չորեքին առ իրեարս շեղեալ՝ բրգաձև աւարտին 'ի ծայրին՝ ուր և հիմն կաթողիկէին սկսանի: Կողմանք բրգաձևիդ 'ի մեծամեծ միակտուր քարանց են, ազգի ազգի դրուագօք քանդակեալ իւրաքանչիւր: Միակտուր են ամենայն սիւնքն և բոլորշի. թէպէտ և ոչ երկայնք, սակայն վերնախարիսխք իւրեանց և ներքնախարիսխքն՝ ոչ մի ինչ թերութիւն ածեն վսեմութեան շինուածոյն: Ամենայն սիւնք 'ի վերնախարիսխացն կամարաւ հաղորդեալք առ միմեանս 'ի քառից կողմանց ևս, յարկ իւրաքանչիւր միջոցաց բաց 'ի միջավայրէն յորոյ վերայ է զանգակատունն՝ զայս օրինակ ճարտարապետեալ են. չորեքին կողմանք իւրաքանչիւր միջոցաց սեանցն փոքր մի աղեղնաձև մերձեցեալ են առ միմեանս, միջին վայրքն կամ թէ աւել կեդրոնքն լայնաձիգք՝ տափարակք իբրև զառաստաղաց են՝ մեծամեծ քառա-

կուսի քարինս ունելով չուրթն առ չուրթն հպեցուցեալ, որ ամենևին անխախտ կան ցայսօր։ Տաճարն անսիւն է և 'ի վերայ կամարադոտեալ չորեցուն կողմանց



այլ դուռն ածեալ մանեկաձև՝ խարիսխ կամ հիմն եղեալ է մեծի կաթողիկէին, որոյ լուսամուտք են չուրջանակի երկայնաձևք։ Միախորան է տաճարս, մատրանս կրկին ունելով երկուստեք խորանին։ Եթէ թերութիւն մի կայցէ 'ի հոյակապ եկեղեցւոյս մեծութեանն է, մանաւանդ 'ի գաւթին. չորս լուսամուտք միայն են նորա բոլորչի և փոքր, յորոց երկուք ևեթ լուսատուք 'ի հիւսիսոյ, և որք 'ի հարաւոյ՝ անլոյս են, զի արտաքոյ գաւիթն կամարաձև հանդերձ շինուածովն հանդիպոյ խափանեալ ունի զլոյս նոցա։ Ի նոյն կողմն է և դուռն փոքրիկ նոյնպէս անլոյս. և լուսաւորութիւնն ամենայն 'ի նախադրանէն է յարևմուտից կուսէ, և փոքր մի 'ի զանգակատանէն։ Մթութիւնդ զոր ասացաք հասարակ է ամենայն

Հնաշէն եկեղեցեաց արևելից, գուցէ առ ահաւոր և պատկառելի ցուցանելոյ զօրութեան տեղիսն։ Ոչ սակաւք են գերեզմանք վարդապետաց 'ի յատակ եկեղեցւոյս անգիր և անծանօթ. յորոց մի է գուցէ գերեզման Ա. Սարգսի կաթողիկոսի որ աստ թաղեցաւ, որպէս վկայէ Լաստիվերտցի։ Բազմաթիւ են յայժ արձանագիրք եկեղեցւոյս ներքոյ և արտաքոյ. այլ բաց յառաջնոյն այլքն առ հասարակ յիշատակարանք են հասութից որ 'ի բարերարաց սեփականեալ են վանաց. մեք զամենայն միախուռն 'ի մի ժողովեալ ըստ կարգի, զառաջնոյն քննութիւն այլոց թողցուք միաբանել ընդ Ասողկայ բանիցն, թէ մեր քննութիւնս զոր 'ի վերն արարաք՝ չիցէ բաւական յանկուցանել զմիտս հետաքննին հնասիրաց։ Արդ առաջին յարձանագրացդ է վերոյ աւագ դրանն յարևմտից 'ի ճակատ եկեղեցւոյն.

✠ 'ի ՆՁԷ թուականիս հայոց եսու եւ յովաննէս շահանշահ որդի գագկա շահանշահի զիմ այգին որ 'ի կողք յիմ եկեղեցիս 'ի սուրբ յովաննէս զոր շինեցի 'ի վանսս հոռոմոսի հանդերձ ժամատամբս եւ հարիւր բեռն աղ յամենայն ամի ազատ յամենայն չարէ 'ի հայրապետութեան տ̃ն պետրոսի եւ յառաջնորդութեան ուխտիս հաւր յովաննիսի արդ եթէ ոք զկնի մեր հակառ կա այսմ գրոյս եւ իմ պարգեւացս պարտական լիցի մեղաց իմոց առաջի ա̃յ եւ յՅԺԸ հայրապետացն որ 'ի նիկիա նզովեալ եղիցի 'ի կեանս եւ 'ի մահ իսկ որ հաստատուն պահեն զգիր արձանի ընծայիցս աւրհնեսցին 'ի քէ̃.

Յաջմէ ճակատուն.

✠ շնորհիւն քի̃ ես հեծուպ գրիգոր եւ սմբատ եւ իշխանս հաստատեցաք 'ի մեր սեփհական ուխտս որ ոչ պատրոն եւ ոչ ձորտ 'ի վանքս աղունձ աղան եթէ ոք զգիրս զայս պատրոն կամ հայր լուծանէ նզովի յա̃յ և յամենայն սրբոց.

'ի թվ. ՈՂԶ անուամբն ա̃յ եւ շահընշահի ողորմութե̃ն ես . . անագովլէս որդի սմբատա եսու 'ի դրապարի զգիշկոյն տունն իւր հողովն ոնց գիշուկն ունեցեալ է հոռոմի վանիցս ո̃բ յովաննիսի հայրենիք վ̃ն իմ հաւր հոգոյն սմբատա զոր յառաջ միաբան էին լեալ ազատ 'ի կ . . . թաէ եւ յամէն չարէ ոչ իմ եղբաւր ոչ իմ որդոյն ոչ ինչ հաշիւ չկայ

իշխանութիւն սբ յովանիսի սպասաւորքս ունին յառաջնոր-
դութեան տր̃ բարսղի որդւո ամիր երկաթա փոխարէն հա-
տուցին միաբանքս զտր̃ գրիգորի շաբաթն աւուրն յամենայն ե-
կեղեցիս պատարագ առնել իմ հաւրն սմբատա ով զայս գիրս
խափանէ նզովի յայ եւ յԺԸ հայրապետացն որք հաստատուն պա-
հեն ուրհնին յայ եւ յամենայն սրբոց ամէն ։

Ցահեկէ ճակատուն .

ՈՉ շնորհիւն քի̃ ես աւլանս որդի շերանկաննն եւ զուգա-
կից իմ տառուշիս տուաք զմեր գանձագին հայրենիքն զգոդեցն
զկէս դանգն իւր հողովն եւ ջրովն ՚ի սբ յովաննէս յառաջ-
նորդութեանս տր̃ բարսղի արհիեպիսկոպոսի որդւո ամիր
երկաթա եւ սպասաւորք սուրբ փոխարէնս հատուցի մեզ ՚ի
տարին ։ Դ ։ պատարագ կատարել զԴ ինձ աւլանիս եւ Բ ա-
սուշահին եթէ ՚ի մերոց կամ յաւտարաց զյիշատակս մեր
խափանէ նզովի յայ հաստատ պահողքն ուրհնին ՚ի քէ ։

՚ի սոյն ամի ես խոսրով որդի վարհմա լաւուեցո եւ զուգա-
կից իմ շուշիկ տուաք զմեր գանձագին հայրենիքն զքարհա-
տին դանկն իւր հողովն եւ ջրովն ՚ի սբ յովաննէս եւ հատու-
ցին մեզ ՚ի տարին ։ Դ ։ պատարագ ։ Բ ։ ինձ եւ ։ Բ ։ շուշկան
եւ ։ Բ ։ վարհմա եթէ ոք զարձանս մեր խափանէ նզովի յայ
կատարողքն ուրհնին ՚ի քէ ։

՚ի սոյն ամի ես կազերս որդի սուկիասին եւ մայր իմ մամիկս
տուաք զմեր երկու տունն ՚ի սբ յովաննէս եւ տուաք պատա-
րագ ՚ի տարին Բ ուր Ա ինձ եւ մին իմ մաւրն կատարիչքն
ուրհնին ՚ի քէ ։

Ես շուշիկս զուգակից խոսրովու ետու զիմ անեռն ՚ի սբ
յովաննէս եւ առի ինձ պատարագ ՚ի տարին ուր մին կատա-
րիչքն ուրհնին ՚ի քէ ։

Ես Բարդուղիմէոս աբեղայ փարբեցի ետու զիմ գանձագին այգին որ 'ի փարբի է 'ի վանացս 'ի հիւրատունս եւ նոքա հատուց ինձ պատարագ 'ի տարին աւր . . .

Կամաւն այ ես Քոթիթ ձոնս եւ կենակից իմ Շահմամա տուաք զուխ դանկն իւր հողովն եւ ջրովն ոնց բնական լեալ է 'ի սբ յովաննէս եւ ե . . . շինած տներս 'ի սբ յովաննէս եւ սպասաւորք սորա հատուցին մեզ 'ի տարին դ պատարագ մին ինձ Քոթիթին ա Շահմամին մին վարդանա ա սար էթէ ոք 'ի մերոց կամ յաւտարաց զգիրս մեր խափանէ եղցէ 'ի կենացն այ կատարիչքն աւրհնէին 'ի քէ .

Ես Իգնատիոս որդի աբեղին եւ կենակից իմ մամեր տուաք զմեր հայրենիքն կէս դանկն 'ի մարաց մարդի 'ի սբ յովաննէս եւ սոքա ետուն մեզ պատարագ 'ի տարին բ աւր . ա . ինձ և . ա . մամերոյն թէ 'ի մերոց կամ այլ ոք զգիրս մեր խափանէ նզովի յայ .

Ի հարաւոյ եկեղեցւոյն արտաքուստ 'ի բարձու .

'Ի ՌԻԳ : Թուիս հայոց 'ի հայրապետութեան նահանգիս մերում տն բարսղի ես նուաստս պետրոս երէց եւ իմ եղբաւրորդիքս զազատ յուսիկս եւ սիմեոն տուաք զմեր հայրենի այգին որ 'ի փարբի որ կոչի խանիկշաէ 'ի սբ եկեղեցիքս հոռոմոսի վանացս 'ի յառաջնորդութեան խաչատրոյ եւ խնդրեմք 'ի սպասաւորաց սբցս : դ : աւր պատարագել զքս յամենայն ամի զհոգւոյն գալստեանն զշաբաթն եւ . . . նխաւ մի անուն . . . եւ մի աւր իրիցակնոջն . . . 'ի մերոց կամ յաւտարաց . . .

Շնորհիւն քի ես գրիգոր որդի բախտիարին ետու ընձա 'ի սբ յովաննէս : ա : տուն եւ 'ի վերեւն : դ : կողպակ զոր իմ հալալ արդեամբ շինել եմ յիշատակ ինձ եւ զաւակի իմո աւաք խաթունին եւ սպասաւորքս փոխարէն հատուցին յա-

մենայն ամի ։ Գ ։ աւր պատարագ ։ Ծ ։ խնձ եւ ։ Ե ։ աւաք խաթունին ։

*Ի հիւսիսոյ եկեղեցւոյն արտաքուստ .*

’ի ՌԽԷ թւիս ես հայր մխիթար սատարութեամբ սարգսի կրաւնաւորի եւ կամակցութեամբ սբ միաբանացս զականց ջուրն զոր մեր հին թագաւորացն կարի յոյժ ջանացեալ եւ ոչ ժամանեցին բերել, այլ կամաւքն մծ ծախիւք եւ աշխատութեամբ ածաք զջուրս ’ի հոռոմոսի վանքս եւ հաստատեցաք յամենայն ամի պատարագել զքն յանուն աշխատաւորաց ջրիս ’ի տաւնի տապանակին Գ աւր արդ եթէ ոք ’ի մեծաց կամ ’ի փոքունց հակառակ կա ջրիս կամ գրիս զաւձին զկայենին զխաչահանուացն զանէծսն առցէ եւ հայր որ զատ ’ի վանացս անդաստանացս այլ ուրեք ջուր տա ընդ կապանաւք է եղեւ այս ’ի հայրապետութեան տն բարսղի եւ ’ի տէրութեան վանացս քմասէր պատրոնացս գրիգոր Հեծուլին եւ սմպատա եւ եղբարց իւրեանց և ’ի տէրութեան քաղաքիս եւ բոլոր երկրիս մծ հայոց քն մծ զաւրականացս զաքարէի եւ իւանէի որոց հովանի լիցի սբ երրորդութիւն ։

’ի ՌԾԵ թւիս ես զաքարիայ շահանշահ որդի սարգսի զաւրապետ հայոց եւ վրաց քակեցի զջաղացն որ յական հակառակ ջրիս շինած էր եւ վերստին հաստատեցի զջուրս ’ի վանքս հոռոմոսի վասն արեւշատութեան ինձ եւ եղբաւր իմոյ իւանէի եւ յիշատակ ծնաւղաց մերոց արդ եթէ ոք հակառակ կայ ջրիս եւ յափշտակել ջանա ’ի վանացս եւ կամ դարձեալ շինէ զջաղացն զաւձին զկայենին զյուդային զխաչահանացն զանէծսն առցէ եւ մի գտցէ մասն եւ ողորմութիւն ’ի քէ այլ հրամանակատարքն աւրհնեսցին ’ի սբ երրորդութենէն ։

Ես սարգիս կրաւնաւոր գնեցի հող ’ի փարպի եւ հայր մխիթար միանաւքս այգի արկին եւ ’ի խանիկշտի մծ այգին

բոլորեցաւ պատարագի քհն ՚ի տաւնի քառասնիցն է. տէ սարգ-սի տէ վարդանա կատարիչ գրիս աւրհնեին յայս.

զյովսէփ յիշեա ՚ի տր

Ես խէտէնեկս որդի ալուզի եւ ամուսին իմ մարջան տուաք ՚ի սբ ուխտս զթէզանն շամբն որ դետն ՚ի մէջն կու անցանէ որ իշխանն մեզ էր տուել տր բարսեղ եւ այլ եղբարքս սահ-մանեցին զտաւն սբ կարապետին բոլոր յեկեղեցիքս պատա-րագել զքն որչափ մեք կենդանի ենք իշխանին եւ խորիշահի կատարեն եւ յետ ելից մերոց ՚ի մեր յանուն կատարեն ՚ի տաւնի նաւասարդի եթէ ոք զմեր նուէրքս ՚ի սբ ուխտէս հանէ եւ կամ զժամն խափանէ դատի յայ կատարիչք գրիս աւրհնին ՚ի քէ. ամէն: ՈՂԴ

Թվ ՋԻԲ. կամաւն այ ես բլ հասան հեքիմ որդի զաքա-րիայ հեքիմին ապաւինեցա ՚ի սբ յովաննէս եւտու ընծա յա-պըրնուց ձորին սաղնդելէր իմ հայրենս շինեցի ղ դանկն ջա-ղաց եւտու սբ յուխտս փոխարէն հատուցին Ե աւր պատա-րագ ՚ի տաւնի զաքարիայ է զաքարի տէ շուշկան տէ ջալալին տէ իմ պապին բլ հասնա: յետ ելից ինձ առնեն.

Ի գաւթին կամ ՚ի ժամատանն յորմունս շուրջանակի, նորայէլ գրիչ ՚ի կամարսն և ՚ի վերնախարիսխսն.

՚ի Թւ ՈԽԴ յառաջին ամի կաթողիկոսութեան (կաթող. բառդ կրօվ լցեալ էր) տն բարսղի և ՚ի տէրութեան վանացս գրիգորոյ եւ սմպատա եւ եղբարց իւրեանց որոց աւգնական լիցի քն ած. շնորհիւն այ ես նուաստ հայրս պետրոս սբ ուխ-տիս հաստատեցաք եթէ ոք ՚ի սբ միաբանացս փոխի ՚ի քն պատարագ մատուսցուք հաւրն է խ եւ ամենայն եղբայր մի աւր պատարագ: եւ որ չկարէ Ժ կանոն աղօթք արասցէ ե-թէ ոք յայս կարգելոցս պակասեցուսցէ խղճի եւ մեղաց պարտական է առաջի այ: աշխարհական հաբեղայի է խ.

'ի ՌԾ Թուիս 'ի աէրութեան երկրիս զաքարիայի ես տիգրան ծառայ ա̃յ եւ հաւատարիմ իմ պարոնին զաքարիաի միաբանեցա ս̃բ ուխտիս եւ ետու զիմ զջաղացն որ 'ի կորդո շինեալ էր 'ի գլխձորին հմնակից է նորքի դեհն գունիձանց յիշատակ ինձ եւ ծնողաց իմոց եւ յանուն իմ պատարագի քա̃ : ժբ̃ : 'ի տաւնի ս̃բ մարգարէին երեմիաի անխափան մինչեւ 'ի ծագումն որդոյն ա̃յ կատարիչք գրոյս աւրհնեսցին յա̃յ .

ՌԾ կամաւն ա̃յ ես խաչեղբայրս եւ իմ որդիս աւետիս միաբանեցաք ս̃բ ուխտիս եւ տուաք զմեր հայրենիքն զմարանց մարգիկն 'ի վանքս սպասաւորք սորա կատարեն 'ի տարին : դ̃ : աւր ժամ : բ̃ : ինձ : բ̃ : աւետ : ա̃ : սիստին : ա̃ : եղբաւրց . . .

'ի ՌԾ Թուիս շնորհիւն ա̃յ ես գրիգոր որդի հասանայ որդւոյ իշխանին ետու զիմ գանձագին գեւղն զերգս 'ի մեր սեպհական ուխտս 'ի տիեզերահռչակ վանքս վասն արեւշատութեան որդւոյ իմոյ ամիր հասանա եւ վասն յիշատակի հոգւոյ իմոյ եւ ամուսնոյ իմոյ խաթունին յառաջնորդութեան մխիթարայ պարոնական են սպասաւորք հոռոմոսի վանացս մինչ 'ի գալուստն քի̃ յամենայն ամի : ա̃ : խ̃ : պատարագ առնել ինձ գրիգորոյ եւ ի̃ ամուսնոյ իմոյ խաթունին մարդ մահկանացու որ զմեր յիշատակս խափանէ մեղաց մերոց պարտական է առաջի սոսկալի բեմին քի̃ կատարիչք գրելոյս աւրհնեսցին 'ի քէ̃ .

շնորհիւն ա̃յ ես տր̃ գրիգոր որդի ապուղամրի արհեպիսկոպոս մայրաքաղաքին անի ետու 'ի ս̃բ յովանէս ընծա զիւր գեղջէիցն զակնոց եւ զշամթաի եւ զաղբնագեղի զժողովրդութիւնն յառաջնորդութեան անդրէաս վարդապետին միասին եւ սպասաւորք սորա առնեն 'ի տարին բ̃ ժամ մամուզ որ հաստատուն պահէ աւրհնեսցի 'ի ա̃յ իսկ հակառակն ոռոշեսցի յա̃յ ամէն

Թւ ՌԿՁ ես խոճանդ ամիր սուլտանս վասն իմ արեւույս եւ իմ որդեացն ետու վանացս մարդ յաստեղանի յայնկույս գետոյն ։ ես սուրհաւս վասն իմ հոգւոյս ետու զճարպկանց մարդն յարվաշ եւ ես Թաղեցա 'ի տեղս յամենայն ամի պատարագ տացեն ինձ Գ ։ ես ամբաա ետու զմարանց մարգի ըղկէան եւ ես Թաղեցա 'ի վանքս 'ի տարին պատարագ ինձ Ժ ։ ես յոհաննէս Թադէոսի որդի ետու զՉաղացն 'ի գլխձորին զմիջի ակն եւ ես Թաղեցա 'ի վանքս խնդրեմ պատարագել զքս 'ի տաւնի մը գրիգորի Ժե ։

կամաւ մարդասիրին այ ես վարդածիժ վարդեանց ապաւինեցա 'ի մը ուխտս ետու զիմ գանձագին կուղպակն եւ 'ի ներքեւն տակաուքի յանի 'ի վերի փողոցին քանեկից է տեղրանս յառաջնորդութեան հաւր գրիգորիսի սրբասիրի պատարագեսցի քս 'ի տարին Դ աւր զքն ինձ եւ Բ զեւդոկցին իմո տիկնոջն կատարիչքն աւրհնեալ եղիցին 'ի քէ 'ի ՌԿԷ Թւ ․ զեղբայրոսս յիշեցէք 'ի քս

'ի Թւ ՌՀԷ ✠ կամաւ ամենակալին այ այս մեր գիր յիշատակի է հեծուպ գրիգորոյ որդո հասանա եւ եղբայրորդեաց իմոց եւ իշխանիս որդո քրդին եւ եղբայրորդեաց իմոց տերանց մը ուխտիս վանացս հոռոմոսի որ հաստատեցաք արձանագրով պատրոն ով լինի այս տեղոյս 'ի յարանց կամ 'ի կանանց ով կաշառաւք հայր դնէ այնպիսին նզովս առցէ ըղյուդային զա̄ծավաճառին եւ զկաեննին զեղբայրասպանին եւ հայր և այլ գործաւորք որ կաշառք առն յայանի կամ 'ի ծածուկ յերկնաւոր հաւրէն եւ յԺԸ հայրապետացն եւ յամենայն սրբոց անիծեալ եղիցի յոգի և 'ի մարմին եւ հայր որ 'ի վանիցս հաց ծախէ կամ 'ի վանիցս 'ի բացս խորէ նզովեալ եղիցի մահով եւ կենաւք ով հակառակ կայ այս բանիս ի պատրոնաց կամ 'ի միաբանիցս կամ 'ի ջնջել ջանա զայս գիրս եւ ինքն ջնջեսցի 'ի դպրութենէ կենացն կատարիչքն աւրհնեալ

եղիցին յայ ամէն․ արդ էԹէ մեծ եւ էԹէ փոքր կարծիս առնու ԹԷ հայր կամ այլ գործաւոր կաշառք է տուեալ եւ վրէժխնդիր չլինի վերադրելոցս նզովիցս տէր է ամէն։

զխոցաւորեալ գրիչ յիշեա 'ի տր․

ՈՀԸ շնորհիւն քի ես վասակ որդի դաւԹի Թոռն կիւրի-կէի արքայի տէր նորբերդի խոստովանող քի միաբանեցա սբ ուխտիս եւ ետու 'ի սբ յովանէս ընծայ զիմ գանձագին նի-Թահանքն որ 'ի վանացս գնեցի վճռամբ եւ ամենայն ամրու-Թեամբ յառաջնորդուԹեան տն բարսղի որդւոյ ամիր երկա-Թայ եւ փոխարէն ինձ հատուցին զտաւն սբոց վարդանանց յամէն ամի բոլոր յեկեղեցիսս զպատարագն որչափ ես կեն-դանի եմ վարհամայ եւ Թամարին առնեն եւ յետ վախճանին իմոյ ինձ արդ կատարիչք գրիս աւրհնին 'ի քն եւ հակառակն որոշի եւ զանէծս կայենի եւ զյուդայի եւ զնեռինն ժառան-գէ մարդ ո ոք եւ իցէ եւ մի լիցի ԹողուԹի յաւիտեան ամէն․

Թւ ՈՁԳ շնորհիւն քի ես զմրուխտ խաԹունս աղախին քի յուսալով յողորմուԹիւնն այ ետու 'ի սբ ուխտս 'ի վանքս հոռոմոսի 'ի սբ յովհանէս ակն 'ի մին ջաղաց բոլոր 'ի կարմն-ջին ձորին որ աբեղեանց կոչի զոր այրն իմ ածաւէրն սմբատ յիւր կենդանուԹեանն ինձ հայրենիք էր տուեալ եւ յիմ կենդանուԹեանս սբ ուխտիս հայրենիք հաստատեցի յառաջ-նորդուԹեան տն բարսղի որդւոյ երկաԹայ եւ սպասաւորք սբ ուխտիս փոխարէն հատուցին մեզ յամենայն ամի պատա-րագել զքս խն աւր․ ժն․ ինձ խաԹունիս․ ժն․ առն իմոյ սմբատայ․ Ժ․ աւր մաւրն խորիշահի եւ․ Ե․ իւր հաւրն քրդ-ղին արդ եԹէ ոք 'ի մեծամեծաց կամ 'ի փոքունց զմեր նուէրս հանէ 'ի սբ ուխտէս կամ ծախելով կամ գրաւական դնելով կամ զմերս ամն պակասեցուցանեն․ յՅԺԸ հայրապետացն նզո-վեալ եղիցի մահով եւ կենաւք իսկ որք հաստատուն պահեն աւրհնին յայ ամէն․

ՈՂԵ կամաւ բարերարին այ 'ի Թագաւորութեանս Հայոց եւ վրաց դաւթի եւ 'ի սպասալարութեան շահնշահի որդւո մեծին զաքարի եւ յառաջնորդութեան տն բարսղի արքեպիս-կոպոսի որդւո ամիր երկաթա ես աշոտ դսեղեցի որդի գեաւր-գէ թոռն աշոտո միաբանեցա սբ յովանիսի 'ի նեղ եւ 'ի չար ժամանակիս. յետ կործանման տաճարին մինչ էր վանքս 'ի նեղութեան ետու զամենագով աւետարան եւ ։ Դ ։ եզն ։ Զ ։ կով ։ Դ ։ էշ ։ Ե ։ ձի եւ այլ զինչ տմ պատրաստէ ես տր բար-սեղ եւ սարգիս վարդապետս եւ այլ եղբարքս ընդալաք զնա իբրեւ զմի 'ի պատրոնաց մերոց եւ փոխարէն հատուցաք յա-մէն ամի զկնի նոր կիրակէին աւր պատարագեալ զքս յա-նուն աշոտո որչափ կենդանի է իւր ծնողացն յետ ելից յաշ-խարհէս աշոտո կատարենք որ հաստատուն պահեն աւրհնին յայ եւ որք խափանեն զյուդայի առցէ եւ զկայենի յՏր հայ-րապետացն որոշեալ եղիցի մահուն եւ կենաւք. ես կիրա հետ իմ զարմին աշոտո միաբանեցա սբ ուխտիս յանուն իմ պատարագի քս 'ի տարին աւր մի.

'ի Թ. ՈՂԹ կամաւն այ ես աւետիս վարդապետ առաջ-նորդ սբ ուխտին սանահնին աղքատ 'ի մայրաքաղաքէս անի միաբանեցայ սբ ուխտիս հոռոմոսի վանաց սբ յովանիսի եւ ետու ընծա յառաջնորդութեան տն բարսղի արհեպիսկոպո-սի որդւոյ ամիր երկաթա փոխարէն հատուցին ինձ տր բար-սեղ եւ այլ միաբանքս կատարեն 'ի տաւնի սբ խաչին ։ Դ ։ աւր ժամ ։ Ե ։ աւրն աւետիս վարդապետին ։ Ա ։ ոտնամու-րին կատարիչքն աւրհնին յայ ամէն.

զաւրութեամբն այ ես շերանիկս զաւրացա 'ի զինուորու-թեան եւ այդ անկեալ կամ 'ի վանքս առաջի սբ խաչիս քն զի ողորմեսցի ինձ քս տմ ետու զիմ գանձագին այգին 'ի ծմակին յանուն իմ պատարագի քս Դ 'ի տաւնի խաչգիւտին ։ ես մա-րիամ զուգակից շերանիկանն ետու 'ի սուրբ յովանէս զակ-

նաց կէս դանգն իմ գանձուղ գնած յանուն իմ պատարագի ք̅ս̅ ։ Ղ̅ ։

շնորհիւն ա̅յ ես առիւծս որդի ա̅ծատուրո միաբանեցա ս̅բ ուխտիս եւ ետու 'ի յանս ժուն փողոցին զիմ գանձագին կուղ-պակն որ շինեցի ։ Ներքի դեհն քանակից է ուեռաեացն ։ Բ̅ ։ կուղպակի կաերն մէկն 'ի վերա կուղպակին է եւ մէկն խաբենն դիմաց որ գաղլայն է Ներքեւ վասն յիշատակի զուգակցին իմո համաւորին յանուն մեր պատարագի ք̅ս̅ ։ Բ̅ ։ ա̅ծատուրո ։ Բ̅ ։ վահրամ ... Բ̅ ։ համաւորին կատարիչքն աւրհնեալ եղիցին յա̅յ ։

'ի յարուձ փոքր այգիք են վանացս եկեղեցպանին ։ քաւ-շուտին լապատակայն հանկանն առեւծկանն աղպետեանցն թուխայրեանցն խաչեղբաւրն եւ պատարագի ք̅ս̅ յանուն սո-ցա 'ի խաչին ութաւրէքն Ի̅ ։ ես արշաւիր աշտակեցի ետու զիմ հայրենի ... զուռուտն զի յիշեսցեն զիս առաջի զեն-մանն ք̅ի ։ Ես քաւշառս ետու զիմ ծաղկոցի կէսն զխոսրո-վեանցն Դ̅ ։ Ես խաչիկ երէց միաբանեցա եւ ետու զծաղկո-ցին ...

հոռոմոսին վանացս հայրենիք որ 'ի քաղաքին այս են գեորգ-ծեր երէց վանացս ետ հայրենի տներն մաւտ 'ի կարուց դուռն ս̅բ ստեփանոս ընդդէմ եւայի արգիւնք ետ եւ առ զիւր տաւ-նին պատարագն Դ̅ ։ գիւտիկ կրաւնաւոր ետ զիւր հայրենի տունն 'ի քարափնն եւ առ զխաչգիւտին պատարագն Դ̅ ։ վար-համ ետ կուղպակ 'ի գարբնոց փողոցին մաւտ 'ի ս̅բ գրիգորն եւ պատարագ մատչի յանուն նորա Բ̅ ։ աբրահամ ետ պար-տէզ բերդին առաջի հայրենիք է անուն ... պատարագ Դ̅ ։ ես սարգիս ետու զիմ հայրենիք տներն ... իգանձորին դրան վանացս ասպնջականոց ... պատարագն զք̅ս̅ Դ̅ ։

Ես սարգիս էրէց որդի պետրոսի փարպեցի ետու զիմ գան-

ձագին այգին 'ի վանս Հոռոմոսին սպասաւորք սրբոց կատարեն յամէն ամի զտաւն ո՟ր սարգսին պատարագել զք՟ս։ Ե՟։ ժամ։ Ա՟։ ինձ և։ Ա՟։ կենակցի իմոյ քեմէի․

․․․․․ս ծեր երէց շինեցի զո՟ր եկե․․․․ սցի 'ի նմա ք՟ս յանուն միաբա․․․․ ենի տներն և զծխթահանքն․․․․ պատարագեսցեն զք՟ս Շ․․․․․ ծնողացն․․ մ եղբաւրն շնաւորին․․․․․ ես շահ․․․ իմ հայրենիք կուղպակն և զարահն․․․․ և մուց կուսէ պատարագեսցեն զք՟ս․․․․ և Ա՟ իմ եղբաւրցն կարապետին պարկա․․․․ ո՟ր դեորգա 'ի հաւրաւս կուսէ․․․ ընկերին․․․

Թվիս Չ կամաւն ա՟յ ես առիւծս հոգեւորեանց և ամուսին իմ սեդա միաբանեցաք ո՟ր յովաննիսի յառաջնորդութեան տ՟ր բարսղի բերի զջուրս զոր տաթարալս խուպանեալ էր և տվի ընծա զհայրենի զիմ կուղպակն որ 'ի կաւշկակարոցին քանակից է վերի դեհն տիգրանա ներքին ս՟լ քերոյն և զպահէզն 'ի քեղուտի նորիցխ կանգնեցի և փոխարէն հատուցին մեզ սպասաւորք ո՟ր ուխտիս յամէն ամի 'ի խաչին ութաւրացն։ Ժ՟Բ։ աւրժամ։ Դ՟։ աւրն ինձ։ Բ՟։ սեդաի։ Բ՟։ իմ հաւրն սարգսի։ Բ՟։ իմ մաւրն հռիփսիմի։ Ա՟։ նուրսթէ։ Ա՟։ գրիգորոյ էթէ ոք զմեր յիշատակս խափանէ դատի յա՟յ և որք հաստատ պահեն աւրհնին 'ի ք՟է ամէն․

Չ կամաւն ա՟յ ես յովանէս մակոնուն ցխիկ միաբանեցա ո՟ր ուխտիս յետ աւերման տաթարիս վանացս ջաղանիս աւեր և գրաւական էր։ Խ՟։ դահեկան ետու և զջաղացն թափեցի և այլ ետու զիմ մարտիրոսոք որ իմ հալալ արդեամբք գրեալ էի և փոխարէն հատուցին սպասաւորք ո՟ր եկեղեցոյս 'ի տարին։ Ե՟։ աւր ժամ ղազարու տաւնին։ Դ՟։ ինձ։ Ա՟։ իմ եղբաւրն խաչատուրն կատարեսցեք գրիս աւրհնին 'ի ք՟է ամէն․

Թվ. ՉԲ կամաւն այ ես յոհաննէս արքայուն որդի ապրկան եւ ամուսին իմ մուլուքան միաբանեցաք հոռոմոսի վանից տր յովանիսի եւ տվաք : բ : տուն իմ գանձագին որ ակուռնաց կոչի եւ այլ տվի յամեն տարի որչափ կենդանի եմ : ե : դահեկան ձիթագին եւ առաջի տարին տվի : խ : կապիճ ցորեն սերմա եւ առաջնորդ վանացս տր բարսեղ եւ էլ միաբանքս փոխարէն հաստուցին ինձ յամէն ամի : ժ : աւր պատարագ զատաւն խաչգոյտին : գ : աւր իմ հաւրն ապրկան : գ . իմ մաւրն սեթերհէն : բ : յովանիսի : բ : սմբատա եւ յիւր եղաներյս յաշխարհէս : ե : աւր ինձ էհանիսի եւ : ե : ամուսնոյ իմոյ մուլուքին որ զյիշատակս մեր հաստատ պահեն աւրհնին յայ եւ որ խափանեն կամ զոներն ծախեն մեր մեղացն պարտական է ամէն .

'ի Թուա . ՉԻ . ես մկրտիչ աբեղա որդի ռատին եւ իմ հոգեւոր եղբայրս գրիգոր քհ շինեցաք վերստին զընծանանին յարուծ եւ 'ի փարպին ✠ սրկաքն որք : սպասաւորքս հաստուցին մեզ 'ի տարին : դ : պատարագ : բ : ռատին : բ : խոցադեղին եւ յիւր ելից մերոց մեզ առնեն կատարիչքն աւրհնին 'ի քէ .

ՉԺԵ շնորհիւն այ ես մամուկսթի դուսար վարհմա եռու 'ի տր յովաննէս 'ի մեր տապանատունս զեղանց մարգ 'ի բովաչորու կարմնջէն 'ի վաղաւերու ճամբահն յանու հողէն 'ի վաղաւկրուն : բ : աւերկուն որ 'ի տարին դ աւր պատարագել զքն : ա : ինձ : ա : կուրապաղատին : ա : ասիրոցին : ա : տրտամշին : ա : վարհամծին : ա : գոհար խաթունին կատարիչք գրիս աւրհնին 'ի քէ . սիմէոն գրիչ .

ՉԺԵ կամաւքն այ ես ալէքս որդի ղազարա եւ ամուսին իմ մլքսթի միաբանեցաք տր յովանէսի եւ գնեցի կուղպակ 'ի ծռապուկակին եւ եռու ընծա 'ի տր ուխտս եւ սպասաւորքս.

*յամենայն սրբոց ... անդրէաս վարդապետս ամենայն եղբարբքս գրե ... ութա հանէ 'ի վանացս փոխելով կամ ծախելով չունի թող ...*

*Ի վերայ տապանատանդ հաւասար լայնութեանն և ըստ կիսոյ երկայնութեանն երեք մատրունք կան ամենափոքր, որմակից իրերաց և կաթողիկէ 'ի վերայ միջնոյն. և 'ի ներքս գեղերօք յաջակողմեան խորշին' համառօտ յիշատակս այս.*

*տր ած ողորմեա ուղղուքանա 'ի միւսանգամ քո գալըստեանդ ամէն.*

*Նոյնաձև և հաւասարաչափ են ամենևին և միւս երեք մատրունքն 'ի հիւսիսոյ կողմանէ տաճարին. բայց հիմնեալ 'ի վերայ այլոյ մատրան' որ աննման է տապանատանն. զի սա թէպէտ և չէ մեծապարած իբրև զնա, այլ եկեղեցաձև է հանդերձ դրամբ յարևմտից. բայց ասեմ, զի սակաւ ամօք յառաջ ինքնին փլեալ նորա և երեք մատրունք ընդ նմա որ 'ի վերայն էին, տեղի խորանացն ևեթ կիսով կաթողիկէին մնացեալ է։ Քարակոյտ աւերակաց լցեալ է զվայրն. նմին իրի այլ արձանագիր չերևի ուրեք բայց այս միայն յորմն հիւսիսոյ.*

*ՉԾԴ տր դաւիթ.*

*Առընթեր տապանատանն' 'ի նոյն կարգ և նովին բարձրութեամբ կայ նախ մատուռն մի փոքր, և առ նմա այլ ևս կամարաչէն տեղիք, ուրեք միջնորմով զատուցեալ յիրերաց, և այլուր այլ կամարագօտեաւ անցս ունելով առ ընթերակացն։ Առ 'ի ներքս կամարաչէն վայրացդ յարևելից կուսէ մատրանն երկուստեք սանդղաւունք են, և բերանք նոցա 'ի վերուստ. և միոյն 'ի կողմանէ ևս առգետնով, և առընթեր մուտից նորա արձանագիրս.*

*քս ած 'ի քո մեծի ծագման լոյս նորոգեա զհոգի խաթունին դստեր հեձուպ վարհամա որ մեծ յուսով եւ բազում արդեամբք վերստին նորոգեաց զեկեղեցիքս եւ զի ոչ ունելով մարմնաւոր զաւակ ստացաւ իւր ժառանգ եւ յիշատակ զքս յովանէսի ...*

ՆՇԽԱՐԱՑՈՒԻՆՆ. — *Առընթեր ներքնադրան վանաց և նոյնադիր հարաւային որմոյ եկեղեցւոյն' շինեալ է նշխարատունն երրեակ սենեկօք, փառահեղք և զարմանալիք. երկրորդն 'ի հարաւոյ կայ առաջնոյն և երրորդն յարևելից երկրորդին, միջնադրամբք հաղորդեալ իրերաց։ Ի մտից նախադրանն 'ի փոքր դաւթէ անցք են յառաջին սենեակն, որոյ չորեքին կողմանքն յերիս յերիս մասունս տրոհեալ են' իբրու կամարաձև շրջանակօք զերեսօք որմոցն, հանդերձ նորաձև սիւնակօք կողմանց իւրաքանչիւր շրջանակացն' վիմափոր ձևացուցեալ 'ի քարանց անտի որմոցն. և են դոքա թուով երկոտասան։ Իսկ միջնակայր յարկին*

թէպէտ և կործանեալ՝ այլ եղերք նորա կան 'ի տեղւոջն, յորս վսեմութիւն մեծ երևի 'ի քանդակս քարանց։ Որմակից գաւթի նորա է փոքրիկ սենեակ մի մը-թին, զոր չգիտեմ պահարան ասել թէ այլ ինչ։ Երկրորդ սենեակն սակաւ մի փոքր է քան զառաջինն, և 'ի չորից կողմանց այլ և այլ կամարագօտիք ձգեալք 'ի գետնոյ և 'ի վեր՝ աղեղնաձև 'ի կեդրոնն կոյս, որ քառակուսի ձևով բաց է իբրու լուսանցոյց սենեկի։ Իսկ երրորդ սենեակն փառաւորագոյն ևս է քան զայլսն. երկոտասան սիւնք՝ չորս 'ի միջավայրին և ութ առ 'ի կողաց՝ 'ի վեր ու-նին զյարկն, սիւն ընդ սեան կամարօք կցեալ և միջոց նոցին քարեղէն առաս-տաղաւ ամրացեալ ըստ օրինակի ժամատանն։ Միջնավայր չորից սեանցն թէ-պէտ չունի կաթողիկէ, այլ զարդարեալ է քանդակագործ քարամբք շուրջանա-կի։ Ցարևելից կուսէ մեղրաչափ մի 'ի վեր 'ի գետնոյ խորանաձև փորեալ է որմն լայնանիստ և ցած, և այլ խորան նոյնաձև և փոքր քարակերտ ագուցեալ 'ի տեղւոջն։

Զնչխարատանէս այլ և այլ զրոյցք են. և յաճախ յածի 'ի բերանս ռամկին թէ դատաստանարան իցէ լեալ առ Անեցւովք. որպէս թէ թագաւորն երկոտա-սան զատաւորօքն 'ի խորհուրդ մտեալ յառաջնում սենեկին, որպէս երկոտա-սան տրոհմունքն զորմովք ցուցանեն, և ապա զդատն վճռեալ յերկրորդում սե-նեկի, եղծանէին յերրորդումն։ Եւ դարձեալ թէ սեղանատուն իցէ առաջինն, և երկրորդն խոհանոց, և երրորդն փառաւորագոյն՝ չգիտեմ զինչ այլ։ Իսկ որ փոքր մի 'ի գրոց կարծեն զրուցել, զառաջին կարծիսն պնդեն կալեալ յաղագս երկուց սենեկացն, զերրորդն եկեղեցի ասեն, զի սիւնազարդ ձևովն և խորանաստեղծութեամբն զայդ կարծիս զարթուցանէ 'ի տեսողսն. և զագուցեալ խորանէն ասեն, թէ զի կրօնաւորքն եկեալ 'ի Հոռոմոց երկրէն յունազգի էին և խղճէին 'ի վերայ հայ սեղանոյ պատարագել, նմին իրի այլ քարեղէն սեղանաւ խափանեն զՀայոցն, զի ինքեանք անխիղճ մատուցեն 'ի կատարումն խորհրդոյն։ Սակայն այդ ամե-նայն անգիր և անստոյգ զրոյցք են։ Ի պատմութեանց թէպէտ և չունիցիմք վկայու-թիւն, բայց արձանագիրն որ 'ի վերայ դրանն կայ ցայսօր՝ չափ իսկ յայտ առնէ թէ զինչ էր շինուածն հոյակապ 'ի սկզբան. այլ թէ յետոյ և յայլ պէտս փոխե-ցաւ, չէր հարկ նովին անստոյգ անուամբն մակձայնել զնա, 'ի մոռացօնս թո-ղեալ իսպառ զստուգագոյնն։ Արդ Աշխարատուամբն որպէս կոչէ զայն արձա-նագիրն, իմանալի է ոչ միայն զի ազատք տուրք խորհրդոյն պատրաստեալ պա-հէր անդ, զոր օրինակ յիշատակի նշխար և գինի հասութիւ սահմանեալ, այլ զի և պահարան էր մասանց սրբոց և այլ ևս ցանկալի սրբազան անօթոց և սպա-սուց մեծահռչակ եկեղեցւոյն. անշուշտ և մի 'ի սենեկացն կարգեալ էր 'ի մա-տենադարան, զի զայդ ցուցանէ թերակատար բանն յարձանագրին, «գրատա»։ Եւ վայել իսկ էր մեծատանին մեծի ունել նշխարատուն այդպիսի, զի և այլք 'ի շինուածոցն ոչ հասարակ ինչ են. և զի ընդ արքայական հովանաւորութեամբ էր ապահովացեալ՝ և մօտ թագաւորեալ քաղաքին՝ և այնքան եկամուտք բարերա-րաց ճոխացեալ 'ի ժամանակին։ Այլ աւաղ, զի հրաշակերտ շինուածդ կարգեալ է այժմ 'ի գումս անասնոց։ Ցուցուք արդ զարձանագրութիւնս արտաքոյ և 'ի ներքս, և նախ զոր 'ի վերայ դրանն։

յամենայն սրբոց... անդրէաս վարդապետս ամենայն եղ-բարքս գրե... ութա հանէ 'ի վանացս փոխելով կամ ծա-խելով չունի Թող...

Ի վերայ տապանատանդ հաւասար լայնութեանն և ըստ կիսոյ երկայնութեանն երեք մատրունք կան ամենափոքր, որմակից իրերաց և կաթողիկէ 'ի վերայ միջ-նոյն. և 'ի ներքս գեղերօք յաջակողմեան խորշին՝ համառօտ յիշատակս այս.

տէր ած ողորմեա ուռզուքանա 'ի միւսանգամ քո գալըս-տեանդ ամէն.

Նոյնաձև և հաւասարաչափ են ամենևին և միւս երեք մատրունքն 'ի հիւսիսոյ կողմանէ տաճարին. բայց հիմնեալ 'ի վերայ այլոյ մատրան՝ որ աննման է տապա-նատանն. զի սա Թէպէտ և չէ մեծատարած իբրև զնա, այլ եկեղեցաձև է հան-դերձ դրամբ յարևմտից. բայց աւաղ, զի սակաւ ամօք յառաջ ինքնին փլեալ նո-րա և երեք մատրունք ընդ նմա որ 'ի վերայն էին, տեղի խորանացն եւեթ կիսով կաթողիկէին մնացեալ է: Քարակոյտ աւերակաց լցեալ է զվայրն. նմին իրի այլ արձանագիր չերևի ուրեք բայց այս միայն յորմն հիւսիսոյ.

ՉԾԴ տէր դաւիԹ.

Առընթեր տապանատանն՝ 'ի նոյն կարգ և նովին բարձրութեամբ կայ նախ մատուռն մի փոքր, և առ նմա այլ ևս կամարաչէն տեղիք, ուրեք միջնորմով զատուցեալ յիրերաց, և այլուր այլ կամարագօտեաւ անցս ունելով առ ընԹե-րակացն: Առ 'ի ներքս կամարաչէն վայրացդ յարևելից կուսէ մատրանն երկուս-տեք սառնատունք են, և բերանք նոցա 'ի վերուստ. և միոյն 'ի կողմանէ ևս ա-գետնով, և առընթեր մօտից նորա արձանագիրս.

քս ած 'ի քո մեծի ծագման լոյսո նորոգեա զհոգի խա-Թունին դստեր հեճուպ վարհամա որ մեծ յուսով եւ բա-զում արդեամբք վերստին նորոգեաց զեկեղեցիքս եւ զի ոչ ունելով մարմնաւոր զաւակ ստացաւ իւր ժառանգ եւ յիշա-տակ զՔս յովանէսի:..

ՆՇԽԱՐԱՏՈՒՆՆ. — Առընթեր ներքնադրան վանաց և նոյնադիր հարաւային որ-մոյ եկեղեցւոյն՝ շինեալ է նշխարատունն երրեակ սենեկօք, փառահեղք և զար-մանալիք. երկրորդն 'ի հարաւոյ կայ առաջնոյն և երրորդն յարևելից երկրոր-դին, միջնադրամբք հաղորդեալ իրերաց: Ի մօտից նախադրանն 'ի փոքր դաւԹէ անցք են յառաջին սենեակն, որոյ չորեքին կողմանքն յերիս յերիս մասունս տրոհեալ են՝ իբրու կամարաձև շրջանակօք գերեսօք որմոցն, հանդերձ նորաձև սիւնակօք կողմանց իւրաքանչիւր շրջանակացն՝ վիմափոր ձևացուցեալ 'ի քա-րանց անտի որմոցն. և են դոքա Թուով երկոտասան: Իսկ միջնավայր յարկին

Թէպէտ և կործանեալ՝ այլ եղերք նորա կան 'ի տեղւոջն, յորս վսեմութիւն մեծ երևի 'ի քանդակս քարանց։ Որմակից գաւթի նորա է փոքրիկ սենեակ մի մը-թին, զոր չգիտեմ պաճարան ասել թէ այլ ինչ։ Երկրորդ սենեակն սակաւ մի փոքր է քան զառաջինն, և 'ի չորից կողմանց այլ և այլ կամարադօտիք ձգեալք 'ի գետնոյ և 'ի վեր՝ աղեղնաձև 'ի կեդրոնն կոյս, որ քառակուսի ձևով բաց է իբրու լուսանցոյց սենեկի։ Իսկ երրորդ սենեակն փառաւորագոյն ևս է քան զայլսն. երկոտասան սիւնք՝ չորս 'ի միջավայրին և ութ առ 'ի կողմս՝ 'ի վեր ու-նէին զյարկն, սիւն ընդ սեան կամարօք կցեալ և միջոց նոցին քարեղէն առաս-տաղաւ ամրացեալ ըստ օրինակի ժամատանն։ Միջնավայր չորից սեանցն թէ-պէտ չունի կաթողիկէ, այլ զարդարեալ է քանդակագործ քարամբք շուրջանա-կի։ Ցարևելից կուսէ մետրաչափ մի 'ի վեր 'ի գետնոյ խորանաձև փորեալ է որմն լայնանիստ և ցած, և այլ խորան նոյնաձև և փոքր քարակերտ ագուցեալ 'ի տեղւոջն։

Զնշխարատանէս այլ և այլ զրոյցք են. և յաճախ յածի 'ի բերանս ռամկին թէ դատաստանարան իցէ լեալ առ Անեցւովք. որպէս թէ թագաւորն երկոտա-սան գաւառորդքն 'ի խորհուրդ մտեալ յառաջնում սենեկին, որպէս երկոտա-սան տոհմիցն զօրմովք ցուցանեն, և ապա զդատն վճռեալ յերկրորդում սե-նեկի, եղծուին յերրորդումն։ Ես կարծեալ թէ սեղանատուն իցէ առաջինն, և երկրորդն խոհանոց, և երրորդն փառաւորագոյն՝ չգիտեմ զինչ այլ։ Իսկ որ փոքր մի 'ի զրոյց կարծեն զրուցել, զառաջին կարծիսն այնու կալեալ յաղագս երկուց սենեկացն, զերրորդն եկեղեցի ասեն, զի սիւնազարդ ձևովն և խորանաստեղծեան զայդ կարծիս զարթուցանէ 'ի տեսողսն. և զագուցեալ խորանէն ասեն, թէ զի կրօնաւորքն եկեալ 'ի Հռոմոց երկրէն յունազգի էին և խղճէին 'ի վերայ հայ սեղանոյ պատարագել, նմին իրի այլ քարեղէն սեղանաւ խափանեն զՀայոցն, զի ինքեանք անխիղճ մատուցեն 'ի կատարումն խորհրդոյն։ Սակայն այդ ամե-նայն անգիր և անստոյգ զրոյցք են։ Ի պատմութեանց թէպէտ և չունիցիմք վկայու-թիւն, բայց արձանագիրն որ 'ի վերայ դրանն կայ ցայսօր՝ չատ իսկ յայտ առնէ թէ զինչ էր շինուածն հոյակապ 'ի սկզբան. այլ թէ յետոյ և յայլ պէտս փոխե-ցաւ, չէր հարկ նովին անստոյգ անուամբն մակձայնել զնա, 'ի մոռացօնս թո-ղեալ իսպառ զառուգագոյնն։ Արդ Աշխարատամբն որպէս կոչէ զայն արձա-նագիրն, իմանալի է ոչ միայն զի տպարք տուրք խորհրդոյն պատրաստեալ գա-հէր անդ, զոր օրինակ յիշատակի նշխար և գինի հասութիւ սահմանեալ, այլ զի և պաճարան էր մասանց սրբոց և այլ ևս ցանկալի սրբազան անօթոց և սպա-սուց մեծահռչակ եկեղեցւոյն. անշուշտ և մի 'ի սենեկացն կարգեալ էր 'ի մա-տենադարան, զի զայդ ցուցանէ թերակատար բառն յարձանագրին, «գրատա»։ Ես վայել իսկ էր մենաստանին մեծի ունել նշխարատուն այդպիսի, զի և այլք 'ի շինուածոցն ոչ հասարակ ինչ են. և զի ընդ արքայական հովանաւորութեամբ էր ապահովացեալ՝ և մօտ թագաւորեալ քաղաքին՝ և այնքան եկամտիւք բարեբա-րոյ ճոխացեալ 'ի ժամանակին։ Այլ աւաղ, զի հրաշակերտ շինուածդ կործանեալ է այժմ 'ի գումս անասնոց։ Տեսցուք արդ զարձանագրութիւնսն արտաքոյ և 'ի ներքս, և նախ զոր 'ի վերայ դրանն։

ՈՀԸ ✠ շնորհիւն քն ես վաչէ որդի սարգսի եւ ամուսին իմ մամա խաթուն դուստր ապուսերհին շինեցաք զնշխարատունս 'ի վանքս հոռոմոսի յառաջնորդութեան տն բարսղի որդո ամիր երկաթայ եւ տվաք ընձա գրատա... զմեր գանձագին այգին 'ի յաւշական ժամո համար եւ նշխարի եւ այ.. տուաք եկեղեցոյս.. ասք եւ է քշոց արծաթի եւ փոխարէն հատուցին մեզ միաբանքս յամէն ամի յամենայն եկեղեցիքս 'ի նոր կիւրակէին պատարագել զքն զայգին վաճական հոգա եւ գինոյն իշխանութիւն ունի որ 'ի մեր պատարագի յաւրն հասարակաց սէր առնէ արդ կատարիչք գրիս օհնին 'ի քէ իսկ եթէ 'ի մերոց կամ յաւտար... կտակս մեր խափանէ մեղաց մերոց պարտական լիցի առաջի այ.

Յահեկէ դրանն.

ՉԻԳ ✠ շնորհիւն քն ես ուքանքարիմատին... եւ պապքան վարխատինս որդի սարգսի թոռն...յն եւ ամուսին իմ դապատ խաթունս սարգ...ին զնեցաք հոռոմի վանացս կէսն 'ի սահման ովլէ...նեն 'ի մեր հալալ ընչից եւ տվաք նվերք 'ի սբ. յովանէս... այգին 'ի թալին բոլոր աղատ յամենայն հարկէ եւ շինական մի.. ազ... է: սկլի արծաթի եւ 'ի խանապարին ներքի դեհն ⁝ է ⁝ հուճրա եւ ապաս... տուցին մեզ զհոգոյն գալստեան ժամն յամենայն եկեղեց... ատտատ պահէ օհնի յայ.

Յաջմէ դրանն.

ՉԼԵ ✠ շնորհիւն քն նահա....ահ.... եւս յիշատակիս եղբաւրն գրիգոր ճոր միջաւրեա 'ի քս փոխեցա յիմ հա... տչվառ ու նասիճ շաւրջառ եւ տուն կա.... փ..պո հոգին եւ զծմակին հողն որ 'ի ն... զին զխաճլինի ես առնեմ հետայն որ սբ ցո.. աին ի.. սպասաւորքս փոխարէն հատուցին յամէն ամի գ պատարագ 'ի տաւնի սբ գրիգորին յանուն գրիգորո առնել կատարիչք գրոյս աւրհնին 'ի քէ.. շինեցի զուլէն զանկակատու..

*Ի շրջապատ պատուհանի դագաղաթան երկրորդ սենեկի նշխարատանն.*

**Թվ ՉԻԶ ✠ կամաւն այ ես տուխծս հոգեւ... սարգսի որդիս եւ կենակից իմ սէդա շինեցաք 'ի մեր հալալ արդեանց գնչէխա.. տունս 'ի մեր ժամատան դուռս յիշատակ ծնողաց մերոց եւ ս... ա զոր 'ի կա.. այ կարողութեամբ վարպետ փրեր կարնոյ քաղաքացի.**

*Ցերրորդում սենեկին 'ի վերայ միոյ 'ի կամարացն.*

**կամաւն այ ես վարդան եւ ամուսին իմ աղբրացա միաբանեցաք մը ուխտիս եւ տվաք ։ Բ ։ կով ։ Բ ։ եզն եւ եաուն մեզ գերեզմանի տեղ զա եւ 'ի տարին ։ Դ ։ աւր պատարագ. Բ ։ ինձ ։ Բ ։ աղբրացին որչափ կենդանի ենք մեր ծնողացն արնեն յետն մահու մեզ.**

*Արընթեր խորանատեղւոյ նորին սենեկի 'ի ներքոյ երից 'ի խաչաքարից.*

**այս խաչերս բախտիարենց է.**

ԻՋԵՎԱՆՆ. — *Մի 'ի հոյակապ շինուածոց մենաստանիս է և իջեւանն որ արտաքին որմոցն սահման հատանէ պարսպի վանացն յարևմտից կուսէ, անձուկ տարածութեամբ ձգեալ 'ի հիւսիսոյ 'ի հարաւ իբրև ընդ ամենայն լայնութիւնն պարըսպէ 'ի պարիսպ, և երկուստեք աշտարակաձև բոլորակք յորմունս՝ տեղիք վառարանաց կամ մուրոց, և կամարաւ հաղորդեալ առ միմեանս կողմանքն ։ Այլ այդ ամենայն խաթարեալ կիսակործան կայ արդ ։ Եւ ասի թէ իջեւանդ հանգըստատուն էր կարաւանաց եկելոց յաշխարհէն Պարսից որ 'ի Տաճկաստան անցանէին յայսկոյս Ախուրենոյ, ընդ կամուրջն՝ որ արդ կործանեալ է յետ գալըստեան Ռուսաց ։*

ՆՈՐՈԳՈՒԹԻՒՆ. — *Հոռոմոսի մենաստանս անչքացեալ յոյժ յասպատակութենէ հինից, և ամենայն վայրքն աղտեղեալ և տղմալից՝ մաքրեալ յարդարեցաւ իբր 160 ամօք յառաջ 'ի ձեռն Դանիէլի վարդապետի Տիգրանակերտեցւոյ, որոյ արձանագիր կայ 'ի ճակատ դրան գոմոյ քայքայելոյ՝ որ 'ի հարաւոյ կուսէ ժամատանն կամ գաւթի եկեղեցւոյն.*

**'Ի ՌՃԼԴ թուաբերութեանս հայոց նորոգեալ պայծառացաւ թագաւորաշէն մեծաքանչ հոռոմոսի վանքս ձեռամբ դանիէլ վարդապետի տիգրանակերտեցւո եւ իշխանութեամբ տեղոյս խաթուն օղլի իշխանաց իշխան մուստաֆա աղայի. եւ զի ունէր ժամանակս ոչ սակաւ աւերի լցեալ աղ-**

պով եւ հողով զոր առեսեալ վերոգրեալ դամբէլ վարդապետ-տին եւայս 'ի հոգի իւր. եւ էառք զանձն 'ի չարչարանս 'ի դառն ժամանակիս որում ազգս Հայոց յոյժ էին չքաւորեալք եւ իշխանութիւն տաճկաց զօրացեալք բազում աշխատու-թեամբ եւ ջանիւ լուսաւորեալ մաքրեալ զվանքս մք յոմա-նեսի 'ի աղմուս եւ 'ի զաղէր մեթնասադացութենէ վասն յու-սոյն որ առ ...ծ արդ որ կարդայք յիշեցէք 'ի քս.

Երկրորդ անգամ նորոգեալ է յետ հարիւր ամաց յաւուրս Շամբեցի Յովհաննու վարդապետին յամի ՌՄԼԷ: Սակայն յետ գաղթականին Հայոց 'ի Ռուսս և դա-տարկելոյ գիւղին 'ի բնակչաց՝ անշքացաւ և մենաստանն:

ՄԱՏՈՒՌՆ ԱՐՏԱՔՈՅ ՎԱՆԱՑ. — Արտաքոյ մենաստանիս յարևելից կուսէ քարընկէ-ցիւ հեռի կայ մատուռն մի, և առ երի նորա 'ի հիւսիսոյ գերեզման փառաւոր այլ կիսաւերուլ. երեք չիրիմք 'ի վերայ միմեանց, և 'ի վերայ նորա դամբարան արկղաձև մարդաչափ երկայնութեամբ յղեալ խճով, և շրջապատ նորա պա-տեալ մէն մեծամեծ կարմիր քարամբք, կամարաձև սիւնազարդ խորշս ըստ չափու բարձրութեան արկեղն քանդակեալ շուրջանակի զերեսօք քարանցն. յորոց արևմտակողման միոյն եսեթ մնացեալ է, և 'ի վերայ նորա տառքս.

Եղբայրիկն կառոզ խաչիս

յորմէ երևի թէ 'ի վերայ արկեղն խաչ կայր կանգնեալ յառաջագոյն:

ՄԻԱՅՆԱՐԱՆ. — Մնդր քան զվերոգրեալ մատուռն յեզերս ձորոյն Ախուրենոյ է միայնարան ճգնաւորի՝ մէջ ընդ մէջ կրկին սենեկօք, փորեալ 'ի կակուղ վիմի ձորակողմանն, և 'ի ներքոյ տղմածեփ արարեալ զորմունսն. ճանապարհ նորա դժուարին և երկիւղալի. այլ յիշատակ ինչ չիք զմանէ:

## ՍՈՒՐԲ ԳԷՈՐԳ, ՀԱՆԳՍՏԱՐԱՆ ԹԱԳԱՒՈՐԱՑ

Տասն վայրկենիւ հեռի 'ի Հոռոմոսի վանաց արտոյն Յովհաննու, 'ի հիւսիսոյ նորա՝ 'ի ձորադաշտի՝ զոր 'ի վերն յիշեցաք, կառուցեալ կան կրկին գմբէթարդ եկեղեցիք մօտ առ իրեարս. գեղեցկութեամբն նման միմեանց, այլ մեծութեամբ մին առաւելու փոքր մի քան զմիւսն. անուն փոքուն անյայտ, մեծն Ս. Գէորգ կոչի. այլ երկոքին միանգամայն նախագրեալ մենաստանին անուամբն եւս կո-չին Հոռոմոսի, որպէս տեսանի յարձանագիրսն, զի խրթու մասն նորա համարին կամ թէ անապատ նորա. և այս սովորութիւն երևի և յայլ դաւառս Հայաստա-նեայց, աթոռանիստ մենաստանի ունել ընդ իւրև մօտ այլ վանս անապատ ա-նուամբ: Այդ որ յաւերակն Անւոյ տոտիսերան չըլի տեսանել չիրիմ մի սր-

քայական, անդ վրիպեալ 'ի յուսոյն՝ սաստ մխիթարի տեսլեամբ նորա. Նախն իբր և Հանգստարան թագաւորաց կոչեցաւ տեղիս։ Եկեղեցիքն անսիւն են և գըմբէթ նոցա ամբարձեալ 'ի վերայ չորից կողմանց կամարացն ըստ օրինակի տաճարին որոյն Յովհաննու զորմէ գրեցաք. որոց Թէպէտ և արտաքին տեսլեամբն և շրջակայ ձորամէջ ցամաքադաշտին զուարթանան սիրտք, սակայն տեսիլ ներ գերեզմանին Աշոտոյ մռայլեցուցանէ զամենայն. ուր հայրենասէր յայլ յայլմէ լինի 'ի կրկնատեսակ կրիցն յուզմանէ՝ ուրախութեան և ցաւոց, յորժամ առմնարիւք փառաւորատեանց շիրմին ձեռն 'ի ծնօտի եդեալ զպայծառ դարուց ոբեարն յուշ ածցէ, և զայժմու անշքութիւն ամենացանկալի յիշատակին այնորիկ, որ մի միայն է մնայդ վկայութեամբն նշխար արքայական 'ի բազմաթիւ մահարձանաց այլոց քաղաքաց հեթանոս և հաւատացեալ ժամանակաց, որ 'ի Բագարան, որ 'ի Կամախ և որ յԱս հնագոյնան։ Արդ դիրք շիրմին երկու մեղրաչափ հեռի կայ յեկեղեցւոյ սրբոյն Գէորգայ՝ առ անկեամբ արևելից հարաւոյ. տափարակ վիմաց երից եդեալ 'ի վերայ միմեանց ոչ հաւասարաչափից՝ յորմէ ստորինն գործեալ է շուրջանակի, և ապա շիրիմ ուղղացաձև եդեալ 'ի վերայ, և ըստ հարաւոյ կողին քանդակեալ

## ԱՇՈՏ ԹԱԳԱՒՈՐ

Ոչ ընդ գմբեթարդ կամարաւ հովանաւորեալ և ոչ դարձեալ սահմանաւորեալ վարկպարագի շրջապատաւ, այլ մերկ և բացօթեայ։ Առ մնարիւք արքայական շիրմիս է և այլ շիրիմ արկղաձև և փոքր, որ Թուի կենակցին նորին Թագաւորի։ Իսկ առ հիւսիսային կողիւք դոցա էր յառաջագոյն մատուռն գեղեցիկ, արդ ցհիմունս կործանեալ։ Յարևելից եկեղեցւոյն է և այլ մատուռն, և ըստ հիւսիսոյ նորին եկեղեցի փոքր յոյժ՝ 'ի հնգից կիսաբոլորակաց սահմանաւորեալ կողմանք նորա և կաթողիկէիւ. այլ առ հասարակ կործանեալ եկեղեցւոյս՝ հիմունքն ևեթ երևին։ Յարձանագիրս սրբոյն Գէորգայ յիշատակի շինողն Գագիկ արքայ, այն է առաջինն. իսկ երկրորդի եկեղեցւոյն՝ նոյն ինքն Գագիկ համարելի է, կամ մի 'ի Բագրատունի Թագաւորաց։ Առաջին արձանագիրս է յոհ մակաթաղական յարևելից կուսէ սրբոյն Գէորգայ արտաքուստ.

Ով հոչակաւոր դու եւ մեծանունդ 'ի վկայս սուրբ Գէորգիոս աւգնեա բարեխաւսութեամբ Գագկա շահնշահի շինողի զվկայարանս զայս քով անուանակոչութեամբ 'ի քոյդ յուսակնեալ բարեխաւսութիւն զի ընկալցի զողորմութիւն 'ի քէ Ա̃յ յանվախճանն արքայութեանն ընդ ամենայն արդարացեալսն ապաշխարանաւք հատանել լուսոյ փառաց որդւոյն Ա̃յ 'ի վերջնում գիշերին 'ի ձագել մեծի եւ անեղծ առաւաւտին այցելութիւն գտանել առաջի ահաւոր բեմին եւ անաչառ դատաւորին աղաչեմք.

ՈՀԸ ✠ շնորհիւն քի ես վաչէ որդի սարգսի եւ ամուսին իմ մամա խաթուն դուստր ապուսերհին շինեցաք զնշխարատունս 'ի վանքս հոռոմոսի յառաջնորդութեան տն բարսեղի որդւո ամիր երկաթայ եւ ավաք ընձա գրատա... զմեր գանձագին այգին 'ի յաւշական ժամու համար եւ նշխարի եւ այ.. տուաք եկեղեցոյս.. ամք եւ է քշոց արծաթի եւ փախարէն հատուցին մեզ միաբանքս յամէն ամի յամենայն եկեղեցիքս 'ի նոր կիւրակէին պատարագել զքն զայգին վաճակական հոգա եւ զինոյն իշխանութիւն ունի որ 'ի մեր պատարագի յաւուրն հասարակաց ներ ատնէ առդ կատարիչք գրիս ա̃հնին 'ի քէ իսկ եթե 'ի մերոց կամ յաւտար... կտակս մեր խափանէ մեղաց մերոց պարտական լիցի առաջի այ̃·

Յահեկէ դրանն.

ՉԻԳ ✠ շնորհիւն քի ես ուքանքարիմատին... եւ պապքան վարխատինս որդի սարգսի թոռն...յն եւ ամուսին իմ դապտա խաթունս սարգ...ին գնեցաք հոռոմի վանացս կէսն 'ի սահման ովլէ...նեն 'ի մեր հալալ ընչից եւ տվաք նվերք 'ի սբ. յովանէս... այգին 'ի թալին բոլոր աղատ յամենայն հարկէ եւ շինական մի.. ազ... է: սկի արծաթի եւ 'ի խանապարին ներքի դեհն ⁝ է ⁝ հուձրա եւ սպաս... տուցին մեզ զհոգոյն գալստեան ժամն յամենայն եկեղեց... անտառ պահէ ա̃հնի յայ̃·

Յաջմէ դրանն.

ՉԼԵ ✠ շնորհիւն քի նահա....ահ.... եւս յիշատակիս եղբաւրն գրիգոր ձոր միջաւրեա 'ի քս փոխեցա յիմ հա... աչվառ ու նասիձ շաւրջառ եւ տուն կա... փ..պո հողն եւ զծմակին հողն որ 'ի ն... զէն զխաձկինի եւ առնեմ հետայն որ սբ. ցո.. ախն ի.. սպասաւորքս փոխարէն հատուցին յամէն ամի ը պատարագ 'ի տաւնի սբ. գրիգորին յանուն գրիգորո առնել կատարիչք գրոյս աւրհնին 'ի քէ.. շինեցի զուլէն զանկակատու..

Ի շրջանակս պատուհանի գագաթան երկրորդ սենեկի Նշխարատանն.

Թվ ՉԻԶ ✠ կամաւն այ̃ ես տուխծս Հոգեւ... սարգսի որդիս եւ կենակից իմ օէդա շինեցաք ՚ի մեր հալալ արդեանց գնշխա.. տուներս ՚ի մեր ժամատան դուռս յիշատակ ծնողաց մերոց եւ ս... ա զոր ՚ի կա.. այ̃ կարողութեամբ վարպետ Փրերս կարնոյ քաղաքացի.

Երրորդում սենեկին ՚ի վերայ միոյ ՚ի կամարացն.

կամաւն այ̃ ես վարդան եւ ամուսին իմ աղբրացս միաբանեցաք մբ̃ ուխտիս եւ տվաք ։ Է̃ ։ կով ։ Է̃ ։ եզն եւ եաուն մեզ գերեզմանի տեղ զա եւ ՚ի տարին ։ Դ̃ ։ աւր պատարագ. Է̃ ։ ինձ ։ Է̃ ։ աղբրացին որչափ կենդանի ենք մեր ծնողացն արնեն յետև մահու մեզ.

Առընթեր խորանատեղւոյ Նորին սենեկի ՚ի Ներքոյ երից ՚ի խաչաքարեացն.

այս խաչերս բախտիարենց է.

ԻՋԵՎԱՆՆ. — Մի ՚ի հոյակապ շինուածոց մենաստանիս է և իջեւանն որ արտաքին որմոյն սահման հատանէ պարսպի վանացն յարևմտից կուսէ, անձուկ տարածութեամբ ձգեալ ՚ի հիւսիսոյ ՚ի հարաւ երրև ընդ ամենայն լայնութիւնն պարըսպէ ՚ի պարիսպ, և երկուստեք աշտարակաձև բոլորակք յորմունս՝ տեղիք վառարանաց կամ մորոց, և կամարաւ հաղորդեալ առ միմեանս կողմանքն։ Այլ այդ ամենայն խախտարեալ կիսակործան կայ արդ։ Եւ ասի թէ իջեւանդ հանգըստատուն էր կարաւանաց եկելոց յաշխարհէն Պարսից որ ՚ի Տաճկաստան անցանէին յայսկոյս Ախուրենոյ, ընդ կամուրջն՝ որ արդ կործանեալ է յետ գալըստեան Ռուսաց։

ՆՈՐՈԳՈՒԹԻՒՆ. — Հոռոմոսի մենաստանս անչքացեալ յոյժ յասպատակութենէ հինից, և ամենայն վայրքն աղտեղեալ և տղմալից՝ մաքրեալ յարդարեցաւ իբր 160 ամօք յառաջ ՚ի ձեռն Դանիէլի վարդապետի Տիգրանակերտեցւոյ, որոյ արձանագիր կայ ՚ի ճակատ դրան գոմոյ քայքայելոյ՝ որ ՚ի հարաւոյ կուսէ ժամատանն կամ. գաւթի եկեղեցւոյն.

՚Ի ՌՃԼԴ թուաբերութեանս հայոց նորոգեալ պայծառացաւ թագաւորաշէն մեծաքանչ հոռոմոսի վանքս ձեռամբ դանիէլ վարդապետի տիգրանակերտեցո եւ իշխանութեամբ տեղոյս խաթուն օղլի իշխանաց իշխան մուստաֆա աղայի. եւ զի ունէր ժամանակս ոչ սակաւ աւերի լցեալ աղ-

Ի ճակատ եկեղեցւոյն յարեւմտից.

✠ 'Ի ՌՈՋԺ[1] ղըմպիադի լինելութեան արարածոց ՄԿ ղըպիադի ոչ մարմնանալոյ եւ 'ի ՆՁԵ ԹՎԱՀ ես սմպատ շահանշահ որդի գագկա շահանշահի եւտու զիմ գեղս զաահոունիս 'ի մեր հանգստարանս Թագաւորաց 'ի տիեզերահռչակ վանսս հոռոմոսի վասն մեր մեղաց թողութեան եւ գրեցի 'ի մի գորգ յամենայն տարի Է քառասունք գագկա եւ 'ի վախճանիլն իմ Է ինձ եւ Է գագկա մինչ 'ի գալուստ տեառն վկայութեամբ տն պետրոսի հայոց կաթողիկոսի եւ յառաջնորդութեան մի ուխտիս հաւր սարգսի եւ գէորգա արդ եթէ յառաջնորդաց եւ 'ի սպասաւորաց մի եկեղեցոյս յայս յիշատակէս խափանէ մեղաց մերոց պարտական է առաջի քի արդ թէ ոք 'ի մեծաց կամ 'ի փոքունց 'ի մերոց կամ յաւտարաց հակառակ կա եւ յապշտակէ զգեղն կամարաւն եւ փնդկաւն զրկեալ լիցի նա 'ի քէ որպէս զուդա ածամատն որոշեցի 'ի մի երրորդութենէն եւ 'ի քի մի նշանէն կապեալ եղիցի կենաւք եւ մահուամբ եւ ամենայն մեղք եւ անէծք յադամա մինչ 'ի գալուստն քի 'ի նմանէ խնդրեսցի հաստատուն եթէ ած կամի.

Ի մէջ եկեղեցւոյն 'ի վերայ դրան աջակողմեան աւանդատանն. Թուական է գ.

ած է 'ի սմա. շնորհիւն այ ես տր անանիա շնորհիւն այ աշարունեաց եւ ճակատոց եւ արայբարտեան գաւառի եպիսկոպոս զմտաւ ածեալ հանապազ զբանս սրբոյն յոհաննու թէ մեծ շահ է յածային խորհուրդն յիշել զգնացեալսն կարգեցի ամ ըստ ամէ անխափան զզատկի մեռելոց աւուրս ամէն յամենայն եկեղեցիս յանուն առաջնորդաց հարցն սրբոց եկեղեցւոյս կատարել եւ զայլ քուրբան մինչեւ ցնոր կիւրակէն ամենայն հանգուցելոց որ են 'ի մի ուխտիս յանուն նոցա զի մեր միշտ զյիշատակս նոցա 'ի մտի ունելով եւ

1 4×1616 = 6464 ամ արարչութեան ըստ Անդրէասայ ժամանակագրութեան: — Նոյն և ՄԿ. ողիմպիադն, 4×260 = 1040 ամ մարդեղութեան Փրկչին. իսկ 'ի Հայոցն ՆՁԵ 485 յաւելեալ 551 = 1036 ամ Քրիստոսի, որ է ըստ հասարակ հաշուի, չորիւք պակաս քան զառաջինն:

կատարելով առաջի զենլոյն քն նոքա 'ի մեզ Հայեացն . . . ունելով բարեխաւսութեամբ աղաւթից իւրեանց որ զկեանս մեր խաղաղացուսցեն քաղաքավա . . . 'ի հաճոյսն այ Հայեցեալք յերս գնացից նոցա նմանողս լինել հաւատոց նոցա արդ եա շնորհելովն այ 'ի ժամանակս իմոյ առաջնորդութեանս կա . . ցես դուք որ զկնի մեր յաջորդէք զպաշտաւնս . . . (Յացեալն երիր մասամբ եղծեալ էր)

Ի վերայ դրան նորին եկեղեցւոյ .

✠ շնորհիւն այ ես մարտիրոս ետու զիմ կուղպակն 'ի սեներրահուշակ վանս հռոմոսի վասն հոգոյն գէորգի որդո իմո եւ արձանագրեցի 'ի տր գէորգ յամենայն ամի : Է : աւր ժամ գէորգա զվարդեւառին հինգշաբաթ ուրբաթ եւ շաբաթաթ եւ յետ փոխելոյն իմ աւ քս ինձ ատնեն արդ եթէ ոք զընծայեալս արտաքէ կամ զգրեալս ոչ առնէ որոշեսցի 'ի փառացն այ .

Ի վերայ երկրորդի եկեղեցւոյն 'ի հարաւոյ արտաքուստ .

յանուն այ 'ի ՆԼԵ թուականիս Հայոց ետու ես չուտաս զիմ հայրենի այգին զհոռոմղեան որ 'ի մրեան 'ի հոռոմոսի վանս 'ի հայր սողոմոն վասն իմ ծնողաց հոգեաց որ հակառակի նզովեալ լիցի յայ կենդանոյ եւ ես հայր սողոմոն պարտական իմ յիմ ժամանակս 'ի տարոջն ա լս : ունել չուտասին ծնողացն իսկ յետ իմո ելիցն խափանել մի ոք իշխեսցէ 'ի բանէն այ եւ մի ոք վայրապար համարեսցի զգրեալս զի բազում բարութիւնս շնորհէր եկեղեցո առատաձեռն .

Ի մէջ նորին եկեղեցւոյ 'ի հիւսիոյ .

յանուն այ 'ի ՆԿԲ թուականիս ես տր անանիա նուաստ եւ յետին 'ի վերակացուս եկեղեցոյ առաջնորդ գոլով սբ ուխտիս ոչ ըստ արժանաւորութեան իմոց կենացս կամ վարուց ինչ առաքինութեան այլ 'ի ներելն այ ապաւինելով աղաւթեցի մեծաւ ջանիւ զհարկ եւ զթասատակ առի եւ զքեղարագոմն իւր ամենայն գոյիւ 'ի սուրբ ուխտս վասն ապաւինի

**տեղի լինելոյ 'ի փախստեան ժամանակի եւ այլ բազում ինչ աւգտի փայտի եւ խոտի արդ դուք ո՛ր հարք եւ եղբարք որք յաջորդէք զկնի մեր յիշատակի արժանիս արարէք զմեզ ո՛ր պատարագաւն եւ այլ աղաւթից հանդիսիւ եւ որք յիշէք յիշեալ լիցիք 'ի մեծ աւուրն տուաջի քո եւ որք զկնի ձեր գան զձեզ յիշեցեն զոր եւ իմ անխափան եմ պահեալ զա-ւանջնոցն յիշատակն եւ տուող այդմ պարգեւի գագիկ էր աւրհնեալ յա̃յ եւ որդեակք իւր սմբատ եւ աբաս եւ աշոտ վկայութեամբ ամենայն հայոց ազատացս արդ յամենայնէ աւրհնեալ է ո՛ր երրորդութիւնն տուիչն ամենայն բարեաց ամէն ։**

ԽՕՇՈՒՆ. — Քառորդաւ հեռի 'ի Հոռոմոսի վանաց 'ի վերայ արահետ ճանապարհին են կրկին աշտարակք առընթեր միմեանց քառակուսի ձեւովք, և 'ի դագաթունս բոլորաձև գմբէթիւ աւարտեալ. 'ի մէջ նոցա սենեակք կան, և քարեղէն աստիճանք անցանելոյ 'ի ստորնոյն 'ի վերինն, և 'ի վերնոյն՝ յաշտարակէ յաշտարակ, կամարաձև քարակերտ անցիւք՝ որ արդ քայքայեալ է ։ Պէսպէս զրոյցք են և զսոցանէ, ոմանց ասելով եթէ զանգակատունք էին հրաւիրելոյ զաւագանին 'ի խորհուրդ. յայս կարծիս են որ զնշխարատուն վանացն գատատանորան տան. և այլոց՝ թէ զբօսարանք իցեն Թագաւորին, որ նստեալ 'ի վերին կողմն կայր 'ի զնին զինուորական գնդիցն որք մի առ մի անցանէին ընդ կամարաւն ։ Արձանագիր կայր յարևմուից կուսէ միոյն, այլ եղծեալ իսպառ ։ Խօշուշն զսա կոչեն, որ զզոյգ նշանակէ 'ի վրացի լեզու. և աստի Խօշավանք կոչեցեալ զՀոռոմոսի վանսն ։

## ՏԱՅԼԱՐ

Գիւղս այս կիսաժամու հեռի է 'ի Խօշավանից յեզր Ախուրենոյ, և է ցամաքակղզի. որոյ մի եզր երկայնեալ է 'ի գետն կոյս 'ի հիւսիսոյ, և պարիսպ ածեալ է յայդմ կողմանէ ընդ ամենայն լայնութիւն ցամաքին հանդերձ դրամբ, թէպէտ կիսափուլ կայ պարիսպն. իսկ միւս երեք կողմանքն պատեալ են 'ի գետոյն ։ Զանիմ ասել ո՞րպիսի ինչ տեղի էր 'ի հնումն, զի դիրք նորա՝ 'ի բնութենէն օժանդակեալ անմատչելի է թշնամեաց յերից կողմանց, սակս անհնարին ուղղահայեաց խորութեան գետեզերն, և պարսպին ամրութիւն շատ իսկ դիմարգել էր յարձակման թշնամեաց, որով իբրև յամրոցի մարթ էր ապահովանալ. այլ արդ անբնակ է 'ի մարդկանէ ։ Եկեղեցին հնաշէն միջակ մեծութեամբ ըստ սովորական ձևոյ. կաթողիկէիւ և կրկնայարկ աւանդատամբք առ խորանաւ երկուսեաք. իսկ 'ի վերայ դրանն որ է 'ի հարաւոյ՝ կայ քանդակ երկուց առիւծուց և 'ի միջի նոցա նապաստակ ։

## ՇԻՐԱԿԱՒԱՆ կամ ԵՐԱԶԳԱՒՈՐՍ (Գաշ Շօրէկէլ.)

Մինչչև էր ընդարձակեալ և պայծառացեալ Անի, նախագահ էր տեղիս Թագաւորացն Բագրատունեաց՝ զկնի Բագարանայ. այժմ 'ի գեղջկական նուաստութիւն իջեալ, քանեակ տաճկաբնակ տնակօք սահմանի։ Դիրքն 'ի թիկանց կայ բարձր և ընդարձակածաւալ բլուր, որ հասանէ մինչև ցթիքնիզ, իսկ զառաջեաւ մինչև ցգետն Ախուրեան դաշտավայր է։ Ի նախնի շինուածոցն յիշատակի առ մատենագիրս բաց յապարանիցն Սմբատայ՝ եկեղեցի մեծ և հոյակապ յանուն Ամենափրկչի։ Այդ եկեղեցի է անշուշտ որ ցարդ կանգուն կայ, մի 'ի

Մայր եկեղեցին Շիրակաւանայ.



փառահեղ եկեղեցեացն գաւառին Շիրակայ, մեծատարած և բարձր, անսիւն քառակամար, յորոյ վերայ ամբառնայր կաթողիկէն որ արդ կործանեալ է, մատրունս կրկին ունելով երկուստեք խորանին ըստ ձևոյ այլոց եկեղեցեաց։ Զշինութիւն եկեղեցւոյն թէպէտ և առաջնոյն Սմբատայ ընծայեն, յամին 897, սակայն չէք նորա յիշատակարան. զի յետ ժամանակաց աւերեալ՝ ընդ նմին կործանեալ է և նախկին արձանագիրն, և ապա վերստին նորոգեալ 'ի Գնելայ, որպէս պատմէ այլ արձանագիր։ Ոմանք յարդեացս աստ 'ի Շիրակաւան համարին լինել զերևելին 'ի մենաստանս Դպրեվանք ասացեալ, որոյ եկեղեցին է, ասեն, որ կայ ցարդ. քանզի մատենագիրք 'ի գաւառին Շիրակայ ասեն զայն. և յայնժամ երևելի տեղի սա էր 'ի նմին գաւառի։ Այլ ինձ ոչ թուի բաւական պատ-

ճառդ երաշխաւորել ստուգութեան իրացն. Նախ զի 'ի բանս մատենագրացդ չէր պարտ լոկ Շիրակայ անուամբ վարել, այլ կարեւոր էր յաւելուլ և զմի յանուանցս Երազգաւորս կամ Շիրակաւան, որպէս յայլ 'ի նոյնպիսի բանս տեսանեմք: Երկրորդ անգամ յարձանագիրսն չիք յիշատակ Դպրեվանից, թէպէտ և խանգարմունք բառից չպակասեն 'ի նոսին: Երրորդ որ մեծն է, Դպրեվանքդ անուն յեօթներորդ դարուն հետէ յիշատակեալ է առ պատմագիրս, իսկ Նախկին շինութիւն մեծի եկեղեցւոյս Շիրակաւանայ ոչ կանխէ քան զամն 897: Այլ դէպ է քննութիւն իրացս՝ հմտագունից թողեալ յօժանդակելոյ այլ և նորագիւտ պատմական մատենից, մեք աստ զարձանագիրս նորա ընթերցցուք որ արտաքոյ 'ի հարաւոյ կուսէ կան օրինակ զայս.

• • • ես գնել շինեցի զԹագաւորաբն • • • ցիս զոր 'ի մեղաց մերոց քակել աւերեց • • • ց իսկ ես տեսի զպանդխտութիւն տեղոյս եւ • • • հոգոյ պահուստ էր մեծաւ յուսով եստու • • • գործոյս միջնորդութեամբ տն բարսղի եպիսկոպոսի եւ յաւագութեանս անոյ սուլտանին եւ այս գործոյս պատճառ շիրակաւանեցիք եղեն քահանայք եւ տանուտէրք • • • արդ աւագնոք արեամբ Ջանք եղին եւ կատարեցին զսա •

'ի թ • ՈՀԷ շնորհիւն այ ես աթաբակ իւանէ եւ խոշակս վրաց եւ հայւոց թագոհի վասն յերկար կենդանութեան հարազատաց մերոց մանդատոր թախուցեւս շահնշահի եւ ամիր սպասալար աւագին թողաք զգեղիս շիրակա զապուռիշի եւ զջրսահին բաժն յորդեցէ յորդիք ազատ 'ի բաժէն արդ եթէ ոք յետ մեր 'ի մեծամեծաց կամ 'ի փոքունց զգիրս հրամանաց մերոց խափանել ջանա յանծային փառացն եւ յՃԸ հայրապետացն նզովեալ եղիցի 'ի մահ եւ 'ի կեանք իսկ հաստատողքն վարձս բարեաց ընդունիցին 'ի քէ այ մերո ամէն այս բանիս պատճառ գաւգէն եղեւ ցխատին որդին ձեռնաւորն •

խոցադեղ գրեց •

'ի թւ ՈՁ կամաւն այ ես աթաբակ իւանէ եւ խոշակս մերախշխող տանս վրաց եւ հաւոց եւ նույն թագոհի վասն խընդրելոյ 'ի քէ այ մերո զբաղում կենդանութիւն հարազատաց մերոց մանդատոր թախուցեւս շահնշահի եւ ամիր սպասալար

աւագ • • • ք զխաչած Ջաղջաց վերի շիրակ • • • էին գեղացիքս եւ զհարկ բերդին • • • զատեցաք յորդեցէ յորդէք 'ի չա • • • արդ եթէ 'ի մարդկանէ ոք խափանեսցէ 'ի բարձրելոյն ա̃յ նզովեալ եղիցի եւ վարձս չարիս յուդայի եւ զկայենի ընդու֊ ցին իսկ հաստատունք յածային զաւրացն աւրհնեալ եղիցին ամէն • Մկրտիչ գրիչ •

ԵԿԵՂԵՑԻՆ ԱՍՏՈՒԱԾԱԾՆԻ. — *Ցասն վայրկենիւ հեռի 'ի մայր եկեղեցւոյդ յարեւելս կոյս 'ի գագաթան բարձր բլրոյ և գեղեցկահայեաց բլրի՝ կայր գեղեցիկ եկեղեցի մի փոքր յանուն սուրբ Աստուածածնի. այլ կործանեալ կողմանց նորա՝ տեղի խորանին միայն կանգուն կայ: Արձանագիրս էր 'ի վերայ հիւսիսակողմանն որ միակտուր յերկիր գնկեալ է յերես 'ի վայր, և գիրն 'ի ներքոյ նորա այսպէս.*

• • • ամենակալին ա̃յ եւ հրամանաւ պարոնացն • • • էի եւ սաթլմշին : մեք շիրակվանիս տանուտէրքս խաչուտս եւ մը֊ խիթարիչս եւ քահանայքս եւ այլ մեծ եւ փ • • • ուք եկաք 'ի դուռն ս̃ր ա̃ծածնիս որ 'ի շատ ժամանակաց 'ի մթան էր • • • ծածկեալ 'ի սիրտս մեր խորհուրդ բարի սահմանեցաք 'ի դրան սորա • • • կրաւնաւորս եւ զայս արձան անջինջ հաստատե֊ ցաք որ ով յեկեղեցոյս դրանս կա եւ սպասաւորէ սմա թէ աբեղա եթէ միակեց թէ շատ տաւար ունենան եթէ քիչ թէ շատ վաստակ ցանեն եւ թէ քիչ ոչ շարիատ ոչ համա֊ րել է ոչ սուսունի ոչ եզին թաղար ոչ մեծ չար ոչ փոքր հետ եկեղեցոյս սպասաւորացս ոչ ում խաւսք չլինի թէ ովեք մին 'ի մերոց կամ յաւտարաց զմեր հաստատեալ կտակս խափանէ եւ յեկեղեցոյս սպասաւորացս հարկաւ իրք ուզէ թէ շատ եթէ քիչ : գ̃ : ս̃ր ժողովոցն ուրոշեալ լիցի մասն եւ բաժին զուդային զկայենին • • • իսորն զխաչահանուացն տացէ կատարիչքն աւրհնին յա̃յ •

ՄԱՏՈՒՌՆ Ի ՔԱՐԱՓԱՆ. — *Ի հիւսիսակողմն մայր եկեղեցւոյն 'ի ծայր քարափանց բարձր սարահարթին կայ մատուռն կիսափուլ հիմնեալ 'ի վերայ քարաժայռին, անգիր և անծանօթ: Հիւսիսային կողմն մատրանդ է դաշտավայրն մեծ և քա֊*

րուտ բաղում ուրեք, որ և ձգեալ տարածի մինչև յամրոցն Թիքնիզայ, զորմէ տեսցի ստորև։

ՆԻՐԻՄՔ. — Ի գերեզմանոցին Շիրակաւանայ գտանին և հին չիրիմք, ոմանք որորոցաձև, այլք սովորական տարազու, և մի ևս բոլորակ 'ի ձև երկանաքարի աղացին ստուարութեամբ նման քարի ձիթահանաց։ Ի մէջ չիրմացն այնոցիկ խաչաքար մի կայ արձանագրաւս.

**Սբ նշան Ած բանին և ծրարող քառեց գանձին յահեղ աւուրն աներևկին լեր բարեխաւս մենկանս եւ գեղխս եւ մամուզխս 'ի թու ՉԻԱ ամէն յիշեցէք 'ի քս·**

և գերեզման առաջի խաչաքարին, և գիր նորա այս.

**զվախճանեալս 'ի տիս տղաութեան մենիկ աղախին քն եւ ա · · · եսին քահանաի յիշեցէք 'ի քս·**

## ԱՐԱԼԸԻ

Ի գիւղս այս ամրոց մի կայ քառակուսի, կողմանցն միայն կանգուն գոլով ցարգ, այլ 'ի ներքս չիք ինչ, և է 'ի դաշտավայրի։ Ի խանգարեալ արձանագրին որիշ վերծանի անուն Հազարբէկ, և թուական զայս ձև օրինակի $\overset{\text{Ի}}{\underset{\text{Թ}}{\text{ՇԺԵ}}}$։ Արընթեր դրանն կայ վէմ մի մեծ և 'ի վերայ թուական ՈՀԷ։

## ԹԻՔՆԻԶ

Ժամաւ հեռի 'ի Շիրակաւանայ։ Թէպէտ և չունիցի գիւղս 'ի նշխարաց նախնեացն հնութեանց, այլ քառորդաւ հեռի 'ի նմանէ ակներև ցուցանէ ամենեցուն բերդ մի հոյակապ առ եզերբ բարձր դաշտավայր բլրին որ տարածեալ ձգի մինչև ցՇիրակաւան որպէս յիշեցաք 'ի վեր անդր։ Նիստ ամրոցիս գեղեցկադիր յոյժ և բարձրահայեաց՝ դիտէ զամենայն արևելակողմն դաշտին Շիրակայ, և մասամբ իմն զաջ և զահեակ այնր կողման։ Քառակուսի ձևով ամբարձեալ բերդին ահեղ իմն տեսիլ ցուցանէ, ութ աշտարակօք 'ի չափ բարձրութեան ահագին պարսպացն, չորիցն յանկիւնսն կալով և չորից առ 'ի կողաց իւրաքանչիւր։ Ներքին կողմն բերդին յերիս կարգս բաժանեալ, կամարակապք են իւրաքանչիւր, և կամարք այլ 'ի վերայ նոցա, զի կրկնայարկ է շինուածն. սակայն վերնոյն առ հասարակ կործանեալ, կիսաւեր կայ և ստորինն՝ ոմանկամարացն ևեթ մնալով։ Պարիսպք բերդիս ուրեք ուրեք քայքայեալ, և կոփածոյ քարանց երեսաց նոցին տարեալ 'ի բաց. յորս կայր երբեմն և հայ արձանագիր վկայեալ յականատեսից, այլ արդ ոչ ևս։ Շուրջ զբերդաւն այլ պարիսպ ածեալ է խոնարհագոյն։

## ԱՐԳԻՆԱ

Աւանացեալն առ Բագրատունեօք Արգինա և պայծառ եկեղեցեօք պերճացեալ, արդ մի 'ի համարակ գիւղից է տաճկաբնակ սակաւաթիւ տամբք, 'ի մեծի գաւառավայրի ժամու հեռի 'ի Թիքնիզայ, բլրոց բարձանց կալով 'ի թիկանց նորա յարևմտից։ Նախնի մատենագրացն յիշատակ զշինուածոց Արգինայի սակաւք են, հայրապետանոցն և եկեղեցիք չորս՝ զոր Խաչկայ կաթողիկոսի ասէ շինեալ Ասողիկ. զեկեղեցեացն բազում գովասանութեամբ խօսի, հրաշատեսիկս և չքնաղագեղս ասելով յօրինուածովք։ Ջերիցն 'ի դոցանէ չունիմ ինչ ասել, որոց կմախք հազիւ տեսանին զերեսօք գետնոյ. միումն ևեթ կոփածոյ քարանցն իսպառ քանդեալ իբրև մորթեզերծ եղելոյ՝ անյայտացեալ ձևոյն արձանացեալ կայ։ Սակայն մեծն այն 'ի չորիցն՝ կաթողիկէն անուանեալ, զոր շինեալ ասէ նոյն մատենագիր վիմարդեան կոփածոյիւք համահեղոյս արձանօք գմբէթարդ խորան երկնանման, հիւսիսային որմոյն ևեթ հանդերձ կիսամասամբն արևմտեան կողմանն կանգուն կացեալ, բաւական լինի զարթուցանել զհաճոյական ախորժակ հնասիրին ընդ վսեմութիւն ձևոյն, և անմահ կարդալ զձեռն ճարտարապետին իւրոյ Տրդատայ, որ նախ հիմն արկ սմին, և յետ այնորիկ կաթողիկէին Անւոյ։ Տարածութեամբ շատ փոքր է սա քան զնա, այլ հոյակապութեամբն ոչ այնպէս։ Արձանագրին որ 'ի վերայ արևմտեան դրանն իսպառ խանգարեալ, թուական մի ևեթ նշմարի 'ի նմա ՆԿԱ։ Կայր և այլ տող մի արձանագիր յորմն անդ հիւսիսոյ 'ի ներքին կողմն, այլ առ տեղւոյն բարձրութեան անվերծանելի մնաց։ Կաթողիկոսունք երկու Անանիա և Խաչիկ աստանօր թաղեցան, որոց ցանկալի էր արդեօք շիրմացն անարատ կալ ցայսօր, այլ ոչ գիտեմ որ կատարած եհաս նոցա։ Ի կողմն արևմտից 'ի մէջ ձորոյն երևէին և այլ ևս քարակոյտք աւերակաց. և առ ափամբ սեպացեալ բլրոցն աւերակ ամրոցի։ Իսկ հայրապետանոցին և ոչ հետք նշմարին։

## ՄԷՎՐԷԿ

Գիւղ փոքր և պարսկաբնակ. յորում քարաժայռք մեծամեծք կան և փապարեալք և ձիթահանս գործեալ 'ի նոսա։ Կայ եկեղեցի մի չափաւոր մեծութեամբ 'ի բլրակի, այլ կիսաւեր. և պտորև նորա մատուռն մի փոքրիկ և 'ի վերայ նորա արձանագիրս։

Շնորհիւն Ք̄ի ես Յոհաննէս երէց որդի Հայրապետ քեհին եւ կենակից իմ Բախտաղէկ շինեցաք զեկեղեցիս 'ի վերա ս̄բ ա̄ծածնին աղաչեմ յիշեսջէք 'ի տ̄ր յ̄ն.

Տան վայրկենիւ հեռի 'ի գեղջէն յայնկոյս գետակին է գեղեցկաշէն եկեղեցի մի գմբեթաւոր անկործան և անարատ ամենայն մասամբքն ներքոյ և արտաքոյ, և թողեալ ամայի. երկու աւանդատունք են առ խորանաւն, և այլ ևս երկու հանդէպ նոցա երկուստեք դրանն որ յարևմտից։ Արձանագիրն 'ի վերայ միոյ 'ի դրանց յետին աւանդատանցդ այսքան վերծանի.

**ՈՀԷ շնորհիւն քի ես տալիթա ձեռն ետու մատուռս ըսպասաւորք • • •**

## ԱՂՈՒՋՈՒՄ ԵՒ ԵԸԼԱՆԼԸ

Ի կարգս հնութեանց և զերկոսին գիւղսդ արժան համարիմ յիշել. ոչ թէ վասնզի չինուածովք ինչ հաւասարել այլոց, այլ զի ընդ մէջ դոցա իբր կիսաժամու տարածութեամբ բազում շիրիմք կան կիսաթաղ 'ի գետնի և անգիր։ Զհամարձակիմ կոչել զայս տեղի Շիրիմք կամ Շիրմաց գիւղ։

## ՈՒՂՈՒՋԼԻ

Հոյակապ է և եկեղեցի գեղջս և գմբէթարդ. ձև նորա արտաքուստ ըստ օրինակի քառակողմեան ձևոյ այլոց եկեղեցեաց. այլ 'ի ներքոյ թեք են նորա աղեղնաձևք. և մատուռնքն առ խորանաւ կրկնայարկք. և արձանագիրք երկու արտաքուստ 'ի հարաւոյ.

**Ես. Հասան[1] որդի Խականա գնեթունո յաւեժարար ըղձացեալ փափաքմամբ յաւրինել տեղի ապաւինի 'ի հանդերձեալսն վասն յաւգնահամբաւր ու բազմամեղ անձին իմո յուժարութեամբ սրտի իմոյ խորհեցա շինել զեկեղեցիս զայս նախաւրինակ վերէն Եմի ողորմութեան.**

**Ես աշոտ իշխանաց իշխան որդի գէոր • • առն քաջի եւ պատերազմողի հաւատարիմ եղել տանս հայոց տուի բարձ եւ պտուղ 'ի աշոտոյ շահանշահէ եւ 'ի յորդոց իւրոց սմբատա եւ գագկա եւ յամենայն թագաւորաց տեսի զմայր քաղաքիս եւ • • արի ոչ զպպականուամն նորոգեցի ՆԾ ամի պարթեւեւիս 'ի դալ մեւս ամի եհաս ինձ հրաւէր 'ի վերին արքունի կա մեղս ինձ խաչ.**

1 Հասան յիշատակի 'ի պատմութեան յելս Թ դարու։

## ՓԷՐԿԻՏ ՄԵԾ

Ի ծայր գաւառին Շիրակայ 'ի հիւսիսոյ կողմանէ կայ գիւղս այս. զի առ նովաւ անցեալ կարուց գետոյն բաժանէ զՇիրակ 'ի Ջարիշատայ: Շինուած մի կայ 'ի գեղջս առ 'ի նախնեաց հիմնեալ. զոր ռամիկն եկեղեցի կոչէ, այլ ես ամրոց. երկայնութիւն նորա 25 մետր և 21 լայնութիւն: վեց բոլորշի աշտարակք են նորա կամարափակ 'ի վերուստ և ցածունք. չորք 'ի չորեսին անկիւնս, և այլ ևս երկու 'ի կարգս կողմնակի որմոցն: Երկու առաջինքն որ յանկիւնս երկուստեք դրանն կան՝ կարի այլատարազ են ձևովք. զի 'ի կիսոյ կիսաբոլորակին այլ որմ ածեալ է նոյնպէս աղեղնաձև նովին բարձրութեամբ 'ի մէջ նոցին: Որմունքն մեծաւ մասամբ հոսեալ են 'ի վերայ. և 'ի վերայ որմոյն որ առ դրամբն՝ երևի խաչ քանդակեալ 'ի բարձու:

## ՋԱՐԻՇԱՏ

Գլխաւոր տեղի համանուն վիճակի ըստ արդի բաժանման, ընդ որով են գիւղօրէք քառասնիւ չափ, և նմին չիք այլ առաւելութիւն քան զմի 'ի գիւղօրէից անտի. և է արդ տաճկաբնակ: Քառակուսի ամրոց մի կայ 'ի նմա ամայի 50 քայլ, երկայնութիւն նորա. այլ 'ի հնութեանց չունի ինչ արժանալուր:

---

## ԱՐԵՒՄՏԱԿՈՂՄ ԵՒ ՀԱՐԱՒԱԿՈՂՄՆ ԱՆԻՈՅ ԵՒ ՈՐ ՅԱՐԵՒՄՏԻՑ ՀԱՐԱՒՈՅ ՆՈՐԻՆ

Հանգստարան Կիրակոսի վարդապետի.

Քառորդաւ հեռի 'ի քաղաքէն Անւոյ յարևմտից կուսէ կայ գիւղ մի տաճկաբնակ Անի կոչեցեալ և նա. և ընդ մէջ նորա և քաղաքին մատուռն մի կիսաւեր այլատարազ ձևով: Ի գետնոյ 'ի վեր ամբարձեալ կողմանց երկոցունց 'ի հիւսիսոյ և 'ի հարաւոյ, և 'ի կէս բարձրութեանն կամար ածեալ իբրև զկամուրջ, և 'ի վերայ կամարին հիմնեալ է մատուռն, այնպէս զի ուղղակի անարգել անցանեն ընդ կամարաւն. որոյ ըստ հարաւոյ կողին կայ արձանագիրս.

այս է հանգիստ կիրակոս վարդապետին որ նահատակեցաւ յանօրինաց յիշեցէք 'ի ք͞ս թվ: ՋՂԷ: գրեց...

### Հանգստարան Սարգսի Նահատակի.

Քարընկէց մի բացակայ 'ի նմանէ 'ի նոյն կողմն կայ հաստուած որմոյ, կամ թէ աւել պատուանդան խաչի որմագործ մեծ. 'ի միջին տեղւոյն խաչ մեծ և երկուստեք նորա խաչաքարք գեղեցկաքանդակք համայն 'ի կարմիր քարանց. և ստորև նոցա արձանագիրս.

**զՔէ եւ զանարատ զխաչս ամենընգալ որ բեւեռեալ եւ 'ի սմա անմահ մեռեալ տէրն մեր քս որ մահուամբն իւրով անմահացոյց զմահացեալքս ։ արդ ես կազերս որդի մեւոնի կանգնեցի զսա կարողութեամբ բեռին սորա յիշատակ ինձ եւ ծնողաց իմոց եւս ապ.եւել արենաթա . . . ա սարգսի որ յանաւրէն թուրքայ նահատակ եղեւ յանմարդաձայն աեղիս զոր ընդ ոտիւք դիզաշխարհաւն դրեալ զարեգակնանման եղբայրն իմ զոր գտի 'ի խորագու հորի քարաթաղ արարածի մազորանո արենաթաթախ մարմնոյն ոչ կարէի ծանեւ զնա բազում աշխատութեամբ բերել եղի յայսմ տեղի աղաչեմ յիշել ։**

### ԲԱԳՆԱՅՐ, ուխտ Աստուածածնի, այժմ Ղօզլիճա.

Հրեշտակաբնակ և փափագատենչ մենաստանն Բագնայր, որպէս կոչեն զնա Սամուէլ և Կիրակոս, ժամու հեռի է յԱնւոյ յարեւմտից կուսէ առ ստորոտով զուարճագեղ բարձանց, զառաջեաւ ունելով զդաշտավայրն փոքր մի առ 'ի չեղ մինչև յԱնի։ Թէպէտ այժմ տաճկաբնակ է գիւղն և մենաստանն անհետացեալ, սակայն կանգուն կայ տակաւին եկեղեցին մեծ և հոյակապ, զարմանաշէն և հիացքանչ, որ աշեղութեամբ որմոցն և կամարաձիգ յարկացն և սեանց ներքոյ և արտաքոյ յափշտակէ զմիտս տեսողացն։ Մատենագիրքդ թէպէտ և խնայեցին ճոխագոյն նկարագրել զպայծառութենէ վանական կարգացն, որպէս ինչ գուշակի լեալ 'ի հոյակապ շինուածոյն, սակայն և դուզնաքեայ բանք նոցա զժողովեալ արանցն աստուածայնոց՝ լիով իմացուցանեն թէ քանի մեծահռչակ էր մենաստանն ամենայն մասամբք առ պայծառ ժամանակօք Բագրատունեաց։ Առ այսոքիւք ոչ սակաւ զարմանս բերէ մեծահաւատ բարեպաշտութիւն Սմբատայ մագիստրոսի որ առատաձեռն գանձուք անխնայ օժանդակեաց 'ի ծախսն։ Անցին 'ի վերայ ութհարիւր և աւելի ամք և տակաւին տեւէ շինուածդ աճագին՝ ընդդէմ ազգի ազգի ձիւնաբերաց. և ընդ դարս յոլովս անլուր եղեալ մակադրական յորջորջմանն 'ի բերանոյ հասարակաց, յանկիւնս ուրեք մատենից աեթ նշանակեալ գոլով, այս

Բագնայր որ է Ղօզլիճա .



օր 'ի յայտ եկն որ այն Բագնայր է և ուր հրաշակերտ արարքն Մագիստրոսին Սմբատայ ։ Դադարեալ է իսպառ սրբազանիցդ վայր յաստուածային պաշտամանց. աւա՛ղ, զի և յիսմայելական ձեռաց խորեալ ուրեք յանարատութենէ կամարին, ներքնագաւիթն մասամբ ամբարանոց եղեալ է յարդի և խոտոյ, և արտաքութեան տաճարն՝ 'ի գոմս անդէոց ։ Ցերկուս մասունս բաժանեալ եկեղեցւոյս 'ի ներքնագաւիթ կամ 'ի ժամատուն և 'ի տաճար, զպատկեր Հոռոմոսի վանացն յանգիման առնէ, գուցէ և զնոյն ձեռն ճարտարապետին. զի ներքնագաւիթ

սորա նովին ձեւով և նոյնաթիւ սեանց կարգաք է յօրինեալ, նոյնաձև կամարք և գօտեգք որ առ միմեանս կցեն զնոսին, նոյնօրինակ և յարկ իւրաքանչիւր միջոցաց սեանցն, բաց 'ի միջնավայրէն՝ յորոյ վերայ չիք զանգակատուն որպէս զնորայն։ Միջնադուռնն որ 'ի տաճարն բանայ, շուրջանակի քանդակեալ է ազգի ազգի դրուագօք. Նոյնպէս և տաճարն զնոյն ձև տաճարին յանդիման ցուցանէ քառակողմեան կամարօքն և վսեմ կաթողիկէիւն 'ի վերայ։ Սակայն մեծութեանն մասամբ նա առաւելու քան զսա երկու մետր և կէս։ Երկու դրունք են եկեղեցւոյս, մի ներքնագաւթին յարևմտից կուսէ, և միւս տաճարին 'ի հարաւոյ. և առաջի դրանդ հարաւայնոյ ընդ երկայնութիւն տաճարին երկկարգեան սեամբք գաւիթ կայ ցածուն կամարօք յարկեալ։ Ի նոյն կողաց եկեղեցւոյն 'ի գլուխ սինազարդ գաւթիդ ուր սահմանի արևելեան որմն տաճարին երկու մատրունք կան առընթեր միմեանց 'ի մի կարգ հանդերձ կաթողիկէիւքն։ Ցառաջնումն 'ի նոցանէ որ անընդմիջաբար առ եկեղեցեաւն է, կայ չիրիմ մի անգիր, զոր աւանդեն սրբոյ Լուսաւորչի լեալ, և պատուի ևս 'ի Տաճկաց գեղջն, որոց տուն բնակութեան արարեալ է զմատուռնն. և է չիրիմն ոչ 'ի ներքս, այլ արտաքոյ առ որմով մատրանն և խղաձև գերանօք յարկեալ է տեղին։ Սակայն եթէ 'ի նշխարաց սրբոյն Գրիգորի ամփոփեալ իցէ 'ի Բագնայրս, յերկրորդում մատրանն լինել հաւանական ինձ երևի. զի ըստ վկայելոյ արձանագրի նորա, որպէս տեսցի ստորև 'ի կարգին, երկրորդն է հիմնեալ յանուն սրբոյն Գրիգորի։ Բազում են արձանագիրք մեծի եկեղեցւոյս 'ի ներքնագաւթին և արտաքոյ. այլ ցաւէ այն զի կարևորն 'ի նոսա ժամանակ շինութեան և շինողին՝ անհետացեալ է, մէպէտ և երաշխաւորեալ է մեզ 'ի Սամուէլէ 'ի ՆՃԹ թուականին, արտաքուստ զհարաւային որմով ներքնագաւթին այլ ևս շատ կային գրութիւնք որպէս և յարևմտակողմն, այլ զբազումս 'ի մեծամեծ քարանցն 'ի բաց քեցեալ 'ի տեղեացդ՝ յայլ պէտս վարեալ են. զայդ պատմեն գեղջկունքն բարբարոսք. այլ որ կանն ընթերցցուք մի ըստ միոջէ, նախ զարտաքինսն, անցցուք ապա 'ի ներքս։ Առաջինն է յարևելից կուսէ եկեղեցւոյն 'ի բարձու.

**✠ 'Ի ՆՂԱ Թւ 'ի հայրապետութեան տէր պետրոսի հայոց կաթողիկոսի եւ 'ի թագաւորութեանն գագկա շահանշահի որդւո աշոտոյ կամ եղեւ իմ գրիգորո ծաղկանս եւ իմ որդեացս որ տուի զիմ գանձագին կուղպականեին որ վասըն փրընդկին ընդդէմ է 'ի բգնայրին վանս 'ի տր̃ ած̃ածինն 'ի ձեռն առաջնորդի հաւր ստեփաննոսի վասն կյանքին արեւշատութեան եւ իւր որդեացն եւ իմ գրիգորո մեղաց թողութեան եւ ոգւո փրկութե̃ եւ որդեաց իմոց եւ հայր ստեփաննոս եւ միաբան եղբարքս կամաւ յանձն առին որ ամենայն ամի ըղպաւղոսի եւ զպետրոսի տաւնին աւուրն պատարագն յամէն**

եկեղեցիսդ իմ եղբարքն մուկաթլի արապցեն եւ յետ վախ-
ճանի իմո ինձ մատուսցեն արդ հայր որ լինի եւ զիմ ժամս
խափանէ առաջի այ իմ մեղացս պարտական լիցի արդ եթէ
ոք 'ի մեծաց կամ 'ի փոքունց յիմոց կամ յաւտարաց եւ զայս
հողս ... ուխտէս յապշտ ... պատճառաւ նզովեալ լիցի.

Յահեկէ Նորին.

✠ ողորմութեամբ այ 'ի հայրապետութեան տն պետրո-
սի եւ 'ի թագաւորութեան գագկա շահնշահի որդւոյ աշո-
տոյ ... եսու զիմ...

Ի վերայ հարաւային դրանն.

ՈՀՐ.(կամ ՈՀԲ) ... ութ .. ու .. աթուն ա ... բարեպաշտ
իշխանին խաւսաւժին հայրենիքն 'ի մոգուաց որ է 'ի հնցէ ...
զատեալ եւ բաժանեալ սահմանաւքն եւ այլ ... հրշտակա-
բնակ սբ ուխտս 'ի բազնայրս յաղագս յիշատա .. ց մերոց
եւ անդրանկին մերո սասնային որ կիսաւրեա փոխեց .. եւ
սուգ մեծ եթող ծնողաց իւրոց յորոյ յիշատակ շինեցի
'ի վերայ տապանատանս սպասաւորք սբ ածածնիս ածաւէր
հայր սիմէոն եւ այլ սբ եղբարքս յանձն առին յամէն ամի ։
Ծ ։ աւր պատարագել զքս ։ Ի ։ աւր խաթունին ։ Ժ ։ խաւ-
ռասին ։ Ժ ։ սասնային անխափան մինչեւ 'ի ծագումն որդոյն
այ եթէ.'ի մեծաց կամ 'ի փոքունց զմեր ընձայքս հանէ 'ի սբ
ուխտէս .. կամ առաջնորդ զմեր ժամն խափանէ մեղաց մերոց
պարտական լիցի առաջի այ կատարիչք գրիս աւրհնեին յայ.

Յահեկէ դրանն.

ՈԾԲ 'ի յամս ածապատիւ տն սարգսի որդոյ աղբրատին
ես խաչերեսս որդի աբբահամու լաւսեցի եսու զիմ գան-
ձագին եւթն կուղպակն 'ի շարիվէցի վերեւն եւ մին 'ի ներքն ..
զգեթին ընդդէմ եւ երեք տուն 'ի ներքսեւն 'ի սբ ածածինս
'ի ձեռն հաւր սիմէոնի եւ սբ եղբայրութեանս եւ զայգին
որ մարմետ եւ սոքա փոխարէն հաստուցին ինձ ։ Ի ։ աւր ժամ ։

ը ։ ինձ ։ ե ։ աբբահամու ։ գ ։ դինարկանն ։ բ ։ հրամանուշին ։ բ ։ արքայութեան ու հաս ․ Ես մամ խաթունս դուստր խաչ-երեոլին ետու զիմ կուղպակն որ 'ի փողոցկոներն է 'ի բաղրդ-նոց ․ ․ ․ ․ ․ որ հաստատ պահեն աւրհնին յ̃յ ․ ․ ․ ․ ․ անէծք գյուդայլին եւ զկայենին ․ ․ ․

Ցաչմէ դրանն .

ՈՃԹ 'ի յամս ա̃ծարեալ եւ մեծարգո տ̃ն սարգսի վերա-դիտողի մայրաքաղաքին անո եւ 'ի պետական իշխանութեան շահնշահ. զաքարիաի ես պարսիմո որդի հասանա ուխս մե-ծանուն գեաղջն աւշականո միաբանեցա ս̃բ ուխտիս եւ ե-տու զիմ հայրենի այգին զվարդենցնոցն 'ի ս̃բ յա̃ծածինս 'ի ձեռն բարխէր եւ ս̃բ եղբայրութեան յիշատակ հոգո իմո եւ սոցա փոխարէն հաստուցին ինձ զաւր յարութեան ղազարու բոլոր զեկեղեցիքս պատարագել զք̃ս ։ ե ։ պարսիմոի ։ ե ։ խուրթին ։ դ ։ սեդաին ոք հաստատուն պահեն աւրհնին յ̃յ եւ որք խափանեն նզովին 'ի ք̃է ․ Ես մրուան միաբանեցա սըր-բոցս հետ իմ պարոնին եւ ետուն ինձ աւր մին պատարագ անխափան ․ Ես սերոբս որդի ռատին երեւանեցի ետու զիմ այգին որ 'ի ձորդռանն է 'ի ս̃բ ուխտս եւ պարոնին սպաս-ւորք սորա 'ի տարին ։ դ ։ աւր պատարագել զք̃ս յանուն սերոբեն ․

Ի ներքնագաւթին կամ 'ի ժամատանն՝ յորմունս շուրջանակի և ընդ կամարա-գօտեօք .

ՈԾ ես մխիթար որդի դըւալին ետու 'ի ս̃բ ուխտս բագ-նայր զիմ աշխատո ․ ․ ․ 'ի ս̃բ առաքելոց զուկակին եւ այլ եղ-բարքս փոխարէն հաստուցին 'ի տարին ͞ե աւր պատարագ ինձ մխիթարա եւ մին աւր ամուս ․ ․ ․ կատարիչք գրոյս աւրհ-նեացին յ̃յ ․

Ես խաչոտս ծառա ք̃ի ետու 'ի ս̃բ յա̃ծածինս զիմ զգան-ձագին զտունն մաւտ 'ի յապուղամրենց ս̃բ գրիգոր եւ սկի

արծաթի եւ սոքա փոխարէն հատուցին ինձ Ե աւր պատարագ ամենայն ամի անխափան կատարիչք Գ ...... Հոգեւոր. տն գրիգորի եւ յաւաջնորդութեան՝ Հաւր սիմէոնի ես պաւղոս երէց .. ծաղկոցն որ յաշնակ հնծանոցն գեղին գեհն եւ եղբարքս ետուն 'ի տարին Ժ աւր ... Դ իմ հաւրն ղազարա Ե ամուսնոյ իմոյ տիրանցին կատարիչքն ...

ՈԾԵ կամաւ բարերարին այ ես գիշունկս որդի գրիգորո միաբանեցա տր ուխտիս եւ ընծաեցի ։ Ե ։ արտ 'ի տր ածածինս եւ սոքա հայր սիմէոն վարդապետս եւ այլ միաբանքս փոխարէն հատուցին ինձ 'ի տարին Դ աւր պատարագ ։ Ա ։ ինձ ։ Ա ։ իմ ծնողացն ։ Ա ։ իմ եղբարցն որ հաստատուն պահեն աւրհնին յայ ։ Ա ։ արտ 'ի տափիս ։ Ա ։ 'ի մաննեխուտին .

կամաւն այ ես սիմէոն երէց եւ որդի իմ Թաթուլ միաբանեցաք բագնայր տր ածածնիս եւ տվաք ...

ՈԿ 'ի յամս ածապատիւ տն սարգսի որդոյ ապիրատին եւ 'ի յաւաջնորդութեան ... (կրով ծեփեալ) ես արտաշիր աւշականոյ ռայիս ետու զիմ գանձագին այգին որ աշոտոնց կոչի 'ի տր ածածինս եւ պարտին սպասաւորք սորա 'ի տարին ։ Ը ։ աւր պատարագ ։ Դ ։ արտաշիրին ։ Ե ։ աբասա ։ Ե ։ սաթին ։ Ա ։ գնտուտին.

կամաւ բարերարին այ ես վարդատուրծ եւ աշակ եւ խորէն միաբանեցաք 'ի տր ուխտս բագնայրս 'ի ձեռն հաւր սիմէոնի տվաք զվարդենացնորքն 'ի տր ածածինս եւ խոստացան սպասաւորք սորա 'ի տարին . ԺԵ . աւր պատարագ . Դ . վարդատուրծին . Դ ։ աշակա . Դ . խորէնա որ խափանեն մեր մեղացս պարտական է աւաջի այ .

ես բախտիարեան միաբանեցա տր ածածնիս եւ ետու զիմ

գանձագին զայգին 'ի բագրանի որ կոչի տափկենց եւ սպաս-ւորքս հատուցին ինձ ․ դ ․ աւր պատարագ անխափան ․ ․ ․ ․ Տէրտէրս գնեցի զշահկանն զհողն որ յազգկին եւ ետու 'ի Նոր ուխտս յիշատակ հոգո իմո 'ի յաւիտենք զսեփական այգին որ 'ի բաղում ժամանակաց աւտարացեալ էր վերստին հան-դերձ միաբանաւքս վերստին 'ի Նոր ուխտս

Ես սարգիս ետու զիմ այգին որ 'ի մարմետ 'ի վերա երաս-խա 'ի Նոր ուխտս յանուն իմ պատարագի քհն ։ դ ։ աւր ։

Ես սարկաւագս ետու զիմ ձիթահնաց կէս ակն որ 'ի կա-րուց դրանն յանուն իմ պատարագի քհն ։ դ ։ աւր ․

Ես գոհարիկս ետու զիմ աներն 'ի Նոր Տէրտէրնս յանուն իմ պտրգի քհն ։ աւրն ․

Ես թորոսանց մխիթար ետու զիմ տունն եւ ետուն ինձ ։ ե ։ աւր պատարագ ․

Ես յոհաննէս թագէոսի որդիս ետու զիմ ջաղացն որ 'ի գլխձորին զձախ աղացն հատուցին ինձ պատարագ ։ ե ։

Ես յոհաննէս որդի առաքելին ետու զիմ կէս ակն ջաղացն 'ի գլխձորին որ կոչի հատուրհնիկ յանուն իմ պատարագի քհն ։ ե ։

Ես առիւծս ետու զիմ տուն 'ի Նոր ուխտս որ ընդդէմ քա-հանենց եկեղեցոյն պատարագի ինձ քհն աւր ։ ա ։

Ես վարդաշահս աշնակեցի ետու զիմ հայրենի այգին 'ի Նոր ուխտս հատուց ինձ ։ է ։ պատարագ ․

Ես աւետիս եւ հազարդեղս տուաք զուղտանատին կէսն 'ի Նոր ուխտս առնեն ժամ 'ի տարին ։ ե ։ աւր ։ ա ։ աւետիսին ։ ա ։ հազարդեղին այգին 'ի թամիր ․

Ես պետրոս որդի պաւղոսայ ետու զիմ հայրենի այգին 'ի յաւշակումն մաւտ 'ի վարդեանց 'ի սբ. ածածինս 'ի յաւաջ-նորդութեան հայր ... հատուցին 'ի տարին : Ղ : աւր պատա-րագ : Ա : ինձ : Ա : աստուածածնա : Ա : իմ հաւրն : Ա : հար-կեւորին : Ա : քոյրկանն : Ա : յայսմկանն .

ՈԿԴ կամաւ հոգոյն սրբոյ ես տր գրիգոր
'ի մեր սեփական ուխտս սբ. եղբայրութեամբս հանդերձ ե-թէ որք 'ի միաբանացս փոխի 'ի քս պատարագ մատուսցեն հաւրն : Դ : Խս : երեցոյն .. աբեղին : Գ : Խս : աշխարհական աբեղին : Բ : Խս : եւ ամենայն եղբայր աւր մի պատարագ եւ որ չկարէ Ժ կանոն աղաւթք արասցէ եթէ ոք յայս կարգե-լոցս պակասեցուսցէ խղճին 'ի մեղաց պարտական է առաջի այ տր ած ողորմեա մարգարէին ամէն .

Ես խաչեղբայր որդի ծատուրոյ եւ ամուսին իմ սխման շինեցաք զգերեզմանաց մեր եկեղեցին եւ տուաք զմեր տա-ճարն եւ զատարաւոյթն եւ 'ի ներքեւն տուն 'ի սբ. ածածինս եւ հայր սիմէոն եւ այլ եղբարքս փոխարէն հատուցին յա-մէն ամի : Ղ . աւր ժամ . Գ . աւր խաչեղբաւրն . Գ . սխմա-մին կատարիչք գրիս աւրհնեացին յայ .

Անուամբն այ ընակիչք սբ. ուխտիս տր քրիստափոր եւ գամաղիէլ վարդապետս ամենայն միաբանաւքս զայս կտակ անջնջելի հաստատեցաք եթէ ոք 'ի միաբանացս փոխի աւ քս զինչ որ անդարձ առնէ եւ իւր հոգոյն անսող մի ոք իշ-խեսցէ խափանել ոչ պարոն ոչ հայր ոչ միաբան ապա է-թէ լուծանեն յերից սուրբ ժողովոցն նզովեալ եղիցին հո-գւով եւ մարմնով .            զյովսէփ գրիչ տր յիշեա .

ՈԿԴ 'ի յամս ած ապատիւ հոգեւորին տն գրիգորոյ որդոյ ապու-ղամրի ես յոհանէս քահանայ որդի կոստանդի հոււմեանց գնե-ցի      'ի կէսն 'ի տր գրիգորոյ որդոյ ապուղամրի եւ ետու 'ի

Տր ածածինս եւ սպասաւորք Տր ուխտիս փոխարէն ինձ հատուցին յամէն ամի․ Խ․ աւր պատարագ․ Ի․ ինձ յոհանիսի․ Ի․ սիավարդին․ Բ․ կոստանդի․․․․ ցաղեղին․ Բ․ միխէլա․ Գ․ խաչերեսին․ Բ․ կատաին․ Ա․ տալինթիա տիկնոջն կրկնոյ զատկին ՚ի ժամն կատարիչք գրոյս աւրհնեսցին յայ եւ եթէ ոք զյիշատակս մեր խափանէ կամ յաւագաց կամ յառաջնորդաց մարդն այն նզովի յայ և ամենայն սրբոց եւ մեր մեղացս պարտական եղիցի առաջի այ․

ՈՉԲ կամաւք մարդասիրին այ ես վարհամ որդի մխիթարա թոռն աւետեացն չէչկանց եւ զուգակից իմ փառանցանս միաբանեցաք Տր մաւք լուսոյ ետու զիմ գանձագին կուղպակն ՚ի փողոցկտերն որ ՚ի թորոսոնց կուղպակին վերա է եւ զայն տունն որ սեւքթենց հնակից է եւ ՚ի վերայն կուղպակն եմ եւ սոքա հայր սիմէոն եւ միաբանքս փոխարէնս հատուցին մեզ յամենայն ամի տաւնել երկու աւր պատարագ զութն վահրամա երեքն փառանցին զմինն մամքանին աւր-եթէ ոք յառաջնորդաց տեղոյս զգրեալս խափանէ կամ ծախէ մեր մեղացն պատասխան տացեն յատենին քի․

կամաւքն քի այս մեր գիր է Տր ուխտիս հաւր սիմէոնի եւ միաբան սպասաւորաց սրբոցս զերդ որ խաչերեսն վարդին որդին ՚ի քս փոխեցաւ եւ զիւր գանձով շինած տներն ՚ի գաղտ դռանն խեչ երեսո ՚ի Տր մայրս լուսոյ ապա դառն ժամանակի հանդիպեցաք սովու եւ սրո եւ գերութեան ծախեցաք եւ ՚ի սրբոցս ՚ի պէտս անցուցաք եւ փոխարէնս հատուցաք յամենայն ամի երեք աւր պատարագ զերկուսն խաչերեսին եւ զմէկն ամուսնո իւրոյ մլքերոյն եթէ ոք զգրեալս մեր անփոյթ առնէ եւ խափանէ յերից Տր ժողովոյն նզովեալ եղիցին ամէն ։

ողորմութեամբն ա̃յ ես աւագ տիկին դուստր գորգկանն միաբանեցա ն̃ր ուխտիս եւ զիմ զհայրենի կէս այն ձիթահանքն որ 'ի յիմ 'ի ծնողացն 'ի պսակի ներքեւ ինձ բաժինք էր հասել եւտու 'ի ն̃ր ս̃ծածինս եւ հայր սիմէոն միաբանաւքս փոխարէնս հատուցին մեզ յամենայն ամի հինգ աւր պատարագ զերեք աւրն աւագ տիկնա եւ զմինն գորգկանն եւ զմէկն թաձներոյն եթէ ոք զյիշատակս մեր խափանէ մեր մեղացն համարս տացեն առաջի քի̃. մանսուէ գրիչ.

'ի թուիս ՈՉԲ շնորհիւն քի̃ 'ի տէրութեան տեղղյս գրիգորի մագիստրոսի որդոյ ապուղամրի եւ յառաջնորդութեան հաւր սիմէոնի ես սարգիս ծմակին աւագերէց որդի գրիգոր քահանայի եւտու զիմ գանձագին հայրենիքս այգին զշնջանկի զներքի դեհն իւր ծաղկոցովն իւր չորեսին ափներովն 'ի ն̃ր մայրս լուսոյ եւ սոքա փոխարէնս հատուցին յամենայն ամի ութ աւր յանուն իմ պատարագել զք̃ս եւ այլ եւտու զքարդզեմա տներն զի ուր ինձ վախճան լինի գիշերապաշտաւն եւ մատաղ առնեն կատարիչքն եւ հաստատուն պահողքն աւրհնեսցին 'ի քէ ա̃յ.

ես հասան կողբցի որդի մխիթարա ընախսին թոռն համէլին ապաւինեցայ 'ի ն̃ր ս̃ծածինս եւ յայլ սուրբքս եւ վասն փրկութեան հոգոց մերոց եւտու զմեր գանձագին հայրենիքս սկինն զկէս դանկն 'ի ն̃ր յուխտս եւ լերամբքն եւ սոքա փոխարէնս հատուցին 'ի տարին տասն պատարագ զութ աւրն համէլի իմ եղբաւրն եւ զերկուսն կատարին կատարիչք դեխս աւրհնին յա̃յ.

ՈՉԳ շնորհիւն ա̃յ ես շարափշահ որդի ապիրատին եւտու 'ի մեր սեփական եկեղեցիս 'ի ն̃ր ս̃ծածինս ։ գ ։ ակն ջաղաց 'ի շիրակաւանին եւ զխաչին մարդն եւ սպասաւորքս հայր սիմէոն եւ այլ միաբանքս փոխարէն հատուցին ինձ ։ ժԸ ։ աւր

ժամ ։ Ճ ։ աւր ինձ ։ Դ ։ կուԹելին ։ Է ։ կիւրիկէի ։ Ռ ։ Հաստա-նա ։ Է ։ ախխաԹունին ։

Ես Թագոհի զուգակից շարափշահին ետու խաչ մեծածախս եւ աւետարան ։ սառըճփողոցին կողպակի վեր 'ի չէրակուանին զմարգն որ Ճլուտ կոչի փոխարէն հատուց ինձ Դ աւր պատարագ Ե ինձ Ռ աւրն մամուղին .

Ես Թաթիկ Թագոհի դուստր շարափշահի ետու երկու կողպակ յիմ կուղպականոյն որ 'ի նալչնդնոցին եւ առաքել եւ հայր սիմեոն եւ այլ միաբանքս փոխարէն հատուցին ինձ . Է . աւր պատարագ կատարիչք գրոյս աւրհնեալ եղիցին յամ .

ՈՂԱ կամաւ անեղին Այ ես մանգստվաթ (ՄԱՆԳՏԱՎԱԹ) որդի խամարտալին մչեցի միայբանեցա սբ Ծածնիս եւ ետու ընձայ Ճ դահեկան հայրս մուս վարդապետքս եւ այլ միայբանքս փոխարէն հատուցին ինձ 'ի տարին 'ի տաւնի սբ սարգսի ։ Է ։ աւր պատարագել յանուն իմ զքս .

շնորհիւն քի ես սարգիս որդի խաչատին միաբանեցա սբ ուխտիս ետու ձիԹահնոց աղցաւղի քար և յամէն ամի ։ Ե ։ լիտր ձէԹ իսկ հայր աբրահամ եւ այլ միաբանքս փոխարէն հատուցին ինձ 'ի տարին ։ Է ։ աւր պատարագ կատարիչքն աւրհնեսցին եւ որ հակառակ կան . . .

կամաւն Այ ես խաչատուր ետու զմուլուքին հողն որ Թեղենեաց այգոյն 'ի հետ է 'ի բգնայր 'ի սբ Ծածնիս եւ հայր աբրահամ եւ եղբարքս փոխարէն հատուցին ։ Է ։ աւր ժամ ։ Ռ ։ ինձ ։ Ռ ։ տիկնոջն որ հաստատուն պահեն աւրհնին յամ .

ՉԺ կամաւն Այ ես ապուղամր որդի մաքիատրոսի որ գնեցի զկէս կաղղուցն 'ի տիգրանանց եւ ետու 'ի սբ Ծածնիս 'ի մեր սբ ուխտս որ զփոխարէնն . . .

ՉԺԱ. 'ի վերադիտողութեան մայրաքաղաքիս անու տէր սարգսի տն տեղոյս շնորհիւն այ ես գարեգոյն ֆրեց որդի մանգիկ իրիցու եւ ամուսին իմ մարեամ միաբանեցաք 'ի սբ ածածինս եւ ետու զիմ գանձագին գեղն զնորաղբյրիկ իւր ամենայն անդաստանովքն որ բնական լեալ է մի տաւնական մակաղաթ մի աւետարան ոսկէառուփ իմ գանձով գնած վասն յերկար կենդանութեան պարոնաց իմոց եւ յիշատակ ծնողաց մանկանն եւ թաձերոյն ✠ եւ հայր աբրահամ եւ յուսէփ փակակալ եւ այլ սբ եղբայրքս փոխարէն հատուցին 'ի տաւնի քառամնիցն է աւր պատարագ յամենայն ամի բ. գարեգոյնին բ. մարեմա ա. մանկկանն. ա. թաձերուն արդ էթէ ոք զմեր պատարագն խափանէ կամ զմեր աւետարանն կամ զտաւնականն 'ի սբ ածածնէս 'ի մեր գերեզմանէս հանէ յերից սբ ժողովոցն նզովեալ եղիցի հոգով եւ մարմնով եւ որք հաստատ պահեն աւրհնեալ եղիցին յայ ամէն.

զսիմէոն գրիչ յիշեցէք աղաչեմ.

ՉԺԱ. շնորհիւն այ ես թաիկս դուստր շարապշահին ետու զիմ գանձագին հայրենիքն զնորսն 'ի մեր ուխտս 'ի բդնայրս 'ի սբ ածածինս ✠ եւ հայր աբրահամ եւ այլ միաբանեալ սբ եղբայրքս փոխարէն հատուցին յամենայն ամի. Ժ. աւր պատարագ. Ը. աւրն ինձ առնեն թաիկանս եւ. բ. աւրն գրիգորու ✠ արդ որք կատարեն եւ հաստատ պահեն աւրհնեալ եղիցին յայ հաստատ է սենսցն անդաստանաւքն հողովն եւ ջրովն մինչ 'ի գալուստ որդոյն այ.

կամաւն այ ես կոստերս ծմակեցի ապաւինեցայ 'ի սբ ածածինս զհիւրատունն որ պէչարենց կոչի որ ծախել էին վանեցիքն ես դարձուցի 'ի վանքս եւ ետու զին ։ պ ։ ռպ ։ հայրս եւ վարդապետքս եւ այլ եղբարքս փոխարէն հատուցին ինձ 'ի տարին. բ. ա... մարդ էթէ ոք զյիշատակս (Միաբանքն թեւ-րի թողեալ).

ՋԺԱ. կամաւն այ ես ապուղամր որդի մաքիաարոսի Թոռն Վաւրհամ իշխանին վասն 'ի քս յուսոյն եւ տուի զիմ գանձագին հայրենիքն զկաղղուց կէսն իւր հողովն ու ջրովն 'ի սբ աթո֊ ռոյս 'ի մեր սբ ուխտս որ մաւտ է . . .

Ջ . . ես շահեր կերակոս միաբանեցա 'ի բգներիս եւ տուի զիմ գանձագին հողերն . . . ամենակից ներքի դեհն . . .

Ի հիւսիսոյ կուսէ արտաքուստ 'ի բարձու պատշճոյ մատրանն .

Ես սեդա տիկնաց տիկին դուստր մեծին վասակա զաւգա֊ կից վահրամա իշխանաց իշխանի որդւոյ աշոտոյ իշխանաց իշ֊ խանի տասանորդեցի զվասակս գեղջն իմոյ գաղատի ընծայ֊ եցի 'ի սբ ուխտս բագնայրիս վասն յիշատակի զաւրականին քն հաւրն իմոյ վասակա փոխեցելոյ յաշխարհէս եթէ որք 'ի մեծամեծաց կամ 'ի փոքունց կամիցի խափանիչ լինել որո֊ շեալ լիցի 'ի փառացն այ եւ ընդ մեղաց մերոց համարս տա֊ ցէ յաւուրն դատաստանի .

Ի վերայ դրան երկրորդի մատրանն սուրբ Գրիգոր կոչեցելոյ .

'Ի ՇՂԴ Թվ. ես ազիզս մեղուցեալ աղախին քն աւհնեցի զեկեղեցիս սբ գրիգոր 'ի յիշատակ որդւո իմո գրիգորո 'ի ձեռն հաւր . . . . . մաւր : ա : եւ տաւշնորդ սբ . . . . .

'Ի ՌԱ Թվ. . . . . . . .

Վերոյ քան զդուռն Նորին մատրանն .

ՋԺԱ. ✠ կամաւն այ ես խաւռաւզ մեծ խաւռաւզիս Թոռն տասանիա որդիս իմ անդրանիկ որդին սասնայն որ կէս տարե֊ կան 'ի քս փոխեցաւ յիմ դանձագին հերէնեցն յաշնկու որ իմ պապն գնել էր ու սիկելով յիս ավել ինչ իմ պապն մե֊ ռաւ ես խաւռաւզ իմ կնոջն զբաժինքն ակն ու մարգարիտ իմ պարոնին ավլի շահնշահի ու կրկին զաշնակ գնեցի ու զիմ որդւոյն բաժինն զասանին 'ի բգներս ավլի յաշծածինս զվերի է֊ գին իւր ընձանովն : ա . շինական դմեհրեւան ու զխաչատուր

գուլուսին փեսայն իւրենց հողովն ու ջրովն 'ի ադնիս զջա-ղացն յիմ խոստահարին : Ճ : բարդ խոտի տեղ որ վանքս ըն-ձէ ... սկի արծաթի : Ես Խաչատուր զայս ընձա տվլի տր ածած-նիս ով այս գրելոցս հակառակի ածամայրս լինի իւրն դատա-խազ ✠ Ես տր սարգիս եւ հայր աբրահամ՝ յուսէփ փակա-կալ եւ այլ միաբանքս հաստատեցին 'ի տարին Ձ աւր պա-տարագ Ե սամին Ե խաչուարա ✠ ով ոք որ զայս գիրս խա-փանէն յՃըլ էցն ... հոգով եւ մարմնով եւ որ հաստատ պա-հեն աւրնեալ եղիցին յայ ամէն.

զախմէոն պատուող յիշեցէք աղաչեմ.

Զծե շնորհիւն այ ես Խաչատուր որդի սամկային եւտու 'ի մեր սեփական տր ուխտն բգներ 'ի տր ածածին զմեր զգան-ձագին զջրձորին վանքն իւր սահմանաւքն ջաղացովն եւ պա-հէ զան .... եւ զաղի աղբերն զպահէզն որ իմ պապն գնեալ էր եւ ինձ տվեալ ես յիմ կենդանութեան եւտու 'ի վանքն եւ հայր աբրահամ եւ այլ տր եղբարքն փոխարէն հաստա-ցին մեզ 'ի տարին . Ձ . աւր պատարագ յետ ելից իմո ինձ առնեն ով եւ էցէ որ մեր արձանագիրս յետ շրջէ կամ ... կամ յաւտարաց մեղաց մերոց պարտական եղիցի առաջի այ.

Իշխ գրիչ

Շուրջանակի զեկեղեցեաւն՝ հանդերձ արտաքին կրկին մատրամբքդ՝ պա-րիսպ ածեալ էր հարուստ մի բացականութեամբ, որ էր անշուշտ շրջապատ մե-նաստանին, յորում և վանականացն խցիկունք. այլ արդ իսպառ քայքայեալ է պարսպին, և հիմունքն ուրեք ուրեք երևին զերեսօք գետնոյն :

Արտաքոյ պարսպապատ սահմանին իբրև քարընկեցս երկու 'ի հիւսիսոյ ե-կեղեցւոյն կանգնեալ են այլ ևս երկու մատուռնք միմեանց առընթեր . յորոց մին մեծագոյն է, և ձևով վեցանկեան և կաթողիկէիւ . և զբարաւորաւ դրանն ար-ձանագրեալ այսպէս .

'ի փառս ամենատր երրորդութեն հաւր եւ որդոյ եւ հո-գոյն սրբոյ . Թու . ՈՀԲ :

Արջոյ–առիճ, ուխտ Աստուածածնի և Լուսաւորչի. այժմ Արաձա.

Կիսաժամու հեռի 'ի Ղօշլիճայէ ըստ հիւսիսոյ նորա և ժամաւ յԱնւոյ՝ յարևմուտս, 'ի վերին ծայր երկայնաձիգ բլրոյ միոյ որ առ ստորոտով Ալաճա լերին, 'ի նոյնանուն գեղջն կայ մենաստանս, որոյ անհետացեալ իսպառ, գնչխարեալ մասունս եկեղեցւոյն պահէ տակաւին։ Եկեղեցիս այս թէպէտ և մեծութեամբ և հոյակապութեամբ զուգակշիռ չկայցէ ընդ Բագնայր, սակայն և ոչ շատ ստորին է քան զնա։ Նոյնօրինակ բաժանեալ է և սա 'ի ներքնագաւիթ և 'ի տաճար. անսիւն է ներքնագաւիթն և կամարաւ յարկեալ. և 'ի վերայ տաճարին և երկուստեք խորանին գեղեցկաշէն մատրունք կամ աւանդատունք հանդերձ կաթողիկէիւք իւրեանց։ Ամաւ յառաջ անկործան կայր եկեղեցիս. այլ արդ մեծամասամբ 'ի բռնութենէ տարերաց, որպէս ասեն, քայքայեալ է տաճարն աւանդատամբքն հանդերձ, և խարխալեալ որմոյ ներքնագաւթին, քարակոյաք աւերակաց դիզեալ զեկեղեցեաւն ներքոյ և արտաքոյ կիսով չափ բարձրութեան որմոցն՝ տեսարան աղետալի եղեալ է անցաւորաց։ Բազում էին և սորա արձանագրութիւնք 'ի ներքնագաւթին, սակայն շատք խանգարեալ են, ընդ որս և կարևորն՝ յորում յիշատակէր արդեօք հիմնադիր և բարերար նորա. քանզի և մատենագիրք խնայեցին յետնոցս յայտնաբանել զանուն սորա։ Իսկ վերծանելիքն այսոքիկ են, յորոց ոմն Աստուածածին մակձայնէ զմենաստանն և այլ ոմն Լուսաւորիչ. յորմէ կարծեմ թէ մին 'ի մատրանցն որք փառահեղք էին քան զսովորականն, որպէս յաւերակացն երևին, մակագրեալ իցէ 'ի մի յանուանցդ։ Առաջին արձանագիրս 'ի վերայ փլեալ մասանցն է.

**Թվ. ՈԾԶ... ուԹեամբն ա՟յ ես պարոնամաւ Ծառա քե՟ որդի հասանա... միաբանեցա ս՟բ ուխտիս եւ ետու զիմ հայրենի ա.. կոչի սառն յիշատակի եղբաւրն իմո խուբա... սպասաւորք ս՟բ ուխտիս փոխարէն հաս... զտաւնին զեկեղեցիս զողջ անխափան... Թին եւ կէսն խութային որք հաստատուն... յրկան հեղի եւ հանդարտի...**

**'ի Թվ. ՈԿԲ շնորհիւ բարերարին ա՟յ ես յոհանէս քահանայ որդի հոռմեանց կոստանդի քահանայ միաբանեցա սուրբ ուխտիս եւ գանձագին արարի... եւ ընծայեցի յարջոյ առճի 'ի ս՟բ ա՟ծածինս 'ի ձեռն ս՟ր գրիգորի որդոյ ապուղամրի եւ փոխարէն ինձ տուցին յամէն ամի։ Խ։ աւր ժամ անխափան։ Ի։ ինձ։ Ե։ սխալարղին։ Ժ։ խաչերեսին։ Ե։ իմ ծնո-**

ղաց ։ Ը ։ խոցաղեղին ։ Գ ։ մխայլէ ։ Ա ։ կատային որ հաս-տատ պահեն աւրհնին յԱյ եւ որ խափանեն նզովին ամէն ։

կամաւ բարերարին Այ մեք ատիւծս եւ շուշիկս միաբա-նեցաք 'ի Տր. ուխտս արջու առՃի եւ տուաք զմեր գանձաղին տունն որ 'ի Տր. . . . 'ի կալին եւ հայր վարդան եւ այլ միա-բանքն հաստուցին մեզ Է աւրժամ . . . շուշկան ։ Ա ։ ազգին ։ Ա ։ ասլթերին ։ Ա ։ տիկնոջն ։ Ա ։ կարապետին կատարողքն աւրհնեալ եղիցին յԱյ կամաւքն Այ ես հայր վարդան եւ այլ միաբանք սահմանեցաք զԾածին խոր . . . . . հասարակաց լի-նի ժամն որ խափան . . .

Հրամանաւ Տն գրիգո . . . . եպիսկոպոսի որ էր ժառանգորդ Տր. ուխտիս եւ բնակիչք վանացս հայր գրի . . . վարդապետս գերսամս եւ եղբարքս սահման եդաք յիշատակ ննջեց . . . մինչեւ ցվերջինսն որք միաբան 'ի Տր. յուխտս հանգուցեալ են պատարագել զՔն . . . ազ յայտնութեան զպահքն ։ Ը ։ աւր անխափան զամենայն եկեղեցիքս եւ միա . . անին որ 'ի Քն փոխի հաւրն եւ վարդապետին ։ Գ ։ Խս ։ եւ իրիցոյն եւ բնա-բեղախին ։ Գ ։ Խս ։ եւ աշխարհական հարբեղաին եւ մանգանն ։ Ը ։ Խս ։ եւ ամենայն եղբայր աւր Ա ժամ արասցէ եւ որ պա-տարագող չէ Ճ կանոն աղաւթս արասցէ որք հաստատուն պահեն զգրեալս աւրհնին եւ մամնակից եղիցին Տր. պատա-րագացս ։

Ես պարոնիկս միաբանեցա Տր. ուխտիս արջու առՃոյ եւ ետու զիմ գանձագին հողերն զգերմատու տնափնիքն առաջի եղեղն գինեկոյ Ճանապարհն միջի եղէգն . . .

յանուն Այ հայրենիքս որ կա վանիցս այս է բաշխին բուրքն եւ ախոռն եւ զպատարագ Ը աւր լույսոտին եւ Ը խաչատին եւ Ը ծնողաց նոցա փոլկարարոց կուղպակն եւ տունն 'ի ներ-

քեւն ղ̃ ամր պատարագ. դ̃ ամր բաւնկանն եւ դ̃ մխիթարչին
աբգլմսեհէ՛ տանն դ̃ ամրժամ յոհաննիսի· տանն ամր դ̃ ժամ
ը̃ իւրեանն եւ ա̃ իւր հաւրն սարաձփողոցին կուղպակն ղ̃
ժամ ը̃ ամր շնահուորկանն եւ ը̃ գէարգա եգեղխմին ը̃ տունն
եւ տան տեղ մի դ̃ ամր ժամ գանգատին եւ տակառքն ը̃ ամր
ժամ պետրոսոյ եւ լիտոսս այլ եւտու դ̃ արտ եւ եւտուն ինձ
դ̃ ժամ գրիգոր. որդի ապահերժի եղ. տուն վանեցս մաւտ 'ի
մը կաթողէկէ 'ի հիւսիս կոյս եւ առ. ժամ 'ի տարին ա̃ իւր
հաւրն ա̃ մարեմկանն ա̃ եղբայրկանն եւ ա̃ իւրն անխափան·

✠ ես առիւծս որդի մխիթարա ձնկին եւտու զիմ հայրենի
ը̃ արտերն որ 'ի յա.. ցխակս է 'ի մը ուխտս եւ փոխարէն
հատուցին մը եղբարքս ը̃ ամր պատարագ 'ի տաւնի հաւփ-
սիմեանց յամէն ամի ա̃ ինձ ա̃ նուրսաթէ կատարիչքն աւրհնին
'ի քէ·

ես հազարդեղս միայբանեցայ մը ուխտիս եւ ետու ընծայ
տուն մ̃... եւ սպասաւորք սորայ հատուցին ինձ ը̃ պատա-
րագ 'ի տաւնի մը գէորգին յիշեցէ քս̃ ա̃ծ զմխիթար զթան-
կիկն եւ զսիմէոն եւ զփափխիկն զազիզն որք մի ամէն եւ ըն-
ծայաբերք եղեն. զնորհատն զգոհան զախկնացն....

շնորհիւն քի̃ ես որդեկ երէց կոզբյի որդի դաւթի թոռն
պառաւ իրիցոյ միաբանեցա մը ուխտիս արջու առձոյ եւ ե-
տու ընծա 'ի մը լուսաւորիչս գրիգոր զիմ հայրենի այգին որ
կողբ է որ պառաւենց կոչի եւ զներքն տունն որ ես շինել
եմ եւ փոխարէն հատուցին մեզ հայր անդրէաս եւ այլ սպա-
սաւորք յամենայն ամի պատարագ 'ի տաւնի մ̃աւեց ա̃ծածնին·
ը̃· ամր· ը̃· ի·· իմ մաւրն թագուհէ ա̃ կենակցի իմ մամս-
թէ· ը̃· աղզացն իմ յարութեան ը̃ ինձ որդեկիս եւ որք զփշա-
տակս մեր հաստատ պա    աւրհնին յայ̃ եւ որք խափանեն ո-
րոշին 'ի քէ· Ջ· Լ· Ը· իմ բաղում մեղաց թողութի̃ արարէք·

## ՄԱՂԱՍԲԵՐԴ

Գաւառ Շիրակայ ոչ բազմութեամբ ևեթ պայծառ եկեղեցեաց և վանորէից պարծի, այլ և Մաղասբերդիւն՝ որ կիսաժամու հեռի է յԱնւոյ: Թէպէտ այդ միայն է յայդմ մասին պարծանաց արժանի, սակայն և առաւելութիւն նորա գերիվերոյ համարի քան զբազում երևելի բերդորայս, և տեղւոյն ահաւորութեամբն հաւասար արդեօք մրցելոյ ընդ բերդին Վանայ, թէպէտ և չունիցի սա որպէս զնորայն պարիսպս յործաքար վիմաց և արձանագրութիւնս հեթանոս ժամանակաց: Յատակ Մաղասբերդիդ յարևմտից հիւսիսոյ հաւասար է յատակի գետնոյ, ընդ որ և արտաքին դուռն է նորա յաջակողմեան ծայր ցամաքապարսպին. յորմէ մինչև ցմիւս ծայրն անջրպետեալ պարսպին զբերդն՝ միւս կողմանքն երեքին են իբրև ցամաքակղզի քարալեառն երկայնեալ 'ի ձորն կոյս խորանդունդ ահաւոր, յորում հասակ մարդոյ թզաչափ մի երևի 'ի բերդէն. Ախուրեան գետն ընթանայ ընդ ձորդ այդ մեծ: Կրկնապարիսպ է բերդս 'ի ցամաք կուսէ, Նախապարիսպն փոքր մի ցածագոյն, Ներքինն յոյժ բարձր երիւք կիսաբոլոր աշտարակօք: Ընդ մէջ կրկին պարսպացդ գետնափոր տեղիք են քարակերտք: Առ դրան Ներքնապարսպին ստորերկրեայ ճանապարհն քարաշէն աստիճանօք հանէ ընդ անդնդախոր զառիվայրն մինչև յեզր գետոյն. և կամարակապ յարկեալ ուղիղ ոլորտապտոյտ երևի և արտաքուստ առ 'ի կողաց քարալերին, թէ և բազում ուրեք քայքայեալ: Փոքր մի 'ի Ներքս երկրորդի դրանն աստիճանք են սանդղոց որ յաշտարակսն 'ի վեր հանեն: Պարիսպք այլոց կողմանցն չեն բարձունք և ոչ հոյակապք, այլ և մեծաւ մասամբ քայքայեալ. քանզի և կարևոր չէր յաղագս անմատչելի գոլոյ 'ի թշնամեաց և 'ի պատերազմական գործեաց: Աւերակք բազում են 'ի Ներքս բերդին, և անբնակ է այժմ 'ի մարդկանէ. քարակոյտք տանց կործանելոց և ապարանից ոմանց որոց որմունք դոյզն մասամբ յիշատակ կացեալ են, վկայ լինին թէ քանի չէն էր յառաջագոյն: Որ ինչ կիսամասնեայ կան ցարդ՝ է բաղանիքն, և մօտ առ Նմին ջրամբար քառակուսի և մեծ: Յորմէհետէ անկեալ է Մաղասբերդ ընդ տէրութեամբ Թուրքաց, Նորոգութիւն ոչ սակաւ եղեալ է 'ի Նոցանէ, որպէս վկայեն կարկատք յորմունսն և 'ի դրունսն, և այնր աղագաւ տաճիկ արձանագիրքն 'ի վերայ դրանց. սակայն անշուշտ առ Բագրատունեօք հիմն արկեալ է Նորին. որում վկայեն և աւերակք երից փոքր մատրանց:

---

Անցեալ ընդ Մաղասբերդ 'ի կողմն հարաւոյ, աւարտի ըստ այժմու բաժանման վերջին սահման յատուկ գաւառին Շորէկելայ, և մտանես 'ի վիճակ Նախճաւանայ, որ թէպէտ հանդերձ շրջակայ վայրօքն՝ Շիրակայ մասն է ըստ հնոց, զի և չիք բնաւ ընդ մէջ բաժանարար գետ կամ լեառն, սակայն այլ դատաւոր

է նորա ստորակարգեալ։ Արդ 'ի մասինդ յայդմիկ Շիրակայ հնութեանց պատմիչ լինին վայրքս. Ալաման, Մրեն, մեծահռչակն Բագրան ըստ ոմանց յԱրշարունեաց գաւառին, Ցեկոր, Խծկանք կամ Գէչքիլիսէ, Ագրակ, Ծղնի և Նախճաւան. զորոց լուիցուք մի առ մի։

### Ալաման. (այժմ Ալէմ.)

Ի պարսկաբնակ գիւղս յայս փոքրիկ գեղեցկաշէն՝ կանգուն կայ հին եկեղեցի քառաթեւ, միջակ մեծութեամբ և գմբէթարդ, սուրբ Անանէ կոչեցեալ։ Արձանագիր շինողի նորա և ժամանակ շինութեանն խոշորատառ իբրև փաթոյթ մի ածեալ է զնովաւ օրինակ զայս.

**քսանեւեւթն եմւոյ[1] հերակղէ բարեպաշտ թագաւորի ներսեհի շիրակա եւ արշարունեաց տն եւ թէոփիղոսի շարունեաց եպիսկոպոս ես գրիգոր եղաւսար եւ մարիամ իմ կին շինեցաք զՍբ եկեղեցիս վասն մեր հոգւոց**

Ի վերայ դրանն.

**յանուն Տյ այս իմ ձեռնագիր է**

**✠ յանուն Տյ այս իմ գիր է սոփէ[2] հաւոց եւ վրաց թագուհո թողեալ եմ զալամանս շաբյաթս վասն իմ ար**

վերոյ նորա նոյն բան անթերի.

**յանուն Տյ այս իմ գիր է սոփէ.. շահնշահի հաւոց եւ վրաց թագուհո թողել եմ զալաման շաբյաթս վասն իմ հոգոս եւ արեւոս եւ շահնշահի հոգոն եւ գագկա եւ իւր որդեացն արեւուն էթէ ոք հեռ մեր յանդգնի եւ առու յծը իցն նզովեալ եղիցի եւ բաժինն ընդ յուդայի մատնչի եւ ընդ սիմոնի կախարդի եւ ընդ գեհեղի բորոտի եւ Տր անանէ նըմա ոսոխ.**

### Մրեն. (այժմ Ղարապաղ.)

Հռչակաւոր և ղուարճատեսն Մրեն, որոյ այգիքն վերիվայր յեղյեղին յարձանագրութիւնս, ժամու հեռի կայ 'ի Բագրանայ 'ի միջակէտ ընդարձակ դաշտավայրի։ Անդստին 'ի հինգերորդ դարու հետէ յանուանէ յիշի 'ի փարպեցւոյն. իսկ առ Բագրատունեօք աւանացեալ մարդկամբ և զբօսարան կամ ամարանոց

1 Այն է 636–7 ամ Թուականի Փրկչին։
2 Սոփի դուստր Աշոտոյ Ողորմածի, յետ կոյս Ժ դարու։

եղեալ մեծամեծաց, արդ աւերակ է և անբնակ։ Ընդ զուարճագեղ զբօսանաց Անեցւոց մանաւորեալ էր գուցէ առաւելագոյն ևս մասամբ՝ աստուածպաշտութեան հանդիսից, որում վկայ կանգնի ցարդ կաթողիկէն տեղւոյս հոյակապ, մի 'ի հռաշակերտից Շիրակայ։ Այն իսկ շատ է փափագատենչ լինելոյ վայրացն զի և թագաւորին Անւոյ արքունիք զբօսանաց կային անդէն, որպէս 'ի ստորև ասացելոցս տեսցի։ Ընդհանուր տեսութեամբ յերկուս բաժանեալ էր Մրեն. տունք և այլ շինուածք 'ի մի կողմն, և 'ի միւսն այգեստանք. տանց առ հասարակ կործանեալ՝ հիմունքն ևեթ երևին զերեսօք գետնոյ, և չեն զարմանք թէ չգտանիցին 'ի քարակոյտս աւերակաց նորին կոփածոյ վէմք մեծամեծք. զի առ դաշ-




Մրենոյ կաթողիկէն

տավայր գոլոյ ճանապարհին՝ ամենայն ուստեք դիւրութիւն մեծ է 'ի բաց տանել զնոսին շրջաբնակ գիւղօրէիցն։ Իսկ այգեստանքն իսպառ խոպանացեալ՝ որք արօտ են այժմ խաշնարածաց՝ մեծատարածք են և բազմաթիւ, սահմանեալ իւրաքանչիւր շուրջանակի վարկպարազի քարակուտիւ։ Ի բազումս 'ի նոցանէ գերեզմանաքարք կան, վկայ տեղւոյ թաղման տերանց իւրեանց, զոր օրինակ և մինչև ցայսօր աւանդեն բնակիչք կողմանցն։

Հրաշակառոյց կաթողիկէն Մրենոյ ըստ վկայելոյ մատենագրաց՝ արարք են Դաւթի Սահառունւոյ յեօթներորդ դարուն, նախ քան զծաղկել մայրաքաղաքին Անւոյ։ Զփառահեղ մեծութենէ եկեղեցւոյս՝ համարիմ ճշդիւ ասացեալ թէ թանձրութեամբ որմոցն և քարանցն ստուարութեամբ և սեանցն չորեցուն և կամարացն հզօրաց՝ զանցանէ քան զբազում հոյակապ եկեղեցեօք Շիրակայ որ յայսկոյս են Ախուրեան գետոյ. ընդ Շիրակաւանին կշռեալ՝ սա լայնանիստ է քան զնա. թէպէտ փոքր մի կարճագոյն. այլ ընդ կաթողիկէին Անւոյ երկրորդ է սա, իշխէի ասել և նորին ճարտարապետի արհեստակերտեալ, եթէ խտրոց չէր 'ի միջի ժամանակացն բացակայութիւն։ Են սորա բարձրաքանդակ պատկերք վերոյ հիւսիսային և արևմտեան դրանցն. 'ի հիւսիսայնումն է երիվար համբուեալ և առ նմա այր մի անկեալ 'ի ծունկս առաջի խաչի բարձրացելոյ 'ի ձողի, զոր կալեալ ունի մանուկ մի նոյնպէս 'ի ծունկս անկեալ. յետոյ նորա մօրուեղ ծեր մի երկայն պարեգօտիւ 'ի նոյն դիրս այլոց և յաջոյ ձեռին երկայն քաւկ. յետոյ ամենեցուն ծառ մի։ Իսկ յարևմտեանն են հրեշտակք երկու յոտին, և ստորև նոցա արք վեց, և ոմանց 'ի նոցանէ մատեան 'ի ձեռին[1]։ Արձանագրութիւնք մեծի եկեղեցւոյս զորմովքն են արտաքոյ 'ի կողմն արևմտից և հարաւոյ. արևմտակողմանքն են այսոքիկ.

**յանուն ա̃յ 'ի ՆԽԱ թվականին ես դաւիթ վարդա որդի էտու զիմ այգին զայն որ 'ի գետեզերն իմ ձեռաց արկել 'ի ս̃բ կաթաղիկէ 'ի ձեռն ա̃ծապատիւ եւ հոգեւոր տ̃ն սահակա եւ պարտիս եմ ընդեցեալ մինչ 'ի միւսանգամ գալուստն զքարեկենդանին ուրբաթ աւրն պատարագն յամենայն եկեղեցիս յիմ անուն մատուցանեն եւ որ ոք ստե կամ յապիշտա-**

[1] Արհեստ մարդադէմ քանդակաց ըստ ախորժակաց նախնոյն Յունաստանի և ըստ առ 'ի նմանէ աշակերտեալն Իտալիոյ, որ ընդ բնութեանն զուգակշիռ իմն մրցէր, և յորոյ արդասիսն շունչ և հոգի միայն պակասէր, կարծեմ բնաւ չէ երևեալ ոչ միայն 'ի Շիրակ 'ի գերազանցեալն յարհեստի ճարտարապետութեան, այլ և ընդ ամենայն Հայաստան։ Զհնոցն չունիմ հաւաստեաւ ինչ ասել զպէս Բագարանոյ, Արմաւիրայ, և որ յԱշտիշատ Տարօնոյ կային Վահէվահեանն Հերակլեայ, Ոսկեմօրն Անահտայ և Աստղկան. նա զի ճարտարակերտքն 'ի նոցանէ ոմն յունական ձեռին էին քանդակ և այլ ոմն 'ի Յունաստանէ ածեալ յաշխարհս մեր։ Այլ որ այժմ կան 'ի մեզ, միջին անուանեալ դարու արդասեաց նմանութիւնք են, զուրկ 'ի ճարտարութենէ, որպէս է տեսանել ընդ ամենայն արևելս 'ի ժամանակաց անտի յունական կայսերութեան. ընդ նմին և յաշխարհս մեր։ Եւ վկայ են Մրենոյ առնապատկերքն բարձրաքանդակ, և դէմք հրեշտակաց յեկեղեցիս Անւոյ, զուրկ 'ի բնականութենէ և յարհեստին վայելչութենէ. սոսկ ինչ պակաս իմա և զնկարագործ պատկերսն։

կեալ իմ մեղացս եւ իմ ազգի մեղաց պարտական եղիցի առա-ջի ա̃յ եւ յա̃յ դատապարտ եղիցի եւ մասն եւ բաժին ընդ խաչահանս կրեցէ իսկ կատարիչ գրոյս աւրհնեալ եղիցին յա̃յ եւ յամենայն սրբոց ·

✠ Եւ ես սոփի դուստր մեծին աշոտոյ շահանշահի հայոց եւ վրաց թագուհի ավեալ եմ և հաստատեալ զդավթի զայ-գին ՚ի տ̃ր կաթողիկե եւ ՚ի տէր սահակ եւ ՚ի նորին աթո-ռակալս զոր ինքնս անդարձ եր արարեալ վասն դավթի հո-գոյն եւ վասն իմ եւ վասն գագկա շահանշահի արեւշատու-թեան եւ որ ոք յապըշտակել ջանայ յա̃յ բանէն · · · եալ եղիցին իսկ հրամանակատարքն աւրհնեալ եղիցին յա̃յ ·

✠ Յանուն ա̃յ այս իմ հրամանք են գագկա շահիազնշահի ազատեալ եմ զմրենոյ զկոռն որ ՚ի նախձաւանի էր զմարդոյ եւ զեզին ՚ի ձեռն խնդրոյ տ̃ծապատիւ տ̃ն սահակա աշարու-նեաց եպիսկոպոսի որ անմառաց խնդրե ՚ի ք̃է թողութիւն լինել մեղաց իմոց արդ աւր ոք ընդդիմանա իմ ահրամացնացս կամ յիմ որդեաց կամ այլ ոք եւ իցէ պարտական լիցի մե-ղաց իմոց եւ իմ ամենայն ազգի եւ սպանման արեանն ք̃ի իսկ կատարիչ գրոյս աւրհն եղիցի ՚ի ք̃է տ̃ր կաթողիկէ եւ սուրբ նշանս լիցի կնիք գրոյս եղաւ առաջնորդ բարոյս հարպ հայոց տանուտէր · վահան քահանայ գծող ·

✠ ՆՂ թուականութեանս հայոց ՚ի հայրապետութեան տ̃ն պետրոսի եւ. խաչկա հաոց կաթողիկոսաց այս իմ հրա-մանք են գագկա շահանշահի ուրդո աշոտո ազատեալ եմ զմրենոյ զհարկն զծուծ եւ մրուր զկապիճքն · · իշխուցին եթէ ոք ընդդիմանա հրամանաց իմոց յիմոց կամ · · ով իցէ պար-տական եղիցի սպանման արեանն ք̃ի եւ ամենայն ազգի մե-ղաց · · յԺԲ հայրապետացն նզովեալ եղիցի կենաւք եւ ՚ի մահու եղեւ առաջնորդ հաոց տանուտէր ·

խոշորատառ և թերի.

՚Ի յարեգական տոհմիս տոմարիս եւ ԹՎ Հ ։ ՚Ի ՇԺԲ ամաց շր

Ի նոյն յարևմտեան կողմն բաց ՚ի վերոյգրելոցդ կայր և այլ միւս ևս արձանագիր խոշորատառ, որ վասն բարձրութեան տեղւոյն մնաց անվերծանելի, յաւրում թերևս յիշատակ գոյր հիմնադրի նորա Դաւթի Սահառունւոյ։

Ի հարաւոյ կուսէ.

Թուակ Ջ յամս տէրապատիւ տէր կոստանդեա Հայոց կաթողիկոսի•• հրամանաւ մեծին շահանշահի եւ յառաջնորդութ•• տէր գրիգորո եթէ ոք յեպիսկոպոսաց կաշառաւք ե••• առնէ կամ անմուրու կամ առանց ընտրութեան մասն ղ••• ղաւին առցէ եւ զսիմոնի կախարդի ով զգիրս ջնջէ•• ջնջի ՚ի կենաց գրոյն•

Թուակ ՋԻԲ ողորմութեամբն այ ես պարոն սահմադինս ազատեցի զմր ուխտին արջվա••ո այգիքն մրենո եւ ուշակնո ՚ի խաղաղ եւ յիրդ հարկէ որ բնական ազատ էր ոչ ամիրիո•• ոնաւորի ոչ ում ձեռն չկա ՚ի վերա վասն արեւշատութեան որդեց իմոց եւ քաւութեան մեղաց մե••• ազատ մինչ ՚ի ծագումն քն արդ թէ ոք ՚ի մերոց կամ յաւտարաց•••

Թուակ ՋԼԳ կամաւն այ ամենակալին այս մեր արձանագիր է պարոն սէնուպ սահմատինս աւետեց որդոյս եւ կենակից իմ ուրտուրխայ որ յառաջ գնեցի զմրեն յիմ հալալ արդեանց եւ հաստատեցաք արձանագրով եւ թողաք զմրենդ տասնակն հացին որ ՚ի շարխառն նախ մեզ արեւշատութիւն եւ որդեաց մերոց եւ յիշատակ յետ ելից աստի կենացս եւ մեզ մեղաց թողութիւն եւ արձան տալ մինչ ՚ի գալուստն քն արդ էթէ ոք ՚ի մերոց կամ յաւտարաց զհաստատ արձանս մեր խափանել ջանայ պարտական լիցի սպանման արեան որդոյ այ եւ տատաւեղ նորայ սատանա լիցի եւ զյաւխտեննից անէծան ժառանկեսցէ զուդաի եւ զկաենին եւ հաստատ պա-

հաւղքն ուրհնին յայ •                    կենկլիչանոյ ամերուքս գրեցաւ •

Թ • Հ • ՉԼԷ յանուն այ եւ միջնորդութեամբ ամենայն երկնաւին եւ երկրաւին զաւրութեան ես պարոն սէնոպ սահմադինս եւ ամուսին իմ տուրուրոա վասն փրկութեան մեղաց մեր եւ վասն յերկար կենդանութեան զաւակաց մերոց եւ վասն շինութեան համար մրենո հացին շարիատն Թողել էաք ։ եւ հայ մալ Թողաք զէգեց գինո եւ խաղողի խալէն որ այլ ոչ 'ի մերոց եւ ոչ յաւտարաց ոչ ով չխառնէ ով հակառակի եւ զմեր յիշատակս խափանէ նզով յայ եւ յՅԸ հայրապետացն եւ մասն եւ բաժին Նորա ընդ ուդաի եւ ընդ կաէնի եւ ընդ սատանաի •

Թ • ՉԽԴ կամաւն այ ես դաւիթ միաբանեցա սբ կաթողիկէիս եւ արարի արդիւնք սր •• այլ սպասաւորք եկեղեցոյս փոխարէն հատուցին մեզ 'ի տարին Է ժամ 'ի տաւնի դաւԹի եւ յակոբայ ։ Ա ։ ինձ •• դաւԹի եւ ։ Ա ։ ամուսնոյ իմոյ էլ խաթունին կատարիչքն ուրհնին յայ •

ԽՈՉԱՔԱՐՔ. — Խաչքարք բազում են 'ի Մքեն, ոչ 'ի միում վայրի, այլ ցրիւ. ոմանք հոյակապք և բարձր որմագործ սուար պատուանդանաւ, այլք մարդաչափ բարձրութեամբ. 'ի վերայ միոյ 'ի հոյակապացն է արձանագիրս.

ով սբ խաչ փրկական եւ ներկեալ արեամբ որդոյն այ 'ի քեզ ապաւինեցաք ծառայքս խաչելոյն քի ես մարտիրոս եւ ամուսին իմ վարդուտս եւ հաքաղատ որդիք մեր փարսամին հմաէ[1] ••• սղս քն եւ քոյր մեր նեՃիս կանկնեցաք զխաչս բարեխաւս մեզ եւ ծնողաց մերոց եւ զաւակաց մերոց արդ աղաչեմք

Բաց 'ի խաչքարիցն են և երկու փոքր մատրունք. և զշրջանակաւ դրան միոյ 'ի նոցանէ գրեալ.

1 Փակագիր գրեալ Թուի Հմաէ՞ և այլ ևս անուն մի եղծ :

**Թ. ՉԻՁ: 'Ի հայրապետութեան եւ թագաւորութեան Հայոց տ̃ն յակոբա եւ լեւոնի եւ 'ի պարոնութեան սահմատինին վերակառուցելս զայս խորան յանուննադրութիւն յ̃ի փրկչին մերո որ է պատճառ աղաւթելոյ 'ի սմա եւ զեւս զի վարդապետս եւ որք աւգնեցին յիշեցէք ✠**

ԱՐՔՈՒՆԻՔ. — *Մի յերևելի հնութեանց Մրենոյ է և աւերակ ապարանքն զոր 'ի վերն յիշեցաք. և յայդ անուն զնա աւանդեն, զի և ոչ այլում ձևոյ նմանեցուցանել կարեմ: ոչ իբրու ամրոցանիստ արքայական, այլ զբօսանաց վայր. և զայդ ոչ 'ի սոյդ ինչ յիշատակարանաց երաշխաւորեմ, այլ այնու ևեթ զի այգեստան էր տեղին և շինուածդ փառահեղ, նմին իրի և թագաւորաց արժանաւոր. զի դուռն որ ցարդ կանգուն կայ վսեմ է յոյժ և գեղեցկաքանդակ շուրջանակի: Ներքին կողմն նորա և երկուստեք որմունքն քարքարեալ խապառ, համդիպակաց որմն ևեթ կիսափուլ 'ի տեղւոջն կայ, յորմէ չէ մարթ գուշակել ինչ և տեղւոյն տարածութիւն ոչ մեծ ինչ: Ի վերայ դրանն արձանագիր կայր, որ և այն մնաց անվերծանելի վասն տեղւոյն բարձրութեան: Ազգ քարանց շինուածոյդ է դեղնագոյն իբրև զպարսպացն Անւոյ, նոյնպէս և եկեղեցւոյն:*

*Մօտ առ եկեղեցւոյն բազում շիրիմք են վաղեմիք. ոմանք բարձրակերտք արկղաձևք, այլք ըստ սովորական ձևոյ. են 'ի նոսա և քանդակագործ զարդք անշուք:*

## ԲԱԳՐԱՆ

*Արքայանիստն և մեծահռչակն Բագրան որ և Բագարան, 'ի հեթանոսութեան ժամանակս ժողովարան դից, ամրոցանիստ թագաւորաց առ Նախնի Բագրատունեօք մինչև ցկործանումն իւր, հնգից ժամուց միջոցաւ տարակաց գտանի յԱնւոյ, և ժամաւ 'ի Մրենոյ: Ի բանից մատենագրաց մերոց համարի սա լինել յԱրշարունեաց գաւառի. սակայն ըստ այժմու բաժանման 'ի Շօրէկէլ է և սա ընդ դատաւորութեամբ Նախճաւանայ: Ի մէջ խորաձորոյն ընդ որ Ախուրեանն հոսի գետ՝ շինեալ է քաղաքս այս յեզրուանդայ երկրորդէ: Դիւրամուտ 'ի հարաւոյ կուսէ՝ ընդ որ երկայնեալ ձգի լայնատարած ձորն, դժուարամուտ է յայլ կողմանց սակս լեռնացեալ քարակարկառ վախիցն և բարձր ափանց ձորոյն, սակայն երկարութեամբ ժամանակաց յանձանձիր աշխատութենէ մարդկանն, օժանդակելով և աւերակացն՝ դիւրամուտ գործեալ է և 'ի կողմանցն: Ընդ հասանել յափն ձորոյն՝ երևութանայ վայրն առ հասարակ հիմնայատակ եղեալ. այնպէս զի ոչ միայն նախնի շինուածոցն հռչակելեաց, այլ և ոչ որմոցն հետք երևին. օրինակ իմն իբրև 'ի յանկարծաբորբոք հրաբխից կամ 'ի սասանութենէ մեծէ հիմն 'ի վեր տապալեալ՝ չէ մնացեալ քար 'ի քարի վերայ: Եւ գուցէ այդ աղէտք անցեալ իցեն ընդ նա. քանզի և քարանցն կոյտք*

առ հասարակ սևացեալք իբրև 'ի հնոցի բորբոքելոյ՝ վկայ լինին ապշեալք անցողացն. և չիք ոք որ հաստատաբանէ մեզ թէ երբ և որպէս կործանեալ է քաղաքդ։ Ցատակ քաղաքին թէպէտ և դաշտավայր ըստ հարաւոյ կողման ձորոյն, այլ ըստ հիւսիսոյ զառիվեր է. ամենայն վայրն բլրաձև բարձունք են մինչև ցվերին ծայր քաղաքին յահեղ բարձրութեան. և է անդ դղեակն մնացորդ բերդին, զոր ոչ կարծեմ շինուած հեթանոսութեան ժամանակի։ իսկ անդր քան զբերդն խորանդունդ մի ձորոյ անջրպետէ զսահման քաղաքին. և բարձրութիւն բերդին հաւասարի հանդիպակաց գետնոյն։ Հայրենասէր ազին սիրտ 'ի բերան շրջի 'ի թագրան նշմարանս ինչ տեսանել 'ի նշխարաց անստուած ժամանակացն, հիմունս կամ թէ քար մի դուզնաքեայ 'ի բազնեացն նախնեաց, այլ 'ի զուր. զի և ոչ մեծահասակ քար մի երևի ուրեք, և ոչ մի քանդակ 'ի միում 'ի մանր քարանց սևացելոց որք կոյտս կոյտս դիզեալ են ցրիւ։ Այդպէս մերկացեալ թագաւորաց 'ի նախնի հնութեանց՝ ծաղկի առ Բագրատունեօք, սկիզբն 'ի սկսանելն Աշոտոյ առեալ. որ անդ եդ զաթոռ իւր մինչև էր ընդարձակեալ Անւոյ։ Այլ արդ աւերակդ այդ մեծ՝ շինականօք սմամբք իբրև 'ի տան տանց բնակեցեալ է։ Սակայն ըստ օրինակին Անւոյ նշանք աստուածպաշտութեան ոչ սակաւք են 'ի տեղւոջն, գեղեցկաշէն եկեղեցիք, զորս մի առ մի ստորագրեմք, և նախ քան զայնոսիկ զբերդն։

ԲԵՐԴՆ. — Արդ 'ի բարձր քարաժեռին, որպէս ասացաք, հիմն արկեալ բերդին՝ խորանդունդք են կողմանք նորա երեքին հարաւ և հիւսիս և արևելք՝ ընդ որ գետն անցանէ, և չորրորդն անմերձենալի, մի ևեթ վերելս ունելով 'ի հարաւոյ քաղաքին. տարածութեամբ անձուկ և երկայնաձև, աշտարակ մի յարևմտեան ծայրն ունելով. իսկ պարիսպքն կիսաւեր։ Առ պարսպաւ որ հանդէպ է քաղաքին՝ հիմունս կամարակերտ իմն շինուածոյ է տեսանել խառն հողով և աւերակօք քարանց, զոր պատշգամբ արքունի կոչեն, կարծեմ վասն տեղւոյն բարձրութեան, որ համարձակ դիտէ ընդ ամենայն քաղաքն. և սակաւք են յորմէ հետէ կործանեալ է։

Ցարևելեան ծայր բերդին հանդէպ աշտարակին է առաջին եկեղեցին ՍՈՒՐԲ ԳէՈՐԳ կոչեցեալ, փոքր և կիսաւեր. զոր սակաւ ամօք յառաջ նորոգեալ են տախտակամած կարկատիւք, շինեալ նմին և գաւիթ։ Ի մէջ եկեղեցւոյն է փոքրիկ մատուռն յաջմէ խորանին, և 'ի նմա շիրիմ սրբոյն, ընդ որով ամփոփեալ ասի մասն 'ի նշխարաց սրբոյն Գէորգայ, անյիշատակ ամենևին թէ յորմէ և երբ, և ոչ արձանագիր ինչ մնացեալ է 'ի քարակերտ մնացուածս որմոց եկեղեցւոյն թէ ցուցէ հաւաստեաւ զկարևոր յիշատակութիւնն։ Սակայն 'ի յանձնառութենէ ուխտաւորաց, մանաւանդ 'ի տօնի Վարագայ խաչին, և յանմիջելի բժշկութենէ հաւատով մերձեցողացն՝ ոչ երկբայական ինչ է. քանզի և նորոգութիւն եկեղեցւոյն եղեալ է ըստ այսմ օրինակի։ Գիւղականի ուրումն անդամալուծութեան հարեալ և չգտեալ ուստեք բժշկութիւն, ձեռնտուութեամբ այլոց գնայ յուխտ անդր. և ապաքինեալ յախտէն 'ի տապանէ նշխարաց սրբոյն՝ ինքնին անօգնական յումքէ 'ի վայր իջանէ. և յօժարակամ վաճառեալ զինչս իւր նորոգէ զեկեղեցին, յանձն առեալ ծառայութեամբ անցուցանել ըզ-

կեանս իւր 'ի տեղւոջն, և մինչև յօրս յայս կենդանի կայ այրն տակաւին: Ցայժ զուարճատես են դիրք եկեղեցւոյն սակս մեծի բարձրութեան վայրացն, որպէս զի ամենայն քաղաքն առհասարակ ակներև կայ առաջի:

Երկրորդ եկեղեցին է 'ի կէս ճանապարհին վերելից 'ի բերդն 'ի տափարակ վայրի, և մեծ քան զԳէորգայն. սակայն միայն հիւսիսային որմն կայ անկործան, և թուական մի 'ի վերայ ՋՂ. և առընթեր եկեղեցւոյն չիրիմք վաղեմիք:

Երրորդ եկեղեցին փոքր է և գմբէթարդ հանդէպ քաղաքին յարևելից կուսէ 'ի գլուխ քարաժայռի միոյ, որ 'ի հանդիպակաց կողմանէ քարափանց գետոյն երկայնեալ է 'ի քաղաքն կոյս խորև ցամաքակղզի անմերձենալի գոլով, և 'ի նմին կողմանէ խորամ անջրպետ կացեալ 'ի միջի. է առ նովաւ և հիմունս բնակարանաց տեսանել: Զեկեղեցւոյդ աւանդութիւն է 'ի դատերէ թագաւորի շինեալ վասն իւր. իբր զի նախ քան զշինութիւն նորին, քանզի անդ բնակէր, յաւուր միոջ 'ի մեծահանդէս տօնի. անագանեալ նորա անցանել ընդ կամուրջն, որոյ աւերակն կայ մինչև ցայսօր, առ 'ի գնալ յեկեղեցի որ յայնկոյս գետոյն՝ աւարտի ժամն. յորմէ տրտմեալ շինէ զեկեղեցիդ առ բնակարանաւ իւրով:

Չորրորդ եկեղեցին քառորդաւ հեռի է արտաքոյ աւերակաց քաղաքին 'ի հարաւ կոյս. և սորա հիւսիսային որմն ևեթ կանգուն կայ:

Հինգերորդն առ երի կայ չորրորդին, և շուրջ զնովաւ պարապէզքն յատագոյն և այգիք՝ արդ աւազք են խաշնարածաց: Նա էր սա մայր եկեղեցին կամ ուխտ միանձանց. արտաքին ձևովն քառաթև է բազմանկիւնի. և առ իւրաքանչիւր թևովն դարձեալ երկուստեք այլ ևս անկիւնք. իսկ 'ի ներքուստ կիսաբոլոր են չորեքին ևս թևքն. երկայնութիւն և լայնութիւն հաւասար թևէ 'ի թև 17 մեդր: Զորս սիւնք են 'ի նմա ոչ միակտուրք. կործանեալ է գմբէթն միայն և մատուռն որ արտաքուստ կից էր ընդ եկեղեցւոյն. հին խաչաքարք և չիրիմք բազում՝ են զնովաւ: Ցեկեղեցւոյս Բագրանու զմին ևեթ յիշատակէ Ցոհաննէս կաթողիկոս, շինեալ յԱշոտոյ որդւոյ Շապհոյ 'ի սպարապետէ Հայոց յաւուրս Սմբատայ առաջնոյ, զճնապայծառ եկեղեցի կոչելով. որոյ շինութեան արձանագիրն էր թերևս որ իբրու փաթոյթ մի ածեալ էր զեկեղեցեաւ շուրջանակի, խոշորատառ 'ի բարձու անընդմիջաբար ընդ երդիւ, խանգարեալ ուրեք ուրեք վասն 'ի վայր հոսելոյ քարանց տեղւոյն. իսկ յայլոց արձանագրաց վերծանելիք են սոքա. և առաջինն 'ի ներքս եկեղեցւոյն:

**վահան քահանա գծող ✠ ՆՁԳ թուականութեանս հայոց 'ի հայրապետութեան տն պետրոսի հայոց կաթողիկոսի 'ի թագաւորութեանն յովաննիսի շահանշահի ես հայր մարկոս որդի շապհո քահանայի դնեցի զմարս . . . հողն 'ի շահանշահէ եւս դրամ յիմ հալալ ընչից եւ արկի այգի եւ շինեցի հնձան եւ գնեցի ⧖ և ⧖ ափնի հող 'ի խորձան . . . եսաւր որդո 'ի գառնովնի եւ հողս 'ի դաբրնին նոյն տեղն: Ե:**

'ի հող մի զանձէ փողի եւ հող մի սուլտանին . . . եւսի եւ մռեղին տներն բաղրնի եւ . . . ց մի բաղրնի եւ ջաղաց մի մեր-նի եւսու 'ի Տ̃ր կաթողիկէս վասն շահանշահի հոգւոյն եղէ . . ընդդիմանա այսմ գրոյս 'ի մեծաց կամ 'ի փոքունց յափշտա-կէ կամ . . . պարտական եղիցի . . . արեանն Ք̃ի եւ իմ ամե-նայն ազգի մեղաց տէր է , յԺԸ : հայրապետացն նզովեալ ե-ղիցի .

*Շուրջանակի զորմովք եկեղեցւոյն արտաքուստ .*

✠ Նւ ես . . . . . . նեցի զխուլպանս եւ միաւորեալ շինեցի եւ էտու 'ի կաթողիկէ ունելով բարեխաւս առ Ք̃ս վասն թողութեան մեղաց իմոց որ դմա հակառակ կա իմ մեղացս եւ ծնողաց իմոց պարտական լիցի եւ բաժին նորա ընդ յու-դայի լիցի .

Ո : Կ : 'ի թուին հայոց գրեցաւ ես հայր առաքելս որ ձկի իմ ազգայկանաւք 'ի տապանայտունս վերըստին նորոգեցաք զհնացեալ Տ̃ր ուխտս ողորմութեամբ ամիր սպասալար զա-քարէի որ էտու զբազարան ես դաւիթ որդի շոթոկայ որ ե-տու զապպէ խարժին սաղին հողու զկարմընջխելին նեքքի ջաղացն 'ի տապընտան Տ̃ր կաթողիկէ վասն ամիր սպասալար զաքարէի հոգւոյն հաւր շահըշահի հայրս վարդանն եւ տրդատ փակկալ եւ այլ միայ բանքս հաստատեցաք զաւագ խորանն որ պատարագ կատարեն անխափան հաստատեցաւ գիրս 'ի պարոնութ̃ս գրիգորոյ ով այս իրացս հակառակայ նզովեալ լիցի : յԺԸ : հայրապետացն .

ՈՀԳ : ես վարդս բազմերանոյ ըւմյխաս որ էտու զիմ դան-ձայգին զչընդխրային այգին 'ի Տ̃ր կաթողիկէս որ կատարեն տարին երկու աւր ինձ եւ մի աւր կենակցին իմոյ թանդխին . ես խաչիկ որ գանձայգին արարի զպուշխին եւ էտու 'ի Տ̃ր կա-թողիկէս վասն փրկութեան հոգոյ իմոյ որ տարին երկու աւր ժամ կատարեն անխափան :

Ես խուշուշս աղըձացի որ էտու զիմ այգին որ 'ի մէջ սառ Ծածաքին է որ յագարկեն է 'ի սբ կաթողիկէս որ տարին աւր մի ժամ կատարեն․ Ես սարգիս եւ ստեփաննոս որ գնեցաք շուքէրեախն ջաղացըաղն եւ շինեցաք եւ տվաք 'ի սբ կաթողիկէս որ տարին երկու աւր ժամ մին սարգսին եւ մին ստեփաննոսին ։ ո հայր վարդան 'ի տրաստաս եւ այլ միաբանքս որ հաստատեցաք էթէ ոք հակառ կա կամ յապշտակէ ։ յԺը ։ հայրապետացն նզովեալ լիցի ․

✠ Ես Ծատուր բագրամեայ երէցս ետու զիմ աղըձացէգին որ 'ի դէմս էղէրին է հայր մխիթարա ձեռաւք սբ կաթողիկէիս եւ սպասաւորք սորա հաստատեցին մեզ 'ի տարին աւր մին ժամ․

✠ յայսմ ամի որ էր Թիւս հայոց 'ի ։ ՈՉԲ ։ եղեւ ուխտադրութիւն սբ կաթողիկէիս ձեռամբ հաւր մխիթարա եւ դաւթի եւ այլ միաբանութեանցս եղեւ այր որ 'ի քս փոխի 'ի սբ ուխտէս պարտական է որ ով հայր լինի իւեցոյն ։ Է ։ քառասունք ժամ կատարէ մատաղով եւ արեգայլին մին քառասուն աւր որ գրեալս խափանեալ ջանա զվարձս յուդայի առցէ եւ զանայծս զկայենի ժառանգեսցէ եւ ։ յԺը ։ իցն որոշած է 'ի մահ եւ 'ի կենանք աւաղ ։․

'ի ՈՉԴ կամաւն այ Ես դուհարշահըս կողբացի զիւղակից դուլըլքանն էտու զմեր գանձագին էգին որ կունեխանց հողէն եւ հայր մխիթարա ձեռաւք 'ի սբ կաթողիկէս որ 'ի տարին ։ Է ։ աւր ժամ կատարեն իմ դստերն տիկեսմանին աւր որ ըղգրեալս չառնէ յայ նզովեալ լիցի ․

Ի նոյն կարգ առաջնոյն ընդ խաչքարիս ․

'ի Թուիս ՈՉԴ շնորհիւն այ Ես աւտարս կողբացի տղի յովհաննիսի եւ ամուսին իմ սեդայ կանգնեցաք զսբ նշանս ձեռամբ հայր մխիթարա եւ տվաք զմեր աղբաւրցն կէսն սուրբ

կաթողիկէիս որ 'ի տարին ։ ե̃ ։ աւր ժամ կատարեն մինն ինձ եւ միւսն յովանիսի ակն այն է որ զւկենց կոչի որ զվերա-գրեալս խափանէ դատի 'ի քէ̃ ա̃յ մերոյ •

Տեկոր. (այժմ Տիկոռ.)



Գիւղս այս հեռի է յԱնւոյ իբր չորիւք ժամօք, 'ի հարաւոյ արեւմտից նորա. լեռնապատ յերից կողմանց, յարեւելից եւեթ ունելով ճանապարհ արահետ. և գետակ մի անցանէ ընդ մէջ նորա եկեալ 'ի ձորոյն Պէչքիլիսէի յարեւմտակողմանն լերինն որ 'ի թիկանց նորա ։ Հոյակապ է և եկեղեցի գեղջս, իսկ կաթողիկէն որ ամբարձեալ է 'ի վերայ չորից ստուար սեանց՝ լայնանիստ է և ոչ համեմատ բարձրութեանն ։ Աւանդատունքն առ խորանաւն կրկնայարկ են և երկայնաձև ձգեալ արտաքս քան զրուն որմն եկեղեցւոյն ընդ հիւսիս և ընդ հարաւ ։ Երկայնութիւն եկեղեցւոյս 22 մետր, և $14\frac{1}{2}$ լայնութիւն ։ Աւագ դուռն նորա յարեւմտից եղեալ է, և բաց են միւս երկոքեանն 'ի հիւսիսոյ. շուրջ զեկեղեցեաւն կարգք աստիճանաց են իբրև հնգից զի 'ի բլրակի հիմն արկեալ է նո-

րաս. Թէպէտև յանփոյթ լինելոյ մարդկանն ընդ հողով ծածկեալ են առաւելագոյն մեծաւ մասամբ: Զգլխաւոր այս յերկուց անուանցն սեփականել զտաճարս, սրբոյն Սարգսի եթէ Երրորդութեան, զի յարձանագիրսն միօրինակ յիշատակ լինի երկոցունց եւս. և ժամանակ շինողին և շինութեանն յայտնի կան 'ի նոսա թէպէտև կարօտք հմուտ քննութեան*. և են այսոքիկ. յորոց առաջինն է 'ի վերոյ բարաւորի դրանն արևմտից.

Հիմնարկեցաւ[1] տեղիս 'ի ձեռն յոհաննու կաթողիկոսի եւ յոհաննու արշարունեաց եպիսկոպոսի եւ ա. . յրոնի տեկորոյ սանայ երիցու եւ մանանայ հազարապետի յիւր բարեխաւսութիւն եւ բոլոր ազգիս եւ ամուսնի եւ որդեկաց եւ սիրելեաց եւ սրբոյ սարգսի սահակ կամսարական շինեաց զայս վկայարան.

վերոյ քան զնա յաղեղնաձև ճակատու նորին դրանն.

'ի ՆԾԷ Թուականութեանն Հայոց ✠ յանուն ա̃յ կամ եղեւ ինձ կատրանիդէ Հայոց Թագուհի դուստր Վասակա եւ ամուսին Գագկա Թողեալ եմ զտեկորոյ շաղյատն վասն Գագկա շահնշահի արեւշատութեան եւ իմ որդեացն եւ վերակացուք սորա պարտական են զերանի որում թողութիւն առեն հանապազ արդ արդ թէ ոք խշխիցէ լուծանել 'ի սբ̃ երրորդութենէն եւ ես աշոտ Թագաւոր հաստատեցի եւ թողեալ եմ զհարկն ընավիմբ յաւխտենից եւ զթասակն վասն իմ արեւշատութեան եւ իմ ծնողաց եւ եղբարց եւ զաւակաց իմոց որ ար: Թ: կ: Հաոց: Ն: Կ: Գ: էր արդ եթէ ոք հակառակ գա կամ հարկիս կամ շարիատիս թողլուայճը

* Ըստ մերոյ քննութեան կառուցեալ յելս Ե դարու, մի է 'ի հնագոյն եկեղեցեաց համօրէն քրիստոնէութեան, և չնաշխարհիկ գատառակերտ արրաղան և հայկական ճարտարապետութեան, ընդ որ սխրացան և հնագէտ հմուտք արուեստին, թէպէտ և ոչ ծանեան այսքան հին զսա:

1 Հիմնարկութեանն բան յարձանին, որ 'ի չորս տողս բովանդակեր, այլ և այլ տառիւք էր փորագրեալ խոշոր և մանր իւրաքանչիւր տողքն, և էին յաղեղնաձև բարաւորի դրանն. առաջնոյ տողին սխալեալ այսպէս.

. . . ուրանայ եւ հոռո . . .
. . պիսկոպոսի եւ ա . . յրոնի տեկորոյ սանայ երիցու եւ մանանայ հազարապետի
Հիմնարկեցաւ տեղիս 'ի ձեռն յոհաննու Հայոց կաթողիկոսի եւ յոհաննու արշարունեաց յիւր բարեխաւսութիւն եւ բոլոր ազգիս եւ ամուսնի եւ որդեկաց եւ սիրելեաց եւ սրբոյ սարգսի սահակ կամսարական շինեաց զայս վկայարան.

Իսկ բառքն «ուրանայ և հոռո...» խոտորեալք 'ի կարգէ առաջնոյ տողին որպէս է 'ի գաղափարիս, նախընթաց արձանագրին միացորդ երևի, որ 'ի վերոյ էր քան զսա 'ի ճակատ նոյն դրանն, թէպէտ և ոչ միահետ ընդ վերջնոյ տողի նորին:

իւրեն նզոված է երերեալ լիցի որպէս կայեան անիծեալ որ-պէս քանան բաժին նորա ընդ Յուդայի եւ ընդ խաչահանուացն եղիցի վասն ո՛ր սորայ շինութեան եւ վասն մեր հոգեւոյս աղաւնեցաք զայդ և հայր եւ մայր եւ որդիքս արդ մեր մե-ղացս եւ մեր ազգի մեղացս տէր է որ ընդդիմանայ.....

ի հիւսիսոյ կուսէ.

Թ. ՆԻ ✠ յանուն ՚այ ես խաւարեւանիւշ հայոց Թա-գուհի հաստատեալ իմ զանեկորոյ շարեալ յեղն կայթ մի արդ մի որք իշխեսցէ լուծանել ՚ի ՚ո՛ք երրորդութենէս.

✠ ՚Ի ՆԼԸ Թ. յանուն ՚այ ես գրիգորիկս ետու (այդքանդ փո-րագրեալ էր, իսկ որ զկնի նորա տողքն նկարէին և ջնջեալք առ հասարակ)

՚Ի ՆԿԷ Թվ. յանուն ՚այ ես Թաթուլս Թողեալ իմ զանե-կորս հարկն վասն յէկանեսս Թագաւորի եւ իմ որդոյն երկար արեւշատութեան արդ եթէ ոք հակառակ կա իմ մեղացս եւ իմ ազգի մեղացս պարտական է առաջի ատենին Քի.

ՆՂԱ Թվ յանուն ՚այ ես տիկաց տիկին դուստր քրդորոյ մագխտորուսին եւ ամուսին սուրբ արեւելից վէսախա Թո-ղեալ իմ զանեկորոյ զպաշդխատս շահանշահի արեւշատու-թեան եւ իմ ծնողացս հոգոյն արդ եթէ ոք հակառակ կա իմ ծնողացն մեղացն պարտական է առաջի ահեղ ատենին Քի բաժին ընդ յուդայի եղիցի կատարիչ հրամանիս աւրհ-նեալ եղիցի. ծառայիկս յաղաւթս յիշեցէք ՚ի Քս.

✠ ՆՁԵ Թվ հայոց ՚ի Թագաւորութեան յիկանիսի շա-հանշահի եւ հայրապետութեան Տն պետրոսի հայոց վերա-դիտողի եւ ՚ի տէրութեան սուրբ արեւելից դուկիս ես հաս.. շահիկս եւ նկեցպանս միաբան եղբայրաւքս խծկաւ-նից վանսն տեկորոյ ջրոյս եւ ագարակույց ուղեկս զինչ առջի Թագաւորու..ն լէլ է : դ : աւրս եւ : դ : գիշեր տեկո-

**րոյ է ։ Գ ։ ..ար եւ ։ Գ ։ գիշեր աղբիւրս հարցի ․․ Երբ եւ գե-
տողս նզովաւք եւ երդնլով աւրհնութ այս է ենէ որ հակառա-
կայ ։ Յ ։ Ժ ։ Ը ։ Հայրապետաց նզոված է բաժինն ընդ յուդայի
եղիցի եւ ընդ այլ խաչահանացն եղիցի եւ ընդ այլ չարա-
գործաց որ առեալ են քն 'ի գործն... 'ի վեր մինչեւ յաշտանն
հանապազ զայր ջուրն լերինն անխափան ․**

**Խծկօնք, (ուխտ սրբոյն Սարգսի․ այժմ Պէշքիլիսէ․)**

Կիսաժամաւ հեռի 'ի Տեկորոյ յարեւմտից նորա՝ անդր քան զլեառնն նոյնա-կողման, 'ի հանդիպակաց եզերս երկայնաձիգ և խորին ձորոյն 'ի վերայ այլ և այլ բարձրաբերձ քարափանց հիմնացեալ են հնգեքին եկեղեցիքս հրաշակերտք 'ի վեստն Սարգսէ 'ի սկիզբն մետասաներորդ դարուն, զոր օրինակ վկայեն Սա-մուէլ և Կիրակոս։ Ընդ տեսիլ դոցա յիմարի հայրենասէր ոգի թէ որպէս յանօ-րէն ձեռաց արգասիք այդպիսի ելանիցեն աստուածպաշտութեան․ այլ անշուշտ նախ քան զանկրաւեալն տիրամատնութեամբ՝ յօժարեալ է հիմնադիր լինել տա-ցին։ Զմարթի ճշդիւ պատմել զգեղեցկութիւն եկեղեցեացս, որք արդարեւ զա-նազան վանորէիցն բերեն զնմանութիւն, մեկնեալ զատուցեալ 'ի գիւղաբնակ շինականաց և ապահովացեալ 'ի բազմամբոխ ժողովրդոց վասն դժուարութեան ճանապարհին, մանաւանդ յարեւմտից կողմանէ։ Ընդ անեղծ առողջութիւն նոցա մինչև ցօրս այս զարմանայ տեսողն․ զի արդ աւելի քան ութ հարիւր ամք են յորմէ հետէ հիմն արկեալ է դոցա, և տակաւին այնպէս անխախտ կան և անա-րատք ներքոյ և արտաքոյ, մինչև կարծել եթէ այսօր ճարտարապետին աւար-տեալ զշինուածսն մեկնեալ է 'ի տեղւոջէն․ ասա՛ղ, զի անբնակ է արդ 'ի մարդ-կանէ։ Ընդ ամենայն գաւառն Շիրակայ չիք այլ եկեղեցի անեղծ կացեալ ամե-նայն մասամբքն քան զսոսա հանդերձ հնգեցուն ևս կաթողիկէիւքն․ չիք նոցա հոյակապ մեծութիւն, այլ գեղեցկութիւն և եթ, զոր կրկնապատիկ առաւելու պայծառափայլ դեղնութիւն քարանցն առ հասարակ։ Հանդերձ այդոքիւք և դրիցն աչաւորութեամբ պատկառելիք են․ քանզի 'ի կողմն խորանդունդ ձո-րոյն, ընդ որ գետակն իջեալ յարեւմտից ընթանայ յարեւելս, քարաժայռս լեռ-նանմանս երկայնելով 'ի գետակն կոյս՝ հիմնաձողի եղեալ է դոցա։ Յորոց երեք սկսեալ յարեւմտից 'ի միում քարաժայռի կան, որմով և կամարաւ կցեալ ընդ միմեանս արտաքուստ․ և են 'ի շրջապատ պարսպի, յորում և դռնաքեայ խըց-կունք վանականաց քայքայեալք առ հասարակ։

Առաջին յերից եկեղեցեացդ է յանուն սրբոյն Սարգսի, արտաքուստ բոլո-րաշէն, իսկ 'ի ներքուստ խաչաձև, այլ նոյնպէս բոլորշի են թևք իւրաքանչիւր․ երկայնութիւն թևէ 'ի թև 12½ մետր և լայնութիւն 11։ Զորս մատրունք են 'ի նմա, երկու առ խորանաւն՝ հանդերձ վերնայարկօք, և այլ ևս երկու հանդէպ

նոցա ։ Արձանագրութիւնք նորա ամենայն արտաքուստ զերեսօք որմոցն են շուր֊ ջանակի , և են այսքիկ .

յանուն այ ՆՁԲ Թուականիս Հայոց տն պետրոսի Հայոց կաթողիկոսի եւ ՚ի թագաւորութեան սմբատայ շահանշահի որդւո գագկա շահանշահի ժամանակի որ եր որդխացեալ եւ սիրելի ծորտ սարգիս ։ գ ։ ից թագաւորաց հոռոմոց տուեալ ։ գ ։ ից պատիւ անթիպատ պատրիկ վեստ եւ դուկ արեւելից արդ հրամանաւ սոցա կամ եղեւ եղբարց որդոցս եդդուալը հասնս եւ խատապատալ զմեր արկեալ եգին որ ՚ի գագկանս յեղերն եբաս խա ՚ի վաքս տեկորո արեւշատութեան շահի եւ դուկիս մեզ եւ մեր ծնողաց մեղաց թողութեան թէ որք այս գրոյս հակառ կա եւ յես տրքոցս հանէ զաւծին կանին յուդայի խաչահանուացն զանէծան առցէ ։ յՃԸ ։ հայրապետ֊ տացն նզոված է նա երրորդութենէն մի գացի ողորմութիւն յաւուր դատաստանին ։ հայր որ ՚ի վանքս նստի ամեն տարի ։ դ ։ քառասունք կատարել պարտի մեր ծնողացն եւ յետ մեր վախճանի մեզ թէ ոչ ընդ նոյն անիծիւքս անկցի եւ առաջի այ մեր մեղացն պարտական է ։

շնորհիւն այ ՚ի ՈԲ Թու եղեւ նորոգումն վերստին ՚ի ձեռն պաւղոսի ուխտի սբ եւ հաստատեցաք որ թէ ոք յեղբարցս փոխի ՚ի քս եւ հայր որ լինի պարտի առնել ճ քառասուն ժամ եւ ամենայն եղբայր մի աւր պատարագ առնէ ․ եւ որ չառնէ պատարագ Ճ կանոն աղաւթս առցէ աբեղայքն ճ քառասուն հայրն լաւ մատաղ առնէ որք հաստատուն պա֊ հեն զգրեալս աւրհնեսցին յայ եւ խափանիչքն նզոված են ․

կամաւն այ ՚ի ՈԿ Թուաբերութեանս Հայոց ես զաքարէ ամիր սպասալար Հայոց եւ վրաց որդի սարգսի աղաւեցի մեր ուխտս զայս իմով արեամբս ՚ի յայլազգեաց եւ ետու ՚ի սբ սարգիս զվասկափող մշկաղբիւրքն եւ այգի մի ՚ի բաղդրան

եւ շինական մին 'ի գիւղս յիշատակ հոգւոյ իմոյ եւ յարեւշատութիւն հարազատ որդւոյ իմոյ շահանշահի եւ եղբաւր իմոյ իւանէի հայր յովհաննէս եւ այլ միաբանքս հաստատեցի զս̃բ սարգսի զաւագ բեմ̃ն անխափան պատարագ տանել ինձ միջնորդութե̃ դաւթի որդւոյ շոթըրուկայ այրդ էթէ ոք յիմ ազգականաց եւ կամ յաւտարաց եւ կամ 'ի հարանց զիմ զյիշատակս խափանէ եւ զմասկափաւղ յայս սրբոցս հանէ՝ զաւձին ։ զկաենին ։ զուդային ։ զխաչահանուաց զանէծսն առացէ ։ յԺ̃Ը ։ իցն 'ի ս̃բ երրորդութենէն մի դատցի ողորմութիւն ամէն ․

Թ ․ ՌՀ ․ յայսմ ամի 'ի տէրութեան շահանշահի կամաւ բարերին ա̃յ ես խաչատս շեխեանց եւ ամուսին իմ աւագ-տիկին միաբանեցաք սուրբ ուխտիս խծկաւնից եւ տուաք զմեր հայրենի տներն որ ընդդէմ դոգոնց ս̃բ սարգսի է եւ զկուզպակն որ 'ի վերա ծուաղո̃կակին է եւ հայր յովհաննէս եւ պաւղոս վարդապետս եւ այլ ս̃բ եղբարքս հաստատեցին 'ի տարին Է̃ աւր պատարագ ․ Գ̃ ․ աւր խաչատին տանեն ․ Գ̃ ․ աւր աւագ տիկինա ․ Ա̃ ․ աւր ապիրատին ։ արդ որք հաստատուն պահեն զգրեալս աւրհնեացին յա̃յ եւ խափանիչքն որոշեալ եղիցին 'ի ս̃բ երրորդութենէն ամէն ։ տներն 'ի մայրաքաղաքին է 'ի յանի մաւտ 'ի տիգրանանց 'ի դուռնն ․

Թվ ․ ՌՀԹ շնորհիւն ա̃յ ես քամիլ որդի ծուծային զաւրավար ամիր սպասալար շահնշահի ա̃ն իմոյ գնեցի 'ի հալալ արդեանց իմոց զայգին որ 'ի բագրան զոր Ջնազին կոչի եւ ետու 'ի ս̃բ ուխտս խծկաւնս 'ի ս̃բ սարգիս յիշատակ մաւր իմոյ շուշկանն եւ եղբաւր իմոյ վարհամայ եւ սպասաւորք եկեղեցոյս սահմանեցաք զնաւասարդին աւուր պատարագն անխափան տանել շուշկանն եւ վարհամայ կատարիչքն աւրհնեալ եղիցին եւ խափանիչքն անիծեալ եղիցին ․ խաչատուր գրիչ ․

'ի ։ ՈՁԲ ։ Թուխս շնորհիւն քո ես աբրահամ երէց որդի սարկաւագ քահանայի Թոռն սամուէլ երիցոյ անեցի ետու զիմ դանձագին ։ Բ ։ տուն նորաշէն եւ 'ի վերէն Բ կուղպակ 'ի մ̃ր ուխտս 'ի խծկաւնս յառաջնորդութեան տ̃ր աբասա եւ վարդապետ պաւղոս եւ յայլ միաբան մ̃ր եղբարցս եւ փոխարէն հատուցեն մեզ յամենայն ամի ։ Ղ ։ աւր պատարագ ։ Գ ։ աբրահամու եւ ։ Բ ։ տ̃ր պաւղ երիցու եւ ։ Ա ։ հարկեացն կատարիչք դրոյս աւրհնին յ̃այ եւ հակառակքն որոշին 'ի քէ եւ յիմ ժամէս ետու 'ի սուրբ սարգսի կողման ննջեցեալսն ։ Գ ։ խոցադեղին ։ Բ ։ յոհաննէս երիցու ։ Գ ։ անրանցին ։ Բ ։ շահնամին այլ ոչ ում արժան չէա հետ գուզէն հայր որ եթէ յանդգնի ծախել կամ գրաւկանել մի փոցէ ողորմութիւն 'ի տնէ յիշեա ք̃ս զգրիգոր աշխատող եւ զախմանոս ։

Թուխս ՈՁԹ շնորհիւ եւ ողորմութեամբն ա̃յ ես բռնաւորս ծառայ քո եւ ամուսին իմ տղա տիկին ողորմութեամբ ա̃ծ աւէր պարոնի իմո գրիգորի միաբանեցաք մ̃ր ուխտիս խըծկաւնից եւ ընծայեցաք 'ի սմա զմեր դանձագին այգին որ 'ի մրեն է զոր աղտոտն կոչեն եւ աւետման մեծագին 'ի ձեռն ա̃ծապատիւ եպիսկոպոսիս տ̃ր աբաս եւ այլ մ̃ր եղբարցս եւ սոքա փոխարէն հատուցին մեզ զզաղարու տաւնին պատարագն մինչեւ 'ի գալուստ բանին ա̃յ զկէսն ինձ առնեն բռնաւորիս եւ զկէսն զուգակցի իմո տղա տիկնա արդ որ զգրեալս մեր կատարեն աւրհնեալ լիցին 'ի քէ ա̃յ եւ որք խափանեն որոշեալ լիցին 'ի փառաց որդւոյն ա̃յ ։

*Առ երի եկեղեցւոյդ 'ի հիւսիսոյ կայր խաչքար մեծ և գեղեցկաքանդակ․ էր նորա արձանագիր 'ի կողաց․ բայց որմն որ ընդ մէջ կայ նորա և եկեղեցւոյն՝ խափանեալ է զարձանագիրն զայն և զմի յարձանագրաց եկեղեցւոյն, յորում Թուականն երևէր ՈԿԳ ։*

*Ի հարաւոյ կուսէ մօտ 'ի փոքրիկ մատուռն որ կից է եկեղեցւոյն՝ 'ի վերայ որմոյ և գետնոյն հաւասար է տապանագիրս․*

Թուական ՈԾԷ ես գ. . . . ոս աշակերտ մարգարէի քահանա . . միայնաւորի կանգնեցի զխաչս պահապան գերեզմանի սորա եւ եղբաւր իմում տաւաքելին աղաչեմ յիշել յաղաւթս ձեր . . զվարդապետս : զպ̃ղղ : եւ զանդրէաս եւ զծընողսն իմ. եւ զսր̃ տաւաքելն որ նահատակեցաւ 'ի կեչառս քաղաքի զանազան տանջանաւք.

Երկրորդ եկեղեցին տասն քայլիւ բացատ յառաջնոյն և վարկպարազի որմով կցեալ ընդ նմին, բաղմանկիւն բոլորշի է արտաքուստ, 'ի ներքուստ խաչաձև, և դրունք նորա երկու. երկայնութիւն եկեղեցւոյն ինն մետր նոյնչափ և լայնութիւն. և աւանդատունքն չորք ըստ օրինակի առաջնոյն: Էր սորա երկայն արձանագիր 'ի հիւսիսոյ կուսէ անընդմիջաբար ընդ քուով յարկին, այլ խանգարեալ է. նոյնպէս և 'ի հարաւոյ, կէս մի եղծեալ և կէս մի խափանեալ ընդ կամարաւն՝ որ զաւիթ է երրորդի եկեղեցւոյն. սակայն Թուական մի երևէր անդ ՆԾԵ. և 'ի խանգարմանց անտի անուն եկեղեցւոյն մնայ անծանօթ: Միայն 'ի վերայ արևմտեան դրանն կայ համառօտ բանս.

այս դուռն ա̃ծ է եւ արդարք մտանեն ընդ սա.

Երրորդ եկեղեցին որմակից է նախընթացին կանգնեալ յանուն սուրբ Աստուածածնի. և է սովորական ձևով քառանկիւնի արտաքուստ և ըստ ներքին կողմանն իբր խաչաձև, զի են նորա Թևք կարճագոյնք. տարածութեամբ փոքր է քան զերկրորդն: Գաւիթ նորա զառաջեաւն և կամարակապ, և այն միայն կիսակործան կայ ոչ ինչ վնասեալ եկեղեցւոյն, որոյ յարևելից կուսէ 'ի բարձու արձանագիր կայ նորոգութեան նորա, օրինակ զայս.

'Ի Թուիս ՈԿԲ շնորհիւն քի̃ ես տիգրան հաւատարիմ ծառայ մանդատոր Թախուցէս ամիր սպասալար շահնշահ զաքարիաի տեառն իմո տեսի զպանդխտութիւն սուրբ ուխտիս խծկաւնից եւ Թափուր յամենայն ընչից ես վերստին նորոգեցի ամենայն պիտոյիւք եւ ապաւինեցա 'ի սբ̃ մայրս լուսոյ եւտու զիմ զգանձագին ակն մին ձիթահանքն որ յանի է եւ այգի մին 'ի մարմետ է որ միջնայգի կոչի յառաջնորդութեանս հաւր յոհաննիսի եւ սբ̃ եղբարցս եւ փոխարէնս հաստատեցին զեկեղեցիս իսկզբանէ տարոյն մինչեւ ցկատարումն տարոյն յիմ անուն կատարեն եւ 'ի տարին : Խ : ունք մին իմ պարոնին զաքարիաի յիմ եկեղեցիս եւ զայլն որչափ ես կենդանի

եմ իմ ծնողացն եւ ապա ինձ յետ առ. քս̃ ճանապարհորդելոյն. մինչեւ 'ի գալուստ բանին ա̃յ եթէ ոք 'ի մեծաց կամ 'ի փոքունց զյիշատակս մեր խափանէ եւ հակառակէ ոսոխ եւ դատիչ բարկութեան ա̃ր ա̃ծածինս եղիցի եւ որք հաստատուն պահեն աւրհնեալ եղիցին 'ի քէ̃ .

Չորրորդ եկեղեցին կէս քարընկէց հեռի է 'ի նախագրելոցդ երեցուն յարեւելս նոցա յայլում ապառաժի. ձեւով և մեծութեամբ նման երրորդին ։ Որմունք եկեղեցւոյս չունին աւանդս ինչ յիշատակարանաց. նմին իրի և անուն նորա մնայ անյայտ ։ Շուրջանակի զեկեղեցեաւն են արկղաձև գերեզմանք. յորոց 'ի միումն գրեալ է

ա̃ծ ողորմի գրիգորո ամէն .

և 'ի միւսումն՝ որ մարտիրոսի է շիրիմ, յորոյ վերայ կայր երբեմն խաչաքար, և կործանեալ նորա և ընդ նմա մասն մի տապանագրին, այս հատուած մնայ .

. . . որ նահատակեցաւ եչրոր (գուցէ կեչրոր) քաղաքի առդ. որք երկրպագէք քի̃ ա̃ր նշանիս յիշեսջիք զմեղ. որ կայք (կամ կամք) առաջի սորա . Թվ հաոց ՈՀԱ.

Հինգերորդ եկեղեցին քարընկէց մի հեռի 'ի նախընթացէն յարեւելից նորա, 'ի միւս եւս յայլ ապառաժի. մեծութեամբն և ձեւով համանման երրորդին և չորրորդի. այլ սա պարսպապատ է ։ Անյայտ է և սորա անուն առ 'ի չգոյէ կարեւոր արձանագրաց յորմունս նորա ։ Ի ներքս պարսպին առընթեր դրան եկեղեցւոյն որ է 'ի հիւսիսոյ կուսէ՝ կանգնեալ կայ խաչաքար մեծ և փառահեղ իբրև զառաջնոյ եկեղեցւոյն, և է 'ի վերայ հնգկարգեան ատենանաց պատուանդանի ։ Առ նմին կան երեք որորաձև գերեզմանք, յորոց 'ի միումն է տապանագիրս այս .

'ի ՆՁԳ Թուիս ես հաջաջ որդի ապլհա . . . տղական հասակի ելի յաշխարհե եւ ոչ տեսի . . (զմ)աերլչութն սորա եւ սուգ մեծ Թողի ծնողաց իմոց առ. քս̃ յիշեցէք զիս ող.

Ցարեւելակողմն պարսպին այլ խաչաքար է ագուցեալ, և ընդ նովաւ տապանագիրս .

Թվ. ՈՁ. այս է հանգիստ անեցի գրիգորո եւ աւթեւան որք կարդէք յաղաւթս յիշեցէք ա̃ր ա̃ծ ողորմեայ սմա .

Ի վերայ հարաւակողման պարսպին.

Ես Թամարս որ կամս առաջի մբ զենարանիս այ եւ սպասեմ գալըստան տն.

### Ագարակ կամ Ագրակ (այժմ Էգրէկ.)

Հեռի է գիւղս ՚ի Տեկորոյ երեք քառորդաւ ժամու՝ ՚ի վերայ բարձր դաշտավայրի։ Եկեղեցի նորա խաչաձև է միջակ մեծութեամբ, և կաթողիկէն անկործան։ Ի հիւսիսոյ նորա կայ միւս եւս եկեղեցի ոմակից նմին, որոյ միայն երկուտեք որմունքն միան կանգուն. Երկայնութիւն նորա 15 մետր, լայնութիւն 5 ½։ Անկործան եկեղեցւոյն արձանագիրք առ դրանն կան. յորոց առաջինն յոյժ խանգարեալ, այսչափ եւեթ վերծանի.

ՆԾԵ ✠ յանուն այ ես աղ . . ն . . . . .
կ հերթ եսու զլրփողիս . . . .
զմարգ զամեն շաղ իմ արտէս վ . . . .
զաղունգ մրտո կաթողի
կեփ խնգագին եւ տուել եմ
Թաղի ոսկահանա եւ իւր զաւ
ակացն եւ ինքս աղ . . եալ եմ
յամէն չարէ վասն ամբարտա շահանշահի արեւուն եւ տարը-
ներսեհի հոգւոյն եւ պարոնի։ Ի։ որ ժամ տարներսեհի թէ
ոք այս հրամանիս հակառ կա նզոված է.

յանուն այ այս իմ գիր անահոկիս որ ավել եմ ՚ի կիրակոսի կաղիս վասն յիմ ոգոս զունենս իմ արեմ փորած եւ զաւակաց ՚ի

յանուն այ ես գէորգ եսու զձիթահանքս ՚ի մբ կաթողիկէ եւ ՚ի գէորգ երեց եւ պարոն տարին։ Ի։ աւ . . . եւ ես աշոտ հաստատեցի եւ ես տր անանէ վկա . . . արդ եթէ ոք հակառակ կա ՚ի մեծաց կամ ՚ի փոքունց։ յՃը։ իցն . . . նզոված է բաժինն ընդ խաչահանուացն եղեցի.

. . . . . այսոց եթէ ոք հակառակ կա ՚ի մեծաց կամ զգիր եղծէ յՃը իցն ապերակ է հոգով եւ մարմնով.

### Ծպնի.

Եկեղեցի գեղջս միջակ է մեծութեամբ, խաչաձև, և կաթողիկէն կիսափուլ. Չկայ նորա արձանագիր. այլ յորմունս երևին բարձրաքանդակ պատկերք ե-զին, առիւծոյ և թռչնոյ.

### Նախճաւան.

Ի գիւղս յայս մեծ, որ և գաւառագլուխ համարի հարաւակողմանցն Շորէ-կլի, կայ մեծակառոյց եկեղեցի յանուն սրբոյն Ստեփաննոսի. կործանեալ է կաթողիկէն և գլխի նոր յարկեալ, և որմունքն կարկատեալ ուրեք ուրեք. Դոյզն արձանագիրքս նորա չտան զկարևորն ծանօթութիւն, յորոց առաջինս առ դրանն կայ 'ի ներքուստ.

. . . 'ի ՆՋԴ թուականիս 'ի թագաւորութեանն ամբա-տայ շա . . . րդ-ո գագկա ես գրիգոր . . . եւ թոռն չուսա-ւին . . . աննոս յիմ հայրենի . . .

Արտաքոյ 'ի հարաւոյ.

. . . նայ կամաւքն ամբա . . . անդրէաս մրենոյ . . . խաւ-սութեամ ո̄բ ստեփան . . . ահանշահի գագա որ . . 'ի կատա-րած աշխարի . . . դոյն արեվոյն եւ . . .

Ի հիւսիսոյ խոշորատառ, յորում որոշ վերծանին այս բանք միայն

. . . ստեփանոս յառաջառաքեալ եւ նախաստար . . . զգրի-գորի ծնաւղն . . . հիպատո . . .

### Ինքնուրոյն բանք զարգացանողութեան Շիրակայ.

Զոր ծերունին խորհոյ համառօտիւք յայս տանէ զքաջ արգասանդութիւն գաւառիս, յիշեալ առ նմին և զեկեղեցեացն աւատակելս, որ վասն ուկորայինն Շա-րայի, զնոյն է տեսանել և այժմ. Համբաւեալ են յայժ 'ի մասինս Բասեն և Վա-նանդ և Ցարօն. այլ Շիրակ առաւելու քան զնոսա. զի ուր սովորեալ է գեղ-ջկեցն զանարգասաւորութենէ երկրին գանգատ ունել և կամ կիսով չափ խո-րել զճշմարտութիւն իրացն, աստ 'ի Շիրակ հակառակն լսի յամենեցունց. զի յայտնի կան իրքն և չմարթի թագուցանել. Առ այսորիւք ողորմելի են դարձեալ կեանք նոցա իբրև զայլոց անգեղաց. քանզի զոր ինչ 'ի հարց և 'ի հաւուց իւրեանց տեսեալ և ուսեալ են, ոանփոխ մի յառաջ անցանել քան զնոսա չգիտեն. կամ չկամին.

Օրինակ լիցի այն զի ընդ ամենայն գաւառն այլ ինչ սերմանք չերևին բաց 'ի ցորենոյ և 'ի գարւոյ, ոչ բանջարեղէնք և ոչ ընդեղէնք. և վայրապար է նոցա պատճառանս կարկատել զօդոյն ցրտութենէ. զի Շիրակդ ոչ է ցրտագին քան զԲարձր Հայք, յորում աշխատութիւն մարդկանն մրցեալ ընդ բնութեանն՝ գոյաւորէ ինչ ինչ 'ի կարևորացն. այլ Շիրակացւոց ըստ սասցելումդ չէ սովորեալ զկարևոր պարէնս ուտելեաց ճարտարել բաց 'ի ցորենոյ. և սիրելի է նոցա յաւուրս պահոց աշտուճ հացիւ անցուցանել. մխիթարութիւն մեծ համարեալ եթէ ընդ նմին սոխ կամ խստոր և կամ կոտորակ մի բողկոյ 'ի բուռն արկցեն առեք, քան ժրանալ սերմանս ընդեղինաց և բանջարոց այլ և այլ բուսուցանել: Իսկ զայգեաց և զպտղոց խօսեցեալ, դարձեալ պարասնաք զօդոյն ցրտութենէ ըստ յամենեցունց. սակայն եթէ օրինակ չկայր 'ի միջի, արդարացի էր պարսաւն. քանզի առ հա Մրենոյ այգիքն վերիվայր յիշատակեն յարձանագիրս, և Բագարանուն և այլոց տեղեաց տեղեաց. ոչ 'ի նոյն գաւառի կան դոքա և զնոյն օդ շնչեն. և որ յայնժամ պտղաւէտութեամբն զարմանալի էր երկիրն, այսօր չունի և Թզաչափ Թուփ մի ցուցանել ընդ ամենայն գաւառն Շիրակայ:

## ԵՐԱՍԽԱՁՈՐ ԳԱՒԱՌ

### Կաղզուան.

Առ Արշարունեօք կամ յԵրասխաձոր գաւառի գլխաւոր տեղի համարեալ է կաղզուան, ոչ եթէ նշանաւոր ինչ ունելով, այլ զի չիք այլ աւան 'ի գաւառին: Ոչ անպատկան վարկանիմ գաւառիդ զեփական անունդ Երասխաձոր, 'ի բնութենէ օժանդակելով վայրացն. քանզի և յիշատակութիւն ձորոյդ յայտ առնէ ոչ ըստ սովորականին անձուկ միջոցաւն և յատակաւ սահմանեալ, այլ լայնածաւալ ձևովն. որպէս զի բազում ուրեք կողմանէ 'ի կողմն տևել կէս ժամ և ժամ մի ևս. և կողմանքդ այդուքիկ բարձրաբերձ ափափայք են լերանց, և գիւղօրէք 'ի նոսա, որ ընդ կաղզուանաւ անկանին: Իսկ Երասխայ ճանապարհ արարեալ ընդ ձորն լայնածաւալ՝ ընթանայ յարևմտից հիւսիսոյ յարևելս հարաւոյ, անցեալ և զառաջեաւ կաղզուանայ: Արդ կաղզուան թէպէտ և աւան համարի 'ի գաւառի աստ, այլ 'ի հնոց և 'ի նորոց չունի ինչ արժանալուրս. սակաւաթիւ տանիքն ոչ ինչ ընդհատ 'ի գեղջկականաց, և չուկայն իսկ քան կրպակօք սահմանի. նորաշէն եկեղեցին անշուք է և ազգայինք սակաւ, զի բազումք գաղթեցան առ Ռուսս: Սակայն հանդերձ այդու ամենայնիւ անուանի եղեալ է նա այգեատանօքն և մեծամեծ պարտիզօք պտղատու ծառոց, յորոց զուրկ են ամենևին սահմանակից գաւառքն Շիրակ և Վանանդ և Բասեն. որոց մատակարար լինի սա գինեաւ և պտղովք, մասնաւորեալ և ինքն նոցին ցորենով: Այգեստանք և պարտէզք կաղզուանայ զոր ասացաք՝ հանդերձ աւանաւն 'ի բարձր և 'ի լայնածաւալ դաշտավայրս կան մեծաւ մասամբ և շուրջանակի զգիւղաքաղաքաւն, մանաւանդ 'ի հիւսիսոյ նորա որ փոքր մի զառ 'ի վայր է. և հարաւակողմեանքն մօտ

'ի սարոտս կամ բարձրաբերձ աղխախեալ լերանց ։ Զուարճալի են առհասարակ ամենայն վայրքն, որք անդուոյն բարձրութեամբն և չքնաղահայեաց տեսարանաւ լերանցն և պարտիզաց լայնածաւալ տարածութեամբք, հանդերձ կանաչազարդ միջավայրս հարթ յատակացն՝ մնացուցանեն խոյսս զամենայն անշքութիւն աւանին, զաշխոյժ հիւրոյն ժառանգել մեծապէս, որ դժուարաւ մեկնի 'ի ցանկալի վայրացն ։ Հիւսիսային և արեւմտեան եզերք կամ ափունք որ սահմանն հատանեն այգեացն և պարտիզաց, դալարազարդ են, որոց առաջի շառաչմամբ անցանէ Երասխ ։ Խորամ լայնածիր և ուղիղ 'ի հիւսիսոյ աւանին յերկուս մասունս բաժանէ զայգիս և զպարտէզս. մի ծայր խորամին է անդ ուր աւարտին չէն աւանին, և միւսն մինչև ցգետն կամ ցեզերս ափանցն զոր ասացաք, այլ ուր գետակի անցեալ ընդ ձորդ և խառնեալ յԵրասխ, շուրջանակի զգետակաւ լինելով այլ ևս այգեաց ընդ մէջ խորամին ։

## ՎԱՐԴԻՇԷՐ

Ի գաւառին Գաբեղենից սեփականեալ Վարդիշէրայ՝ քաղ նախնի աւանդից պատմութեան, և կոչեցեալ 'ի նոցանէ Վարդիկ հայր, չորից ժամուց միջոցաւ հեռի է 'ի կաղզուանայ, ճանապարհ ունելով առ 'ի կողաց ափանց լերանց 'ի ձախմէ, և յաջմէ խորանդունդ դարափոսս ահագնատեսիլս. և 'ի ստորոտի լերանցդ ուր աղեղնաձև խոտորին յաջկոյս՝ անդ 'ի լերանցամէջս խոտորմանն 'ի վերայ լեռնադաշտակի միոջ տեսանի Վարդիշէրն կոչեցեալ տեղի ։ Եկեղեցին միջակ մեծութեամբ և անշուք և փարկապարազի որմովք և անյարկ ևս՝ յայտնի ցուցանէ թէ նշխար մի 'ի նախնի շինուածոց չէ մնացեալ 'ի տեղւոջն, թէ և հիմնեալ և նորոգեալ ընդ ժամանակս ժամանակս. այլ ուխտաւորաց բազմութիւն ոչ առ չքոյ ինչ շինուածոյն կամ վայրացն գեղեցկութեան խուռներամ դիմեն անդր, առաւելապէս յաւուր Վարագայ խաչին, այլ զի Թաթուլ և Վարոսի գերեզմանք 'ի նմին եկեղեցւոջ կան. առաջնոյն՝ յահեկում աւանդատանն, և երկրորդին 'ի նոյն կողմն առ որմով եկեղեցւոյն. շիրիմք նոցա 'ի հատակէ անշուք քարանց առ միմեանս եդեալք, կամ ամբողջ լինելով նախ և ժամանակաց երկարութեամբ և կամ 'ի բռնութենէ խորտակեալք, և կան մնան այնպէս յանխնամութենէ մարդկան ։ Առ ընթեր եկեղեցւոյդ յարևելից քարակոյտ մի կայ, զոր Արջուս գերեզման կոչեն. իբրու զի զաւանդ 'ի կենդանութեան ծառայէր անդ մինչդեռ չէն էր տեղին ։ իսկ բնակարանք ուխտաւորաց կամ թէ ասել բուն մենաստանն՝ այժմ բլրակի է քարընկէցի միով բացաւ յեկեղեցւոյն, անյարկ առ հասարակ և 'ի նմին անշքութեան. վասն որոյ ընդ ուխտաւորաց գնան քահանայք պաշտօն կատարել և դառնան ։ Յառաջ քան զյարձակել Ռուսաց չէն էր Վարդիշէր. զի յանդադար երթևեկութենէ ուխտաւորաց ևս և 'ի հեռաւոր տեղեաց՝ չպակասէին երբեք երբեք և աշխատաւոր անձինք 'ի վարդապետաց ջանադնել 'ի շինութեան պահել զտեղին և փոխանակ առաջնորդութեամբն հոգել անդէն, ոչ ինչ փոյթ կալեալ զանմարդի վայրենութենէ տեղեացն. սակայն ընդ գաղթականի ազգիս՝ դատարկացեալ յամենայնէ անապատացաւ ։

Հնգեւք վայրկենիւք հեռի ընդ մէջ դժուարակոխ ապառաժից է քարանձաւ փոքր՝ տեղի ճգնութեան սրբոցն, որոյ անձկութիւնն տանի ոգիս երիս կամ չորս. և 'ի կողմանէ այրից այլ վիմափոր տեղի 'ի նմին ապառաժի և փոքր քան զմիւսն, յորում կայ անսպառ ջուր ցուրտ։ Ի վերայ ապառաժից է գերեզման՝ Հարսին և տալոյ կոչեցեալ. զորոց զրուցեն մահ խնդրեալ յԱստուծոյ առ տեղեացն ջերմեռանդութեան և ստացեալ զոգիս իւրեանց և թաղեալ անդէն։ Ի վերայ բարձր և դժուարամերձ լերանց որ հանդէպ է քարանձաւացն, գոյ գերեզման Մամասայ միայնակեցի։

Ջորամէջք կամ Զարափոս վայրքն որ անընդմիջաբար զառաջեաւ կան Վարդինհերայ, Վիշապաձոր կոչին մինչև ցայսօր. երբ զի օձից բազմութիւն եղեալ անդէն 'ի հնումն, անհետ լինին ապա աղօթիւք սրբոցս ըստ վկայելոյ գրոց։

Են և այլ ևս ուխտատեղիք կրկին 'ի ճանապարհին Վարդինհերայ. զի ըստ աւանդելոյ Յայսմաւուրաց՝ Վարոսի երբեմն յուղւոյ լինելով երթալ 'ի միայնարան իւր բառնալ 'ի թիկունս իւր զՔրիստոս 'ի խնդրոյ նորա 'ի կերպարանս աղքատի և ախտացելոյ. և հանգիստ առնու 'ի ճանապարհին յերկուս տեղիս, ուր են երկու ապառաժ քարինք. առաջինն փոքր և երբ 'ի կէս ճանապարհին ընդ մէջ Կաղզուանայ և Վարդինհերայ. և երկրորդն մեծ, յորոյ առ 'ի կողաց նստարանաձև տեղի, և առ նմա աղբիւրն սքանչելաբուխ, քառորդաւ ժամու հեռի 'ի Վարդինհերայ։

Զտեղագրութիւն Վարդինհերայ ճշգրտաբանեալ ամենայն մասամբքն, հրա-տատուոնից թողումք քննել զայլ և այլ անուանս տեղեաց զոր մատենագիրք աւանդեցին. այն է Վարդիկ հայր ուխտն և վարդապետարան, և ուխտն Թաթլոյ որիշ յուխտիցն Վարոսի. և թէ զիարդ և երբ ամփոփեցան նշխարք սոցա 'ի Վարդինհեր։

Ղարավանք.

Ի ստորոտս լերանց Վարդինհերայ երկու և աւելի ևս ժամուք հեռի 'ի նմանէ և երբ կէս ժամաւ վերոյ քան զափունս Երասխայ է գիւղս այս. յորում կան երեք փոքր եկեղեցիք, հնագոյն և կիսափուլ կաթողիկէիւք. Աւանդեն եթէ Թաթուլ և Վարոս յաւուրս կիւրակէից իջեալ 'ի Վարդինհերայ աստ պատարագ մատուցանէին և նոյն օրին դառնային 'ի լեառն 'ի միայնարան իւրեանց։

Ջանկլի.

Հանդէպ Ղարավանից յայնկոյս Երասխայ 'ի լեռնամէջս ահեղ բարձրութեան ափափայ լերանց կայ գիւղն Ջանկլի կոչեցեալ։ Հոյակապ եկեղեցի նորա զմբէթարդ 'ի մթագոյն քարանց, երկայնութիւն ունի 20 մետր և $14\frac{1}{2}$ լայնութիւն։ Վրացի արձանագիրք եկեղեցւոյս, զորոց տեսցի ստորև, կարծիս տան ինձ թէ ըստ հին աշխարհագրութեան 'ի սահմանին Կարուց անկանէր գիւղս, և

*յորժամ անց քաղաքն այն առ վիրս՝ յայնժամ շինեցաւ և եկեղեցիս այս. ոչ սակաւ պատճառք են և մեծին Երասխայ ընդ մէջ անցանելով, որ բաժանէ յիրերաց զսահմանս կաղզուանայ և կարուց։ Այս արդեօք ըստ Նախնեաց. զի ըստ այժմու բաժանման Զանկլի ընդ կաղզուանաւ անկանի։ Ցարձանագրացդ առաջինն է 'ի վերայ դրանն յարևմտից.*

\+ ქორონიკონს სნ (           ) სახელითა ღთისაჲთა მე
ელისაკმან ეგნატო- ავილე ღთისაგან.
..კანი..ლოცვა უკვეთე მის და
სალოცავად ტრაპეზისაგან ორ-
თა სჯთა პური უკუდავად უცხო-
თათჳს ვეძალენ ალ..რისა

*Ցահեկէ նորա.*

პატრონი იყოს და წინამძღვარი რომელსა სხვანი ძმანი
გაილებდენ დღესასწაული. ზედაშე მნისა პირითა მიე-
ცემოდეს. ვინცა ესე ნაქმარი შეცვალოს კრულა პირითა
ღთისაჲთა, ექუსთა კრებათა მადლითა და ხუთთა პატრიაქ-
თა ჯვარითა, და ათორმეცთა მოციქულთა მადლითა.
ვინ და-
ამცკი-
ცოს ჯვარი
აქუს დაკურთხევაჲ.

*Ջերկուսին արձանսդ այսպէս թարգմանէ երկբայութեամբ Հնադէտն Գ. « ի թուին ՄԾ (1030). Անուամբն Աստուծոյ, ես Նուաստս Իգնատիոս ընկալայ 'ի » Թէոդորէ դահեկանս (?...) և հաստատեցի առնել պաշտօն վասն նորա, և » կարգեցի տալ անխափան հաց եկաց 'ի ձեռն վանապանին. երկիցս յաւուր, » ով որ և իցէ տէր կամ հայր ուխտիս. իսկ եղբարցն՝ որ զպաշտօնս կատարեն՝ » տնտեսն ինքնին տացէ գինի։ Որ ոք խափանեսցէ զկարգեալս առ 'ի մէնջ՝ կա- » պեալ լիցի բանիւն Աստուծոյ, շնորհօք վեցից ժողովոց, խաչիւ հնգից պատ- » րիարքաց և շնորհիւ երկոտասան առաքելոց։ Հաստատուն պահողն օրհնեալ » լիցի սուրբ խաչիւս »։*

Ի հարաւոյ կուսէ 'ի բարձու.

ქრისტე შეწყალე მალა ქო | ზოაჲ რომელმან ეკლე....

« Քրիստոս ողորմեա Մալակոսիայ (շինողի) եկեղեցւոյս »:

Առ աստիճանաւ բեմին չորեքումբք տառիւք.

ქრისტე შეწყალე....    « Քրիստոս ողորմեա ».

Քառորդաւ հեռի 'ի գեղջէն՝ է լճակ մի շրջապատեալ 'ի բլրոց. տարածութիւն շրջապատի նորա աւելի քան զկէս ժամ. 'ի ձմերան քանզի սառնու, ծակեալ զսառն և չափեալ են երբեմն զխորութիւն լճին, և գտեալ զերկս 60 'ի տեղւոջն յայնմիկ:



# ԱԼԱՇԿԵՐՏ

Դաշտավայր է գաւառս այս, որ է հինն ԲԱԳՐԵՒԱՆԴ, ընդարձակ և բերրի և ջրարբի յոյժ, զի հինգ և վեց գետք ոռոգանեն զերկիրն, յորոց մի է և Եփրատ. բայց նուաղեալ 'ի բնակչաց և 'ի գիւղորէից. զի բազմութիւն յոյժ գաղթեցին 'ի Ռուսս 'ի վերջին պատերազմի նոցա (յամի 1829)։

ԹՕՓՐԱՔ ԳԱԼԷ. — Աւան առ կողիւք լերին որ հայի 'ի դաշտավայրն Ալաշկերտու. են 'ի նմա քառասնիւ չափ տունք Հայոց և եկեղեցի մի. և այլքն Տաճկաց։ Շուկայն փոքր, այլ բազմավաճառ, որ և լցուցանէ զամենայն պէտս գաւառին. և բերդն փոքր և աննշան։

ՈՒՉ ԳԻԼԻՍԷ. — Մենաստան հռչակաւոր ընդ ամենայն Հայաստան 'ի սկզբանէ և այսր վասն մեծամեծ անցիցն և մանաւանդ վասն ահեղ մեծութեանն։ Շինեալ է առ 'ի ստորոտ նպատ լերին՝ որ 'ի հարաւոյ նորա կայ. և շինուած մենաստանին թէպէտ և անշուք ըստ օրինի այլոց մենաստանաց, այլ եկեղեցին ահեղ մեծութեամբն հիացուցանէ զտեսողսն, որոյ նման չգտանի ընդ բովանդակ Հայաստան։ Չորս քառակուսի սիւնքն ստուարութեամբ ահագինք՝ որք բառնան զգմբէթ նորա՝ զաւարկք են, և ելանելիք 'ի նոսին և սեննեակք, և 'ի սեննեկացն դարձեալ այլովք սանդղօք յայլ սեննեակս մինչև ցտանիսն, առ հասարակ քարաշէնք։ Բեմն և գասն և ատեանն առհասարակ ընդարձակք են։ Խորանն է մի միայն որպէս այլոց հնաշէն եկեղեցեաց. և երկուստեք նորա մատրունք և առաքելոյ մատրանցն այլ փոքրիկ խորանք՝ զոր յետոյ շինեալ են տախտակամած։ Նախ սրբոյ Լուսաւորչին շինեալ առա մատուռն, և յանցանել ժամանակաց Հերակլի կայսեր 'ի դառնալն 'ի Պարսկաց անցեալ ընդ այս, փոխանակ մատրանն այնորիկ շինէ զեկեղեցիս՝ որ կայ այժմ, 'ի քսանևմիում ամի կայսերութեան իւրոյ, որպէս ասէ արձանագիրն խոշորատառ որ փորեալ կայ զշրջապատաւ որմոյն արտաքոյ։

Առ մենաստանաւն անցանէ Եփրատ գետ ընթացեալ յարևելից յարևմուտս, և քարաշէն կամուրջ 'ի վերայ նորա։ Այս տեղի 'ի ժամանակս կռապաշտութեան կոչէր Բագուան կամ Դիցաւան, յորում էր գերեզման և բագին Մաժանայ քրմապետի, շինեալ 'ի փոքուն Տիգրանայ եղբօրէ նորա։ Այլ 'ի ժամանակս քրիստոնէութեան՝ սուրբն Գրիգոր ամփոփեաց 'ի տեղւոջն 'ի նշխարաց սրբոյն Յովհաննու և Աթանագինեայ. նովին իրի և մինչև ցայսօր յանուն սրբոյն Յովհաննու կոչի մենաստանն, թէպէտ և յանուն սրբոյն Գրիգորի եւս ասացեալ է յոմանց, սակս 'ի նմանէ շինելոյն զառաջինն։ Ուխտատեղի մեծ եղև սա ոչ միայն

վասն պատճառացդ զոր ասացաք, այլ և վասն մկրտութեանն Տրդատայ և որոց ընդ նմա 'ի սրբոյն Գրիգորէ 'ի վերայ Եփրատ գետոյ. և տեղիդ այդ ցանկալի քառորդաւ բացական է 'ի մենաստանէն յարևելս կոյս 'ի վերայ ճանապարհին անընդմիջաբար առ գետեզերբն, ուր կայ և յաղմէ քարաժայռ մեծ, և 'ի վերայ նորա դրոշմածք խաչից: Թեմ ինչ գլխաւոր վանացս են ամենայն գիւղօրէք Ալաշկերտու, յորոց այժմու նուազութենէ թերևս պակասեաց և մենաստանին միաբանութիւն, որ արդ 'ի չորից և 'ի հնդից կարգաւորաց սահմանի: Դիրք մենաստանին, որպէս ասացաք, առ ստորոտով Նպատ լերինն կայ, և 'ի հանդիպոյ գօտիք Բարդող լերանց [1], և 'ի միջոցի ձորամէջ լայն' զոր հատանէ գետն Եփրատ, թողլով երկուստեք դաշտավայրս: Բերանք ձորավայրիդ են յարևելս և յարևմուտս, նմին իրի ուժգին և ցրտագին շնչեն անդ հողմունք:

ՆՊԱՏ ԼԵՌՆ. — Թէպէտ և բազումք իցեն լերինք 'ի Հայաստան աշխարհի' առանձին իմն ձրիւք պերճք և անուանիք, այլ ցանկալի այնոքիկ' որք առ յիշատակէ իրիք մեծէ' 'ի նախնի դարուց անուանի գտան, յորոց տեսլենէ և հայրենասէր սիրտ յայլ յայլմէ լինի, իբրև ակներև տեսեալ զամենայն անցսն որ անցին երբեմն ընդ նոսա: Արդ մի 'ի ցանկալի լերանցն է և սա, յոր ել մեծն Ներսէս տեսանել զպատերազմն Հայոց ընդ Պարսից, զոր 'ի Ջիրաւ դաշտին մղեցին. և ինքն այրն Աստուծոյ մովսիսաբար տարածեալ զբազուկսն և աղօթեալ' պարտէին Պարսք առաջի Հայոց, որպէս Ամաղեկ առաջի Իսրայէլի: Արդ երկայնանիստ լեառնս ձգեալ կայ յարևելից յարևմուտս. յարևելից սահման հատանելով Ջիրաւ դաշտին' որ և սահման համարի Տիատինոյ, և յարևմտից մեծի դաշտավայրին Ալաշկերտու. ոչ մի գօտիս ունելով 'ի լերանց, այլ ինքն միայնակ ամբառնայ: Ի գագաթն լերինն' ուստի համարձակ երևելի լինի յարևելից Մասիս և յարևմտից հիւսիսոյ Սուկաւ, և յարևելից հարաւոյ Ծաղկաց լեառնն, շինեալ կան երկու մատրունք' տեղի աղօթից սրբոյն Ներսէսի. մին 'ի բացի' առ որում և ճգնարան, և միւսն գետնափոր' յորում երբեմն երբեմն ելեալ աղօթէր, ասեն, այրն Աստուծոյ:

## ԲԱԳՆՈՑ ԵՒ ԽԱՄՈՒՐ

Երկին գաւառքդ սահմանակիցք իրերաց և Արճիշոյ' դաշտավայրք են առ հասարակ, սակայն ունելով բարձունս զուարճալիս, և են ընդարձակք յոյժ և յուռթի. այլ բազմամարդութիւն գիւղօրէիցն նուազեաց 'ի գաղթականէն որ 'ի Ռուսս, և խոպանացեալ է արդ, սակայն ունելով գիւղս քրդաբնակս. արօտ եղեալ հօտից նոցա երկիրն առ հասարակ որ յոյժ խոտաւէտ է, մանաւանդ Խամուր:

1 Ռամկօրէն Թափալուղ կամ Թափէնալուղ կոչին:

## ՄԱՆԱԶԿԵՐՏ

*Մի 'ի հին քաղաքաց Հայաստան աշխարհի շինեալ 'ի Մանաւազեայ որդւոյ Հայկայ. այլ անուն և այսր ընդ բազում փոփոխութեամբ անցեալ՝ յիշատակ հին չէ մնացեալ բնաւ 'ի նմա, և որ ինչ երևի՝ յետին դարուց իրք են։ Առ հասարակ պարսպապատ է քաղաքն այլ և այլ աշտարակօք, և ոչ նշանաւոր ինչ քարամբք, զի և բազում ուրեք փլեալ կան պարիսպքն։ Տարածութեամբ ընդարձակ, այլ 'ի պատճառս բռնաւորաց և անդադար հարստահարութեանց Քրդաց և այլոց՝ նուաղեալ յոյժ, 'ի սակաւաթիւ տանց սահմանի Հայոց և Տաճկաց, ոչ ինչ ընդհատ 'ի միոյ 'ի գիւղորէից։ Ի վերին ծայր նորա է ներքնաբերդն առանձին պարսպաւ և դրամբ. որ և այն նոյնպէս ամայի կայ։ Սակայն շրջակայ սահման քաղաքիս որ և գաւառն է Մանազկերտոյ՝ հինն Ապահունիք, շէն է և մշակեալ և բերրի։*

## ՊՈՒԼԱՆՈՒԽ

*Գաւառ է դաշտավայր ընդարձակ, յերկուս բաժանեալ 'ի վերին և 'ի ներքին, սահմանակից Մանազկերտոյ. բարեբեր արգասաւորութեամբն անուանի է ընդ ամենայն Հայաստան, նմին իրի և բնակիչք նորա ճոխք են և փարթամք։ Մի յերևելի գիւղորէիցն է կոփ. յորոյ անուն կոչի վերին մասնն՝ կոփայ Պուլանուխ. և առ նմա է մենաստանն սրբոյ ծերոյն Դանիէլի, կոչեցեալ կոփայ վանք, և գերեզման նորա 'ի մէջ եկեղեցւոյն։ Դիրք վանացն 'ի բարձու կայ և հայի 'ի վերայ դաշտավայրին Մանազկերտոյ և կոփայ միանգամայն, զի չիք որոշիչ սահման 'ի լերանց կամ 'ի բլրոց և կամ գետոյ իրիք ընդ երկոսին գաւառսդ Մանազկերտ և կոփ, այլ ըստ արդի բաժանման 'ի գիւղորէից սահման հատանի, յորոց մասն մի Մանազկերտոյ են սեփականեալ և մասն մի կոփայ։ Այսպիսի բաժանմունք և յայլ գաւառս տեսանին սահմանակիցս իրերաց, որպէս վերնոյն Բասենոյ և ներքին Բասենոյ, Խուլթայ և Բռնաշինոյ, Շիրակայ և Կարուց. որք թուին առ նախնեօք երկոցուն մի գաւառ համարել։ Ցաղագս մարմնոյ Ս. Դանիէլի ասի առ պատմագիրս՝ թաղեալ 'ի Հացեաց դրախտի. և տեղիդ այդ է 'ի դաշտին Մշոյ, առ սուրբ Սահակ գիւղիւ, ըստ նոցին իսկ պատմութեանց. սակայն անդ չիք գերեզման և ոչ ուխտատեղի ինչ յանուն Դանիէլի. թերևս յետ ժամանակաց անտի փոխադրեալ իցէ աստ 'ի կոփայ վանսն։*

## Ծովակքն Խաչոյ և Նազուկ.

Են դոքա երկու լիճք քաղցրաջուրք, առաջինն 'ի Գուլանուխ գաւառի և երկրորդն 'ի սահմանակցութեան Խլաթայ, գրեթէ հաւասարք իրերաց տարածութեամբ. սառնուն 'ի ձմերան և լինի ճանապարհորդել 'ի վերայ սառինն. և յայդանուն կոչեցան յանուանէ գիւղիցն առ նոքօք. Այլ վասն առաջնոյն զրուցք են այսպիսի առ բնակիչս գաւառին. Պառաշ ումն Թագաւոր ասեն, որ բնակէր 'ի բերդի 'ի վերայ Գլեձաւն լերին՝ որ հանդէպ կայ գաւառին, ունէր աւեր չինեալ 'ի կայծականց յերկնից Թօփափելոյ: Եւ որդւոց նորա ընդ հակառակս ելանէին միմեանց՝ թէ ում 'ի նոցանէ անկցի աւարն. տեսեալ հօր նոցա զանդադար կռիւ որդւոցն՝ արկ 'ի ծովակն զաւարն: իսկ որդւոցն յարձակեալ զկնի 'ի ծովն թէ յափշտակեսցեն զաւարն՝ հեղձնուն. այլ ոսկերք նոցա մի անգամ յեօթնեկի յուրբաթու առեալ 'ի կռիւ ելանեն ընդ միմեանս և չկարեն 'ի բուռն արկանել զղէնն. Նմին իրի, ասեն, յամենայն ուրբաթու աղէկոծութիւն առաւել լինի 'ի ծովակին:



# ՏԱՐՕՆ

Այս գաւառ Ցուրուբերան աշխարհի, դաշտավայր բարեբեր, Սլկունեաց ազգին կալուած լեալ 'ի հեթանոս ժամանակաց անտի, առ Տրդատաւ անց առ Մամիկոնեանս, որոց ժառանգութեամբ կալեալ զայն, քաջութիւնս բազում գործեցին 'ի նմա ընդդէմ Պարսից։ Չիք այլ գաւառ 'ի պատմութեան ազգիս, որպէս կարծեմ, յորում մղեալ իցեն այնքան արհաւիրք մարտից և կոտորած՝ քան զսա. և ոչ դարձեալ յորում 'ի յարձակման անդ թշնամեաց՝ որպէս 'ի սմա միշտ աննկուն կացեալ իցէ Հայոց և յաղթող։ Նմին իրի և առ 'ի դիւրաւ զդէմ ունել օտարաց շինեցին բազում ամրոցս 'ի կողս և 'ի գագաթունս լերանց բարձանց, յորոց աւերակացն կան մինչև ցայսօր. և զի ոչ առ 'ի ցոյց ինչ մեծագործութեան շինեցան գոքա՝ անտի իսկ յայտ է, զի ոչ համեմատ իւրեանց մեծութեանն են շինուածքն, այլ կարի հասարակ, որչափ ինչ պէտք էին նոցա ամրանալ 'ի նոսին և կալուլ. քանզի և 'ի լերինս և 'ի կողս բարձանց են առ հասարակ և ոչ 'ի դաշտի։

Սահման գաւառիս Տարօնոյ թէ ուստի ուր տարածեալ ձգէր ըստ նախնի պատմութեանց՝ չիք հաստատութեամբ ասել, այլ ըստ այժմու բաժանման, որ սովորականն է առ ամենեսեան, համարի դաշտն Մշոյ շրջապատեալ 'ի լերանց յամենայն կուսէ, յարեւելից Նեմրութաւ և Գրգուռաւ, 'ի հիւսիսոյ Քօսուրաւ, յարեւմտից Թարքէ լերամբ և 'ի հարաւոյ Տօրոսիւ. չէ յայտ եթէ և անդր քան զլերինսդ ձգէր արդեօք սահման գաւառիդ. զի այժմ ամենայն անձուկ լեռնային վիճակ առանձին անուամբ յորջորջի, նա և նոյն իսկ դաշտավայրն կիսով չափ յարեւելից կուսէ Ջուխուր վերաձայնի։ Արդ դաշտն Մշոյ հանդերձ Ջուխուրաւ երկայնեալ ձգի յարեւելից յարեւմուտս իբր երեքօրեայ ճանապարհաւ կարաւանի. իսկ լայնութիւնն որ չէ միօրինակ ամենայն ուրեք՝ ոչ առաւելու քան զվեց ժամուց։ Առ հասարակ ծայր 'ի ծայր դուրան է դաշտն և քաջ մշակեալ։ Սահմանակից նորին գաւառք անդր քան զլերինսն՝ են յարեւելից մասն մի գաւառին Բզնունեաց կամ թէ ասել Ռահվայն Բաղիշոյ, 'ի հիւսիսոյ Պուլանուխ և Խնուս, յարեւմտից Պալլան և Կինճ, և 'ի հարաւոյ Շատախ և Բռնաշէն և Խութ։

Առաջ մի Եփրատ գետոյ, այն որ յականէ Ծաղկաց լերինն բղխէ, անցեալ ընդ Ալաշկերտ և ընդ Պուլանուխ և եկեալ միացեալ ընդ երկրորդ առաջին որ բղխէ 'ի Պինկեօլայ՝ որ և Չարպուհուրայ ջուր կոչի, 'ի հիւսիսոյ կուսէ մտեալ 'ի դաշտն Մշոյ՝ անդր քան զկէս դաշտին յարեւմուտս կոյս, ուր է և կամուրջ նորա առ Թօղլուխ գիւղիւ, և յերկուս բաժանեալ զդաշտն՝ անցեալ գնայ ընդ ձորա-

մէջ արեւմտեան լերանց ։ Իսկ Մեղրագետ 'ի Ցանկայ կոչեցեալ Գաւառն, որ է ճղիւ Մեղտեայ գետ՝ սակս Մեղտեայ մեծի աւանին 'ի հնումն առ երի կալոյ, գայ յարեւելից կուսէ դաշտին ։ զի ակն նորա է առընթեր Քուրդ-Նորշէն աւացեալ գեղջ, բխեալ 'ի դիւր վայրի 'ի մեծաքաց բոլորշի սալայատակ ականէ, ուր կարի քաղցր է ջուրն, ականակիտ և պատուական յոյժ ։ Մշեցիք թէպէտ և աւանդութեամբ ունին զբուն ակն Մեղրագետոյ լինել լճակացն որ 'ի գագաթն Նեմրութայ, զորոց ասասցուք զկնի, զի և զստորոտովն նորա է Քուրդ-Նորշէն, սակայն և 'ի փորձոյ հաստատեալ է երբեմն վկայութեամբ ամենայն բնակչացն. Հովուի ուրումն արկեալ զգաւազանն 'ի լճակսն Նեմրութայ և եկեալ եգիտ զայն յակն Մեղրագետոյ ։ Արդ Մեղրագետ ելեալ յականէն և ընթացեալ ընդ միջոց դաշտավայրին հանդարտաքայլ՝ առուակս բազումս ընդունելով յինքն երկուստեք 'ի լերանց 'ի հարաւոյ և 'ի հիւսիսոյ, գայ և խառնի յԵփրատ՝ անդր քան զկամուրջն Սուլուխայ, գիւղորէս բազումս ունելով երկուստեք ։ Այսր գետոյ կամուրջ է քարաշէն բազմակամար՝ որ կայ անկործան մինչև ցայսօր հանդէպ աւանին Մշոյ. սակայն գետոյն խոտորեալ զընթացսն՝ 'ի ցամաքի կայ կամուրջն, ոչ գիտեմ յորոց ժամանակաց հետէ ։ Ամօք յառաջ հնարեցան դաշտականք գութանաւ առուակ բանալ վերստին և ուղղել զընթացս գետոյն ընդ կամրջաւն, այլ չեղև հնար սակս կարի պնդութեան գետնոյն, և զի ոչ վարկպարազի ինչ էր միջոց փորելի երկայնութեանն ։ Երկոքին գետքդ Եփրատ և Մեղրագետ՝ թէպէտ և մեծամեծք և աճեցունք՝ մանաւանդ 'ի գարնայն, սակայն ամենևին անօգուտ են արտորէից դաշտավայրին. զի տաշտ նոցին խոր է և չէ հնար հատանել ուստեք առաջս առ ոռոգանելոյ զարտորայսն. Թէպէտ և երբեմն ճախարակեայ մեքենայիւք հնարեցան յօգուտ ածել զջուրն, այլ չեղև հնար սակս հանդարտաքայլ ընթացից ջուրցն, մանաւանդ Մեղրագետոյն ։ Իսկ զարտորայսն ոռոգանեն մանր առուակքն որ 'ի լերանց իջանեն և խառնին 'ի գետսն. Նմին իրի տագնապ մեծ է գիւղականաց 'ի պատճառս ջրոյ ոռոգմանց և վէճք անդադար ։ Ձկունս բազմատեսակս ունին գետքդ, այլ Եփրատ և մեծամեծս, յորում գտաւ երբեմն ձուկն մի աչեղ մեծութեամբ մինչև պատապարել 'ի գլխի նորա առն միոյ ։ Սովորական ձկունք գետոցդ անուանին՝ դեղիկ, աըշա, կարապետիկ, մող ։ Մեղրագետ սակաւ մի ընթացեալ յականէն սկսանի մորանալ մեծաւ երկայնութեամբ և հարուստ տարածութեամբ եղեգունս երկայնս բուսուցանելով, յորս որջանան բազում անգամ 'ի գազանաց կինճ և գայլ և արջ ։

ՕՁ ԳԵՂՋ. — Մի 'ի բազմամարդ քաղաքաց 'ի հնումն, 'ի դաշտի աստ էր որ կործանեցաւ, և փոքր ինչ յաւերակաց նորա երևի ամրոցանման մինչև ցայսօր 'ի մէջ նոյն շամբին անմերձենալի ։

ՁԻՆՆԿԵՐՏ ԳԵՂՋ. — Առաւել մեծանիստ քան զվերոգրեալն, որ և յետոյ նորոգեալ 'ի Վախտանկայ Պարսից զօրավարէ կոչեցաւ Գորպէս. մերձ էր Օձ քաղաքին յարևելից հարաւոյ նորա, և յաւերակաց նորա են անշուշտ որ երևեին ցարդ ուրեք ուրեք աննշանք 'ի Մորխ գիւղն՝ կոչեցեալ Քեաֆիր Մորխ, որ առ երի կայ անընդմիջաբար Գրգուռ և Նեմրութ լերանց ։ Թէպէտ և յոյժ սակաւք իցեն աւերակքն, այլ բնակիչք դաշտին մեծանիստ աւանդեն զգիւղս նորա 'ի

ստորոտէ լերանցդ երկարաձգեալ 'ի դաշտն կոյս: Եւ առ կարի ընդարձակութեան նորա պատմեն աւանդութեամբ անցս այսպիսի յորժամ՝ չէն էր նա: Աղջկան ուրումն մատաղի զհետ ընթացեալ ընդ այգն առաւօտուն այծու փախուցելոյ թէ կալցէ, և չկարացեալ՝ տանեաց 'ի տանիս վազս առնլով հեռանայ 'ի տանէն յոյժ մինչև ցտարաժամել աւուրն, և 'ի թաղս անծանօթս ինքեան մոլորեալ՝ չկարէ այլ ևս դառնալ 'ի տուն իւր ուստի ելեալն էր. և տեսեալ զնա որումն առնու 'ի տուն իւր, և պահեալ զնա գգուանօք իբրև զմի 'ի զաւակաց իւրոց և հաճէ զկամս նորա չելանել արտաքս, և ոչ իսկ խնդրել գտանել զծնողս նորա. և ծնողք նորա բազում աւուրս 'ի խնդիր լեալ աղջկանն և չկարացեալ գտանել ուրեք՝ դադարեն: Անցանեն ամք ոչ սակաւք, և հայր աղջկանն, կամի ամուսնացուցանել զորդի իւր, և խօսի զնա նոյն աղջկանն՝ անգէտ ամենևին թէ իւր զաւակ իցէ, և ոչ հայրագիր նորա: Յաւուր հարսանեաց 'ի տանել զաղջիկն 'ի տուն փեսային, իբրև ետես նա զտունն՝ իսկոյն 'ի միտս եկն եթէ այս տուն էր յորմէ երբեմն ընթացեալ զհետ այծուն և չկարացեալ ունել զնա ոչ ևս դարձայ յետս. և յայտնէ զիրսն այլոց, և իմացեալ ծնողաց նորա զիրսն և յիշեալ զերբեմն կորուստ զաւակին իւրեանց այլ յայլմէ լինին թէ այս է ուրեմն կորուսեալ զաւակն մեր զոր և յայլ ևս նշանաց ճանաչեն. և զուրախութիւն հարսանեացն փոխեն յայլ նոր և անակնկալ խնդութիւն:

Ընդ մէջ Մորխայ և Օձ քաղաքի առ ստորոտով երկայնանիստ լերին միոյ 'ի դաշտի է ջերմուկ կոչեցեալ 'ի բնակչաց Կեւմաւ, և ջուր նորա առողջարար հիւանդութեանց: Է և այլ ջերմուկ գաղջ և ծծմբահոտ որ բխէ 'ի ներքուստ լերին և կոչի Ծծմակ, որ թուի լինել ծծմբակ, և լեառնդ երկայնեալ ձգի 'ի դաշտն կոյս՝ կոչեցեալ Ծծմակլայ—բիր, իբրև երեք ժամու հեռի 'ի Մշոյ յարևելս կոյս ընդ երկայնութիւն լերանցն Տօրոսի:

ՄՈՒՇ. — Ի ստորոտ լերանցն Տօրոսի՝ որ էն 'ի հարաւոյ դաշտավայրին, 'ի լայնարձակ ձորաբերանի կառուցեալ է քաղաքս փոքրիկ. բլուր մի 'ի միջավայրին ունելով բարձր, և 'ի գագաթան նորա ամրոց աննշան, անբնակ և աւերակ, և շուրջ զբլրովն տունք քաղաքին վերուստ 'ի վայր: Առաջի նորա անցանէ գետ պատուական ջրոյ որ 'ի լերանց իջեալ թափի ապա 'ի Մեղրագետ: Շինուած քաղաքին աննշան և մեծաւ մասամբ նմանաձև գիւղորէից: Են նորա քարաշէն եկեղեցիք հինգ, մզկիթք երկու կամ երեք, և իջևանք երկու, և մի բաղանիք, այլ ջրաղաց բազում 'ի վերայ գետոյն: Ի թաղիցն որ բարձրադիր են 'ի վերայ բլրոյն և 'ի կողաց նորա՝ գեղատեսիլք են որք առ ձորաբերանովն, հանդէպ իւրեանց ունելով զդաշտավայրն: Շուկայ նորա փոքր իբր 'ի չորեքհարիւր կրպակաց սահմանեալ: Յարհեստից այնք 'եթ գտանին որ կարի կարևորքն են՝ մանաւանդ գիւղականաց, դերձակութիւն, կօշկակարութիւն և դարբնութիւն. Ջեռագործ և ոչ մի ոչ գտանի անդ, այլ զամենայն կարևոր պէտս 'ի Բաղիշոյ ածեն և 'ի քաղաքէն Կարնոյ. և դաշտավայրն ամենայն անտի գնէ: Իսկ մեծ վաճառ նորա է ծխախոտ, որոյ արտորայքն են անընդմիջաբար զառաջեաւ քաղաքին ընդ ձորաբերանն, ևս և 'ի բազում գիւղորէս: Ի յարգի է ծխախոտդ Մշոյ 'ի բազում գաւառս, յորոց բազում բերեն առաքեն, մանաւանդ 'ի Կարին:

Յարևմտեան կողմն քաղաքին են պարտէզք պտղոց, և պտուղքն են դամոն և շլոր և տեսակ մի քաղցրահամ տանձի. իսկ այգիք են 'ի կողմս նոյն լերինն Ցըրոսի հարուստ տարածութեամբ յարևելից յարևմուտս. 'ի բանջարոց բազում տեսակք գտանին և 'ի քաղաքին և 'ի գիւղօրէս, այն է կաղամբ մեծագանակ և շաղգամ, որք և տարեկան ուտելիք են բնակչաց. և 'ի լերինս սպիտակ, սխտորուկ, քմուկ, ողին, ժախ և այլք բազումք. յընդեղինաց ունի բակլայ, սիսեռն, և լուբիա ոչ սպիտակ.

Հիւրասէրք են Մշեցիք, և այդ բնաւորութիւն տիրէ ընդ բովանդակ գաւառավայրն, յորում են իբր եօթանասուն գիւղք առ հասարակ հայազգիք. և կարի աղքատն 'ի նոսա չկրէ նեղութիւն վասն ապրանաց, զի և հասարակ բանջարեղինօք շատանան և երբեմն ևս աշտոն հացիւ. Ամօթ և անգթութիւն մեծ համարի առ նոսա, եթէ աղքատ ոք կամ հիւր մտեալ 'ի տուն նոցա և անկերակուր յետս դարձցի. են 'ի տանց մեծամեծաց որք առ առաւելազանց հիւրընկալութեան՝ մանաւանդ 'ի ժամանակս բռնաւորութեան Քրդաց՝ անկան 'ի մեծութենէ, այլ տակաւին որչափ ձեռն նոցա հասանէ չպակասին 'ի մասնէ հիւրասիրութեան.

Եօթնհարիւրի չափ տունք են Հայոց 'ի քաղաքիս, այլ առաւել ցանկոց, որք 'ի սկզբանէ հետէ սիրով վարին ընդ Հայս և պաշտպանեն զնոսա յամենայն նեղութիւնս նոցա. ընդ դրացի Հայոց իբրև եղբայր ընդ եղբօր վարին, խորհուրդ հարցանեն 'ի նոցանէ, և չէ տեսեալ 'ի նոսա ժանտութիւն ընդդէմ քրիստոնէութեան, թէպէտ և խստիւ օրինապահք իցեն ըստ իւրեանց կրօնից. 'ի մի Հայազգեն յուտել չմերժենան և ոչ յարբեցուցիչ ըմպելիս ըստ օրինի Քրդաց.

Ի հարստահարութենէ Քրդաց արդեօք եթէ յաղքատութենէ երկրին համարելի է՝ զի ընթերցասիրութիւն պակասի յոյժ 'ի գաւառիս Տարօնոյ. այն իսկ են զարմանք զի որոնց հզօր իմաստնոց աստանջական լեալ առ նախնեօք և ծաղկեալ բազում իմաստութեամբ 'ի նոցանէ, արդ անհետ եղեալ են իսպառ արդիւնք նոցա. և չիք առ ումեք ախորժակ վերստին 'ի նոյն շաւիղ հետամուտ լինելոյ. Վանորէից անկ էր կարևոր մշակութիւնդ. որոց երբեմն անմեղադրելի լինել հարկ էր 'ի պատճառս անդադար հարստահարութեան Քրդաց, այլ այժմ ոչ ևս, զի անդորրացեալ՝ կարողք են ջան դնել և յառաջանալ.

## ՎԱՆՈՐԱՅՔ ՄՇՈՅ

Առաջին 'ի վանորէիցդ անուամբ և բազմութեամբ միաբանից, եկամտից առատութեամբ և յաճախ երթևեկութեամբ ուխտաւորաց և շինութեան ընդարձակութեամբ՝ համարի սուրբ Կարապետ, այլ ըստ հնութեանն Հաւատարալոյ. զի ամենեքեան հիմնեալք են 'ի սրբոյ Լուսաւորչէն՝ տակաւ առաջ յառաջ և զկնի միմեանց. Մենաստանս այս հեռի է 'ի Մշոյ եօթն կամ ութ ժամու յարևմտեան հիւսիսոյ կառուցեալ 'ի կողմս լերինն Քարքեայ 'ի դժուար վայրի, 'ի հիւ-

սրտոյ իւր ունելով զլեառնդ, և յարևելից և յարևմտից զայլ ևս բարձունս կամ գօտիս նոյն լերին, և 'ի հարաւոյ այլ և այլ ձորամիջօք տարակացեալ 'ի դաշտէն Մշոյ։ Լեառն Քարքէ բազմագօտի գօտիւ ընդ այն կողմն՝ կոչի 'ի բնակչաց Բազմաւսար։ Մենաստանս այս տեղի էր 'ի ժամանակս հեթանոսութեան մեհենից Դեմետրեայ և Գիսանեայ կռոց. զորս կործանեալ սրբոյ Լուսաւորչին և շինեալ եկեղեցի և վանս՝ ամփոփեաց 'ի նմին 'ի նշխարաց սրբոյ կարապետին և Աթանագինեայ եպիսկոպոսին, և կացոյց առաջին վանահայր զԳլակ ասորի, յոյր անուն կոչեցաւ Գլակայ վանք։ կոչեցաւ և Իննակնեան վանք, յաղագս ինն աղբերացն բղխելոց մօտ առ նմա, ուր բնակեցան երբեմն եօթն խոտաճարակքն և անդ կատարեցան 'ի Պարսից։ Շինուած մենաստանին է քառակուսի և կրկնայարկ, առհասարակ քարաշէն և բարձրապարիսպ, սահմանեալ 'ի բնակութիւն միաբանից կարգաւորաց և մշակաց. և չիք այլ բնակարան զատուցեալ որմով յառաջնոցն՝ վասն ուխտաւորաց, որպէս յայլ անուանի վանորայս տեսանի։ Եկեղեցին է 'ի մէջն անդ քառակուսւոյն զատուցեալ 'ի մենաստանէն յամենայն կուսաց, բոլորակ քարաշէն բազմասիւն, ցած և տափարակ տանեօք։ Աւագ խորանն փոխանակ կիսաբոլոր խորանաձև տեղւոյ առ 'ի ներքս ըստ սովորութեան այլոց եկեղեցեաց՝ յառաջ կոյս կայ յորմոյն. երկուստեք նորա այլ մատրունք փոքրունք, տաճարաձևք և գմբէթաւորք, յաջմէ սուրբ Ստեփաննոս և յահեկէ սուրբ կարապետ, ուր է հանգստարան նորա 'ի սպիտակ կճոյ, յաջմէ զարդարեալ բազում արծաթի սպասուք և դիպակօք, և հանդէպ նորա Աթանագինեայ եպիսկոպոսին։ Ուխտաւորաց օրէնք են նախ մերձենալ 'ի խորհուրդ խոստովանութեան և ապա մտանել յայս մատուռն՝ յերկրպագութիւն գերեզմանացն. և այս արանց միայն, զի կանանց արգելեալ է 'ի սկզբանէ և այսր մտանել 'ի մատուռն, այլ միայն մինչև ցդուռնն մերձեցեալ և երկրպագեալ 'ի հեռաստանէ՝ դառնան։ Կինն Վարդ պատրկի անցեալ զօրինօքս իշխեաց մտանել 'ի ներքս և հարուածեցաւ, ըստ Յ. Մամիկոնենի պատմութեան. և ցայսօր ոչ ոք 'ի մեծունեաց համարձակեցաւ 'ի նոյն կամ համարձակի, զի ծանօթ են իրքդ առ ամենեսեան։ Խաչվանք, կամ թէ աւել խորանք կրկին մատրանցս և աւագ խորանին՝ սեղեղօք և փառահեղք են, զոր շինեաց Պետրոս եպիսկոպոս Կուրավցի կոչեցեալ առաջնորդ վանացն։ Առ կողմբք կրկին մատրանցդ են և այլ մատրունք ընդարձակագոյնք քան զվերոյգրեալսն. հիւսիսայինն է զգեստատուն, ուր է և գերեզման մօր Վարդ պատրկի, և հարաւայինն յանուն սուրբ Գէորգայ նորոգեալ վերջասին։ Յաջակողմեան որմ մատրանս է տեղի առանձին և փոքր պատուեալ մշտավառ կանթեղօք. 'ի սմա աղօթէր, ասեն, սուրբ Լուսաւորիչ։ Զանգակատունն է սիւնազարդ 'ի վերայ դրան եկեղեցւոյն յարևմտից։

Արտաքոյ արևմտեան պարսպին այլ պարիսպ ածեալ է շուրջանակի ըստ չափոյ լայնութեան մենաստանին, իբրև գաւիթ ընդարձակ, յորոյ շրջապատի են այլ և այլ յարկածածուկ վարկպարազի բնակարանք, ընդ որս և ախոռք ձիոց. 'ի հարաւոյ շրջապատիդ է բուն արտաքին և մեծ դուռն մենաստանին։ Անդ 'ի գաւթին է և քարաշէն մատուռն սուրբ Յարութիւն կոչեցեալ, զորմէ աւանդի միացուրդ լինել շինուածոց Լուսաւորչին։ Ջուր մենաստանիս յորդառատ և մըշ-

տաճոս 'ի ներքս և արտաքոյ նորա, և ջրաղաց մի 'ի մէջ վանացն։ Ուխտաւորաց բազմութիւնն հաւաքին անդ 'ի տօնի Վարդավառին, և լինի տօնավաճառ մեծ ամենայն կարևոր վաճառաց։ Հասոյթ վանացն, թող զսեփական կալուածս իւր, գիւղորէք դաշտավայրին են մեծաւ մասամբ՝ թեմ նորա. թող և զոր նուիրակքն բերեն 'ի հեռաւոր աշխարհաց։ Մենաստանս կերակրէ զօր ամենայն ողիս աւելի քան զհարիւր յիսուն. թող զորս 'ի բազմութեան ուխտաւորաց, որք ոչ միայն 'ի Վարդավառին, այլ և 'ի Վերափոխման հաւաքին, եւս և յայլ եղանակս տարւոյն չպակասեն։ Իւրաքանչիւր յուխտաւորաց որ չէ 'ի դաշտէն Մշոյ, պարտի հատուցանել զարդասս վանացն՝ այն է ձեռաձիրս. զի Մշեցիք ևեթ ազատ են յայդմ պարտուց։ Արտաքոյ պարսպի վանացն 'ի հարաւոյ են վարկպարազի մատուռունք և 'ի նոսա ամփոփեալ մարմինք սրբոցն Անտոնի և Կրօնիդեայ և եօթն խոտաճարակացն։ Իսկ քառորդաւ հեռի 'ի մենաստանէն յարևելս հարաւոյ ընդ զառիվայրն է փակահ նորա, չինուած ընդարձակ և պարսպապատ. անդ պահին ամենայն կարասիք մշակութեան հանդերձ անասնովք, և է բնակարան երկրագործ մշակաց։

Ամաւ յառաջ քան զպատերազմն Ռուսաց մեծամեծք 'ի Քրդաց միաբանեալ անօրէն խորհրդովք թէ դադարելոց է իսպառ աւազակութիւն նոցա յետ անկանելոյ երկրիս Մշոյ 'ի ձեռս Ռուսաց, յարձակեցան 'ի վերայ վանաց սրբոյ Կարապետի և կողոպտեցին զամենայն առհասարակ զոսկի և զարծաթի սպասս և զպղնձի կարասիս. բացին զամենայն գաղտնի դարանս յոյժ սակաւուց ծանօթս 'ի միաբանից, և բարձին անտի բեռինս սպասուց անգինս և նորատեսիլս զհաւաքեալսն 'ի սուրբ Լուսաւորչէն և այսր. և ոչ թողին անդ և ոչ մի 'ի կարևոր անօթոց ոչ աստուածային պաշտամանց և ոչ հարկաւորացն կենաց մարդոյ. և զմիաբանսն որ անդ գտան՝ մերկացուցեալ թողին 'ի բաց։ Մատուռն սրբոյն Գէորգայ պահարան բազմաթիւ հնագիր մատենից դատարկացաւ իսպառ. զի 'ի մատենիցն էր զորս 'ի բաց տարան և էր զոր 'ի մի շեղջեալ լցին 'ի կաթսայս մեծամեծս և ջուր ածեալ 'ի նոսա ջնջեցին զամենայն. էր զոր 'ի ջուր ջրաղացին ամացեալ՝ ընդ մատամբք ճախարակին հերձատեալ կորուսին, և էր զորս ձեռօք իւրեանց մանր մանր պատառեալ ցրուեցին ընդ ճանապարհ վանացն։ Այսպէս ամենայն ցանկալի հնութիւնք վանացն կողոպտեալ անհետ եղեն և մնաց մենաստանն ամայի իբրև ամիսս վեց. և յետ այնորիկ խաղաղացեալ փոքր մի երկրին յերեսաց նոցա, եկին դարձեալ միաբանքն և կալան բնակութիւն իբրև զառաջինն։ Ընդ կորուստ բազմագանձ սպասուցն թէպէտ ելաց ամենայն հայ մարդ, սակայն մխիթարեցան և մխիթարեցին ժամանակաւ իբրև տեսցեն դարձեալ զմենաստանն լցեալ զարդարեալ նորօք վերստին։ Սակայն կորուստ մատենիցն հնոց՝ վէրս անբժշկելիս գործեաց 'ի սիրտս ամենայն ուսումնասիրաց, որում չիք այլ ևս դարման տանել, ոչ ոսկի և արծաթ և ոչ ակունք պատուականք փոխանակեսցեն երբէք անհնարին վնասուն։

ՄԱՏՐԱՎԱՆՔ. — Հինգ ժամաւ հեռի է 'ի սուրբ Կարապետէ յարևելս նորա, և 'ի հիւսիսոյ Մշոյ յայնկոյս Եփրատայ 'ի ձորամիջի առ փոքու գետակաւ որ խառնի 'ի գետն մեծ։ Ի վանս յայս ամփոփեաց սուրբ Լուսաւորիչ զմանրորդս ոսկերաց

սրբոյ կարապետին և Աթանագինեայ. Նմին իրի և Մաւրավանք ևս կոչի, և 'ի ռամկէն Մատնավանք ։ փոքր է մենաստանս, և ոչ նշանաւոր ինչ 'ի նմա և ոչ միաբանից բազմութիւն. քանզի և թեմ նորա սակաւ է յոյժ 'ի գիւղորէից Մշոյ և հատոյթ անբաւական ։

ԱՇՏԻՇԱՏ. — Ի հիւսիսոյ Մատրավանից ժամու հեռի 'ի նմանէ է գիւղս աննըշան, 'ի կողաց լերանցն հիւսիսոյ 'ի սարաբարձր և 'ի դիւր տեղւոջ ։ Այս այն է որ 'ի հնումն Յաշտից տեղիքն անուանէր պատուեալ զոհիւք յաղագս մեծի մեհենին, յորում էին պատկերքն երեքեան՝ Վահեվահեանն, և Անահիտ՝ ոսկեծին և ոսկեմօր ասացեալ, և Աստղիկ. զորս անհետ արարեալ Լուսաւորչին՝ շինեաց 'ի տեղւոջն եկեղեցի՝ որ առաջին համարի ընդ ամենայն Հայաստան, զի յետ այնորիկ շինեաց զսուրբ Կարապետն ։ Այս եկեղեցի կործանեալ յԱպտուռահիմայ 'ի կէս Է դարու, 'ի Մամիկոնեանց վերստին շինեցաւ յետ ժամանակաց՝ մեծակառոյց, յորոց ամփոփեցաւ 'ի նմա մարմին սրբոյն Սահակայ ։ Եւ զսա ևս կործանեալ Լանկթիմուր՝ 'ի քարանց նորա շինեաց զԵփրատայ կամուրջն առ Սուլուխաւ ։ Մամիկոնեանց մեծագործութիւն երևի յաւերակաց եկեղեցւոյն՝ որ գետնոյ հաւասար տեսանի ցարդ ըստ շուրջանակի տարածութեան իւրում. յորում մնացուած մի փոքրիկ վերստին շինեալ գետնափոր՝ ամփոփեալ կայ 'ի նմա յաջմէ մարմին սրբոյն Սահակայ, և 'ի հանդիպոյ սրբոյն Շուշանայ ։ Արտասուաց արժանի համարեսցի Հայաստան, եթէ հայրենասէր ոք ոչ գտցի պատուել զտեղիս զայս զցանկալի գամբարան սրբոյ հօրն և երկրորդ լուսաւորչի, և վերստին կանգնել զտաճար առնն Աստուծոյ, հետևող Մամիկոնեանց առաքինութեան գտեալ ։ Շատ իցէ մի անգամ յուշ ածել զարդիւնս քահանայապետին մեծի 'ի լուսաւորութիւն ազգիս, և յանշուք և յանապատացեալ վկայարանէ նորա 'ի գետին մնանել առ ամօթոյ ։

ԱՌԱՔԵԼՈՑ ՎԱՆՔ. — Ցարևելից կոյս Մշոյ երկու ժամու տարակաց 'ի նմանէ 'ի կողաց լերանցն Տօրոսի 'ի լայնարձակ ձորին 'ի բարձր լեռնադաշտակի որ է ընդ՝ Ծիրնկատար կամ Տիրինկատար լերամբ, և բարձրահայեաց 'ի վերայ դաշտավայրին 'ի զուարճալի տեղւոջ, ուր քաղցրաբեր օդոց փչմունք, սիզաւէտ տեղիք ուռենեօք շրջապատեալ՝ 'ի հարաւային խորշակէ պատսպարեն զվայրսն ։ Մեծանիստ է վանս քան զՄատրավանք, թէպէտ և փոքր քան զսուրբ Կարապետ ։ Եկեղեցի նորա տաճարաւոր և կաթողիկէ 'ի վերայ. տաճարին յորում և մատրունք չորք 'ի չորեսին անկիւնս և 'ի վերայ նոցա գարանք առ հասարակ մթինք և խրթինք. երկուստեք տաճարիս են գերեզմանք աւետարանչացն Մարկոսի և Ղուկայ, յորս ամփոփեալ են մասունք 'ի նշխարաց նոցա ։ Իսկ մասունք երկոտասան առաքելոց, յորոց անուն կոչի մենաստանս, չունին առանձին դիրս, այլ աւանդութեամբ ասի ամփոփեալ զնոսա սրբոյ Լուսաւորչին ընդ խորանաւ տաճարիս ։ Շինութիւն տաճարին հնագոյն երևի, այլ եկեղեցւոյն կամ ժամատանն ոչ այնպէս, որոյ թուականն տեսանի 'ի վերայ աջակողմեան միջին սեանն որ ասէ այսպէս.

'Ի Թվկ. Հ. ՌԴ ։ շինեցաւ ժամատունս ձեռամբ տէր կա-

բաղեա արհեպիսկոպոսին յիշատակ իւր եւ ծնողաց իւ-րոց ։

Եւ է կամարակապ 'ի վեցից սեանց, այլ տախտակ տանեաց. իսկ զանգակատունն սիւնազարդ առաւել նորաշէն քան զժամատունն 'ի վերայ դրանն յարեմտից ։ Զերկրացեկ դուռն տաճարին աւանդեն լինել դուռն Ջորոտաւանելոյ մամիկոնեայ, զորմէ զկնի. և է ծաղկազարդ յօրինեալ փորագրածոյ և սեանեօք, հանդերձ չրջանակաւ, և պատկերս 'ի նմա մարդոյ և թռչնոց ըստ արհեստի ախորժակաց ժամանակին, և 'ի վերայ փորագրեալ այսպէս.

'ի ԹՎ ՇՁԳ ես տ̅ր Թորոս եւ գրիգոր եւ ղուկաս գծ ։

Թէպէտ և 'ի շինուածոց Լուսաւորչին չէ մնացեալ ինչ, սակայն են հնութիւնք այլոց դարուց զկնի Լուսաւորչին. 'ի դոցանէ են խաչաթոռ ասացեալքն արտաքոյ պարսպի վանացն յարեւելից շարեալ կարգաւ 'ի հիւսիսոյ 'ի հարաւ. և են գոքա մեծամեծ խաչաքարք կանգուն ագուցեալք 'ի վերայ ստուար վիմի իբրու բազմեալք 'ի վերայ աթոռոց. բազմաքանդակ են խաչաքարքդ ունելով իւրաքանչիւր արձանագիրս յանուանէ, և կոչեն զնոսա յանուն թարգմանչացն, յորոց ծանօթ մեզ Դաւթի անյաղթին է, որ և բազում ամօք յառաջ կանգնեալ է ըստ ցուցանելոյ թուականին. թուի թէ այլ գերեզման եր նորա հասարակ և կամ խորտակեալ, և յետոյ ընծայապարգ զայդ կանգնեցին, զի քան զայլսն բարձրագոյն է և խաչաքարն և աթոռ նորա ։ Եւ են արձանագրութիւնք իւրաքանչիւրոցն այսոքիկ սկսեալ 'ի հարաւոյ.

Ա. 'ի ԹՎ ՇՂԳ կանգնեցաւ խաչս 'ի բարեխաւսութի̅ն սանեփ ։ Ծոնկանն ննջեցելոյ 'ի ք̅ս̅ յիշ աղաչ. զմե-ղաւոր զգտորդ Ծոնակ

Բ. 'ի ԹՎ ՇՂԳ կանգնեցաւ խաչս 'ի բարեխաւսութի̅ն տ̅ն դաւթի անյաղթ փիլիսոփայի յիշեցէք 'ի ք̅ս̅ աղա-չեմ զմեղուցեալ գէորգ Ծոնակս յիշե

Գ. պօղոս վարդապետ հանգուցեալ 'ի ք̅ս̅ յ̅ս̅
(զմանէ ասեն աւանդութեամբ թէ Ցարօնեցին է)

Դ. տ̅ր ղազարս եւ տ̅ր ստեփանոսի 'ի ԹՎ ։ ՇՀԳ ։ կանգ-նեցաւ խաչս և նորոգեցաւ ո̅ր աւաքեալքս ա̅ծ ո-ղորմի աշխատողաց սորա

Ե. • • • ։ եւ պատուական պետրոս քահանայ որ կանգնեաց

զխաչս զայս 'ի բարեխաւսութի . . . ՇՀԲ զյեսու գծողս

Զ. (անգիր)

Է. 'ի ԹՎ ՈԺԱ Թումա վարդապետ հանգուցեալ 'ի քն̄ յն̄ 'ի տր̄ մեր

Ը. 'ի Թվականութն հայոց ՇՂ կանկ ։ ('ի կողմանէ) . . . պետրոսի քահանայի և կոստանդէ յիշեսջիք 'ի քն̄ աղաչեմ եւ զգործողս . . 'ի սու . . 'ի նվարի . . ժ . կա

Թ. 'ի Թվկ Հ ՈԼԱ ես խաչիկ որ զխաչս կանգնեցի փրկութն̄ հոգոյ իմոյ եւ ծնողաց իմոց յիշեսջիք 'ի քն̄ աղաչեմ

Ընդ մէջ հինգերորդին և վեցերորդին կայ միւս ևս անգիր։

Ի հանդիպոյ խաչաթոռոցդ յարևելից են երկու գերեզմանք առընթեր միմեանց՝ ոչ կանգունք իբրև զայլս, այլ սովորական դրիւք, զորոց աւանդեն եթէ Խորենացւոյ և Մամբրէի իցեն։ Նովին դրիւք են և այլ ևս երկու գերեզմանք 'ի հիւսիսոյ նոցա, նոյնպէս առընթեր միմեանց և երկայնաձևք, և զսոցանէ ասեն եթէ իշխանացն Սահակայ և Համազասպայ են։ Երկոսեանք եկեղեցւոյ վանացս են և այլ ևս երկու մատրունք, հարաւայինն սուրբ Ստեփաննոս և հիւսիսայինն սուրբ Գէորգ, երկոքին ևս ամայի և անգործածելի. 'ի սուրբ Գէորգ ասեն թաղեալ զձորտովելն Հայոց ախքայ կոչեցեալ, որ թերևս Զօրտուանէլ իցէ Մամիկոնեան, զոր յիշեցաք և յիշելոց եմք դարձեալ, այլ գերեզման նորա անյայտ է այսօր 'ի մատրանդ։ Քարընկէց մի հեռի 'ի մենաստանէն է այլ մատուռն մեծ վայելչաձև սաքաչէն հանդերձ կաթողիկէիւ, նուիրեալ յանուն Աստուածածնի։

Ջուրք աղբիւրք են մշտահոսք ներքոյ և արտաքոյ մենաստանիս. յորոց մի է և Թադէի առաքելոյ ասացեալն աղբիւր պատուական քան զայլսն. զի է հանդէպ նորա խաչաքար հին զոր սրբոյ առաքելոյն ասեն օծեալ և կանգնեալ 'ի տեղւոջն։ Ի հասոյթ մենաստանիս բազում Թեմս կալեալ Լուսաւորիչ հանդերձ Տրդատաւ. յորս յաւել յետ ժամանակաց և Զօրտուանէլ Մամիկոնեան, յորմէ երևի թէ յայժ չէին և պայծառ էր մենաստանս առ նախնեօք բազմութեամբ միաբանից 'ի նմա։

Այսպէսիկ և որ սոցին նման այլ ևս ցանկալի գիտելիք զվանացս՝ պատմին մի ըստ միոջէ 'ի հնագիր մագաղաթեայ արձանագրի. զոր նախ սրբոյ Լուսաւորչին արձանագրեալ ձեռամբ իւրով յունարէն, և յետ ժամանակաց 'ի հայ թարգմանեալ զայն Զօրտուանէլ, որոյ մատանց գիր է որ պահի ցարդ 'ի վանսն զոր

և կցեալ են՝ յետոյ 'ի կատարած երկաթագիր մագաղաթեայ մեծի ճառընտրին։ Արձանագիրդ սկիզբն առնէ զերթալոյ սրբոյ Լուսաւորչին 'ի Հռոմ ընդ Տրդատայ, պատմէ զդաշինսն, զնշխարս սրբոցն ածել և ամփոփել 'ի տեղւոջս, զշինութիւնն մենաստանիս, և հասոյթս կապել նմա։ Եւ քանզի ոչ ամենեցուն դիւրընթեռնելի էր գրութիւն Զորտուանելայ, 'ի ՇԻԸ թուին գաղափարեալ է զնոյն բանս 'ի ներքոյ նորա սովորական տառիւք ժամանակին, յաւելեալ 'ի նմա ուրեք ուրեք յանուանս տեղեացն զայլ անուանս, որպէս կարծի, 'ի բացատրութիւն այլոցն։ Նշխար արդարեւ ցանկալի, եթէ անկորուստ պահել կարասցեն մինչև ցվախճան։ Եւ այս պատճէն է նորին.

« Ես Գրիգորիոս պահլաւիկ որդի անակա յազգէ արշակունեաց. յետ բա-
» զում չարչարանաց և փորձանկից զոր կրեցի վասն անուանն Քրիստոսի։ Խնամաւք
» և տեսչութեամբ կոչմամբ ամենասուրբ հոգւոյն կացի յաթոռ եպիսկոպոսապե-
» տութեան տանս Թորգոմա և ազգանազեան ազինս։ զոր գութ և խնամ մեծի
» ողորմածին Աստուծոյ ծագեաց 'ի նոսա 'ի ձեռն իմոյ անպիտանութեանս ըղ-
» լոյս գիտութեան աւետարանի փառացն Քրիստոսի որ զարդարեալ պայծա-
» ռացան եկեղեցիք հայաստանեացս։ Արդ խնամաւքն Աստուծոյ եւ առաջնոր-
» դութեամբ, կամ եղև ինձ և աստուածասէր և քրիստոսապսակ արքային
» Հայոց Տրդատա. գնալ 'ի տես 'ի սէր և 'ի միաբանութիւն մեծ քրիստոսասէր
» և բարեպաշտ աշխարհակալ կայսերն Հռոմայեցոց Կոստանդիանոսի հանդերձ
» բազում ազատագունդ զաւրաւքս Հայոց։ Հ։ հազարաւ. որով հասեալ 'ի մեծ
» մայրաքաղաքն և յարքայանիստ գահն Հռոմ. մեծամեծ պատւով և ամենա-
» ռատ սիրով ընկալեալ եղաք յաստուածասէր և բարեպաշտ արքայէն Կոստան-
» դիանոսէ. եւ 'ի սուրբ առաքելանման հայրապետէն Սեղբեստրոսէ. կացեալ
» ժամանակս ինչ առ նոսին. դաշն սիրոյ և միաբանութեան եդաք առ միմեանս
» Քրիստոսի արեամբն գրել և միջնորդել։ Զի անշրելի լիցի ուխտ և միաբանու-
» թիւն Հայոց և Ֆրանկաց մինչև 'ի կատարած աշխարհի։ իսկ զկնի դառնալոյն
» մեր յաշխարհս հայոց 'ի ժամ բաժանմանն պատուեալք եղաք 'ի նոցանէ փա-
» ռաւք մեծամեծ և անթիւելի պարգևաւք։ Զոր ամենայնի կատարեալ հաւա-
» տով և ջերմեռանդ սիրով խնդրեցաք մեք 'ի նոցանէ կապ սիրոյ և հաստա-
» տութեան դաշանց զոր եդաք 'ի նշխարաց սուրբ և գլխաւոր առաքելոցն Պետ-
» րոսի և Պաւղոսի։ և նոցա շարժեալ 'ի սիրոյ մանաւանդ թէ 'ի վերին խնամոցն
» տվին զպհեկ բազուկն Պետրոսի և Պաւղոսի. և զաջ ձեռն սուրբ առաքելոյն
» Անդրէի հանդերձ այլ բազում նշխարաւք պարգև հայաստանեաց գանձ անկա-
» ղոպտելի և պատճառք փրկութեան ազգի մարդկան։ մեք ընդունեալ մեծաւ ու-
» րախութեամբ բերաք յաշխարհս հայաստանեաց. եկեալք 'ի գաւառս տարաւ-
» նոյ. 'ի տեղւոջն յորում հանգուցեալ էր նշխարք սրբոյ կարապետին և Յով-
» հաննու Մկրտչին ժողովեալ զամենայն եպիսկոպոսունս և զվարդապետս և
» զբոլոր դասս պաշտաւնէից բազում պաղատանաւք խնդրեցաք 'ի Քրիստոսէ
» յայտնել տեղի արժանաւոր հանգստեան նշխարաց սրբոց առաքելոցն 'ի հայա-
» ստան աշխարհիս։ զոր լուաւ Աստուած այն որ զկամս երկեղածաց իւրոց առնէ

» և աղաւթից նոցա լսէ․ և յայտնեաց 'ի ձեռն հրեշտակի իւրոյ առաքելով յերկնից
» եցոյց զտեղին արժանաւոր առ ստորոտով լերինն Տաւրոսի յարեւելից կողմանէ
» 'ի տեղւոջն որ կոչի արեգակնածագ ոչ 'ի ներքնադուռն և ոչ 'ի վերնադուռն այլ
» 'ի միջնադուռն․ ուր բերեալ ամփոփեցին զնշխարս սրբոց առաքելոցն զոր հիմ-
» նարկեցաք 'ի վերայ մեծ և երկնանման խորան եկեղեցի․ յաւրինեալ զտեղին բնա-
» կութեան մաքուր միանձանց և աստուածահաճոյ ճգնաւորաց․ առաջնորդ կար-
» գեալ նոցա զոմն 'ի հանճարեղ և 'ի մաքուր կրաւնաւորաց եղիազար անուն ազ-
» գաւ ասորական բայց հաւատով ճշմարիտ քրիստոնեայ յաստիճան քահա-
» նայութեան կարգել մերով ձեռնադրութեամբ։ յորում ժամանակի աստուած-
» ասէր և բարեպաշտ արքայս մեր Տրդատ փարթամացոյց զսուրբ ուխտս պայ-
» ծառ սպասիւք և բազում չինանիստ դեղերաւք յամենայն գաւառս իշխանու-
» թեան իւրոյ եւ հաստատեաց սահման վանից 'ի Դ․ դեհաց․ յարեւելից կողմա-
» նէն․ առաջաց հողմայրքն․ գայ ձորովն յերկգգումոյն աղբիւրն․ և ելանէ քա-
» րագլխովն ու մայրաբերանովն գայ 'ի միջին ճանապարհն որ երթա ի . . . գաւ-
» թայ և գողուց աղբիւրն․ ելանէ 'ի մոկաց խաչն 'ի հարաւոյ կողմանէ անցանէ
» յետև մկնաբերդոյ․ յանդիման այրին գայ 'ի մոկձորոյն ճանապարհն վերև
» ջրատանն կարէ զնշանին քարն, և անցանէ դիմաց սաթասեանց․ որ գնա 'ի ջըր-
» հորոյն իջանէ ճանապարհովն 'ի գավիլանք ու անցանէ 'ի ձկանխուց ու ելանէ
» 'ի ջհտող ու երթա ներքև վանամորգա դիմաց ըռապատուն զոր կարէ կաք-
» վուց աղբիւրաձորն ընդ կախմխուտն 'ի վայր մինչ 'ի մեծ ձորն․ և երթա ձո-
» րովն ներքև քաւշմեռւին 'ի մեծ ճանապարհն որ գնա 'ի բերդն դառնա ճանա-
» պարհին հատովն երթա 'ի ջոկերն անցանէ յետև ողինն և իջանէ 'ի հորձոր
» յառուն ելանէ յանջրդեաց խաչն գնա սարովն ծծմակին գլխովն 'ի կրճիլանց
» խաչն ջախուց ճանապարհաւն և հավատվորուց խաղոմն իջանէ կարմիր փլովն
» 'ի ջրաղաց․․ նէ յեզր դաշտակին 'ի խաչն․ և երթա ճանապարհաւն 'ի հող-
» մայրքն։ Այս է ստուգութեամբ սահման վանացն որ էր յառաջ մեծ դղեկին
» տիրինկատար կոչեցեալ․ զի էր նա տեղի անահիտ պատկերի զոր մեք զաւրու-
» թեամբն Քրիստոսի խորտակեցաք և տվաք զբերդն տիրինկատարի իւր քաղա-
» քովն և ամենայն սահմանաւքն ընձա սուրբ առաքելոցն․ և գրել կնքեցաք
» հայրապետական մեծաւ գրաւորական մատանեաւ զի անխախտելի լիցի մինչև
» 'ի կատարած աշխարհի։ Արդ յետ մեր անցման որ տիրեն այսմ աշխարհի թա-
» գաւորք կամ իշխանք 'ի մերոց կամ յաւտարաց մի իշխեսցեն հանել զսա 'ի
» սուրբ ուխտէն յափշտակելով կամ խորելով կամ զինչ և է պատճառանաւք,
» և թէ ոք յանդգնեսցի զայս գործել անէծս առցէ ընդ կայենի և ընդ այլ
» չարագործացն և յամենայն լեզվէ նալաթ լիցի։—Ես Զարտուանէլ մամիկոնեան
» որդի տաճատա մեծի, իշխան տարաւնոյ և ամենայն աշխարհիս Հայոց տեսի
» զայս գիր սահմանաց գրել հելլէն և յոյն գրով 'ի Լուսաւորչէն մերմէ սրբոյն
» Գրիգորէ պարթևէ և թարգմանեցի 'ի հայ գիրս և հաստատեցի զի միացական
» հայրենիս լիցի սուրբ առաքելոցն․ և յինէն յաւելեալ 'ի հայրենիս նորա զիմ
» ծննդեան գեղն զբերդակին կայսրովն և իր ամենայն սահմանովն այգեստանաւք
» և բուրաստանաւք»։

« Ի Թվ Հայոց ՇԻԲ․ և զեղկելի գրիչ յիշէ տէր Թադէոս ա̅մ ողորմի ինձ և նորա։

*Յարձանագրիդ յիշատակեալ բազում նշխարք սրբոցն ածեալք 'ի ձեռն Լուսաւորչին 'ի Հռովմայ՝ պահին ցարդ աստէն, այլ զոմանս 'ի նոցանէ յարծաթապատացն՝ որք ամիթաղ պահեալ էին յեկեղեցւոջդ արտաքոյ 'ի յարգութիւն ուխտաւորաց; չորս ամօք յառաջ (1840) գողք 'ի Քրդաց 'ի բաց տարին գիշերայն ընդ այլ աւարի մասին արծաթեղինաց. ընդ որս էր և Ղլիճ կոչեցեալ աւետարանն հռչակաւոր, յորմէ 'ի բաց զերծուցեալ զարծաթի կողսն արկեալ էին զաւետարանն ուրեք արտաքոյ վանաց, զոր ապա գտին միաբանքն։ Եւ է մատեանն փոքրադիր ութածալ բոլորգիր անհարթ, և ոչ աւելի քան չորեքհարիւր ամաց գրութիւն նորա։*

*Թեմ վանացս են գիւղօրէք հարաւային կողման Մեղրագետոյ, սկսեալ 'ի Մշոյ յարևելս կոյս՝ մինչև ցանդ ուր աւարտի դաշտավայրն։*

*Մենաստանս Առաքելոց կոչի և Գլաձորոյ վանք, թերևս վասն խորանդունդ ձորոյն որ է յաջմէ մենաստանին. իսկ ստուգութիւն անուանակոչութեանս է 'ի յիշատակարանի գրոց այսպէս. «Գրեցաւ սուրբ աւետարանս 'ի թուականութեանս Հայոց ՋՀ 'ի գաւառս Տարօնոյ 'ի վանս Գլաձորոյ 'ի դրունս սուրբ առաքելոցն, յառաջնորդութեան սուրբ ուխտիս Թադէոս եպիսկոպոսի»։ Ա՛յլ է 'ի սմանէ և Գլաձոր վանք 'ի Վայոց ձոր գաւառի յաշխարհէն Սիւնեաց։*

*Հանդէպ Առաքելոց վանաց 'ի մէջ դաշտին կիսաժամու հեռի 'ի Նորշէն գեղջէ՝ է հնաշէն եկեղեցի մի սուրբ Սոփիա կոչեցեալ, ժամատամբն և տաճարաւն 'ի չափաւոր մեծութիւն, առ հասարակ քարաշէն, թէպէտ և այժմ ամայի կայ. իսկ թուական հնութեանդ գտանի դարձեալ 'ի յիշատակարանի իրիք. «Գրեցաւ սա 'ի Տարօն որ այժմ Մուշ ասի, 'ի գիւղն որ Նորշէն կոչի հանդէպ սուրբ Առաքելոցն, ընդ հովանեաւ սրբոյն Սոփիայ պատուական և սքանչելագործ եկեղեցւոյս որ է փարատիչ ամենայն ցաւոց եւ առաւել այսահարացն, ձեռամբ նահապետ երիցուս 'ի թվին ՋԼԸ»։ Նորոգութեան եկեղեցւոյս թուական է որ կայ 'ի վերայ ներքին դրան կամ տաճարին ՌՃԽԸ։ Են և այլ թուականք 'ի վերայ քարի միոյ 'ի տանիսն ՋԾԲ. ՌՀԲ։ Ըստ վկայելոյ յիշատակարանիդ, որպէս և Նորշէնցիք աւանդութեամբ ունին, գիւղն Նորշէն առ սուրբ Սոփիա էր շինեալ յառաջագոյն, և ապա որպէս կարծի, կամ առ ճահճաց տեղւոյն և կամ զի առաւել մօտ իցեն Մեղրագետոյ, կիսաժամու բացական շինեցին անտի. այլ գերեզմանատուն նոցա է դարձեալ սուրբ Սոփիա։*

ՍՈՒՐԲ ՅՈՎՀԱՆՆԷՍ. — *Յարևմտից կայ Մշոյ 'ի կողաց միոյ լերին Տօրոսի, չորս ժամու տարակաց 'ի քաղաքէն. դիրք նորա իբրև զԱռաքելոց վանսն բարձրահայեաց 'ի վերայ դաշտին, այլ տարածութեամբն փոքր քան զնա։ Եկեղեցին ուր պաշտօն կատարի՝ անշուք է և մթին. այլ միւս եկեղեցին սուրբ Ստեփաննոս որմակից նորա վայելուչ ճարտարապետեալ է, բարձր և գմբէթաւոր։ Ա՛յլ ամենայն շինուածք մենաստանին, սենեկացն և անձուկ սրահիցն և փողոցացն՝ գիճին և տղմալից և մթին և ամենևին անշուք են։ Առ որմովք մենաստանին արտաքոյ է մատուռն փոքրիկ և առ նմա ծառ եղրդունի, յորոյ անուն կոչի երբեմն և մենաստանն 'ի յիշատակարանս գրոց՝ Եղրդուտի վանք։*

*Ընդ մենաստանս Մշոյ համարելի էր արդեօք և եկեղեցին սրբոյն Մեսրո-*

պայ 'ի գիւղն Հացիկ 'ի հիւսիսակողմն Մեղրագետոյ 'ի մէջ դաշտին. Թէպէտ չիք այժմ կանգուն ոչ եկեղեցի և ոչ մատուռն մի փոքրիկ, այլ երևի աւերակ նորա. և առ նմա քարընկէց մի հեռի այլ տեղի շրջապատեալ 'ի վարկպարազի քարանց և 'ի մէջն կոտորք գերեզմանաքարի բացօթեայ խոպան և պատուեալ 'ի բնակչաց: Թերևս մասն մի 'ի նշխարաց սրբոյն ամփոփեալ իցէ 'ի տեղւոջն, կամ նախ աստէն թաղեալ իբրև 'ի հայրենի գիւղն իւր յորում ծնեալն էր, և ապա փոխադրեալ յՕշական գիւղ յԱրագածոտն գաւառի:

Ի նախնի ամրոցաց Մշոյ, յորոց բազումք յիշին յանուանէ՝ կանգուն կայ ցարդ և կիսաւեր Աղձբերդ 'ի կողմս լերինն Տօրոսի մօտ 'ի գիւղն Մակունք. կարի փոքր է տարածութեամբ, աշտարակս ունելով և գետնափոր սենեակս. այլ շինուածն անշուք և 'ի մանր քարանց: Ի նոյն լերինս յոյժ 'ի բարձու քան զԱղձբերդ է կատուրի քար ասացեալն ամրոց առ լեռնային ճանապարհաւն՝ որ տանի 'ի Բռնաշէն, և սորա աւերակքն երևին նոյնպէս 'ի մանր քարանց:

## ՇԱՏԱԽ

Գաւառ սահմանակից Մշոյ 'ի հարաւոյ նորա, յարևմտից իւր ունելով զԲռնաշէն գաւառն. և է 'ի վերայ լերանցն Տօրոսի, դաշտավայր ոչ հաւասար, այլ բարձունս ունելով ուրեք ուրեք գեղեցկադիրս: Թէպէտ և շէն էր գաւառս, այլ 'ի հարստահարութենէ Քրդաց ամայացեալ՝ 'ի յոյժ սակաւաթիւ աղքատ գիւղորէից սահմանի արդ. նմին իրի ընդ ամենայն գաւառն անթիւ արտորայք անմշակելի կան: Շատախ կոչեցաւ գաւառս յանուանէ Շատախօսիկ իշխանին, որոյ թելադրութեամբն գողացան զՄիծառնեայ խաչն 'ի վանաց սրբոյ Կարապետի և բերին այսր: Մենաստան մի կայր 'ի գաւառիս յանուն Աթանագինեայ՝ 'ի ռամկաց Աճրանէա ասացեալ, կործանեալ և ամայի մնացեալ բաց 'ի փոքրիկ եկեղեցւոյն, 'ի բազում ամաց հետէ. և շինեաց 'ի հիմանց յամին 1849 Պօղոս վարդապետ 'ի Մեղտեայ գեղջէ Մշոյ, միաբան Առաքելոց վանաց: Շուրջ զմենաստանաւն է անտառ կաղնի ծառոց գեղատեսիլ բլրակօք, և գետակ առաջի նորա ընթանայ, և առ եզր գետակին մատրանաձև տեղի յորում բխէ ջուր առողջարար: Ըստ կարծելոյ ոմանց աստ թերևս պահեցաւ 'ի հնումն խաչն Միծառնեայ: Ա՛յլ է 'ի սմանէ միւս Շատախ գաւառ 'ի Վասպուրական աշխարհին:

ԾԻՐՆԿԱՏԱՐ կամ ՏԻՐԻՆԿԱՏԱՐ. — Է բարձրաձայր լեառն 'ի մասանց լերանցն Տօրոսի 'ի թիկանց Առաքելոց վանաց, և սահման համարի դա յայնմ կողմանէ Բռնաշինոյ և Տարօնոյ: Բուն գագաթն լերինդ՝ աքանչելատես դիտարանն՝ ուստի ակներև լինին դաշտավայրն Մշոյ ծայր 'ի ծայր առ հասարակ և մանուածաւալ ընթացք երկոցուն գետոցն, ապառաժ սալայատակ է, ունելով տարածութիւն իբրև քարընկէց մի: Անդ էր 'ի հնումն պատկեր Անահտայ կուոց, 'ի դէպ ընտրեալ վասն նորա զվայրն ամենացանկալի և վսեմատես, իբրու ակնարկող 'ի վե-

բայ ամենայն գաւառին մշտատեւ խնամակալս լինել ըստ հեթանոսական մտաց։ Զայդ պատկեր կործանեալ սրբոյ Լուսաւորչին, զտեղին եւս 'ի կալուած մենաստանին Առաքելոց, որպէս պատմի յիւրում արձանագրին՝ զոր եդաք 'ի վերոյ, յորում Տիրինկատար կոչի լեառնս, և թուի 'ի ռամկէն փոխեալ ապա 'ի Ծիրինկատար։

## ԲՈՆԱՇԷՆ

Գաւառ առ հարաւակ լեռնային, յարևելից Շատախու և սահմանակից խութայ յարևմտից նորա, և 'ի հարաւոյ դաշտին Մշոյ։ Լի են առ հասարակ լերինք գաւառիս կաղնի ծառովք, յորոց հանապազ հատանէ երկիր Մշոյ 'ի պէտս տանց և շինուածոց, կարծեմ առաւել քան զՍօղանլը լեառն՝ որ մայրիւքն իւրովք լեացուցանէ զերկիրն կարնոյ։ Խիտ առ խիտ են լերինք և բարձունք Բոնաշինոյ, և ձորքն անդնդախորք, գիւղորէս ունելով յոյժ նուազունս 'ի ձորամէջսն, և արտորայս մշակելիս անբաւական։ Առ կողիւք միոյ 'ի լերանցդ շինեալ է մենաստանն Ս. Աղբերիկ կոչեցեալ մի յերևելի ուխտատեղեաց, վեց կամ եօթն ժամու հեռի յերկրէն Տարոնոյ, անտի՝ ուր սպառի դաշտավայրն և լերինքն սկսանին։ Զեկեղեցի նորա շինեաց Թադէոս առաքեալ. և նոյն է անշուշտ որ մինչև ցայժմ անկործան կայ. վկայէ այդմ և հասարակաց աւանդութիւն։ Քանզի անհարթութիւն կամարացն և 'ի կիսոյ նոցա այլոց կամարաց ձգեալ կողմնակի, և տեղի խորանին և առաջի նորա բեմն ոչ 'ի միջավայրի, այդ ամենայն տձևութիւն ընդդէմ ամենայն արուեստի ճարտարապետութեան, և զի հին եւս է և բաղում ուրեք կարկատեալ, ցուցանեն յայտնի զի անարուեստ ժամանակաց է շինութիւն նորա 'ի բարբարոս դաւառականաց, որպիսի են խութեցիք 'ի սկզբանէ և այսր. և երկոքին դորա կարծեմ մի սահման էին 'ի հնումն, զի ոչ յիշի Բոնաշէն առ նախնիս, և զի չիք 'ի միջի գետ կամ լեառն որոշիչ սահմանին Խութայ 'ի Բոնաշինոյ ըստ այժմու բաժանման։ Թադէի առաքելոյ քարոզութեամբ եկեալ 'ի կողմանս յայսոսիկ, և հրաշիւք բժշկեալ զորդի Բոնիկ իշխանին գաւառապետի երկրին՝ որ նստէր 'ի բերդի շինելոյ 'ի գագաթան միոյ 'ի լերանցն, ուր և երևի ցարդ աւերակ նորա, և դարձուցեալ զնա 'ի հաւատս՝ խնդրէ 'ի նմանէ շինել եկեղեցի մի 'ի պաշտօն ճշմարտին Աստուծոյ յոր հաւատաց. Բոնիկ իշխան հիացեալ ընդ նոր սքանչելիսն և խնդամտեալ յոյժ 'ի վերայ զաւակին, առատամիտ գտաւ խոստմամբ. ասէ. Զոր խնդրեսդ, ոչ 'ի քարանց՝ այլ յոսկւոյ և յարծաթոյ շինեցից, հիւսեալ զորմունս նորա ձոյլ մի ոսկի և ձոյլ մի արծաթ։ Ասէ առաքեալ. Չեն պէտք անդ մեծաղացդ, զի եկեսցէ ժամանակ գողոց և աւազակաց և այսպէս եղուզակաց բռնաւորաց յորոց վեր 'ի վայր լիցի եկեղեցիդ՝ զոր շինիցես յոսկւոյ և յարծաթոյ. այլ 'ի քարանց շինեսցես զդա. և որք պաշտօն տարցին դմա՝ շատ է զի ջերմեռանդն 'ի ծառայութեանն Աստուծոյ լեալ իբրև զոսկի փայլեսցի աստուածպաշտութիւն նոցա։ Եւ Բոնիկ կատարեաց ըստ խրատու առաքելոյն։ Յետ ժամանակաց շինեցաւ այլ եկեղեցի գմբէթաշէն որ-

Մակից եկեղեցւոյն Թադէի վայելչաձև ըստ սովորական օրինի, զոր Լուսաւորչին շինեալ ասեն, որ և միջնադրամբ հաղորդի ընդ միւսոյն, և այլ միջնադրամբ յեկեղեցւոյ առաքելոյն լինի մտանել յայլ մատուռն որ է իբր տաճար նորա։ Ընդ խորանաւ մատրանդ է աքանչելարար աղբիւրն Թադէի, յորմէ և սուրբ Աղբերիկ կոչեցաւ մենաստանն, և ընդ երկրեայ ճանապարհաւ հոսի յայլ աղբիւր արտաքոյ մենաստանին, յորմէ հրաշանայ ամենայն որ ըմպէ՝ իբր 'ի հիւանդութենէ յանկարծակի առողջութեան հանդիպեալ, զի անհման իմն է քաղցրութիւն նորա և թեթևութիւն, և չկարծեմ թէ գտանի ուրեք 'ի Հայաստան աշխարհի նման նմա։ Ցայն աղբերս արկեալ է, ասեն, սուրբն Թադէոս զմի 'ի բևեռացն Քրիստոսի զոր ընդ իւր ունէր. նմին իրի յարբումն ևեթ վարեն ըզջուրն զայն զոր և արքայջուր անուանեն և կաթիլ մի 'ի գետին թափել խղճեն, և բնաւ 'ի լուացումն անօթոց չվարեն։ Է 'ի մենաստանիս և սուրբ նշան մականուանեալ Գաբրիէլյարոյց. իբր զի 'ի Մանազկերտ որդի գաւառապետին մանուկ մատաղ յանզգուշութենէ ընտանեաց անկեալ 'ի թոնիր բորբոքեալ և այրեալ՝ լինի գործելի, այն է ածուխ. և ապա 'ի ձեռն որոյ նշանիդ կենդանացեալ մանկանն՝ հայր նորա զամենայն երկիրն Մանազկերտի սեփականէ 'ի թեմ վանացն մինչև ցայսօր։ Այս ամենայն պատմութիւնք ընդարձակ աւանդին 'ի հին կոնդակս վանացն։

Ի հարաւոյ մենաստանին խորաձոր լայն. և ընդարձակ դաշտավայր է մշակեալ, և գիւղորէք 'ի նմա. և դաշտավայրդ այդ յանուամբ Քանաշէն է, այն որ 'ի հիւսիսոյ է, իսկ հարաւայինն համարի մասն գաւառին Խութայ, ոչ մի 'ի լերանց կամ 'ի գետոց անջրպետ 'ի միջի ունելով, որպէս ասացաք 'ի վերոյ. և լերինք Խութայ անուանեալք՝ անուն սկսանին ուրանօր աւարտի դաշտավայրդ։

---

## ԲԱՂԷՇ

Ի գաւառին և 'ի ձորավայրին մեծի՝ Սալնոյ ձոր 'ի հնումն կոչեցելոյ, որ յայլ և այլ ձորս բաժանի, բարձանց անջրպետ 'ի միջի կալով, շինեալ է քաղաքս։ Ձորամէջ տեղիք թէպէտ և անախորժ բազմաց թուեցին, այլ չգիտեմ որպէս բնութեանն շնորհեալ ախորժելի զվայրս այս յօրինեալ է. մինչև համարձակիմ ասել՝ եթէ չիք ոք որ միանգամ ակն արկեալ 'ի տեսիլ քաղաքիդ՝ և ոչ հիացի. գովեմ քաջ զհիմնադրի նորին զախորժակ, որպէս զանապատացեալն ձոր և անշուք զառաջինն՝ գուշակեաց գեղատեսիլ լինել ապա ժամանակաւ։ Ընդ ամենայն կողմն ձորավայրին մեծի, որոյ 'ի թիկանց ամբարձեալ են բարձունք մեծամեծք, ոչ միահետք և ոչ միաչափ բարձրութեամբ՝ այլ խառնիխուռն և այլ և այլ տեսարանաւ, իբր աստիճանաձև երևմամբ շինեալ կան տունքն՝ առ հասարակ քարակերտք կոփածոյք, թէպէտ և աղքատին տուն իցէ։

Չիմանայ ոք անդ 'ի բնակչացն զինչ սրտնեղութիւնն իցէ, թէ և աւուրբք բազմօք 'ի տան արգելեալ կայցէ. զի ընդ պատուհանն միանգամ՝ ակն արկեալ, մանաւանդ կացեալ 'ի տանիս, ահա բազմապատիկ բնութեանն գեղեցկութիւն յայտնի նկարի, ոչ միայն տեսիլ երկնից, այլ և բարձունք 'ի հանդիպոյ, և 'ի կողաց նոցա և 'ի վայր մինչև 'ի ձորամէջսն՝ տանց կարգ նոյն օրինակ: Եւ եթէ քանի գեղեցկութիւն ական ածեն պարտիզացն վայրք զուարճալի առ իւրաքանչիւր տան և ծառաստանաց հոյլք 'ի նոսին, նա միայն գիտէ որ անձամբ զփորձ առեալ իցէ: Ի փողոցամէջս բարձրաճոյն թաղիցն ընթացեալ, ոչ արգել ական լինին որմունքն ըստ ամենայն երկայնութիւն փողոցացն, զի տանցն զատ 'ի միմեանց կացեալ, առ անջրպետօք իւրաքանչիւրոց ակներև լինին պարտէզքն. և ըստ այլ և այլ առաջս բաժանելոյ ձորավայրին՝ փոփոխ տեսարանք թաղիցն անտաղտուկ ընծայեն զքաղաքն ողջոյն:

Իբր 'ի միջնավայր ձորաբերանացն շինեալ է բերդն բարձրապարիսպ՝ հիմնեալ ըստ ամենայն տարածութեան իւրոյ 'ի վերայ ապառաժի, զորով շրջապատեալ կայ շուկայն: Շինուած բերդին ահաւոր ըստ բարձրութեան և ըստ ներքին կամարաձև տեղեացն, խաթարեալ կայ իսպառ 'ի ներքուստ, անկործան կացեալ մեծաւ մասամբ արտաքին պարսպացն: Գտանին 'ի նմա տունք եօթն ևեթ և ոչ աւելի, և ռմբագործիք երեք: Երկու դրունք են նորա և 'ի վերայ առաջնոյն արձանագիր տաճիկ և թուական 190: Անծանօթ է և ծերունեաց քաղաքին կործանումն նորին, և թէ յորմէ շինեալ է զառաջինն և զինչպիսի անցս կրեալ. այս միայն յայտնի է աւանդութեամբ զի ձեռն Լէնկթիմուրայ չեհաս անդր հարուածովք, այլ սպառնայր յետ դարձին իւրոյ 'ի փոքուն Ասիոյ հասուցանել նմա, և չեհաս ըղձիցն: Բարձրութեամբ պարսպացն գրեթէ հաւասարի վերին թաղից որ 'ի վերայ շուրջանակի հանդիպակաց լերանցն. սակայն 'ի նոյն լերանց մարթ էր թշնամւոյն ռմբաձիգ 'ի ներքս լինել, մանաւանդ յարևմտեան կողմանէ որ մօտագոյն է:

Չկարծեմ ասել եթէ յասխակողմանս գտանիցի քաղաք այլ՝ քարանցն շատութեամբ հաւասար քաղաքիս. և ոչ 'ի հեռաստանէ ուստեք ածեալ է զքարինսն, կամ 'ի գիւղօրէից, այլ յամենայն վայրաց 'ի քաղաքամիջի. զի լերինք յորոց ձորավայրքն են ձևացեալ՝ առ հասարակ ապառաժք են 'ի ներքոյ, զերեսօք ևեթ հողախառն. և քարինքն մի տեսակ կակուղ զոր փուտ քար անուանեն, յորմէ շինեալ են և բերդն և տունքն և որմունք երկայնաձիգ փողոցացն և պարտիզացն, և առ հասարակ կոփածոյք քառակուսիք, այլ աղիւս անթուրծ բնաւ չտեսանի յորմունս, թէպէտ և կարի աղքատին տուն իցէ: Գտանի և կիճ սպիտակ ոչ սակաւ: Այլ ոչ գիտեմ էր աղագաւ կրոյ գործածութիւն չիք անդ, այլ առ հասարակ հողոյ շաղախաւ մածուցեալ են քարինքն: Որ զինչ և է, վսեմութիւն մեծ ընծայէ քաղաքին քարակերտութիւն որմոցն. և եթէ պարսաւելի ինչ կայ 'ի նմա, է աննմանութիւնն ներքին կողման տանցն ընդ արտաքնոյն. չունիմ ասել՝ առ թերութեա՞ն ախորժակաց արդեօք. զայդ սովորութիւն կալեալ բնակչացն, եթէ առ երկիւղի Քրդաց բռնութեան:

Գետք երեք մտանեն 'ի մէջ քաղաքիս, առաջինն 'ի ձորոյն Գոմաց, որ և

անցանէ առաջի Ամրտոլու մենաստանին. երկրորդն 'ի ձորոյն Ծապղկորու, և գետքս երկոքեան միանան առաջի բերդին. երրորդն 'ի ձորոյն Ավեխու, որ 'ի ներքնակողմն նորին ձորոյ, որ հանէ ընդ ճանապարհ Կիւզէլ–տէրէ կոչեցեալ գաւառին, բխեալ 'ի կողաց միոյ լերին ահագնաձայն խոխոջմամբ. և երեքեան գետքս երթեալ միանան առաջի Խնդրակատար մենաստանին 'ի մի առու, որ անցեալ գնայ 'ի հարաւակողմանս գաւառին։ Բազում են և աղբիւրք 'ի քաղաքիս, յստակութեամբ, քաղցրութեամբ և թեթևութեամբ առաւելեալ յոյժ քան զբազմաց այլոց քաղաքաց, թէպէտ ջուր գետոցն առաւել ախորժելի է և թեթև քան զաղբերցն։

Իսկ օդոցն քաղցրութիւն մրցի գոգցես ընդ պատուականութեան ջուրցն։ Յաղագս կրկին ձրիցդ բնութեան՝ չորեքկողմեան մօտաւոր գաւառացն բնակիչք Ամթայ, Սղերտու և Մուշայ, Վանայ և Տարօնոյ՝ գովեն մեծապէս զԲաղէշ, յորոց միանգամ ոք անձամբ զփորձ առեալ է բնակութեամբ 'ի քաղաքին. Իսկ բնիկքն ոչ յաւուրս կիւրակէից միայն՝ այլ գրեթէ յամենայն երեկոյի չթողուն զժամս զուարճութեան յայլ գործ աշխատութեան անցուցանել, այլ 'ի պարտէզս տանց կամ արտաքոյ քաղաքին և յեզերս գետոցն 'ի ծաղկազգեստ մարգս՝ որ անբաւն են և բազմատեսիլ։ Այլ ոչ կարեմ գովել զնորա ձմեռնային սառնամանեացն սաստկութիւն, ոչ 'ի քաղաքամիջի անդ միայն, այլ և 'ի գիւղորէս և 'ի շրջակայ մօտաւոր գաւառսն ևս. զի առ հասարակ լերինք են և ձորք ընդ ամենայն երկիրն։ Փայտից կարևորութիւն ոչ է ըստ բաւականին, որպէս արժանն էր. բաց 'ի պտղատու ծառոց բազում առատութիւն է անդ բարտի ծառոյ, զոր և խնամով բազմացուցանեն. քանզի առ 'ի չգոյէ մայրի ծառոց՝ անտի հատանեն զգերանս և զտախտակ և զամենայն կազմած յարկաց տանցն. այլ զանխան հողայարկս յօրինեն, աղաջուրս հօսեալ 'ի վերայ և լոքարիւ պնդեալ, որ ամրագոյն լինի քան զգաւառին Մշոյ։

Չորեքին եկեղեցիք քաղաքիս բազմակամարք և վայելչաձևք, թէպէտ և յանհոգութենէ պաշտօնէից ոչ մաքրազարդեալք, կոչին, առաջին՝ Կարմրակ, Նորոգեալ 'ի ՌՄՂԳ. այս եկեղեցի 'ի նախնի ժամանակս սուրբ Կիրակոս կոչէր. այլ յորմէհետէ բերաւ անդ 'ի Սպահանէ մասն 'ի կենաց փայտէն 'ի ձեռն վարդապետի ուրուք՝ կոչեցաւ Կարմրակ։ Եւ է նշխարդ ամփոփեալ և ամրապնդեալ 'ի փոքրիկ քառակուսի տուփ արծաթի, և 'ի վերայ ագուցեալ 'ի միջավայրին ակն կարմրագոյն, յորմէ զայդ անուն կալեալ է և սուրբ նշանն և եկեղեցին. և քան զամենայն նշխարս 'ի պատուի է անդ մինչև յանուն նորա երդնուլ և Տաճկաց՝ Կարմրակ հախի իչուն ասելով։ Թէպէտ և բազումք 'ի ռամկաց զվարդիկ հօրն դէպս ասեն վասն նշխարիդ, և այլք թէ յիսկական արենէն Քրիստոսի իցէ, սակայն ստոյգն այն է զոր ասացաք։ Ի սմին եկեղեցւոջ է և փոքրիկ մասն մի 'ի նշխարաց սրբոյն Ստեփաննոսի Նախավկային։ Երկրորդ եկեղեցին է սուրբ Սարգիս, որոյ ընդ աւագ խորանաւն ջուր անցեալ գայ 'ի գաւիթ նորա։ Հանդէպ նորա է երրորդ եկեղեցին Հինգ խորան կոչեցեալ, զի վերոյ կողմնական խորանացն երկու այլ խորանք են։ Իսկ չորրորդն է սուրբ Գէորգ։ Հնութիւն երից եկեղեցեացս, որպէս յայտնի է 'ի Թուականացն, չանցանէ քան զերկերիւր ամաց։

Չորք մենաստանք են 'ի քաղաքիս, երկքն արտաքոյ շինուն և միւսն 'ի միում 'ի թաղիցն; որ և կոչի Ամրտող, կամ լաւ ևս Ամենրդւոյն վանք. զի յանուն սրբոյն Յովհաննու կարապետին կառուցեալ է 'ի թաղի անդ՝ որ 'ի նոյն անուն յորջորջի: Մենաստանին շինուած չունի ինչ արժանի գովեստից. զի խրթնութեամբ և մթութեամբ և անձուկ տարածութեամբն չտայ ինչ զուարճութիւն ումեք. այլ դրիցն վսեմութեամբ զանցանէ յոյժ քան զբազում շինուածովք քաղաքին. քանզի 'ի ձորամիջի գոլով նիստ նորա և 'ի վերայ կողաց լերին նորին ձորավայրի՝ երեսք պատուհանացն հային ընդ ամենայն երկայնութիւն ձորոյն, ընդ որ և մի 'ի գետոցն անցանէ, զոր 'ի վերն ասացաք. և 'ի բարձրութենէ անտի տեսիլ սքանչելի երևեցուցանէ, մանաւանդ որոց 'ի տանիսն ելեալ 'ի զնին կայցեն. ձորն մեծ՝ ակներև լինի ական մինչև ցքաղաքամէջն, պարտէզքն և ծառաստանք խառն ընդ տանց շինուածոց, և գետն անընդհատ խոխոջմամբ անցանելով զառաջեաւ, և գետեզրն ընդ ամենայն երկայնութիւն մենաստանին է պարտէզ աստիճանաձև յօրինմամբ. եկեղեցին ընդարձակ, սիւնազարդ և գմբեթաւոր՝ մեծ է քան զամենայն եկեղեցիս միւս վանորէից և քաղաքին: Ի միջավայր գասին թաղեալ կան առընթեր միմեանց Վարդան և Բարսեղ վարդապետք, որք երևելիք գտան 'ի ժամանակի իւրեանց: երկրորդն աշակերտ է առաջնոյն: Քարընկէց մի հեռի 'ի նոյն վանաց 'ի հիւսիսակողմն և բարձրահայեաց քան զնա՝ է Սուրբ Սիմոն եկեղեցին, փոխեալ այժմ 'ի մզկիթ:

Կէս ժամու հեռի յԱմրտօլու 'ի նոյն կողմն, կամ թէ ասել 'ի գլուխ նոյն ձորոյն՝ է Գոմաց Աստուածածնի մենաստան, 'ի ծուրանի առ Գոմս գիւղիւ, յորմէ և զանունն առեալ է:

Երրորդն է Ավեխու Աստուածածին, որում որմակից է եկեղեցին Յակոբիկ Ասորւոց: Քարընկէց հեռաւորութեամբ 'ի վանացս է աղբիւր, զոր բխեցուցեալ ասեն Թադէի առաքելոյն. քանզի եկեալ նորա յայս քաղաք որպէս աւանդեն բնակիչք, և տեսեալ զի հեթանոսացն սովորութիւն կալեալ է յամենայն ուրբաթու զոհել դիւաց մանուկ մի առ աղբեր ուրեք որ մինչև ցայսօր Ցամաք աղբիւր կոչի, որպէս զի ջուր հոսեսցէ, քանզի ցամաքէր միշտ. տեսեալ առաքելոյն զանօրէնութիւն նոցա՝ պատուհասէ զնոսա կուրութեամբ աչաց և հեռանայ յամբոխէն մինչև 'ի տեղին Ավեխու վանից. անդ 'ի նորոյ ջուր բխեցուցեալ, զոր յիշեցաք, տայ տանել և ցանել յերեսս կուրացելոցն, յորմէ լուսաւորեալ հաւատան յԱստուածն Թադէի:

Չորրորդ մենաստանն Խնդիրկատար ասացեալ՝ մեծ քան զայլ երեսին է, թէպէտ և տեղեաւ դրիցն ոչ այնքան գեղատեսիլ, զի 'ի ձորավայր տեղւոջ է կառուցեալ: Աւանդեն բնակիչք զպատճառ անուանակոչութեան վանացս այսպէս. Թադէի առաքելոյն, ասեն, հաստատեալ 'ի մտի հազար եկեղեցիս շինել յանուն Աստուածածնի, վերջին զսա շինեաց. և 'ի կատարել նորա, ամպոյ հովանաւորեալ երևի նմա յերկնից սուրբ կոյսն յարևմտից կողմանէ վանացն, և ձայն յամպոյն լսէր առաքեալն՝ եթէ ահա խնդիր քո կատարեցաւ. յայնմանէ անմոռաց մնաց ցայսօր անուն վանացն, և գեղջն անուն յորոյ վերայ ամպն հովանի եղեալ էր՝ կոչի մինչև ցայսօր Ամպ:

Ի Նոյն գիւղն Ամպ յորում հինգ տունք միայն կան, է մատրանաչափ եկեղեցի յանուն սրբոյն Յակոբայ պատուեալ յոյժ 'ի բնակչաց քաղաքին. և ուխտաւորք Երուսաղէմի նախ աստ հաւաքեալ՝ որպէս թէ 'ի բարեխօսութիւն սրբոյն ապաստան արարեալ զանձինս, ապա մեկնին և լինին ուղևոր: Անուանի է և ցուրտ ջուրն փոքր մի հեռի 'ի մատրանէն բխեալ 'ի ներքուստ ապառաժիցն՝ որոց 'ի թիկանց կան բարձունք լերանց: Մի յանուանի աղբերացն է բխեալ նոյնօրինակ 'ի ներքուստ քարանց առ ստորոտով ապառաժ լերին՝ 'ի գիւղն կոչեցեալ Ծապռկոր, և առաւել ցուրտ և պատուականագոյն քան զվերինն: Ի նախնի ժամանակս՝ որպէս աւանդեն, մեծ բազում լինէր 'ի գիւղականսն վասն ռռոգելոյ զարտորայս 'ի նոյն ջրոյ, մինչև 'ի պատճառս նորա սպանանել առն զընկեր. և 'ի միում գիշերի վէմ մեծ գլորեալ 'ի լեռնէ և անկեալ 'ի վերայ աղբերականն՝ յերկուս առաջս բաժանէ և դադարի ամենայն կռիւ, և մինչև ցայսօր տեսանի նոյն քար ահագին և առաջք ջրոյն, և զմի յառաջիցն ընծայեցուցեալ են արդ 'ի քաղաքն:

Ի Ծապռկորոյ ձորէն ուղիղ ընթացիւք ընդ արևելակողմն հարաւոյ քաղաքին դուրան ճանապարհաւ անցանելով ընդ զուարճալի մարգս, յաջմէ ունելով զգետակն ձորոյն և յահեկէ զցածագոյն բլուրսն, երկուց ժամուց հեռաւորութեամբ հասանես 'ի գիւղն Փօռ, յորմէ այլ ևս քառորդաւ միով բացակացեալ՝ հիւրընկալ լինի քեզ մենաստանն սրբոյն Յովհաննու՝ Փօռայ վանք ասացեալ: Անդ խպառ մոռացեալ լինին զուարճատեսիլ և վսեմ հայեցուածք և դիրք վանորէից քաղաքին: Խոլթնութիւն և մթութիւն եկեղեցւոյն հանդերձ ամենափոքր տաճարաւն և մենաստանին խամթարած՝ չտայ բնաւ տաղտուկ եթէ միով ակնարկմամբ շատասցիս, զի զայդ ամենայն մոռացուցանէ սքանչելի տեսիլ դըրից նորին առ ստորոտով լերին 'ի սարաբարձր ընդարձակի. առաջի նորա դաշտավայրն աստիճանաբար ցածացեալ հասեալ յեզր գետոյն, և հանդէպ նորա և 'ի կողաց բարձունք մեծամեծք. համառօտ ասել, անդ փոփոխ տեսարանք՝ մի զմիով ելևելս առնեն, արտորայք և բլուրք և բարձունք, մարգագետինք և գետոյն խոխոջումն 'ի հանդիպոյ և ծառաստանքն շուրջանակի և դաշտային ծաղկանցն փթթիւն: Սովորութիւն կալաւ ռամիկն և Նարեկացւոյ վանք կոչել զսա, ոչ զի աստ ևս բնակեալ իցէ երանելւոյն, այլ զի գրչագիր աղօթամատոյց՝ նորին մատանց գիր, որպէս ասեն, պահէր աստէն. որ և զայն սակաւ ամօք յառաջ գողացան: Ի մէջ եկեղեցւոյն է գերեզման գանձասաց Առաքել վարդապետին Բաղիշեցւոյ:

Ի մէջ քաղաքին Բաղիշոյ 'ի գագաթան միոյ 'ի բարձրագոյն լերանցն որ անջրրպետէ զթաղն Ավէխու յայլոց՝ է քայքայեալ մատուռն ամայի, սուրբ Գէորգ կոչեցեալ, որ 'ի Ցաճկաց զկնի ժամանակաց կոչեցաւ Գյավուրզ–քէփէսի. զի անդ պահ կալեալ պահապանի դիտէր 'ի բազում հեռաստանէ, մանաւանդ 'ի կողմն Ռահվայի, որ է ճանապարհ Մշոյ և Վանայ, զյարձակումն թշնամեաց 'ի ժամանակս պատերազմի:

Ըստ մասին ազգային հնութեանց չիք ինչ մնացորդ ամենևին 'ի Բաղէշ՝ բաց 'ի վանորէից, և այնքիկ զայլ և այլ նորոգութեանց ունին զթիւ, որպէս յիշե-

ցպք ։ Քանզի յառաջ ժամանակաւ բազում քաղաքական մարտիւք աւերեալ կործանեցան. զի ոչ միայն Քրդաց բռնութիւն սաստիկ էր անդ, այլ և Տաճկաց, որ և տևէ ցարդ մասամբ ։ Տէրութիւն քաղաքին էր 'ի ձեռս խանից, որք անդադար կռուով վարեալ ընդ այլ կուսակալս՝ նուլն զքաղաքն աւերմամբ և անտանելի հարստահարութեամբ մինչև ցայսօր, յորում ըստ նորոյ օրէնսդրութեան Օսմանեանց փոքր մի ոգի էառ, և յայլ կերպարան փոխեցան և տէրութիւնն և տիրեալքն ։

Սակայն ըստ մասին վաճառականութեան մի յերևելի քաղաքացն է Բաղէշ. Թէպէտ ոչ են նորա աղնիւ գործուածք ոսկեթել և մետաքսեայ դիպակաց և այլ բարականիւթ հանդերձից, սակայն խոշոր գործուածովքն լիացուցանէ զամենայն շրջակայ գաւառսն, զՏարօն, զՊուլանուխ, զՎան, զԲաղու և զԿարին իսկ և զամենայն հարաւային կողմանսն ։ Զի է նորա սպիտակ կտաւ Թանձր, չիթ նոյնօրինակ. այլ արդոյ յոյժ ամենայն ուրեք՝ կտաւ կարմիր տորոնաներկ, զոր և շիլա անուանեն ; որոյ ներկարարք ոչ աւելի են քան զ24. իսկ կտաւագործացն թէզկեահք իբր 400 ։ Օրէնք են ամենայն կանանց շապիկս 'ի նոյն շիլայէ զգենուլ 'ի վերայ ամենայն հանդերձից առ 'ի ծածկոյթ մեծագին զարդուց և բդգեստուց, ոչ միայն յելանելն 'ի հրապարակ, այլ և 'ի տան ևս ։ Շինուած կրպակացն և փողոցաց շուկային՝ ոչ է համեմատ առևտրոցն, զի անշուք են և կարի մթին. և մթութիւնն կամաւ արարեալ է առ խարդախելոյ զվաճառսն, յորում համբաւեալ են բնակիչքն ։ Տանիքն որ և հողայարկ է ըստ ամենայն տարածութեան շուկային, տեղի է ճեմելոյ և վաճառոց ցորենոյ և այլոց նմանեաց ։

Զմզկիթս և զբաղանիս քաղաքին սակաւաթիւս և ոչ նշանաւորս՝ աւելորդ համարիմ յիշել յանուանէ, բաց 'ի միոյ մզկթէն որ 'ի կեօք—Մէյտան հրապարակի, որ մեծութեամբն և քառակողմեան կամարօքն ոչ վարկպարազի վսեմութիւն ածէ ըստ տաճկական ախորժակաց. Թէպէտ և այսօր խախտարեալ հանդերձ շուրջանակի կամարաշէն մահարձանօքն ամայի թողեալ է ։

Են 'ի քաղաքին և առ գետեզերբն յայլ և այլ տեղիս բորակային ջուրք առատք և մշտահոսք, յորս ներկարարք զկտաւսն լուանան ։ Է և այլ նոյնատեսակ ջուր քառորդաւ հեռի յԱմպայ գեղջէն՝ Շօռկեօլ կոչեցեալ, ծանծաղ և փոքր տարածութեամբ 'ի ստորոտ լերին, յորում մտեալ լուանան բնակիչքն. և ջուրն հոսեալ արտաքս մինչև ցգետեզրն՝ առ հասարակ քարացուցեալ է զգետինն բորակային նիւթովն ։

Ժամաւ հեռացեալ 'ի Շօռկեօլէ նովին ուղիղ ընթացիւք՝ 'ի ձախմէ ունելով զգետն, յանդիման լինի Ծակքար, որ Տէլիքըլի գայա կոչի յայլազգեաց. և է երկայնաձիգ ապառաժ, կամ թէ աւել միապաղաղ պարսպաձև քար, 'ի կողաց լերին ձգեալ վերուստ 'ի վայր մինչև ցեզր խորանդունդ ձորոյն. և 'ի կիսոյ 'ի վայր ծակեալ է ապառաժդ չափաւոր բարձրութեամբ և ընդարձակութեամբ ։ Շիթք ջրոցն ողողեալ զերեսս ապառաժին և զներքին կողմունս փորուածոյն և քարացեալ՝ բազմատակ ծալուածովք պատեալ են զառ հասարակ քարալեառնն ։ Ընդ այս ծակ հարկ է անցանել ամենայն կարաւանաց և ճանապարհորդաց որ գնան 'ի կողմանս արևմտեան հարաւոյ ։ Նախ քան զբանալ կրճիդ այլ էր ճա-

նապարհն լեռնային և դժուարագնաց. և երաց զայդ այր ումն չգիտեմ յորմէ ազգէ և յորում դարու, ծախեալ վասն նորա զամենայն դրամսն զոր պատրաստեալ էր 'ի պէտս ուխտագնացութեան։

Ի պտղոց ունի Բաղէշ տանձ քառատեսակ և սալոր եռատեսակ, խնձոր, նուշ, թութ. սպիտակ և սեաւ թթու, սերկևիլ, ծիրան, կաղին, ընկոյզ, կեռաս և բալ. իսկ խաղող սակաւ յոյժ, նմին իրի և բնակիչքն օղի ըմպեն փոխանակ գինւոյ։

Գիւղօրէք քաղաքիս առ հասարակ զուարճալի են դիրքն և պտղատու ծառովքն. յորս անուանի է Խուլթիկ գիւղ, շուրջանակի պատեալ լերամբք և ինքն 'ի միջի յընդարձակ դաշտավայրի, և շուրջանակի ծառաստանք գեղատեսիլ, ցանկալի վայր քաղաքայնոց և ամենայն եկաց, եթէ մոռացին զանհնարին նեղութիւն ուղւոյն 'ի գագաթն լերին ելանելով և անտուստ 'ի խորանդունդ իջանելով։ Աւան փոքր զԽուլթիկ արժան է կոչել, զի կարևորքն յարհեստից գտանին անդ 'ի պէտս գիւղականաց. բնակարանքն վայելուչք և բնակիչքն աւելի քան զչորեքհարիւր տուն, ամենայն հայազգիք։ Համեմատ նմին բազմութեան է և վայելուչ եկեղեցի նորա կամարաշէն սուրբ Գէորգ կոչեցեալ և նորաշէն։

Բաղիշեցիք անձնատուրք են 'ի վաճառականութիւն, չգտանի 'ի նոսա. դատարկ ոք և անգործ յարհեստէ, սակս բազում երթևեկութեան վաճառաց յայլ և այլ գաւառաց և նորին բամպակեղէն գործուածոցն, որոց բազում գործաւորաց պէտք են. զի և մանկունք անգամ փոքր մի ընդ նախադրունս ընթերցանութեան մտեալ՝ վաղվաղակի յարհեստ կտաւագործութեան անցանեն։ Նմին իրի և ընդ քաղաքն համօրէն չգտանի ոք հմուտ գրաւոր արհեստից. քանզի և նիւթական արծաթսիրութիւն չտայ նոցա թոյլ մտաւոր արհեստից լինել հետամուտ, յորում աջողէին արդեօք ըստ աչալուրջ բնաւորութեանն. խաբել չգիտեն յայլոց, այլ խաբել կարի քաջ. ոչ զրկեն՝ զմիմեանս և ոչ պարսաւեն զանուն ընկերին առաջի օտարի՝ որում թանկագնի վաճառեալ իցէ ինչ։ Աշխարհաշրջիկք են, և որ ինչ 'ի տեղեաց իւրաքանչիւր մասնաւորեն անձանց յաչալըրջութենէ իրիք, այն հերիք է նոցա. արիասիրտք են 'ի քաղաքի իւրեանց, այլ արտաքոյ երկչոտք։

Սովորութիւն Համբարձման 'ի Բաղէշ։ Ի նախընթաց երեկոյի տօնին 'ի մուտս արևու աղջկունք եօթն միաբանեալ երթան 'ի միասին կժով միով առնուլ ջուր յեօթն աղբերաց, և անտի 'ի գետն՝ յորում խառնեալ իցեն եօթն ջուրք կամ առուակք, անխօս և անշշունչ ամենևին յերթալն և 'ի դառնալն։ Եւ յառնուլն զջուրն յաղբերացն և 'ի գետոյն՝ արկանեն յանօթ ջրոյն խիճս եօթն յաղբերացն և այլ եօթն ևս 'ի գետոյն. և բերեալ զանօթն դնեն 'ի պարզի։ Եւ յաւուր Համբարձման 'ի հասարակել աւուրն՝ ժողովին 'ի մի՝ դրացի կանայքն և եօթն աղջկունքն ընդ նոսա, յորոց զմին զգեցուցեալ հարսանեկան տարազու՝ բոլորեն 'ի մի, և իւրաքանչիւր 'ի կանանց նշան մի արկանէ յանօթ ջրոյն 'ի ծածուկ՝ մատանի կամ այլ ինչ. և առ իւրաքանչիւրն ասացեալ առակաւոր բանս, և հարսնազգեստ աղջիկն հանէ 'ի դուրս զմի 'ի նշանացն. և որոյ նշանն իցէ, նմա և զառակաւոր բանն պատշաճեցուցանեն, իբրու գուշակ լինելով ապագայ աջող բաղդից։ Եւ այսպիսիք են ահա առակքն.

Խամբարձման ժկմին նստեր ես պախճան, կալ կեննեց, Աստուծոյ կը խնդրեմ՝ ասկի օրոց, որորես։ Ա՜յ իմ սարերաց սալամ, ձորերաց սուրբ Աստուածածին. ժողվէք իրուր եկէք։ Խա՛րս, խանմ վիճակն 'ի բարին։

Աստուած տուր 'նծի քառասուն որդի, քառասուն որդուն քառասուն մաքի, քառասուն մաքուն պճեղն ոսկի։ Այ իմ սարերաց, և այլն։

Ես ունէի երկու թուխ ու թամ կտրիճ. անչափ քարուխիճ երին, ճնչուր հանին աղբուրն 'ի սահրին. որն որ էն աղբուրի ջուր խմէր, ամէն կտրիճ ու մանուկ բերէր։ Այ իմ սարերաց, և այլն։

Խատիկ մի նաան խատի՝ իմ խէրանց չեման տակն է, ճուղ տամ ճուղ ատնիմ, ելլամ զիմ խէրան պակտընները ծածկեմ. ամմէկ ճղին ճուխտակ ճրագ. ամմէկ ճղին սմամոն խաւք։ Այ իմ սարերաց, և այլն։

Բալլիսն երկնով անցաւ, մեր բարոց դռներ բացաւ, մեր տուն արեւով լցվաւ, մեր սեղան կարմիր խնծորով քաշվաւ։ Այ իմ սարերաց, և այլն։

Քեզի զարնեմ ճուխտակ վարոց, իմալ ստըկաւ քու բաղդն 'ի քո ծոց՝ ինչ կարմիր կովու կաթն 'ի կթոց։ Այ իմ սարերաց, և այլն։

Խամբարձման ժկմին տիլպարն իջաւ մեր էգին, քաշեց զոսկիկոթ դանակ, պառրուս ըրաց վըր վարդի թփին։ Այ իմ սարերաց, և այլն։

Խամբարձման ժկմին տիլպարն իջաւ մեր էգին, կապեց տիլիման տիլպին, ծանտրացաւ՝ ալ չի զուրուցեր։ Այ իմ սարերաց, և այլն։

Խամբարձման ժկմին տիլպարն իջաւ մեր էգին, քաշեց զոսկիկոթ դանակ, քաղեց որթոտ խաղողին եդիր 'ի յոսկի սինին, որոխկեց շամ շաճէնին. դու լալ ես 'ի յոսկի սինին ճավաճիր մէջ ոսկի խաղնին, ոտ ու ձեռքդ մէջ կարմիր խինին։ Այ իմ, և այլն։

Միամիտ Աստուած իրիչկեցի, բեռներս 'ի ջուր թալլեցի. գնաց էն տեղն ելաւ, տուտին ու մէմար 'ի տեղ կու բանէր։ Այ իմ սարերաց, և այլն։

Ոսկին 'ի Մսրայ բերեմ. ոսկերիչն 'ի Մսրայ միջէն. աւուր որ տազկեախ նստէր, քամար քո միջաց ձգէր։ Այ իմ սարերաց, և այլն։

Տղայ տղայ տանսի մամուռն երեսի մընչ (ոնչ) վարդ եմ որ վեր գամ, մընչ չուշան ծաղիկ քաղելի. իմ մէր գիս ըստա է բերեր, վարդէջրով գիս ըստա է տնկեր։ Այ իմ սարերաց, և այլն։

Սիրատ ինչ սիրունիկ եմ, տիրատ ինչ տնուրիկ եմ. ջուր տուր գիդ ինչ պահր տամ քե։ Այ իմ սարերաց, և այլն։

Ծուռ չիտակ, բաղդն խստակ, քանի մաղ ծակ, քե մալ ու ըռզակ։ Այ իմ սարեփրաց, և այլն։

Վիճակ վիճակ ասլի վիճակ, թաֆտա շապիկ, ոսկի կոճակ։ Այ իմ, և այլն։

Դեղնագոյն մանուկ վըր ձիուն. խաց խացին դիզեցին մեր տէր խորամեց, ասաց ասի քու ճակտիքն է գրած։ Այ իմ սարերաց, և այլն։

Բարձ բարձին դիզեցին. նստեր ես խումաշ բարձին, խամրեց զալն ու զխրմզին։ Այ իմ սարերաց, և այլն։

Երկնուստ մատնին իջաւ, մատիս 'ի վրայ խաչեցաւ. ես զիմ եար.քամ գիտէի, ճավաճիր քար դարձաւ։ Այ իմ սարերաց, և այլն։

Մանուկն է պառկեր ծառի տակ, ծալվեծալ խումաշն է գլխու տակ. մանուկ ելիր վեր՝ ջուրն եկաւ տակդ։ Այ իմ սարերաց, և այլն։

Ելայ կայնայ վրէն բերդին, ոսկի թուր վրէն թեւին, ելայ խաղցայ հետ լուսնկին, գացի Պաղտատն ու եկայ. Պաղտատու հալապին է կորսուեր, ճիրն 'ի ծառ կու ծփէր, պապղուն վլացք կենէր։

## ՌԱՀՎԱ

Փոքր ինչ հեռացեալ 'ի քաղաքէն Բաղիշոյ ընդ հասարակաց ճանապարհն՝ որ հանէ 'ի հանդիպակաց կողմն, կամ թէ ասել յարեւելս կոյս եւ յարեւելս հիւսիսոյ 'ի Մուշ, լինի մտանել 'ի հռչակաւոր ձորամէջն Ռահվա կոչեցեալ: Ոչ խորութեամբ եւ ոչ անձկութեամբ եւ կամ այլով իւիք անուանի եղեալ է սա, այլ վասն բազմավտանգ բքոյ ձմերայնոյն, որոյ նման սակաւ ուրեք լինի լսելի: Եւ պատճառքն ինքնին յայտնի կան. քանզի արեւելեան հողմոյն փչեալ 'ի ծովակողմանէն Վանայ եւ չգտեալ ելս, զի 'ի միոյ կողմանէն արգելուն Գրգուռ եւ Նեմրութ, եւ 'ի միւսոյ կողմանէ լերինքն Բաղիշոյ աստի եւ անտի, ուղղակի ընդ ձորամէջն անկեալ՝ ահեղ մրրկաւ եւ բքալից ձեամբք լնու զայն: Շատ է փոքր մի խառնակութիւն օդոց յարեւելից կուսէ, եւ ահա զուարճալի ձորավայրն լինի վտանգալից. եթէ ամառն իցէ՝ կարկուտ եւ հեղեղ, եւ եթէ ձմեռն՝ ձիւն եւ բուք. յորում եթէ դէպ լինիցի գտանել կարաւանաց յայնմ պահու հեռի յօթեւանաց, զմահ առաջի աչաց նկարեն: Նմին իրի շինեցան 'ի նախնի կուսակալաց հինգ մեծագործ իշխանք 'ի պատսպարութիւն կարաւանաց եւ ճանապարհորդաց. չորեքին 'ի վերայ ճանապարհին՝ որ հանէ 'ի Մուշ, եւ կոչին Բաբշէնոռ խան, Օղերով խան, Պաշ խան, եւ Մորխայ խան, կիսաժամու կամ երեք քառորդաւ տարակացք 'ի միմեանց. յորոց Պաշխան միայն անարատ մնացեալ է, այլքն խարխալեալ եւ կիսափուլ եւ անխնամ թողեալ: Ամենայն կարաւանաց եւ ուղեւորաց յոյս 'ի ձմեռնային ժամանակի՝ իշխանքդ են. անդ դադարեն աւուրբք բազմօք մինչեւ ցխաղաղիլ օդոց, եւ ապա ուղւոյ լինին բազում տառապանօք ընդ լեռնացեալ կոյտս ձեանց, մինչեւ կարասցեն արկանել զանձինս 'ի միւս իշխան: Հինգերորդ իշխանն է 'ի վերայ ճանապարհին որ հանէ 'ի Դատվան, Ալամենց խան կոչեցեալ, յանուանէ մերձակայ գեղջն Ալամեք կոչեցելոյ: Հիացեալ զարհուրի ամենայն որ միանգամ ընդ ահագին տարածութիւն իշխանին ակնարկէ, եւ քաջ 'ի միտ առնու զարհաւիրս ճանապարհին, որոյ աղագաւ կառուցեալ է ահեղ շինուածդ 'ի մեծի անդ դաշտավայրին. քանզի Ռահվա անձկագոյն սկըսեալ առ Բաղիշաւ, եւ ապա առ Պաշխանաւ լայնացեալ դաշտանայ մինչեւ ցԴատվան: Գաւիթ իշխանին մեծի իբրեւ զբանակետղ մի է զօրաց. իսկ յարկեալ շինուածքն զարմանալի յօյժ. քառաթեւեան հիմն արկեալ նորա՝ առ իւրաքանչիւր թեւ երկուստեք սենեակք են մեծ եւ փոքր, այլ մարդկան եւ այլ անասնոց եւ դարմանաց. եւ 'ի վերայ սենեկաց ուրեք ուրեք այլ խցկունք. եւ 'ի կողմն իշխանին կրպակաձեւ սենեակք. իսկ 'ի ծայր շինուածոյն մեծի եռակարգ կամարաձեւ տեղիք, 'ի բնակարան արդեօք տեառն իշխանին սահմանեալ թէ յայլ ինչ պէտս՝ չունիմ ասել: Բայց այդ ահեղ եւ զարմանալի շինուած, թէպէտ եւ պատսպարան լինի ցայսօր ուղեւորաց, սակայն կիսափուլ կայ ըստ արտաքին պարսպաց, եւ ներքին սենեակքն կամարօքն հանդերձ բազում ուրեք խարխալեալ եւ փլեալ՝ ան-

ձեռնամերձ կան 'ի նորոգութիւն առնուլ ։ Շրջապատ իջեվանիս երեքհարիւր մեղր է . և չգտանի բնաւ կոտորակ մի փայտի 'ի բովանդակ շինուածի անդ , այլ առ հասարակ քարակերտ կամարակապ է ։



Շրջապատ Այրանեց խանին .

## ՏԱՏԻԿ

Մի 'ի գաւառացն է սա Աղձնեաց աշխարհին, երկայնաձոր և անձուկ, գետոյ ընդ մէջ անցանելով, և իբր հնգետասան գիւղօրէք 'ի ձորամիջի անդ զուարճալիք յոյժ, պտղատու ծառովք և մանր արտորէիւք։ Ի վերջին ծայր գաւառիս լայնացեալ դաշտանայ ձորն հարուստ տարածութեամբ, և լերինքն հանդիպակաց սահման հատանեն նորա և գաւառին Խիզանայ։ Ի հիւսիսոյ կուսէ գեղատեսիլ դաշտավայրիդ 'ի բարձր դուրի է փոքրիկ մենաստան Աթանագինէ հայրապետին՝ Մոձկոնից վանք կոչեցեալ, յանուանէ գիւղին որ է առընթեր նորա։ Եկեղեցի նորա մատրանաչափ, և զուրկ 'ի միաբանից և 'ի բնակարանաց. չիք նորա թեմ և ոչ մի։

## ԿԻՒԶԷԼ-ՏԷՐԷ

Գաւառ սահմանակից Տատկայ, բարձրաբերձ լերանց ընդ մէջ լինելով. են նորա գիւղօրէք երեսնիւ չափ, որոյ և ծայրն հասանէ մերձ 'ի ծովն Բզնունեաց։ Երկայնաձիգ լայնաձոր է գաւառս, զուարճալի արդարեւ ըստ անուանն, սակս խոտաւէտ արգասաւորութեանն, թէպէտ և զուրկ 'ի ծառոց։ Դաշտավայր է առհասարակ, և ջրարբի իբրև զՏատիկ, գետոյ ընդ մէջ անցանելով՝ որ առաջ անցեալ առ Թուխառ հոսի 'ի ծովն վանայ։ Աւանդութեամբ ունին բնակիչքն եթէ սուլդան Մուրատայ յանցանելն ընդ այս ձոր 'ի գարնայնի յորժամ երթայր յարձակել 'ի վերայ Բաղտատայ՝ հաճեալ ընդ վայրն պարարտարօտ, կոչեցեալ իցէ զայն Կիւզէլ տէրէ, և այն անուն մնաց մինչև ցայսօր։

# ՈՂՈՐՏ ՎԱՆԱՑ ԾՈՎՈՒՆ

Տեղագրեալ ցարդ մասն մի 'ի Բզնունեաց գաւառէն և մասն մի փոքր յաշխարհէն Աղձնեաց, անցանեմ 'ի Վասպուրական աշխարհ ,'ի հնագոյնն և 'ի ճոխն ազգային հնութեամբ, զոլորտ ծովուն ստորագրելով նախ, սակաւ ուրեք խոտորեալ 'ի ներքին կոյս ցամաքին ։ Արդ առաջին տեղի՝ որ ակներև լինի յեզերս ծովուն յարևմտից է գիւղն Դատվանի, իբրու գլխաւոր նաւահանգիստ այդմ կողման, ուր իջանեն վաճառք բեռանց անցանել նաւակաւ 'ի Վան ։

Անտի յաջակողմն ուղևորեալ կիսաժամու միջոցաւ ընդ դաշտավայրս՝ ընդառաջ լինի գիւղն Ուրտափ ։ Հնութիւն գեղջս մասամբ իմն երևի յարձանագիրս գերեզմանատանն, յորում մեծամեծ խաչքարք են մանրաքանդակ զարդուք ըստ ախորժակաց ժամանակին. յորս գտանի թուական մինչև ցՊ. (1350) և է գիւղն պտղաւէտ ։

Ի վանորէից Վասպուրական աշխարհին առաջին յանդիման լինի յայնմ կողման մենաստանն Ս. Ցիպտիբուզտի, յանչուք գիւղն Թուխ, քառորդաւ հեռի 'ի նմանէ 'ի վերայ բարձրագոյն ապառաժի, առ 'ի կողաց լերին ։ Ճանապարհն վերելից ոլորտաձև է երկուստեք խիտ առ խիտ ծառաստանօք, թէպէտ և փոքր մի դժուարին, այլ դիրք վանացն բարձր և ծովահայեաց շրջապատեալ 'ի ծառոց. 'ի թիկանց և յաջմէ բարձունք վարկպարաղի պրակօք ուռճացեալ, և յահեկէ և յառաջոյ գիւղօրէք, է որ 'ի մօտոյ և է որ 'ի հեռաստանէ, ուրեք դաշտաձև և ուրեք մանր բլրակօք զարդարեալ, և գլուխ ամենայնի տեսիլ ծովուն. այդ ամենայն հիացուցանէ զորս անդն գտանին ։ Իսկ շինուած վանացն թէպէտ և փոքր և ոչ համեմատ գեղատեսիլ դիրցն, որ և ամայի կայ արդ անբնակ 'ի մարդկանէ, սակայն եկեղեցին համակ քարաշէն, գեղեցիկ և հինդխորանեան՝ անարատ կայ ։ Առընթեր պարսպին արտաքոյ կայ և այլ մատուռն կիսափուլ և քարաշէն ։ Ի ճակատ եկեղեցւոյն յիշատակի Մեսրոպ վարդապետ շինող նորա 'ի թուին ՌՃՂԷ ։ Առ Թուխաւ անցեալ գետն կիւղէլ–տէրէ գաւառին Թափի 'ի ծովն վանայ, քարաշէն կամուրջ ունելով 'ի վերայ առ ծովեզրն ։

Խարզիք. — Պատմեն զսրբոյն Գրիգորէ Նարեկացւոյ հովուութիւն արարեալ 'ի գիւղս յայս մինչ չև էր կրօնաւորեալ. և յաւուր միում թշնամեաց ոմանց 'ի վերայ յարձակեալ՝ հարկանել զնա. յորոց խոյս տուեալ նորա 'ի կապանն կոյս արտաքոյ գեղջն՝ գայ և թագչի ընդ կողիւք վիմի միոյ՝ որ է առ ճանապարհաւ ծովափին. և վէմն պքանչելեօք գոգաւորեալ ընդունի զնա. և թշնամեացն անցեալ առ նովաւ չտեսանեն զնա և զերծանի 'ի նոցանէ ։ Իսկ վէմն այն կայ այնպէս մինչև ցայսօր գոգաւոր ըստ ձևոյ թիկանց մարդոյ և բազկաց, և ծառ մի առընթեր. և յետ ժամանակաց որպէս թուի՝ խաչքար կանգնեալ են հանդէպ նորա, նշան ուխտատեղի լինելոյ ։

Սուրփ. — Մի 'ի պտղաւէտ գիւղօրէիցն է սա 'ի դաշտավայրի որ երկայնեալ

ձգի 'ի ծովն կոյս՝ ապառաժուտ 'ի ծայրին գոլով ։ Իբրև քառորդաւ հեռի 'ի գեղջէն յայնկոյս ծովեզրին՝ որոյ քարաժայռ կապանն հետզհետէ բարձրանայ 'ի վեր, անդ 'ի վերայ մեծի բարձրաւանդակին կառուցեալ կայ մենաստան յանուն սրբոյ Կարապետի. դիրքն զուարճալի և վսեմ և ծովահայեաց ։ Զունիմ ասել որպիսի ոք էր շինող նորա և զինչպիսի նորա ախորժակ, որ ընդ վսեմատես վայրացն չկարաց միաբանել զշինուածն խրթին և մթին և զամենևին անշուքն ։ Թէպէտ և մարթի ասել գեղատեսիլ լեալ զառաջին հիմնարկեալն մինչդեռ չէն էր երկիրն առ արծրունի թագաւորօք. այլ յետ աւերելոյ երկրին և բռնանալոյ Քրդաց՝ յայդ խրթնութիւն սահմանեցին զմենաստանն, զի մի գոնեայ անհետ լիցին սրբազան վայրքն ։ Աւանդի 'ի բնակչաց հաստատութեամբ, զի բռնաւորի ուրուք յայլազգեաց յափշտակեալ զարտորայս վանացն, և սքանչելիս տեսեալ և զարհուրեալ՝ յետս դարձուցանէ ոչ միայն զոր առն, այլ և զիւրն զամենայն ։

Գոմաց վանք. — Յանուանէ գեղջն այսպէս կոչեցեալ, որ ժամաւ հեռի է 'ի դաշտի. լերամբ անջրպետի վանքն 'ի գեղջէն, և է անընդմիջաբար առ ափն ծովուն՝ երկուստեք անբնակ 'ի գիւղօրէից, և լեառն 'ի թիկանց իւր ունելով. Շրջակայ վայրք նորա անբուսաբեր և ապառաժ, և ինքն ամայի թողեալ, թէպէտ և անկործան կայ, և առաջնորդն 'ի նոյն Գոմս գեղջ բնակի, որ յայնկոյս լերինն ։ Մենաստանն շինեալ է յանուն սրբոյն Գէորգայ, որոյ զլուխն պահէր անդ. և այժմ առ անբնակ լինելոյ մենաստանին՝ պահի 'ի Գոմս գեղջ ։ Առ շինականսն յորջորջումն յայլոց Գոմաց վանք ասացելոց՝ կոչի սա Ջոչգլուխ սուրբ Գէորգ ։

Բէլու. — Այս այն գիւղ է, ասի յոմանց, յորում էր գերեզման Նեբրովթայ կամ Բելայ. ստուգիւ արդեօք եթէ յանուանէ այնպէս յարմարեալ՝ չմարթի հաւաստեաւ ինչ գուշակել ։ Այլ զայսմանէ երկարագոյն լիցին բանք 'ի տեղագրութեան գաւառին Հայոց ձորոյ ։

Կապուտկող. — Մի 'ի բարձր լերանց է սա 'ի Վասպուրական աշխարհին, և 'ի հնումն կոչեցեալ Ընձաքիարս, (կամ Ընձաքիսար) թերևս յանուանէ Ընձաք գեղջն որ առ երի կայ նորա. լեառն լայնանիստ, ոչ այլ և այլ ձորովք կցելոց ընդ միմեանս, այլ միապաղաղ ։ Միջոց գագաթանն բարձրացեալ, և 'ի հիւսիսոյ կուսէ տակաւ ցածուցեալ՝ երկայնեալ ձգի 'ի մէջ ծովուն, այնպէս զի 'ի բազում կողմանց ծովեզրին երևելի լինի ։ Այս լեառն է յոր եկ սուրբն Յակոբ յետ դարձին 'ի Մասեաց և յարարատեան աշխարհէ և անէծ զերկիրն Մանաճհրի, որ է Ռշտունիք, ԳԱԽԱՇ կոչեցեալ այժմ. քանզի երթեալ սրբոյն առ Մանաճիհր զի արձակեսցէ զպարկաւագունս իւր, և նորա խստացեալ՝ ոչ միայն չարձակեաց, այլ և 'ի ծով ընկէց զամենեսին 'ի բերդէն իւրմէ՝ որ առ Քարադաշտիւ, զորմէ լիցին բանք զկնի ։ Ի կողաց մի լերինս որ հայի յարևելս հարաւոյ՝ յետ ժամանակաց շինեցաւ մենաստանն յանուն սրբոյն Յակոբայ, համբաւատենչ առ նախնեօք, որպէս ցարդ աւանդութեամբ պատմի. 'ի հարկէ և ըստ անուանն կարգօք և կրօնիւք և միաբանից բազմութեամբ ճոխացեալ. այլ արդ մի յանշուք վանորէից է, շինուածքն ամենևին զուրկ յախորժակաց, մթին և անմաքուր, աղեղայիւ միով եւեթ կառավարեալ ։ Ճկոյթ սրբոյն աստ պահէր և մասն մի 'ի Նոյայ տապանէն, այլ սակաւ ամօք յառաջ գողացեալ եղեն 'ի Քրր-

ձգի 'ի ծովն կոյս՝ ապառաժուտ 'ի ծայրին գոլով ։ Իբրև քառորդաւ հեռի 'ի գեղջէն յայնկոյս ծովեզրին՝ որոյ քարաժայռ կապանն հետզհետէ բարձրանայ 'ի վեր, անդ 'ի վերայ մեծի բարձրաւանդակին կառուցեալ կայ մենաստան յանուն սրբոյ Կարապետի. դիւքն զուարճալի և վսեմ և ծովահայեաց ։ Ջանիմ ասել որպիսի ոք էր շինող նորա և զինչպիսի նորա ախորժակ, որ ընդ վսեմատես վայրացն չկարաց միաբանել զշինուածն խրթին և մթին և զամենևին անշուքն ։ Թէպէտ և մարթի ասել գեղատեսիլ լեալ զառաջին հիմնարկեալն մինչդեռ չէն էր երկիրն առ արծրունի թագաւորօք. այլ յետ աւերելոյ երկրին և բռնանալոյ Քրդաց՝ յայդ խրթնութիւն սահմանեցին զմենաստանն, զի մի գոնեայ անհետ լիցին սրբազան վայրքն ։ Աւանդի 'ի բնակչաց հաստատութեամբ, զի բռնաւորք ուրուք յայլազգեաց յափշտակեալ զարտօրայս վանացն, և պքանչելիս տեսեալ և զարհուրեալ՝ յետս դարձուցանէ ոչ միայն զոր առն, այլ և զիւրն զամենայն ։

Գոմաց վանք. — Ցանուանէ գեղջնայսպէս կոչեցեալ, որ ժամաւ հեռի է 'ի դաշտի. լերամբ անջրպետի վանքն 'ի գեղջէն, և է անընդմիջաբար առ ափն ծովուն՝ երկուստեք անբնակ 'ի գիւղօրէից, և լեառն 'ի թիկանց իւր ունելով. շրջակայ վայրք նորա անբուսաբեր և ապառաժ, և ինքն ամայի թողեալ, թէպէտ և անկործան կայ, և առաջնորդն 'ի նոյն Գոմս գեղջ բնակի, որ յայնկոյս լերինն ։ Մենաստանն շինեալ է յանուն սրբոյն Գէորգայ, որոյ գլուխն պահէր անդ. և այժմ առ անբնակ լինելոյ մենաստանին՝ պահի 'ի Գոմս գեղջ ։ Առ շինականս յորոշումն յայլոց Գոմաց վանք ասացելոց՝ կոչի սա Ջոչգլուխ սուրբ Գէորգ ։

-Բէյոււ. — Այս այն գիւղ է, ասի յոմանց, յորում էր գերեզման Ներրովթայ կամ Բելայ. ստուգիւ արդեօք եթէ յանուանէ այնպէս յարմարեալ՝ չմարթի հաւաստեաւ ինչ գուշակել ։ Այլ զայսմանէ երկարագոյն լիցին բանք 'ի տեղագրութեան գաւառին Հայոց ձորոյ ։

Կապուտկող. — Մի 'ի բարձր լերանց է սա 'ի Վասպուրական աշխարհին, և 'ի հնումն կոչեցեալ Ըն̈ձաքիարս, (կամ Ընձաքիսար) թերևս յանուանէ Ընձաք գեղջն որ առ երի կայ նորա. լեառն լայնանիստ, ոչ այլ և այլ ձորովք կցելօք ընդ միմեանս, այլ միապաղաղ ։ Միջոց գագաթանն բարձրացեալ, և 'ի հիւսիսոյ կուսէ տակաւ ցածուցեալ՝ երկայնեալ ձգի 'ի մէջ ծովուն, այնպէս զի 'ի բազում կողմանց ծովեզրին երևելի լինի ։ Այս լեառն է յոր եւ սուրբն Յակոբ յետ դարձին 'ի Մասեաց և յարարատեան աշխարհէ և անէծ զերկիրն Մանաճհրի, որ է Ռշտունիք, ԳԱԽԱՇ կոչեցեալ այժմ. քանզի երթեալ սրբոյն առ Մանաճիհր զի արձակեսցէ զպարկաւագունս իւր, և նորա խստացեալ՝ ոչ միայն չարձակեաց, այլ և 'ի ծով ընկէց զամենեսին 'ի բերդէն իւրմէ՝ որ առ Քարադաշտիւ, զորմէ լիցին բանք զկնի ։ Ի կողաց մի լերինս որ հայի յարևելս հարաւոյ՝ յետ ժամանակաց շինեցաւ մենաստանն յանուն սրբոյն Յակոբայ, համբաւատենչ առ նախնեօք, որպէս ցարդ աւանդութեամբ պատմի. 'ի հարկէ և ըստ անուանն կարգօք և կրօնիւք և միաբանից բազմութեամբ ճոխացեալ. այլ արդ մի յանշուք վանօրէիցն է, շինուածքն ամենևին զուրկ յախորժակաց, մթին և անմաքուր, աբեղայիւ միով ևեթ կառավարեալ ։ Ճկոյթ սրբոյն աստ պահէր և մասն մի 'ի Նոյայ տապանէն, այլ սակաւ ամօք յառաջ գողացեալ եղեն 'ի Քրր-

դաց։ Արտաքոյ մենաստանին են և այլ մատրունք թողեալք ամայի։ Առ արեւ-մտեան մատրանն կայ աղբիւր բարեհամ ջրոյ, և ակն նորա վերոյ կողից լերինն, զոր սքանչելեօք բխեցուցեալ է սուրբն Յակոբ։

Սուրբ Թովմայի վանք.— Ի վանաց սրբոյն Յակոբայ շրջան առեալ զկողիւք նոյն լերինն կապուտկողայ և անցեալ 'ի ծովակողմն կոյս՝ 'ի վերայ սարաբարձր լայ-նանիստ բլրի յանդիման լինի մենաստանս գեղեցկադիր և ծովահայեաց. չի-նուածովք փոքր մի առաւելեալ քան զվերոգրեալսն, այլ նշանաւոր ինչ չիք 'ի նմա։ Ասեն թէ մարմին առաքելոյն ամփոփեալ կայ վերոյ դրան եկեղեցւոյն, թէպէտ և արտաքուստ չլինի յայտնի նշանաւ իւիք։ Այլ ըստ հասարակ աւան-դութեան ահեակ բազուկ սրբոյն պահի անդ։

Լուսաւորիչ Ս. Սահակ.— Քառորդաւ հեռի 'ի Գաւձակ գեղջէն կառուցեալ զկողիւք բարձու լերին։ փոքր է մենաստանս և անշուք ամենևին ըստ օրինակի առաջնոցն։ Սահակս այս էր ճգնաւոր ոմն 'ի միաբանից կարմրակայ վանաց. և աղօթատեղի ընտրեալ նորա աստ մինչդեռ անշէն էր վայրս, գայր անտի երբեմն աստ աղօթել. և քանզի ինքն միականի էր, խնդրէր 'ի տիրամօրէն առնուլ ըզ-լոյս և զմիւսոյ ականն. միայն զի տեսից զքեզ, ասէ, միանգամ. և ըստ անձուկ փափաքանացն տեսեալ զտիրամայրն, խաւարեալ ակնն լուսաւորի և լուսաւորն խաւարի. և անտի և այսր ուխտատեղի է ամենայն աչացաւաց։ Մարմին երա-նելւոյն թաղեալ է մերձ 'ի վանս կարմրակայ, իսկ պտուղ աչացն է 'ի միւս վանսն։

Կարմրակ Աստուածածնի վանք.— Ի սուրբ Սահակայ վանաց անցեալ զգագա-թամբ լերինն մեծաւ աշխատութեամբ, յետ հանդիպելոյ ընդ վերելսն աղբերա-կան յոյժ բարեհամի, և իջեալ 'ի խոնարհ՝ 'ի ձորամիջի անդ և 'ի շրջապատ լերանց կառուցեալ է մենաստանս շինեալ 'ի Գագկայ արքայէն Արծրունեաց։ կոչեցաւ կարմրակայ վանք, զի է անդ մասն 'ի կենաց փայտէն ամփոփեալ 'ի տփի, և 'ի վերայ ակն կարմրագոյն։ Շինուած մենաստանին ընդ բազում փոփոխութեամբ անցեալ, իբրև զայլոցն և սա անշուք է, այլ եկեղեցին փառահեղ և բարձր։ Առ դրան նորա երկուստեք 'ի բարձու որ հասանէ մինչև ցկամարսն՝ տեղիք են վան-դակապատ, յորս աղօթէին թագաւորն և թագուհին։ Առ նախնեօք մենաստանս այս Միանձն անապատ յորջորջէր, և միաբանից բազմութիւն էր իբրև երեք-հարիւրոց, յորժամ շէն էր երկիրն. և պատկառելի առ ամենեսեան վասն մասին կենաց փայտին։ Յաւանին Գաւաշու մեծատան ուրումն որդի հիւանդացեալ մերձ 'ի մահ, առաքեալ խնդրէ 'ի վանահօրէն ածել զսուրբ նշանն 'ի տուն իւր վասն բժշկութեան որդւոյն իւրոյ. և վանահօրն ելեալ հանդերձ ամենայն միա-բանիւք, և զնշանն սուրբ փոխ առ փոխ յածեցուցեալ 'ի գլուխս ամենեցուն՝ գան 'ի տուն իշխանին. որոյ տեսեալ զսքանչելիս առժամայն բժշկութեան որ-դւոյն՝ տայ 'ի պարգևի մասին 'ի մենաստանն զիւր գութանն ամենայն սարօքն։

Մոխրաբերդ.— Այս այն տեղի է յորում զկնի դարձին Վարդանանց 'ի Պարսից՝ եկին ընդ նոսա մոգք և քուրմք և շինեցին ատրուշանս պաշտաման կրակի. և Սահակ եպիսկոպոս կործանեաց զայն, և յետոյ վկայեցաւ ընդ Ղևոնդեանս։ Սակայն բուն և հին Մոխրաբերդն ուր այդ ամենայն եղև, առեալ է այժմ 'ի ծո-վէ, և գիւղն նորոգեալ վերոյ քան զնա։

*Նարեկ.* — Գիւղ պտղաւէտ գեղեցկանիստ 'ի դաշտի և 'ի վերայ ցածագոյն բլրակի, ժամաւ հեռի 'ի ծովեզերէն։ Ի միջավայր գեղջն, կամ թէ ասել 'ի գագաթն բլրակին 'ի վերայ խոնարհ կանաչագոյն ապառաժի՝ կառուցեալ է մենաստանն՝ անուանի մինչև ցայսօր ժամանակի սակս բնակելոյ անդէն Գրիգորի Նարեկացւոյ։ Եկեղեցի նորա հոյակապ յերիս բաժանի կից ընդ միմեանս. միջինն Աստուածածին կոչի չորեքկուսի սեամբք. աջակողմեանն անուին՝ սուրբ Սանդուխտ, յորոյ աջմէ առ 'ի ներքս յետոյ խորանին կայ մատուռն ուր գերեզմանն է սրբոյն. իսկ ձախակողմեանն դարձեալ յանուն Աստուածածնի նմանաձև միւսոյ կողմանն։ Առ դրամբ եկեղեցւոյս է գերեզման Անանիայի Նարեկացւոյ որ էր քեռի սրբոյն. և առ դրամբ տաճարին գերեզման Յովհաննու եղբօր նորին սրբոյ։ Իսկ զանգակատունն որ առ դրամբ եկեղեցւոյն կից նմին՝ յետոյ շինեալ է։

*Նարեկացւոյ ձգնարանն.* — Ժամաւ հեռի 'ի Նարեկայ 'ի հիւսիսոյ է քարայրեան երկայնանիստ, անուանի եղեալ 'ի բազում դարուց հետէ սակս աղօթատեղի լինելոյ սրբոյն Գրիգորի Նարեկացւոյ։ Ապառաժն է 'ի ծակոտկէն քարէ, և բազում՝ ուրեք անձեռագործ այրք մանունք 'ի նմա, ոմանք հաւասար գետնոյ և ոմանք 'ի վերոյ։ Այլ զարմանալի ևս են այրքն յարհեստէ կռանագործաց յօրինեալք՝ չգիտեմ՝ յորում դարու. այս միայն յայտնի է զի յառաջ քան զՆարեկացին լեալ է որ անդ աղօթէր։ Շինուածն յերկուս բաժանեալ 'ի ներքնայարկ և 'ի վերնայարկ՝ ինն սենեկաք սահմանի, հինգ 'ի ներքինն և չորս 'ի վերինն, պատուհանաձև բացուածս ունելով յարկաց իւրաքանչիւր ծովահայեացս։ Մի միայն է նախադուռն, ընդ որ փոքր մի դժուարաւ լինի ելանել ընդ քարաժայռն և մտանել. այդ առաջին մուտ մէջ ընդ մէջ դրամբք հանէ յամենայն սենեակս ներքնայարկին, յորոց 'ի միումն 'ի կողաց լերինն փորեալ է բոլորշի տեղի կանգնաչափ խորութեամբ, յաւազանն ջրոյ արդեօք թէ յայլ ինչ պէտս չէ յայտ։ Ի ներքնայարկէն դիւրագոյն ելանելեօք լինի անցանել 'ի վերնայարկն. 'ի սմա ևս մէջ ընդ մէջ դրամբք հաղորդին ընդ միմեանս սենեակքն չորեքին. յորոց մին է փոքրիկ մատուռն հանդերձ վիմեղէն սեղանով. անդ, ասեն, պատարագէր սուրբն։ Աստի ետես նա զՏիրամայրն աստուածորդւոյն, առ որ անձուկ սիրով մաշէր հանապազ, 'ի վերայ Առտէր կղզւոյն լուսափայլ տեսլեամբ և ճառագայթարձակ նշողիւք ցոլացեալ 'ի վերայ ծովուն, յայն տեսիլ էջ փութով յայրէ անտի և ընթացեալ ընդ ծով իբրև ընդ ցամաք՝ հասանէ առ անձկալին իւր. և Տիրամօրն տուեալ զաստուածորդին 'ի գիրկս նորա, Առ զտէր քո, ասէ։ Զայս սքանչելիս մանր ստորագրէ նա ինքն երանելին 'ի տաղն Աչքն ծով 'ի ծով. յիշէ և յաղօթսն 'ի բանն ԺԲ և ԻԷ։

*Տշող.* — Որք զԲէլու գեղջէն ասեն լինել գերեզման Ներբրովթայ, զայսմ գեղջէ ևս զայս օրինակ բան յարմարեն. զՆեբրովթ, ասեն, սպանեալ Հայկայ 'ի Հայոց ձոր՝ հրամայէ զդի նորա բառնալ և տանել 'ի Բէլու. և յանցանել ընդ գիւղս այս՝ զի տակաւին սլաքն 'ի կուրծս նորա մխեալ կայր, իբրև արտաքս քարշեալ հանին, շող արևուն, ասեն, թափ անցեալ ընդ վիրամէջն՝ անտի անուն գեղջս կոչեցաւ Տշող։

*Փշաւանս.* — Եւ սա այն գիւղ է՝ ընդ որ յանցանել սրբոյն Յակոբայ՝ իբրև և-

տես զայգեպանս զի աշխատէին, եհարց թէ զինչ գործէք. և յասել նոցա փուշ տնկեմք, ասէ ցնոսա. եղիցի ըստ բանի ձերում. և անտի մինչև ցայսօր ժամանակի կարի փշալից է վայրն։

Իլոյ վանք կամ Քառասուն խորան.— Ընդ ձորահովիտն որ առ Ոստանաւ՝ ուղղեալ զընթացս 'ի ներքս կոյս, 'ի ձախմէ ունելով զԱրտոս լեառն և յաջմէ զԲղբարձունս, երկժամու միջոցաւ հեռաւորութեամբ լինի հասանել 'ի գլուխ ձորոյն ուր երկուստեք լերինքն եկեալ միանան, անդ է գիւղն Իլի, սակաւաբնակ այսօր. և 'ի մէջ նորա մենաստան կիսակործան և ամայի Քառասուն խորան կոչեցեալ, յորոց տասն հազիւ մնացեալ են։ Մեծահռչակ աւանդի լինել մենաստանս առ նախնեօք, ոչ այնու միայն զի Գագկաշէն է, այլ զի և հոյակապ և մեծանիստ քան զայլս 'ի շինուածոց նորա և ճոխ միաբանիւք. արդ մենաստանին իսպառ գետնոյ հաւասարեալ, եկեղեցին ևեթ կանգուն կայ հանդերձ կիսամասնեայ շինուածով որ կից ընդ նմա է. և բաց յաւագ խորանէն այլք 'ի խորանացն են մի մի ոմբոլոնք կամ թէ ասել փոքրիկ մատրունք յայլ և այլ անկիւնս եկեղեցւոյն. ոմանք գետնոյ հաւասարք և այլք 'ի վերնայարկս նորա, առ հասարակ դադար անասնոց եղեալ։

Քարադաշտ.— Սա այն է որ 'ի հնումն Մանակերտն անուանէր. ապառաժ ցածագոյն 'ի ցամաք կուսէ կցեալ երկայնեալ 'ի մէջ ծովուն, յորոյ վերայ էր բերդն Մանածհրի, և այժմ աւերակ է իսպառ։ Ի բերդէ աստի արկ Մանածիհր զսարկաւագունս սրբոյն Յակոբայ 'ի ծով։ Բայց այժմեան Քարադաշտ գիւղն փոքր ինչ հեռի է 'ի ծովեզերէն։

ՈՍՏԱՆ.— Անուանի աւան 'ի հնումն 'ի Ռշտունեաց գաւառիս, առ ծովափամբն 'ի բարձր սարաւանդի՝ որ հետզհետէ բարձրացեալ լեռնանայ։ Գագիկ արքայ հաճեալ ընդ դիրս տեղւոյն, ընդ քաղցրութիւն աղբերացն և ընդ օդոցն բարեխառնութիւն, որ անարգել շնչեն 'ի նմա յարևելից, 'ի հիւսիսոյ և յարևմտից, 'ի թիկանց հարաւակողմանն ևեթ արգել լինելով հարաւոյ, շինեաց 'ի նմա զառաջինն շինուածս հոյակապս, տաճարս և սենեակս և փողոցս հրաշալիս և տաճար մի ճեմարանաց զարմանալի յոյժ. համառօտ ասել զաթոռն արքունի աստէն հաստատեաց մինչ չև էր ձեռն արկեալ 'ի շինութիւն Աղթամարայ։ Եւ այդ ամենայն ճոխագոյն պատմի առ Թովմայի արծրունւոյ և 'ի հին կոնդակին Աղթամարայ։ Այլ 'ի հնգետասաներորդ դարու անմարդաբնակ արարեալ 'ի Աքանդարայ, անհետ եղեն իսպառ հրաշալիքն Գագկայ, եթէ ցայնվայր նշխար ինչ մնացորդ կայր 'ի շինութեանց արքային. և արդ 'ի նոյն կործանման կայ մնայ՝ 'ի սակաւուց շինական տանց բնակեալ իբրև զմի 'ի գիւղօրէից։ Բերդն որ կայ ցարդ 'ի գագաթան լերինն՝ բարձրադիր 'ի վերայ աւանին և ծովահայեաց, ըստ մասին հիմանն թերևս մնացորդ համարելի է յառաջնոյ ամրոցէն. և յետ կործանման աւանին կարկատեալ, որպէս ակներև 'ի քարանցն տեսանի։ Ցամրոցէ անտի ստորերկրեայ ճանապարհն՝ որ և այն խաթարեալ է, հանէր մինչև յեկեղեցի սրբոյն Ստեփաննոսի որ է արտաքոյ բերդին 'ի ստորև։

Արտոս.— Մի 'ի բարձր լերանց Վասպուրական աշխարհին, կիսով չափ 'ի վեր անբեր ապառաժ ըստ ծովահայեաց կողմանն, և անտի 'ի վայր դալարաբեր. եր-

կայնանիստ է ըստ արևելից և ըստ հարաւոյ կողմանցն. զի մի կողմն 'ի ձորաբերանոյն Ոստանայ ձգի յարևելս կոյս մինչև ցմիւս ձորաբերանն հանդէպ Անգղայ. իսկ միւս կողմն 'ի հարաւ կոյս՝ յորմէ և ձորն որ առ կողիւք Ոստանայ ձևացեալ՝ հանէ մինչև ցգիւղն Իլի, զորմէ 'ի վերն ասացաք: Առ ստորոտով ծովեզերին գիւղորէք են և պարտէզք պտղաւէտք հարուստ մի տարածութեամբ, որպէս և 'ի ձորաբերանն 'ի վեր 'ի հարաւոյ: Եւ այդ ամենայն բարելից գիւղորէք՝ սահման Ոստանայ համարին:

Ջաղար Ս. Նշան (կամ Ջարահան). —վանք Աստուածածնի առ 'ի կողաց Արտոս լերին, գեղեցկադիր և բարձրահայեաց 'ի վերայ ձորաբերանոյն Ոստանայ: Չէ ինչ նշանաւոր մենաստանս փոքր և անշուք, այլ ցանկալի ամենայն հայրենասիրաց, զի անդ է գերեզման Եղիշէի վարդապետի սրբոյ. որ նախ յեկեղեցւոջ Վառաճիշատ գեղջն թաղեալ էր, որ առընթեր նորա կայ և արդ ամայի, և իբրև քառասուն ամօք յառաջ վարդապետ ոմն եհան անտի զնշխարսն և բերեալ հանգոյց 'ի վանս յայս: Եւ այս ամենայն հանդերձ խստակրօն կենօք սրբոյ վարդապետին յԱրտոս լեառնն, ճոխագոյն պատմի մի ըստ միոջէ 'ի կոնդակի վանացս:

Սպիտակ վանք Աստուածածնի. — Է այլ մենաստան փոքր շինեալ 'ի Գագկայ արքայէ 'ի վերայ բարձր բլրի, որ է նոյնպէս 'ի կողաց Արտոսի:

Անգղայ Աստուածածնի վանք. — Ցանուանէ գեղջն այսպէս կոչեցեալ, որ քառորդաւ հեռի է 'ի վանացն. և շինեալ է առ գետոյն որ գայ 'ի Խօշապայ: Առ ափն գետոյն ստորև վանից բխէ ջուր պատուական՝ ուր լուանան ախտաժէտք: Նշանաւոր է վանս այս վասն ինքնաբուխ ձիթոյն. զի 'ի հիւսիսային որմն եկեղեցւոյն յերկթզաչափ դարանի զերեսօք ներքնոյ հանդիպակաց քարին՝ որ օծեալ խաչաքար է, ասեն 'ի Թադէոսէ առաքելոյ, հոսի ձէթն իբրև զշիթս քրտանց:

ԱՐՏԱՄԷՏ. — Ի հնումն մի 'ի պայծառ քաղաքաց կողմանցս էր, յորում Բ Արտաշէս շինուածս զարմանալիս և ամրոցս յօրինեալ բնակեցաւ ըստ Արծրունւոյն պատմութեան. այլ այժմ հազիւ թէ հետք երևին այնց հնութեանց. և է իբրև զմի 'ի գիւղորէից: Իսկ պարտիզացն բազմութեամբ և պտղաւէտ արգասաւորութեամբն երևելի յոյժ: Շինուածք տանցն 'ի բարձր բլրի, և պարտէզքն հանդէպ նորա ստորև՝ որ ըստ լայնութեանն հասանէ մինչև ցծովեզրն, և երկայնութեամբն երկուստեք ցմեծ տարածութիւն: Ամենայն տեսակք պտղոց որ անդ լինին՝ ազնիւ են ըստ համոյն և ըստ մեծութեան, և խնձորն հոտաւէտ. իսկ առատութեամբն լիացուցանէ ոչ զվան միայն, այլ և զշրջակայ սահմանս: ՅԱրտամետ 'ի վերայ հասարակաց ճանապարհին է աղբիւրն այն՝ յորում առ ժամանակօք սրբոյն Յակոբայ 'ի լուանալ աղջկանց անպարկեշտից՝ անիծիւք սպիտակացոյց զհերս գլխոց նոցա. և ասի թէ մինչև ցայսօր բոլորշի սպիտակութիւն դահեկանաչափ երևի 'ի գլուխս նորածնեալ աղջկանց: Ներքին կողմն աղբերդ յորմէ հոսի ջուրն՝ վիմափոր է լայն և բարձր քան զհասակ մարդոյ և երկայնաձիգ. այդ գործ թէ չիցէ 'ի Շամիրամայ մնացորդ, անշուշտ մերոյն Արտաշէսի ձեռակերտ է: Շամիրամայ առուն ընդ Արտամետ անցեալ ոռոգանէ զայգեստանս նորա, և անտի անցեալ գնայ յայգեստանս Վանայ:

ԿՈՒՆԿՈՒ ՎԱՆՔ ԱՍՏՈՒԱԾԱԾՆԻ.—Կիսաժամու հեռի յԱրտամետայ և ժամու և կիսով 'ի Վանայ, շինեալ 'ի բարձր բլրի գեղեցկանիստ և ծովահայեաց, ամենևին անշուք։ Զայդ անուն ընկալաւ մենաստանս 'ի դիպուածոյն, իբր զի 'ի սկսանել երբեմն խորհրդոյ պատարագին իբրև չփոթէին իմն թէ զինչ արասցեն քանզի չգոյր բաժակ 'ի պատրաստի, կունկան ողկոյզ խաղողոյ բերեալ ելից զպակասութիւն կարևոր գործոյն։

ՎԱՐԱԳ.—Ցարևելակողմն քաղաքին Վանայ երկժամու հեռի 'ի նմանէ է լեառն, բարձրագոյն քան զոր ցարդ ստորագրեցաք, այլ ոչ քան զՍիփան։ Կիսով չափ բարձրութեանն դալարաբեր և անտի 'ի վեր առհասարակ ապառաժ և անմատոյց. բարձրութեամբն և երկայնանիստ դիրիւքն ահաւոր ձգեալ 'ի հիւսիսոյ ընդ հարաւ՝ յարևմուտս կոյս զհայեցածն ունելով։ Ի հեռաստանէ թէպէտ և միապաղաղ երևի, այլ անձկագոյն ձորով յերկուս բաժանեալ լանջակողմն, առանձին անուամբ Ներքին Վարագ ձայնի այն որ առաջակողմն է և ցկէս վերնոյն հասանէ բարձրութեամբն. իսկ միւս յետակողմն Վերին Վարագ, որ և ահագին բարձրութեամբն երևելի է յամենայն կողմանց աշխարհին։

ՆԵՐՔԻՆ ՎԱՐԱԳ.—Մենաստանն ներքին Վարագայ կոչեցեալ Սուրբ Նշան՝ սակս անդ լինելոյ երբեմն Հռիփսիմեայ սուրբ նշանին, է 'ի լանջակողմն լերին 'ի դուր տեղւոջ պատեալ բարձր պարսպաւ յանթուրծ աղիւսոյ։ Ընդարձակ շինուածովքն և մեծատարած գեղատեսիլ պարտիզօքն 'ի ներքս և արտաքոյ պարսպացն յարևելից կուսէ և 'ի հիւսիսոյ՝ արդարև ցանկալի վայր, թող և զօդոցն բարեխառնութիւն. մրգաւէտ ծառք պարտիզացն մեծաւ մասամբ են ծիրանիք, որ 'ի պտղաբերութեան ժամանակի գեղատեսիլ հաճութիւն ընծայեն ական։ Ի մէջ գաւթին է աղբիւր յորդառատ և ուռենիք, և այլ աղբիւր արտաքոյ պարսպին և հանդէպ նորա ջրաղաց, որոյ ջուրն գայ 'ի ձորոյն որ բաժանէ զներքին Վարագ 'ի վերնոյն։ Վերջին շինութիւն սենեկաց միաբանիցն և ուխտաւորաց և առաջնորդին եղեալ է 'ի ձեռն Ղազար վարդապետի. թէպէտ և մեծագործութիւն չերևի 'ի նմա, այլ բարձրահայեաց դիրիւքն 'ի վերայ ընդարձակ գաւթին՝ գեղատեսիլ է։ Սակայն մեծագործ է 'ի մենաստանիս եկեղեցին մեծ՝ յեօթանց եկեղեցեաց գումարեալ, առ հասարակ՝ քարաշէն, յայն սակս և 'ի Ցաճկաց կոչի եէտի-քիլիսէ, հնգեցուն կցեալ ընդ միմեանս մէջ ընդ մէջ դրամբք, և երկուցն փոքու խորոցաւ տարակաց յայլոցն, որպէս և 'ի պատկերին ճշգրիտ ցուցանի։

Առաջին յեկեղեցեացդ որ շինեալ է առ Փիլիպպոս կաթողիկոսիւ յամի ՌՂԷ, է բուն եկեղեցին՝ ժամատուն ասացեալ ըստ սովորութեան Հայաստանի, ուր ըզժամերգութիւնն կատարեն. Նուիրեալ է յանուն սրբոյն Գէորգայ, չորիւք քառակուսի սեամբք ամբարձեալ կամար նորա, և պատկերազարդ որմունքն։ Ցաջակողմեան դասի է ընդ փայտաշէն կաթողիկէիւ գերեզման Պետրոսի Գետադարձին և արքային Սենեքերիմայ, արձանագիր ունելով առաջնոյն այսպէս.

**Թին ԴՃՀԱ։ այս է հանգիստ տն պետրոսի կթղիկոսին որ 'ի տրապիզոն զգետն Ճրոխ արգելաց առաջի վասիլ արքային։**

Իսկ երկրորդին որ է առընթեր նորա՝ այսպէս.

## Այս է Հանգիստ Սենեքերիմ Թագորին Թվին ԴՃՀԸ:

Գերեզման Գետադարձին որ կայ և 'ի վանս սուրբ Նշանին 'ի Սեբաստիա՝ թուի թէ մանաւորեալ է աստ:

Երկրորդ եկեղեցին է տաճարն ժամատան բարձր և կաթողիկէիւ, դրամբ և որմով անջրպետեալ 'ի ժամատանէն յարևելից կուսէ, ըստ սովորութեան գրեթէ ամենայն եկեղեցեաց քաղաքին և վանորէից երկրիս. և է նուիրեալ յանուն սուրբ Աստուածածնին:

Երրորդն է սուրբ Նշան կիսափուլ յաջմէ տաճարին:

Չորրորդն Գեւորգեալ սուրբ Նշան 'ի նոյն կողմն ժամատան, յորոյ 'ի նորոգչինեն յամի ՌՄԿ; 'ի մէջ կամարաց նորա դտաւ գեւորգեալ սուրբ նշանն Գեւորգեայ կաթողիկոսի փայտեայ դղրդաւ ամփոփեալ 'ի տեղւոջն, և 'ի վերայ նորա արձանագիր. և մեծապէս ուրախացեալ ամենեցուն ընդ անակնկալ գիւտ նորա, և առ տարաժամ լինելոյ փոխադրեցին 'ի քաղաքն 'ի սուրբ Նշան եկեղեցին առ Հոփսիմեայ սուրբ նշանաւն, ուր կայ մինչև ցայսօր: Իսկ միւս գեւորգեալ սուրբ Նշանն որ կայր երբեմն 'ի Տրապիզոն՝ է 'ի մասնէ սորա, և թուի առ ժամանակօք Գետադարձին մանաւորեալ ժողովրդեան Տրապիզոնի, ուր եղեալ էին պանդխտեալքն 'ի ձեռն սորայ Նշանին առաջի վաղի:

Հինգերորդն կոչի սուրբ Սիոն, յահեկէ ժամատանն և գմբէթաւոր:

Իսկ վեցերորդն սուրբ Յովհաննէս և եօթներորդն սուրբ Սոփիա որմակիցք իրերաց և յայլոցն զատուցեալ. գմբէթաւոր է առաջինն և ընդ կամարօքն դարանի դարանք, և երկրորդն կիսափուլ, յորոյ որմն արևմտեան է միացորդ արձանագրի մինչև ցայսօր խոշորատառ դպա օրինակ.

## ՆՀ. Թվին: Ես Խուշուշ խաթունս դուստր Գագկայ յազգէն Բագրատունեաց կենակից Սենեքերիմ ար...ար տաճարացս յիշեցէք 'ի մաքուր

Յայմէ թուի թէ այս երկոքին եկեղեցիք եւեթ Խուշուշայ տիկնոջ դատակերտք են: Իսկ այլոցն չիք հին արձանագիր:

Արտաքոյ պարսպին 'ի հարաւոյ կուսէ երևին աւերակք մատրանն 'ի հնումն և ցայսօր Ուրքաբայրք կոչեցելոյ, ուր բնակէին քահանայք երկու առ ժամանակօք Հոփսիմեանց նախ քան զնստուցչին գալ 'ի կողմանս յայսոսիկ, և յամենայն ուրբաթու մատուցեալ զպատարագն հաղորդէին զՀոփսիմեանսն, զորոց տասացուք զկնի:

Ի մենաստանիս ներքին Վարագայ գտանին երեք քանդակք սեպաձև արձանագրաց. առաջինն ագուցեալ յարևմտեան որմն եկեղեցւոյն յաջմէ դրանն 'ի կարծրագոյն որձաքար վիմի. երկրորդն է մէմբարն Գեւորգեալ սուրբ Նշանին. երրորդն դարձեալ մէմբար սուրբ Սիոնի. երեքին և ս տեսցին 'ի հանդիպիս: (Թիւ Ա. Բ. Գ.)

վերին Վարագ. — Անցեալ 'ի ներքին Վարագայ առ հարաւակողմամբ ընդ ձորամէջն, և ելեալ ամբարձեալ 'ի լանջակողմն միւսոյ բարձրագոյն մասին լերինն, որ և է բուն լեառնն, 'ի բարձրաւանդակ վայրի՝ յաջմէ և յահեկէ և յառաջակողմանէն զառ 'ի վայր զդիրսն ունելով, երևի աւերակ մենաստանին վերին Վարագ կոչեցելոյ, որոյ չորեքին որմունք եկեղեցւոյն ևեթ մնացեալ են: Առընթեր նորա աղբիւր ականակիտ և պատուական յորդ ջրոյ 'ի լեռնէն բղխէ: Ի բարձրութենէ աստի երկիրն բովանդակ երևի 'ի հանդիպոյ նորա, և յաջմէ 'ի հեռուստ ինքնին այրարատեանն Մասիս:

Գաղիղեա. — Ի վերնոյն Վարագայ ուղևորեալ վերագոյն ևս, առաջին յանդիման լինի տեղի ճգնութեանն Թոդկայ: Եւ ապա ընդ քարաժայռն ահագին և անմատչելի մեծաւ դժուարութեամբ ելեալ 'ի գագաթն լերինն, 'ի խորշս և 'ի փապարս քարալերինն երևին տեղիք փախստեան և բնակութեան սրբոց Հռիփսիմեանց, և առանձինն խորշն այն յորում ամփոփեալ էր Հռիփսիմեայ զսուրբ նշանն որ էր 'ի պարանոցի իւրում, պատուեալ յուխտաւորաց: Նշանդ սուրբ յեօթներորդ դարու յայտնեալ աղօթիւք ճգնաւորին Թոդկայ՝ թռուցեալ 'ի գագաթանէ լերինդ լուսափայլ պայծառութեամբ եկն եմուտ 'ի տեղի եկեղեցւոյ վերնոյն Վարագայ. և ընդ ամենայն լեառնն աստ և անդ երևեցան լուսեղէն սիւնք երկոտասան, եօթն 'ի ներքին Վարագ, և երեք 'ի վերինն, և երկու 'ի սուրբ Գրիգոր և 'ի Կարմրուոր. և 'ի տեղիս իջման լուսեղէն սեանցն շինեցան եկեղեցիքդ երկոտասան: Այլ յայտ է թէ վերին Վարագ նախաշէն քան զայլսն է, բայց կամ առ կարի բարձրութեանն և կամ առ անհնարին ցրտութեան վայրացն՝ փոխադրեցաւ բնակութիւն միանձանցն 'ի ներքին Վարագ: Վայրք ճգնութեանն Հռիփսիմեանց 'ի գագաթն լերին՝ Գաղիղեա կոչի 'ի բնակչաց երկրին. և են ամենայն վայրքդ ուխտատեղիք՝ ցանկալի ամենեցուն ոչ միայն բնակչաց, այլ և եկացն 'ի հեռաւոր աշխարհաց. որոց յոչինչ գրեալ զանհնարին աշխատութիւն վերելիցն՝ չմեկնին տեսութեամբ ևեթ մենաստանացն շատացեալ, մինչև տեսցեն և զԳաղիլեա:

Սուրբ Գրիգոր. — Ի վերնոյն Վարագայ իջեալ ընդ սաստիկ զառ 'ի վայրն 'ի կողմանէ հիւսիսոյ, և հասեալ 'ի ձորամէջ մի շրջապատեալ 'ի լերանց որք մասն են նոյն լերինն Վարագայ, կառուցեալ կայ 'ի փոսի անդ ձորամիջոյն փոքրիկ մենաստանն սուրբ Գրիգոր, 'ի հնումն կոչեցեալ Սալնապատու վանք և Ջորավանք ևս, որպէս գրի 'ի կոնդակի վանացն և մեկնի այսպէս, «որ է սալաւ անապատ». ուրանօր թէպէտ բազմաթիւ էին միանձունք ըստ պատմելոյ կոնդակին՝ այլ արդ ոչ ևս: Ի շինուածս այժմեան մենաստանին չերևի մեծագործ ինչ, զի և եկեղեցիքն իսկ երեքին մատրանաչափք են. այլ աւանդի անդ լինել ամփոփեալ 'ի կամար եկեղեցւոյն հողաթափ և փողպատ Հռիփսիմեայ, և զի բնակեալ է աստ սուրբ Լուսաւորիչն ճգնութեամբ, որոյ վայր ճգնութեանն է արտաքոյ մենաստանին 'ի վերայ լերին 'ի դուրան և 'ի զուարճալի վայրի, ուր յետոյ շինեցաւ մատուռն և կայ մինչև ցայսօր: Ասի թէ աղօթէր սուրբն արտասուօք առ Տէր զի յայտնեսցէ զսուրբ նշանն Հռիփսիմեայ. և 'ի տեսլեան ասացաւ նմա՝ եթէ ոչ այժմ այլ յիւրում ժամանակի յայտնեսցի. և է ժամանակն

այն առ Թոդկաւ, զորմէ ասացաք 'ի վերն։ Առատ է ջուր մենաստանիս, որ և գետօրէն հոսի առ նովաւ 'ի ձորոյն. է և առ մատրամբ ճգնութեան սրբոյն Գրիգորի աղբիւր՝ զոր սուրբն բխեցուցեալ է։

Կարմրուշոր. — Անցեալ ընդ ձորամէջն սուրբ Գրիգորի, և շրջան առեալ ընդ բովանդակութիւն նորին և ելեալ արտաքս ընդ ձորաբերանն, 'ի լանջակողմն ներքնոյն Վարագայ առ Շուշանիս գիւղիւ 'ի բացահայեաց վայրի հանդէպ քաղաքին շինեալ է մենաստանս յանուն Աստուածածնի, սքանչելեօք երևելոյ երբեմն աստանօր, որպէս ասի, կարմրագոյն հանդերձիւ։ Փոքր ինչ հեռի 'ի մենաստանէն է աղբիւր ջրոյ՝ պատուականագոյն համարեալ քան զայլս 'ի ջրոց երկրին Վանայ։ Ոչ նշանաւոր ինչ է 'ի վանս յայս, բայց բևեռագրանդակ արձան մի 'ի գաւթի եկեղեցւոյն։ (Թիւ Դ.)

Վան. — Եթէ ամենայն հոյակապ շինութիւնք քաղաքիս որ առ Շամիրամաւ կային ցարդ անեղծ, արդարև մի 'ի ցանկալի տեսարանաց լինէր արդ ամենայն աշխարհի. այլ ասացեալ ապարանքն թագուհւոյդ կրկնայարկ և եռայարկ՝ զարմանալոյ արժանաւորք, և գետոյն ամբարտակ և այլ բազմապատիկ հրաշակերտութիւնք՝ ամենայն թագաւորականաց գործոց առաջին և վեհագոյն համարեալք, որպէս մանր նկարագրէ Խորենացի, այդ ամենայն իսպառ անհետացեալ չերևին այսօր. զի նախ 'ի Սրահանգայ բռնաւորէ 'ի ԺԱ դարու, և յետոյ 'ի Լանկթիմուրայ, և զկնի 'ի Աքանդարայ և 'ի Պարսից և 'ի Տաճկաց հրկէզ եղեն և կործանեցան ցանկալիքն Շամիրամայ։ Սակայն հնաւէր ակն գտանէ տակաւին զարմանալոյ արժանիս 'ի դաստակերտաց նորին Շամիրամայ. որ իբր 'ի չորեքհազար ամաց հետէ և այսր անեղծ կան և կացցեն. ոչ զի բռնաւորքդ խնայեցին ինչ 'ի նոսա, այլ զի բնութեամբ անկործանելիք էին, և անզօրս զերծան 'ի ձեռաց նոցա. զորոց խօսեսցուք մի առ մի, սկիզբն արարեալ 'ի դրից քաղաքին։

Արդ Վան քաղաք շինեալ 'ի դաշտան տեղւոջ, յարևմտից կուսէ ևեթ կիսաժամու մօտեցեալ ծովուն՝ ըստ այլ կողմանց երկու և երեք ժամու զդաշտն շրջապատ ունելով, առհասարակ պատեալ է յերից կողմանց ցածագոյն կրկին պարսպաւ, և առ արտաքնովն խրամ անձուկ որ արդ բազում ուրեք լցեալ հողով, ներքին պարիսպն փլեալ է մեծաւ մասամբ։ Երեք դրունք են պարսպի քաղաքիդ. Թէվրիզ—գաբուսի յարևելս, յարևմուտս՝ Իսքէլէ—գաբուսի, զի մօտ յայն կողմն է ծովն, և Օրթա—գաբուսի 'ի հարաւոյ։ Պարիսպք քաղաքին որ պատեալ են յերից կողմանցդ՝ հասանեն երկուտակք և կցին ընդ քարալերինն մեծի, որ է նոյն ինքն բերդն Շամիրամայ, ասացեալն Շամիրամակերտ, 'ի հիւսիսոյ կուսէ ամրափակելով զքաղաքն։ Ի քաղաքին սակաւաթիւ մզկիթք և շուկայն և իջևանք չեն նշանաւորք. և եթէ հնաշէն ինչ գտցի 'ի նոսա, խաթարեալ և կիսակործան կայ, և յետին դարուց արարք են։ Այլ յորմէհետէ զերծեալ է քաղաքս 'ի հարստահարութենէ բռնաւորաց, սկսեալ են շինել տունս և կրպակս վայելչուս։

Ութ եկեղեցիք են 'ի Վան մեծաւ մասամբ տաճարաւորք, այս ինքն է այլ ժամատուն՝ յորում զժամերգութիւնն կատարեն, և այլ ուր պատարագ մատչի,

դրամբ և որմով անջրպետեալ 'ի ժամատանէն։ Եւ անուանք եկեղեցեացդ են՝ Ս. Էջմիածին որ արդ սուրբ Նշան ասի. զի 'ի տաճարի նորա առանձին խորա-նաւ պահին յերկաթի դզրոցի սուրբ նշանն Հռիփսիմեայ և Գեղարդեալ սուրբ նշանն, մեծաւ եռանդեամբ պատուեալք յամենայն ժողովրդենէն, որք զօր ա-մենայն յաճախեն անդ, մանաւանդ յաւուր ուրբաթու, յորում սահմանեալ է անխափան պատարագ մատուցանել 'ի պատիւ սուրբ նշանացն։ Առ եկեղեցեաւս է առաջնորդարանն. զի անդ նստի առաջնորդն և ոչ 'ի վանսդ, սակս յաճախ երթևեկութեանց գնալոց և վճարոց և ուղևորաց իրաց ազգին՝ որք անդ ատարին ժողովով իշխանաց։ Երկրորդն է Տիրամայր. Երրորդն սուրբ Պօղոս։ Չորրորդ սուրբ Պետրոս, որմակից սրբոյն Պօղոսի։ Հինգերորդ սուրբ Սահակ։ Վեցերորդ սուրբ Ստեփաննոս։ Եօթներորդ սուրբ Վարդան։ Ութերորդ Տիրանաւոր Աս-տուածածին։ Ի տաճարի սրբոյն Պետրոսի կցկէն արձանագիրք են հնադաձև ա-ռից. մին ագուցեալ կողմնակի առընթեր դրանն, և միւսն 'ի ճակատ աջակող-մեան սանդղատանն։ (որ է Թիւ Ե.)

Տունք Հայոց յառաջագոյն թէպէտ և բազում, այլ արդ հազիւ հասանեն մինչև ցերկու հազար հանդերձ որ յեղեռանեանն կան, զորոց զինի։ Ջուրք քա-ղաքին և այգեստանեացն եթէ աղբերաց և եթէ ջրհորաց կարի անախորժք և ծանր և ոչ բնաւ զովացուցիչ ծարաւեաց, չգիտեմ արդեօք այնչափ զովեստիւ յիշա-տակեալ 'ի պատմութիւնս նախնեաց. զուցէ ոչ անձամբ ճաշակեալ գիտաց պատ-մողք, կամ թէ երկարութեամբ ժամանակաց ծովուն մօտեցեալ 'ի քաղաքն՝ ընդերկրեայ խառնեալ 'ի ջուրս քաղաքին դառնացուցեալ անախորժս գործեաց։ Իսկ այժմ որպէս և է, եւ ընդ այն կարի զարմացեալ եմ զի որ 'ի ջրոյդ ըմպեն առհասարակ ժողովուրդք քաղաքին, առողջ են և անձնեայք և կարմրայտք, ուժեղք և ձայնեղք։ Իսկ քաղցրահամ ջուրք որ միանգամայն ախորժելի են և-կին և բնակչին, քանզի և բնակքն ինքնին խոստովանին զանհամութիւն ջրոց քաղաքին իւրեանց, առհասարակ 'ի կողմանս լերանց գտանին, 'ի վանսդ և այ-լուր, որ ըստ գեղեցկափութեան բարձր են յոյժ քան զծովն, և նմին իրի անխառն 'ի նմանէ։ Այսօրէլիք ևեթ չառացեալ աշխարհագրութեամբ քաղաքին, անցցուք 'ի վերին բերդն կամ 'ի քարայրաանն՝ զոր յառաւել Շամիրամակերտն ասացաք, յորում՝ Թաւորոց դաստակերտացն են Շամիրամայ հիմնարկք։

Արդ քարայրատունս անձուկ լայնութեամբ՝ երկայնանիստ յարևմտից յարևել-քբրու ժամու միով՝ պատեալ է զքաղաքն, որպէս ասացաք, 'ի հիւսիսոյ կուսէ՝ երկու ծայրիւքն կցեալ ընդ պարսպի քաղաքին։ Երեսք լերինդ որ հայի անընդ-միջաբար 'ի վերայ քաղաքին և հանդէպ հարաւոյ՝ ուղղաձիգ ամբարձեալ 'ի վեր իբրև պարիսպ անմատոյց և առհասարակ քարաժայռ՝ ջերմացեալ 'ի ռոթոյ արեգական ասթակիզէ զքաղաքն ողջոյն յամարայնի, որ զուրկ է ամենևին 'ի փչմանէ հիւսիսային հողմոյ։ Իսկ յետակողմն լերինդ որ հայի 'ի հիւսիս՝ քարա-ժայռիւք և խճովք և հողով խառն՝ ուրեք անմատչելի մինչև ցվերին պարիսպն, և ուրեք ոչ այնպէս։ Ի միջավայր դագաթան քարալերինդ, ուր բարձրագոյն վայրն է քան զերկոց ծայրիցն որք առկաւ խոնարհեալ կցին ընդ պարսպի քա-ղաքին, է բուն ներքին բերդն՝ դրամբ յարևմտակողմանէն և շուրջանակի առն.

դրամբ և որմով անջրպետեալ 'ի ժամատանէն։ Եւ անուանք եկեղեցեացդ են՝ Ա. Էջմիածին որ արդ սուրբ Նշան ասի. զի 'ի տաճարի նորա առանձին խորանաւ պահին յերկաթի գզրոցի սուրբ նշանն Հռիփսիմեայ և Գեղարդեալ սուրբ Նշանն, մեծաւ եռանդեամբ պատուեալք յամենայն ժողովրդենէն, որք զօր ամենայն յաճախեն անդ, մանաւանդ յաւուր ուրբաթու, յորում սահմանեալ է անխափան պատարագ մատուցանել 'ի պատիւ սուրբ Նշանացն։ Առ եկեղեցեաւս է առաջնորդարանն. զի անդ նստի առաջնորդն և ոչ 'ի Վարագ, սակս յաճախ երթևեկութեանց դատից և վճռոց և որոշելոց իրաց ազգին՝ որք անդ աւարտին ժողովով իշխանաց։ Երկրորդն է Տիրամայր. Երրորդն սուրբ Պօղոս։ Չորրորդ սուրբ Պետրոս, որմակից սրբոյն Պօղոսի։ Հինգերորդ սուրբ Սահակ։ Վեցերորդ սուրբ Ստեփաննոս։ Եօթներորդ սուրբ Վարդան։ Ութերորդ Տիրամայր Աստուածածին։ Ի տաճարի սրբոյն Պետրոսի կրկին արձանագիրք են սեպաձև տառից. մին ագուցեալ կողմնակի առընթեր դրանն, և միւսն 'ի ճակատ աջակողմեան աւանդատանն. (որ է թիւ Ե.)

Տունք Հայոց յառաջագոյն թէպէտ և բազում, այլ արդ հազիւ հասանեն մինչև ցերկու հազար հանդերձ որ յեկեղեցեաւսն կան, զորոց զինի։ Ջուրք քաղաքին և այգեստանեացն եթէ աղբերաց և եթէ ջրհորոց կարի անախորժք և ծանր և ոչ բնաւ զովացուցիչ ծարաւեաց, չգիտեմ ուստի այնչափ գովեստիւ յիշատակեալ 'ի պատմութիւնս Նախնեաց. գուցէ ոչ անձամբ ճաշակեալ զփորձ արդեաց, կամ թէ երկարութեամբ ժամանակաց ծովուն մօտեցեալ 'ի քաղաքն՝ ընդերկրաւ խառնեալ 'ի ջուրս քաղաքին դառնացուցեալ անախորժս գործեաց։ Իցէ այդ որպէս և է, ես ընդ այն կարի զարմացեալ եմ զի որ 'ի ջուրցդ ըմպեն առ հասարակ ժողովուրդք քաղաքին, առոյգ են և անձնեայք և կարմրայտք, ուժեղք և ձայնեղք։ Իսկ քաղցրահամ ջուրք որ միանգամայն ախորժելի են եկին և բնակչին, քանզի և բնակքն ինքնին խոստովանին զանհամութիւն ջուրց քաղաքին իւրեանց, առ հասարակ 'ի կողմանս լերանց գտանին, 'ի Վարագ և այլուր, որ ըստ գետնաչափութեան բարձր են յոյժ քան զծովն, և նմին իրի անխառն 'ի նմանէ։ Այժըքլուք ևեթ չատացեալ տեղագրութեամբ քաղաքին, անցցուք 'ի վերին բերդն կամ 'ի քարալեառն՝ զոր յատուկ Շամիրամակերտն ասացաք, յորում՝ Մնացորդք դաստակերտացն են Շամիրամայ հիմնարկք։

Արդ քարալեառնս անձուկ լայնութեամբ՝ երկայնանիստ յարևմտից յարևելս իբրու ժամու միով՝ պատեալ է զքաղաքն, որպէս ասացաք, 'ի հիւսիսոյ կուսէ՝ երկու ծայրիւքն կցեալ ընդ պարսպի քաղաքին։ Երեսք լերինն որ հայի անընդմիջաբար 'ի վերայ քաղաքին և հանդէպ հարաւոյ՝ ուղղաձիգ ամբարձեալ 'ի վեր իբրև պարիսպ անմատոյց և առ հասարակ քարածայռ՝ ջերմացեալ 'ի տօթոյ արեգական տօթակիզէ զքաղաքն ողջոյն յամարայնի, որ զուրկ է ամենևին 'ի փչմանէ հիւսիսային հողմոյ։ Իսկ յետակողմն լերինն որ հայի 'ի հիւսիս՝ քարաժայռիւք և խճովք և հողով խառն՝ ուրեք անմատչելի մինչև ցվերին պարիսպն, և ուրեք ոչ այնպէս։ Ի միջավայր գագաթան քարալերինն, ուր ձարձրագոյն վայրն է քան զերկոց ծայրիցն որք առկաւ խոնարհեալ կցին ընդ պարսպի քաղաքին, է բուն ներքին բերդն՝ դրամբ յարևմտակողմանէն և շուրջանակի ատամն-

ձին պարագաւ ամրափակեալ ։ Անդ չորեալ կան թնդանօթք 'ի բացի, և ռումբք և այլ պատերազմական անօթք և զէնք 'ի յարկածածուկ ամրափակ տեղիս չի֊նեալս 'ի պէտս Նոցա ։ Ճանապարհ վերելից բերդին է առ 'ի Ներքս Իպէլէ—գա֊բուսիին, որ և տանի մինչև ցներքին դուռն և 'ի Ներքս՝ միշտ զառ 'ի վեր ելա֊նելով ։ Բնակարանք են 'ի բերդին վասն արքունի զօրաց, այլ քաղաքացւոյ և ոչ մի ։ Ամենայն պարիսպք քարալերինս ծայր 'ի ծայր շինեալք են յետ ժամանա֊կաց առ Պարսկօք կամ առ Տաճկօք որպէս յայտնի տեսանի, յորս չերևի բնաւ մեծագործութիւն. միայն 'ի միջավայրին որ բարձրագոյնն է՝ ուր թնդանօթքն կան, որպէս ասացաք, քարինք հիմանն հարուստ մի բարձրութեամբ մեծամեծք և ստուարք ոչ թերևս յետին ժամանակաց գործ են, սակայն և ոչ իսկ կար֊ծեմ Միացորդք 'ի Շամիրամայ ։ Այլ 'ի գործոց սորա զարմանալոյ արժանիք են Խորենացւոյ աւանդեալքն. « կառոյց և պէսպէս տաճարս, սեննակս օթից, տունս գանձուց և վիհս երկարս 'ի յարևգդէմ կողմն անդ քարանձաւին » ։ Այս սեննակք են թուով վեց փորեալ կռանաւ, երկու 'ի Նոցանէ յարևմտեան ծայրն և մի յարևելեանն և այլք 'ի միջավայրին ուր Ներքնաբերդն է, իւրաքանչիւր 'ի Նոցանէ ունելով և մէջ ընդ մէջ սեննակս ։ Մուտք Նոցա և Ներքին որմունքն չուրջանակի, և առաստաղքն ոմանց տափարակ և այլոց կամարաձև, անեղծ կան ցայսօր ։ Որ միանգամ տեսեալ է զվիմափոր սեննակս քարալերինն Ամասիոյ զշինեալսն 'ի Միհրդատայ, դիւրաւ իմանայ զսոցա մեծագործութիւն. և խտիր ընդ սոսա և ընդ Նոսա, զի Նոքա իւրաքանչիւր մի մի սեննկօք սահմանեալ և փոքր, այլ սոքա մեծատարածք և մէջ ընդ մէջ սեննկօք առաւելուն քան զՆո֊սա ։ Անապգելի գտեալ ջերմութեան արևուն ընդ թանձրութիւն քարաժայռին, դուռն մի և եթ ունելով դոցա իւրաքանչիւր, կարի ղովագին է 'ի Ներքս ա֊մարանի ։ Ի պատկերին յանդիման ցուցանի ձև և ճշգրիտ չափ երկուց 'ի Նոցա֊Նէ. յորոց առաջինն է յարևելից ծայր քարալերին, արտաքոյ քան զպարիսպ միջնաբերդին ։ Գաւիթ գործեալ է առաջի դրան Նորա մեծի փորեալ 'ի Նոյն լեռնէ. և իջանեն 'ի գաւիթ անդր միակտուր բազմաստիճան սանդղօք ։ Իսկ երկրորդն է յարևմտից կուսէ քարալերինն, յաջմէ ճանապարհին՝ որ 'ի միջնա֊բերդն տանի. զի և սա արտաքոյ կայ Նորա իբրև զառաջինն ։ Ի շրջապատ դրան Նորա արտաքոյ վերուստ 'ի վայր և երկուստեք յողորկեալ ապառաժին՝ սեպա֊ձև արձանագրութիւնք են անթիւք, բազում մասամբ եղծեալք 'ի բռնութենէ տարերաց. և զՄիացելոցն դժուարին է ումեք առնուլ զպատկեր, զի չիք գաւիթ առաջի Նորա առ աներկիւղ և անվտանգ 'ի բացէ կալոյ որում զննէլն զվերին կողմն, այլ սակաւ աստիճան միակտուր սանդուղք 'ի կողմանէ մինչև ցմուտս Նորա, որոյ առաջի անընդմիջաբար անդունդք են մինչև ցստորոտ լերին ։ Այսր քարանձաւի մուտք 'ի հարկէ չէր այդպէս վտանգաւոր զառաջինն, այլ գաւթիւ սահմանեալ. սակայն 'ի տարերաց բռնութենէ զերծեալ անկեալ են մասունք քարալերին, որով և գաւիթն անհետացեալ. և երևի ընդ ամենայն երկայնու֊թիւն լերինն՝ մեծամեծ հատորոց փրթուցեալ դիզեալ զստորով Նորա ։ Արդ֊վեցեակ մէջ ընդ մէջ սեննկօք սահմանեալ երկրորդի քարանձաւիս՝ յորմունս իւրաքանչիւր Նոցա այլևայլ քառակուսի խորշք են և ծակ 'ի մէջ Նոցա և 'ի շրը֊

Ջապատ ծակուցն փորեալ փոքր մի զերեսօք որմոյն քառակուսի ։ Զքարանձաւս զայս երկրորդ՝ բաղանիս Շամիրամայ կոչեն բնակիչք, համարեալ զծակսն ան.





Մետր ։ 1 2 3 4 5

ղիս ծորակաց ջուրցն, թէպէտ և մարդաչափ և աւելի ևս բարձր են 'ի գետնոյն:

Իններորդ դուռ է քարանձաւն երրորդ, և ճանապարհ նորա դարձեալ միակտուր քարեղէն սանդուղք, որ փորեալ է 'ի կողմանէ միւսոյ սանդղոցն ցածագոյն քան զնա և առաւել վտանգաւոր. քանզի յաջմէ նորա չիք բաւական միջոց ապահով լինելոյ իջանողին անդր:

Իսկ միւս երեքին 'ի քարանձաւաց 'ի միջնաբերդին են, և նախ չորրորդն, և առաջի նորա գաւիթ ընդարձակ, և ինքն հինգ սեննիկօք սահմանեալ, յորոց 'ի միումն էր գմբեթաձև աղիւսակերտ շինուած մի. բնակչաց համարեալ զայն իբրև պահարան գանձուց և զի չիշխէ ոք մօտել առ նա, մի 'ի փաշայից քաղաքին սակաւ ամօք յառաջ յոչինչ գրեալ զկասկածն՝ և քակեալ զշինուածն՝ գտանէ թաղեալ 'ի գետնի սափորիւ միով ոսկերոտի:

Հինգերորդն է առընթեր չորրորդին 'ի կողաց նորա, և 'ի նմա սեննակք եօթն:

Վեցերորդն է ընդ գաւթիւ չորրորդին և մուտ նորա ոչ ամենեցուն համարձակելի, զի չուանաւ պարտ է իջանել 'ի վերուստ առաջի դրանն, և չիք այլ ճանապարհ, զի և սատի զերծեալ է մասանց լերինն և անկեալ:

Բաց 'ի վեցից քարանձաւացդ՝ է և ջրհոր մեծ 'ի 'ի հարաւոյ կողմն քարալերինն, նոյնպէս մնացորդ 'ի նախնեաց:

Սեպաձև արձանագրութիւնք 'ի քարալերինս բաց 'ի շրջապատէ դրան երկրորդի քարանձաւին զորմէ ասացաք 'ի վերոյ, են և այլ 'ի չորս և 'ի հինգ տեղիս նորա: Առաջինն 'ի հարաւակողմն կամ յերես նորա, ակներև երևեալ 'ի քաղաքէն, գրեթէ 'ի միջավայր անդ լերինն, ուր ոչ հասանէ ձեռն մարդոյ առ մեծի բարձրութեանն, չունելով և կռուան ուրեք ոչ 'ի վերուստ և ոչ 'ի կողմանէ, ընդ որ հիանայ ամենայն մարդ. զի կամ մեքենայիւք մօտեալ 'ի տեղւոջն փորագրեալ են, և կամ կռուանք էին վերելից և ժամանակաւ զերծեալ՝ անհետոյց գործեցին զվայրն: Արդ յայնմ տեղւոջ որ է իբրև սիրտ քարալերինն, ողորկեալ կռանաւ քառակուսի՝ փորագրեալ է արձանագիրդ (Զ) սեպաձև խոշորատառ, անեղծ կացեալ մինչև ցայսօր, այլ դիտակաւ ևեթ որոշելի: Երկրորդն և երրորդն 'ի հարաւակողմն լերին առընթեր իրերաց՝ ցածագոյն և մերձ գետնոյ. առ անպիտանութեան մասանց քարին կիսեղծ 'ի բնութենէ, և կէս մի խարտակեալ 'ի ձեռաց մարդոյ: Չորրորդն է մերձ Դէվրիգ–գաբուսին նոյնպէս ցած երկայնաձիգ քառակուսեաւ, որ և սա եղծեալ է: Իսկ հինգերորդն է 'ի մէջ միոյ 'ի կառատանցն, որ են առ 'ի կողաց նոյն հիւսիսակողման լերինն. և են կառատունքդ, քանզի այսպէս կոչեն զնոսա բնակիչք, զոյգ որմակից իրերաց, փոքրատարածք կամարաձևք, իբրև զեկեղեցւոյ խորանս կռանահարք 'ի քարալերին: Եւ թուի հաւաստեաւ կոչեցեալ այսպէս, զի և զառաջեաւ նոցա վերուստ 'ի վայր 'ի քարալերինն երևի մինչև ցայսօր ագուգայ կռանահարեալ, զոր ընթացս արեան զենմանցն ասեն լինել: Արդ յաջակողմեան կառատանդ 'ի վերայ կողմնակի որմոյն վերուստ 'ի վայր անեղծ կայ մինչև ցայսօր արձանագիրն մեծ:

Շամիրամակերտին տեղագրութեամբ շատացեալ, մի անյիշատակ մնացեն

'ի մեծի բարձրութեան անդ բարեխառն օդոյ փչմունք։ Յամառայնի մինչդեռ տօթակիզեալ բոլորդի քաղաքն ամենայն, և չնչաապատ տապնապի ամենայն ոք, անդ 'ի բարձու միայն ողի առեալ զուարթանայ. եթէ օրէն էր ամենայն ումեք համարձակ երանել անդր համառօտ. թէպէտ իմն չարակամալ անդէն փչմանն քաղցրաւետ օդոյ վասն բարձրութեանն, և զի անտառաբեր է յամենայն կուսէ. Թող զառատ նորա աղբիւրի, սառն ծորուն ծածանումն և անթիւ այգեստանեաց սաղարթաշուք փարթամութիւն, և 'ի թթենեաց և յուռենեաց դաշտավայրք, գիւղօրէք, բարձունք և վանորայք. Համառօտ ասել տեղի ամենայն մշտայ փափաքելի։ Ինչուշտ վասն այսր տեղւոյ են առ 'ի Խորենացւոյ ասացեալ գովեստք զանտառ-ժանկացն Շամիրամայ ասաէն անցուցանելոյ զամառնայինն ժամանակ։

Եգեաւռաւն. — Այգեստանք վանաց անուանեալք են ընդ ամենայն Հայաստան աշխ մեծի ընդարձակութեան, և բերքի պտղաբերութեան իւրեանց։ Իսկ են գոքա յարևելակողմն քաղաքին զատուցեալ 'ի պարսպէն. մերձաւորն կէս ժամաւ հեռի 'ի նմանէ, և առաւել բացականն երկու ժամաւ։ Այլ և այլ գիւղօրէք են աստ, կամ լաւ ևս ամառանոցք, կոչեցեալ Հայկավանք, Արարք, Նորաշէն, Ցանկոտանք, և այլք, եկեղեցիս ունելով իւրաքանչիւր, և տունս մեծամեծս և վայելուչս։ Բազումք 'ի քաղաքացւոց յայգեստանս բնակեն և զօր ամենայն իջանեն 'ի շուկայս քաղաքին, ուր նոցա կրպակքն են, թէպէտ և երկժամու հեռի իցէ. և բազումք իշով երթևեկեն 'ի քաղաքն։ Առդ իւրաքանչիւր յայգեստանացս զատուցեալ են յերերաց ցածապատ որմովք յանթուրծ աղիւսոյ կամ 'ի տիղմ շաղախոյ որ յանձրևէ 'ի վաւն և երկարաւէ, որպէս ասեն։ Բազմատեսակք են պտուղք այգեստանեաց, խաղող և խնձոր և տանձ և սալոր և կեռաս և ծիրանի և ընկոյզ, և առաւել քան զամենայն ծիրան. այլ թուզ և լիմոն և նարինջ ոչ բնաւ։ Առատութիւն է և ջուրց յայգեստանս ընդերկրեայ ջրանցիւք, զոր քահրէզ կոչեն։

Ի կողմն այգեստանացդ է Ակրբի կոչեցեալ գիւղ. և քառորդաւ հեռի 'ի նմանէ դարձեալ յիշատակ 'ի հնութեանցն Շամիրամայ. զերեսք ապառաժ լերին կռանաւ իբրև խորան գործեալ, 'ի միջավայրին մեծապարած երկայն քառակուսի դռնակ, և 'ի վերայ նորա նշանագրութիւն մերուստ 'ի վայր, թէպէտ մեծաւ մասամբ եղծեալ. զառաջեաւ նորա նստարանք և առաջնան սանդղոց առ համարձակ միակտուր 'ի քարաժայռէն։

Ի քաղաքին վանայ թէպէտ բազում խրամ առատութիւն է, այլ ոչ նոյնպէս և փայտի, որ և կարի թանկագին վաճառի. քանզի և մօտ առ նմա չգտանի անտառ, այլ 'ի լեռնակողմանս հարաւային ծովեզերին. նմին իրի բազումք 'ի քաղաքին աթար վառեն փոխանակ փայտի։

Աւան. — Կիսաժամու հեռի 'ի քաղաքէն առ ծովեզերբն է գիւղս այս, և է նաւահանգիստ քաղաքին, զի անդ մերձենան ամենայն նաւք բեռամբ։ Այգիք բազում են և առ մեծամեծք ըստ օրինակի այգեստանեաց քաղաքին զորոց ասացաք 'ի վերոյ։

Լէզք. — Վերոյ քան զԱւանս է գիւղս փոքրիկ. զորմէ ասի յումանց տեղի լինել անկման Արայի 'ի Շամիրամայ, որոյ զոմն 'ի հնմանեացն զԱրայ կարծեցու-

ցեալ՝ լուր եհան եթէ դիք լիզեալ ողջացուցեալ են . և յայնմանէ, ասեն, մնաց անուն գեղջն Լեզք:

Անդր քան զԱւանս ժամու միով առ ծովեզրն տեղիք են բորակի. զի ածուս գործեալ և 'ի ջուրց ծովուն թողեալ 'ի նոսա և ցամաքեալ, լինի բորակ առատ:

Մարմէտ. — Գիւղ երկու ժամաւ հեռի 'ի Վանայ առ ծովեզերբն. յորում թէ-պէտ և նշանաւոր ինչ չգտանի, այլ անուանի է սակս առատ որսորդութեան տառեխ ձկանն. զի առ նովաւ անցանէ գետն համանուն, որ ընդ ժամանակս ժամանակս աճեալ ծովանայ անդանօր:

Ի Մարմետայ մինչև ցԿտուց կղզի սակաւ են գիւղորէք 'ի ծովեզրին. այլ վերոյ քան զնա բազումք 'ի լանջակողմն և 'ի ստորոտս բարձանց 'ի դուր վայրի, դիրս քաղցրահայեացս ունելով իւրաքանչիւր. յորոց մի է և Ալուր գիւղ, յորում և վանք Աստուածածնի անշուք, արտաքոյս մեծամեծս ունելով և պար-տէզս պտղատու ծառոց: Ի գագաթն լերինն որ 'ի թիկանց նորա կանգուն կան ցայսօր որմունք եկեղեցւոյ, զորմէ ասեն մենաստան լինել 'ի հնումն: Աւանդեն վասն անուանակոչութեան գեղջս, եթէ Թադէի առաքելոյ եկեալ աստ և հա-ճեցեալ ընդ զուարճալի դիրս տեղւոյն՝ ասացեալ իցէ, Այլ ուր երթամք. և յայնմանէ մնայ անուն գեղջն Այլուր, և 'ի ռամկէն կոչի Ալուր. որ և հանդերձ շրջակայ գիւղորէիւք անկանի հանդէպ կղզւոյն Կտուցայ:

Մեկնեալ 'ի գիւղորէից այտի և ընդ ծովեզրն ուղևորեալ ժամս երիս՝ յա-րևելս հիւսիսոյ, քանզի 'ի Կտուցայ սկսեալ յայն կողմն երկայնեալ ձգի ահա-գին խորշ ծովուն, առաջին հանդիպի գիւղն Էջմիածին, յանուանէ մենաստա-նին որ 'ի վերոյ նորա է՝ այսպէս կոչեցեալ, որ արդ անբնակ է: Եւ է Էջմիածին հանդերձ ամենայն արտորէիւքն սեփական Լմայ կղզւոյն՝ իբրև ագարակ նորա:

Երեք քառորդաւ հեռի յԷջմիածնէ կայ գիւղն Երերին, և 'ի վերոյ նորա ան-բնակ փոքրիկ մենաստանն Ս. Յահակ կոչեցեալ:

ԱՄԻԿ. — Երևելի էր և անուանի առ նախնեօք սակս իւրոյ ամրոցին, և սե-փական Արծրունեաց: Այլ 'ի նախնի շինուածոցն և ամրութեանց Գագկայ և որ նախ քան զնա՝ չէ ինչ մնացեալ արդ. բայց միայն լոկ ապառաժն ահագին և դը-ժուարամատոյց և առ նովաւ գիւղն 'ի ձորամիջի և 'ի խորշս բարձանց: Ամրոցն էր 'ի գագաթն ապառաժից, որ սեպացեալ ամբարձեալ է ուղղաձիգ 'ի վեր, և չիք նորա պարիսպ, և է փոքրատարած: Իսկ նախնի շինուածք թուի եթէ յամ-րոցէն 'ի ծովեզրն կոյս էին. այլ արդ ծովուն առեալ զամենայն հասանէ մինչև ցստորոտ քարաժայռից, ճանապարհ անձուկ ունելով նորա իբրև կապան առ ծովեզերբքն 'ի բարձու: Ի գեղջէն Ամկոյ մինչև ցփակահ կամ ցծովեզերբեայ տունն Լմայ՝ տևէ ժամս երկուս:

Առ Ճանիկ գիւղիւ՝ կիսաժամաւ հեռի 'ի նմանէ է հանք ջրաղի:

Տիրամայր. — Հեռի է 'ի տանէն Լմայ իբրու երեք ժամաւ, և է ուխտատեղի անուանի յոյժ, մինչև 'ի հեռաւոր աշխարհաց յաճախել բազմութեան: Ցառա-ջագոյն մենաստան էր, այլ եկեղեցին եւեթ մնացեալ է տաճարաւն, յորում և գերեզման, ամփոփեալ ունելով յինքեան զլաչակ կամ զգլխապատ Տիրամօրն բերեալ ձեռամբ Թադէի առաքելոյ: Դիրք նորա հանդերձ առընթեր գիւղին

բարձրահայեաց և զուարճալի: Զընթայս ուխտաւորացն անխիղճ վարեն 'ի պէտս իւրեանց գիւղականքն, այսպէս սահմանեալ 'ի միջի իւրեանց, օրինաք արդեօք թէ բռնութեամբ և յորոց ժամանակաց հետէ՝ չունիմ ասել: Ամենայն խեղանդամք և կոյրք և որ անբժշկելի վէրօք են ցեալ՝ գան 'ի գիւղս յայս գտանել բժշկութիւն, և կեան յողորմութենէ ուխտաւորաց: Զվիրալիցսն զայնպիսիս սովոր են կոչել՝ Տիրամէր կամ Տիրամօր հարած կամ առած: Նուիրակք ուխտատեղւոյս համարին նոքին խեղանդամքն, որք ընկերակցութեամբ առն քաջողջի հրամանաւ գիւղականացն ելանեն յայլ և այլ գաւառս 'ի հաւաքել զողորմութիւն յանուն ուխտին. և դարձեալ 'ի գիւղն յինքեանս բաժանեն զայն գիւղականքն: Նուիրակքդ 'ի շրջագայելն եթէ առ ումեք տեսցեն յեղանց կամ 'ի կովուց խայտախարիւս, որպէս ինչ սահմանեալ են յինքեանս, ազդ առնեն տեառն իւրում թէ այդ անասուն Տիրամօր է սեփական, զի նշան նորա յայտնի երևի 'ի դա. և տէրն երկուցեալ 'ի խղճէ միոյ և կամ յանիծից նոցա՝ տայ ցնոսա անհակառակ. զի և ամենայն ուրեք ուր և սովոր են շրջագայել նոքա՝ ծանօթ են բնակչաց իրքս այս:

ԲԵՐԿՐՈՑ ԴԱՇՏ. — Ի Տիրամայր գեղջէ ժամու և կիսով հեռաւորութեամբ լինի մտանել 'ի դաշտն Բերկրոյ, Առբերանի գաւառ ասացեալն 'ի նախնեաց. և ծավերքն նորա է վերջին սահման երկայնաձիգ խորշի ծովուն Վանայ: Բերկրոյ դաշտ կոչի յանուանէ Բերկրի գեղջն, որ 'ի հնումն էր մի 'ի քաղաքացն Արծրունեաց, և արդ մի յանշուք գիւղօրէիցն է ինքն, և հանդէպ նորա բերդն 'ի բարձր բլրի կործանեալ և իսպառ ամայի:

Ի Բերկրոյ դաշտիդ մի 'ի հնգից գիւղօրէիցն որ առ հասարակ 'ի ստորոտս շրջապատ լերանցն կան, երևելի է բազմամարդութեամբ Գործոտ կոչեցեալ, և հանդէպ նորա քառորդաւ հեռի 'ի նմանէ 'ի բարձր բլրակի ամայի բերդն կործանեալ, ոչ աննշան ձեռին դաստակերտ, որպէս 'ի ստուար քարանցն յայտնի երևի: Բերկրոյ դաշտս արգասաւոր է և առ հասարակ մշակեալ:

Տէր Յուսկան որդի. — Առ Բերկրաւ յայնկոյս գետոյն, որ և կոչի Գաւառուռանի գետ, որ 'ի ձորամիջոյն եկեալ հոսի 'ի ծովն, 'ի բարձր քարալերին որ յաջմէ դաշտին է՝ յահագնատեսիլ փապարս քարաժայռին մեծի շինեալ է մենաստանս յանուն սրբոյն Ստեփաննոսի որդւոյ տեառն Յուսկան, որ էր յԱրտամետոյ, որպէս պատմեն Յայսմաւուրք: Բարձրահայեաց ղիրք մենաստանիս 'ի վերայ դաշտին Բերկրոյ գեղատեսիլ է յոյժ. որ եթէ և յընդարձակ վայրի էր բարձրութեամբն և 'ի դիւրան տեղւոջ և վերելք նորա դիւրին, քան զբազումս 'ի վանօրէից ցանկալի էր, եթէ և քարաժայռք նորա 'ի բարձանց ցցեալ ուղիղ 'ի վերայ մենաստանին ոչ ահաբեկէին զոք. թէպէտ ըստ վկայելոյ միաբանից՝ աւանդութեամբ հասեալ է առ նոսա, 'ի շինութենէ և այսր ոչ մի վտանգ եղեալ կամ զերծեալ մասանց քարաժայռին: Յեկեղեցւոջ է գերեզման նորին սրբոյն Ստեփաննոսի պատուեալ մեծապէս յուխտաւորաց: Ի վերայ նոյն լերին որ առ հասարակ դաշտավայր է, գոյ և այլ վանք Արգելեան Աստուածածին կոչեցեալ, որ արդ կործանեալ է, եկեղեցին եւեթ կայ ամայի: Նախ աստ բնակէր սուրբն յորժամ շէն էր մենաստանն. և 'ի քահանայանալն աստ մատոյց զառաջին պա-

տարագն, որ և վերջին համարի. զի և ցայսօր բնակիչք կողմանցն յերդմունս իւրեանց վարեն՝ Տէր Յուսկան որդուն մէկ Պատարագ վկայ։ Քանզի տեսիլ ահեղ երևեալ նորա 'ի պատարագին, որպէս դրեալ կայ 'ի վարս նորա, ոչ ևս իշխեաց մերձենալ 'ի խորհուրդն ահաւոր, այլ ահիւ և դողութեամբ կրօնաւորեալ 'ի վանսն եկաց մինչև ցմահ իւր։

Ի վանաց աստի իջեալ և շրջան առեալ ընդ հիւսիսակողմն ծովուն՝ նշանաւոր ինչ չերևի ուրեք մինչև ցգիւղն Հայտար-պէկ, ընդ որ անցեալ փոքր մի և մերձեցեալ 'ի դաշտն Արճիշոյ, 'ի վերայ ճանապարհին յերկուս տեղիս առընթեր միմեանց 'ի վերայ քարալերին փորագրեալ կան դարձեալ սեպաձև արձանագրութիւնք. այլ աստի յառաջ ոչ ևս ուրեք տեսանին։

ԱՐՃԷՇ. — Աւանացեալն երբեմն՝ արդ սակաւաթիւ գիւղօրէիւք սահմանի 'ի մեծի դաշտավայրին, որ Քաջբերունեաց գաւառն էր, մշակեալ և բերրի մինչև ցայսօր։ Բերդ նորա առ ծովեզերբն՝ արդ 'ի մէջ ծովուն կղզիացեալ նստի. զի ջուրն առեալ և ողողեալ զնա ընթանայ 'ի դաշտն կոյս հարուստ տարածութեամբ, վասն որոյ և բնակիչք բերդին փախուցեալ ցրուեցան 'ի գիւղօրէս դաշտին։

Մեծոփայ վանք. — Ի հիւսիսակողմն դաշտին Արճիշոյ՝ ուր սահման հատանեն նմա բարձունքն, 'ի ձորամէջս լերանց յանձուկ տեղւոջ կառուցեալ է մենաստանս Աստուածածնի։ Մեծոփ կոչեցաւ զի վերոյ մենաստանին ոփ մեծ՝ որ է փոս՝ 'ի նախնեաց պարսպապատ շինեալ է վասն ջուրց հաւաքման։ Շինուած մենաստանին ըստ օրինակի այլոց՝ անշուք մթին և խրթին, եկեղեցեան ևեթ թերևս անուանի գտաւ 'ի նախնեաց և այսր, ժամատամբ և տաճարաւ բովանդակեալ և գմբեթաշէն։ Ի կամարս եկեղեցւոյն են գաղտնի դարանք. 'ի նոսա թերևս ամբարեալ կային գրչագիրքն՝ զորոց գրեալ կայ 'ի կոնդակի վանացն և ցայսօր իսկ գովութեամբ հռչակի 'ի ռամկէն։ Քանզի Լէնկթիմուրայ, ասեն, բազում մենաստանս կործանեալ և կողոպտեալ՝ իբրև մերձեցաւ 'ի սա՝ կոչեաց առ ինքն զվանահայր ուխտին զայրն ճգնազգեաց և առաքինի, թերևս զի գանձս առեալ 'ի նմանէ մեկնեսցի 'ի տեղւոջէն։ Իբրև եկն առ նա վանահայրն միայնակ, տեսիլ այնպէս երևեցաւ բռնաւորին եթէ բիւրաւորք 'ի զօրաց շուրջ պատեալ են զնովաւ, եհարց ցնա թէ առ իմէ իցեն զօրքդ ընդ քեզ, ո՞չ ապաքէն միայնակ գալ հրամայեցի քեզ։ Իսկ առաքինի այրն՝ քանզի չտեսանէր զոք ընդ իւր, շփոթեալ յայսկոյս յայնկոյս հայէր թէ զորո՞ց արդեօք զօրաց ասիցէ։ Իմացեալ բռնաւորին եթէ ձեռն Տեառն է ընդ նմա, խաղաղութեամբ արձակեաց զնա՝ անվնաս թողեալ զվանսն. և զի որդի նորա հիւանդութեամբ մերձեալ 'ի դրունս մահու՝ բժշկեցաւ յաղօթից նորա, հրաշացեալ մեծապէս՝ 'ի յիշատակ սքանչելեացն պարգևէ մենաստանին զգրչեայ մատեանս զորս կողոպտեալ էր յայլոց վանաց՝ բեռինս 65, յորոց արդ երկու հատորք մնացեալ են, Ճառընտիր մի և Սարգիս։ Քանզի յետ բազում ժամանակաց 'ի զօրանալ Քրդաց՝ ամս բազումս ամայի մնացեալ մենաստանին կողոպտեցաւ յամենայն զարդուց և յամենայն ցանկալեաց։ Ի գերեզմանատան՝ որ է հանդէպ վանաց 'ի կողաց լերին, երևին մինչև ցայսօր արձանագրեալ գերեզմանք Թովմայի Մեծոփեցւոյ, Պօղոսի

եպիսկոպոսի եղբօր նորա, Մխիթարայ Դասունեցւոյ և Սուքիասեաննոսի նահատակին: Երկին մատուռնք են արտաքոյ խորանին յարևելից կուսէ որմակիցք նմին. մին յանուն սրբոյն Յակոբայ եղբօր Տեառն, և 'ի միւսումն է գերեզման Աստուածատուր վարդապետի առն նշանաւորի՝ որ Մեռելյարոյց կոչի:

Ի հարաւոյ կուսէ Մեծոփայ ձգին լերինք անվրպետք՝ դաշտին Արճիշոյ, ընդ որ հարկ է անցանել ուղևորին որ երթայ 'ի Մեծոփ: Ի ստորոտ նոցին կայ Յարուցբիւն գիւղ, ուրոյ հանդէպ 'ի բլրի մատուռն, և 'ի նմա գերեզման Յովհաննու Ոսպնակերի, այսու արձանագրաւ.

այս է յարկ տապանի յովհաննէս վարդապետի. 'ի թու. ՉՀԶ:

Իսկ յեկեղեցւոյ Յարութիւն գեղջ կայ միայ արձանագիրս այս.

'Ի ժամանակս տէրութե՟ ուլաուն ղանին ես ծառայ ծառայից ա՟յ տէր աբրահամ տեսուչ գաւառիս քաջբերունս. տվաւ ինձ տեղիս այս ա՟է սարին սահմադին կոչեցել. և շինեցի զեկեղեցիքս նախ զս՟բ ա՟ծածինս: իսկ 'ի թագաւորութե՟ս արղուն ղանին 'ի հայրապետութե՟ն տ՟ն ստեփի զս՟բ յարութի՟ս 'ի կորդոյ շինեցի: եւ զամենայն շինուածս նորոգեցի: արդ. աղաչեմ զամենեսեան յիշեսջիք 'ի ք՟ս զպարոն սահմադին նախն իւր եւ հարազատաւք եւ զխոգեւոր հայրն իմ զմելէք ստեփանոս եւ զքեռայրն իմ զխաչիկն: քերբն իմով: եւ զաւակաց իւրեանց. զի բազում նպաստ եղեն տեղոյս շինութե՟: եւ զծնողսն իմ: եւ զեղբարս իմ եւ զազգատոհմսն իմ յիշեսջիք 'ի տ՟ր: եւս եւ զաւանդատուքս եկեղեցւոյս: զպարոն սահմադինն: տանուտէրաւքն ապխնկայ զի սեփական աւանդսն որ կարգեալ էր յառաջնոցն նախ քան զաւերն 'ի խորազմէն: դարձեալ հաստատեցին տեղոյս: 'ի մարգէն: ծ: բարդի տեղ: եւ: է: արտ մին: ժե: մոլթոյ տեղի եւ միուսն ժ: եւ 'ի սեւակն: ի: բարդ խոտեղի եւ զջրաքն վերհաւնից յամէն է շաբաթ զտիւ եւ զգիշեր եւ ես պարոն սահմադին զգեղն մեծոփ իւր մզրայիւքն եւ խարհանիւք եւ քրդագեղերոմն ես մէլիք ստեփա տանուտէրաւքն աղոյի խոտէն: ի: բարդի տեղ: եւ լվարերի տանուտերքն: ի: բարդի

տեղ եւ խաչիկն զայգին 'ի գողխան : Է : տակ եւս աւտարշախն եւ մեծարն զիւրեանց այգին 'ի գողխան : Ը : տակ եւս պարոն փռանգն արտ մին 'ի քաղաքն : Ե : մոթոյ տեղ գնեցի արտ մին եւ ոչ հեռի յայն արտէն : Ժ : մոթո տեղ եւ տղի եկեղեցւոյս և տղին 'ի քաղաքն տներ եւ : Ը : կուղպակ եւ սոքա են աւանդ եկեղեցւոյս աւանդատուքն յիշեալ եւ աւրհնեալ լիցին 'ի տէ : եւ պակասեցուցանողքն պակասին : 'ի թւոյ արդարոցն ամէն : եղեցի եւ շինեցաւ սբ յարութիս 'ի թւին : ՋԽ : 'ի փառս քի :

Ի մեծի դաշտի անդ Արճիշոյ է և Ականց գիւղ, յորում է եկեղեցի սրբոյն Գէորգայ պատուեալ յուխտաւորաց։

Մառաղավանք, յարեւմտից Արճիշոյ, յեզր ծովուն, մենաստան աւերակ և օձուտ. եկեղեցին գեղեցկաշէն կանգուն կայ, բայց ոչ աներկեւան յալեացն յարձակմանէ, որ և զսա կլանել հանդերձեալ են։

Ցարեւմտակողմն դաշտին Արճիշոյ արտաքոյ Նորին կան անշուք մենաստանքն Կճաւառորի վանք, և Արջօնից վանք, ընդ մէջ Մեծոփայ և Սիփան լերին։ իսկ 'ի ստորոտս սորա 'ի հարաւոյ կուսէ փոքր մենաստանն Նարկայ վանք. Ընդ մէջ սորա և Արծկէոյ՝ հռչակաւոր մենաստանն Երաշխաւոր կոչեցեալ 'ի հնումն և արդ Սքանչելագործ, 'ի վերայ բարձրաւանդակ լերին զուարճալի դիրիւք և ուխտատեղի մեծահամբաւ, ուկս Նշխարաց ինչ 'ի սուրբ տաշտէն՝ յորում Քրիստոս լուացեալ է 'ի մանկութեանն։ Զայս սուրբ Նշխար շրջեցուցանեն ընդ երկիրն համօրէն 'ի ժամանակս մահաբեր և փոխադրական հիւանդութեանց։ — կայ և այլ Ուեր վանք յելից Արճիշոյ ժամաւ հեռի, որոյ կանգուն կայ և եկեղեցին շինեալ 'ի ՊՂԱ թուին (1441), որպէս և արձանագրեալ է։

Սիփան. — Բարձրագոյնն քան զամենայն լերինս որ 'ի շրջապատ ծովուն Վանայ, և լայնանիստ զետեղեալ 'ի դաշտավայրի. չեն նորա գօտիք այլ ինքն միայնակ ամբարձեալ սրածայր գագաթամբ աւարտի, յորմէ անպակաս է ձիւն զամն ողջոյն. մարթի ելանել 'ի գագաթն նորա, թէպէտ և կարի դժուարութեամբ։ Առ մեծի բարձրութեանն երեւելի լեալ յամենայն կողմանց երկրին, տեսանի գագաթն նորա և յերկրէն Տարօնոյ։ Անկանի սա ընդ մէջ Արճիշոյ և Խլաթայ։ Մասեաց անուամբ յիշեն զսա Նախնիք։

ԱՐՃԷՇ. — Աւան պարսպապատ 'ի սահմանս տանց բնակեալ։ Կրկին դրունք են բերդին ելից և մտից յարեւմուտս և յարեւելս. վերնաբերդն հանդէպ ծովեզերին 'ի կատար մեծի քարալերինն, որոյ երկուստեք պարիսպք բերդին իջեալ հասանեն մինչև ցծովեզրն. այլ պարիսպ ծովեզերին խաղաղ կործանեալ յալեաց ծովուն. հարուստ տարածութեամբ մտեալ է ծովն 'ի ներքս բերդին և լճացեալ. քանզի դիրք բերդին 'ի դարանի կայ. նմին իրի և տունք որ 'ի ներքս 'ի

բերդին՝ մեծաւ մասամբ խախտեալ կիսափուլք են, և որք կանն ամենևին անշուք իբրև զբնակարանս գիւղորէից. առ բերդաւն կան կրպակք սակաւք որպէս շուկայ աւանին, այլ վաճառք նոցին չհասանեն և ոչ միոյ 'ի կրպակաց քաղաքաց։ Ի բնութենէ ծովու անշուշտ առիպեալ բնակչաց՝ հետզհետէ դատարկացաւ և դատարկանայ աւանս, ապա թէ ոչ չէ նուազ քան զերկերն Խլաթայ պտղաբեր և սա առատութեամբ ցորենոյ և պտղոց, յորոց անբաւութիւն է ծիրանեաց, զի են և նորա պարտէզք պտղատու ծառոց գեղեցկադիրք մեծատարածք և բազում յոյժ, և բազմաջուր, որ 'ի բազում առաջս առուաց բաժանեալ լիով ոռոգանեն զնոսա, սակայն որպէս զծովեզերեայ կողման բերդին, նոյնպէս և արտաքոյ նորին ծովեզերեայ կողմն պարտիզաց առեալ 'ի ծովէն լճացեալ է և եղեգնուտ անգնալի, և 'ի թանձրացելոց ջրոցդ կարծեմ և օդ երկրին ապականեալ։

Ցարևմտից Արծկէոյ ամբառնայ Գըզդաղ հրուանդան մեծ, լեառն բարձր և երկայնանիստ 'ի ցամաքն կոյս, որ ապառաժացեալ 'ի ծայրին տարածի 'ի ծովուն. ճանապարհ լայն բացեալ է 'ի քարաժայռի մօտ 'ի ծովափն վասն անցաւորաց։ Այս լեառն է սահման ընդ մէջ Խլաթայ և Արծկէոյ, և այսր անդր կերպարանափոխ լինի ամենայն ինչ, օդ և ջուր և ճանապարհ և քարինք. աղբերքն՝ բաց 'ի լեռնային վայրաց, անհամ են և ծանր և կրախառն, քանզի և քարինք երկրին սպիտակագոյն են և փուխր իբրև զկիր. և 'ի մէջ Արծկէոյ 'ի բազում տեղիս՝ ընդ որ հոսին ջուրքն՝ քարային մասամբք պատեն զտաշտ առուաց իւրեանց։ — Ի լեռնէ աստի մինչև 'ի Խլաթ չորից ժամուց ճանապարհ է գեղեցկատեսիլ։

ԽԼԱԹ. — Մի 'ի քաղաքաց անտի համարի սա՝ որ ընդ բազում փոփոխութեամբ անցին յայլ և այլ բռնաւորաց նախանձաբեկ եղելոց անշուշտ ընդ պքանչելի տեսիլ դրից նորա և ընդ պարտիզացն պտղաւորութիւն, թէ արդեօք և ընդ վեհմութիւն շինուածոցն, որք չկան այսօր 'ի միջի։ Քաղաքատեղին Խլաթայ հանդերձ երկուստեք մեծամեծ պարտիզօքն, յարևմտից սկսեալ 'ի Կարմունջ գեղջէ և յարևելից ըստ նմին համեմատութեան և 'ի հիւսիսի՝ երկիր դաշտավայր է, ոչ ցածագոյն իբրև զծովափունս այլոց վայրաց 'ի վտանգի ծածկելոյ 'ի ծովէ, այլ բարձրադիր իբրև լեռնադաշտակ մի հարուստ տարածութեամբ յերից կողմանց, լերինս ցածունս ունելով 'ի թիկանց յետ աւարտելոյ դաշտավայրին։ Զնախնի պայծառութիւն քաղաքին չունիմ ստորագրել, զի և 'ի նախնեաց ոչինչ աւանդութեամբ եհաս առ մեզ, և յաւերակաց ոչ ինչ այնպէս հաւաստեաւ, զի իսպառ կործանեալ կան. և արդ այլ և այլ թաղից անուամբ յիշատակի Խլաթ, որպէս Գըրգլար, Միւշէյմանե թաղ, Խարապա-շէհիր, Իքի-ղուպպէ, և որ այլ ևս. իսկ բուն քաղաքատեղին է երրորդն յասացելոցդ. և է ձորամէջ՝ գետոյ քաղցրահամ ջուրց ընդ մէջ անցանելով։ Ի ձորամիջի անդ 'ի կողմանէ է ապառաժ բլուր տափարակ, ուր երևին ցարդ մնացորդք յոյժ սակաւք նախնի բերդին։ Իսկ շուրջ զնովաւ յայլ և այլ կողմանց քարանձաւս յօրինեալ է այլ և այլ ձևովք, մեծամեծք և ահաւորք, ոմն կամարաձև ոմն տափականձև և այլ ոմն բոլորշի, և խորշք գործեալք զորմովք. և այդ մեծաւ մասամբ

ընդ բերդաւն, այլ կան և 'ի հանդիպակաց կողմն ձորոյն, ուր ապառաժուտ
հանդիպեալ է վայրն։ Եւ չէ յայտ թէ առ ինչ շինեալ իցեն քարանձաւքդ այ-
դքիկ անհնարին աշխատութեամբ՝ զի չէ արժան ասել զնոսա մարդկս և դար-
մանոցս անասնոց, որպէս այսօր. քանզի արդ 'ի սակաւաթիւ տանց բնակեալ
թաղդ ոչ ինչ ընդհատ 'ի շինականաց վարէ կեանս, զի և տունք և ձևք նոցա և
ամենայն ինչ ըստ շինականաց է։ Մի 'ի նախնի շինուածոց համարի և աւերակ
փոքր բաղանեաց որ և երևի ցարդ։ Սակայն նշան քրիստոնէութեան կամ աւե-
րակ ինչ եկեղեցւոյ չերևի բնաւ 'ի նախնեաց մնացորդ. զի 'ի տիրապետել Տաճ-
կաց անհետացան 'ի սպառ 'ի միջոյ և փոխանակ նոցա մզկիթք և չիրիմք մահմե-
տականաց յաճախեցին, որոց պահապանք խնկածուք յողորմութենէ այցե-
լուաց՝ հայթայթեն զպէտսն։ Եւ են դոքա առ հասարակ թիւրպէք մեծամեծք
այլ և այլ ձևովք, ոմանց բոլորշի և ոմանց բազմանկիւնի ուղղաբերձ ամբարձեալ,
և որածայր գմբէթիւ աւարտեալ, ոմն պատուհանս լայնաբացս ունելով շուրջանա-
կի մարդաչափ բարձրութեամբ 'ի գետնոյ 'ի վեր և դուռն հաւասար գետնոյ, և
ոմն անպատուհան միով դրամբ եւեթ յօրինեալ։ Տաճիկ արձանագիրք են 'ի
նոսա խոշորատառ շուրջանակի արտաքուստ բարձրաքանդակ 'ի վիմի։ Երկյարկ
են դոքա մեծաւ մասամբ. առաջին յարկն գետնափոր, ուր թաղեալ է մե-
ռեալն, և երկրորդն մարդաչափ և աւելի բարձրութեամբ վերոյ նորա՝ ուր են և
պատուհանքն։ Յաւանդութեան բնակչացն լսի զի թաղեալքն 'ի նոսա են արք
երևելիք՝ որ կամ քաջութեամբ անուանի եղեն և անկան 'ի մարտի թշնամեաց,
կամ կուսակալութեամբ տիրապետեալ երկրին, և կամ ըստ կրօնից նոցա ա-
նուանի եղեն յուսմունս և 'ի ճգնութեան։ Զորք 'ի դոցանէ մօտ 'ի ծովափն են.
յորոց զմին կոչեն Հաւաճ փատիշահ. և առ նովաւ երկրորդն՝ գերեզման կնոջ
նորա, առ որ պատկառանօք մերձ լինին և չհային ընդ պատուհանն 'ի ներքս
վասն պարկեշտութեան. իսկ միւս երկուքն ևս բացատ 'ի միմեանց և անպահա-
պանք. և այլք վերոյ յոյժ քան զնոսա աւելի քան զտասն առաւել պատուաւոր
համարեալք։ Առ նոքօք է և գերեզմանոց հարուստ տարածութեամբ առ հա-
սարակ Տաճկաց, 'ի հնոց ժամանակաց մնացեալ, ամենեցուն արձանագիր տա-
ճիկ կանգուն քարամբք, անբաւ և անթիւ բազմութեամբ. զորս շէհիտ կոչեն
բնակիչք. և են դոքա առ հասարակ ըստ աւանդելոյ Հայ բնակչաց կոտորեալք
'ի մարտի՝ զոր արարեալ է ասեն քաջն Դաւիթ 'ի Սասնոյ ընդդէմ այլազգեաց։

Բնիկ բերդ Խլաթայ որ յետ կործանման քաղաքին շինեալ է, որպէս թուի,
առ տիրապետութեամբ Տաճկաց, քառորդաւ հեռի է 'ի քաղաքատեղւոյն, առ
ծովափին. կանգուն կան պարիսպքն տակաւին և ըստ օրինի աշտարակօք և բըր-
գամբք յօրինեալ, մեծատարած և քառակուսի, որ 'ի ցամաքէն սկսեալ հասա-
նէ զառիվայր մինչև 'ի ծովեզրն. այլ պարիսպ ծովափանն խախտեալ է այժմ յա-
լեաց ծովուն։ Բազմաբնակ էր բերդս այս երբեմն որպէս երևի 'ի բազմաթիւ
տանց խանձելոց 'ի նմա. այլ այժմ յերից կամ 'ի չորից տանց բնակեալ՝ այլքն
առ հասարակ կործանեալ անապատացեալ են. մզկիթն 'ի նմա փառաւոր հան-
դերձ մինարէիւ շէն է տակաւին։ Չերևի 'ի բերդին այլ հնութիւն բաց 'ի քանի
մի կամարաշէն տեղեաց առ ներքնաբերդիւն. և որ ինչ կոտորուածք արձանա-

գըրաց 'ի հիւսիս պարսպացն երևելի՝ առհասարակ 'ի Տաճկաց Զացորդք են. բազում ուրեք առ աւերակօք տանցն պարտէզք բանջարոց են։

Ժամու հեռի 'ի Խլաթայ 'ի վեր ընդ ափափայս լերանց և ձորոց՝ առ կողիւք միոյ 'ի լերանցն, առ որով ընդ ձորն ընթանայ գետ, կայ մենաստան Մառնէվանք կոչեցեալ, շինեալ 'ի խորշս բարձրաբերձ քարաժեռից իբրև զմենաստան տէր Յուսկան որդւոյ 'ի Բերկրի։ Աւանդի 'ի կոնդակի վանացս 'ի Թաղէէ առաքելոյ հիմնարկեալ սորին. քանզի 'ի քարաժայռս անդ բնակութիւն եղեալ դիւաց, հրեշտակի Աստուծոյ երևեալ առաքելոյն մատնանիշ ցուցանէ նմա զտեղին շինել տաճար Աստուծոյ, և յայնմանէ կոչեցաւ, ասեն, Մատնէվանք։ Իսկ դիւաբնակ քարն երկփեղկեալ յորոյ 'ի պատառուածին խմբեալ կային դեւքն՝ զօրութեամբ Քրիստոսի 'ի մի եկեալ որպէս եթէ կլանէ զդևսն և կոչի ապառաժն այն դիւակուլ, որ է առ կշտիւք մենաստանին և արդ պատեալ որմովք յառաջոյ կողմանէ և տանիս յօրինեալ իբրև զմատուռն ինչ։ Ի ստորև դիւակուլ քարին 'ի ձորամիջի անդ բղխէ ջուր քաղցր, նոյնպէս և առ ճանապարհաւ, մինչև հասեալ առ մենաստանն ամբաձիգ հեռաւորութեամբ 'ի նմանէ՝ այլ աղբիւր ցուրտ ականակիտ, և քաղցրահամ ջուրց բխեալ գնայ ընդ ծերպս ահագին քարաժայռից, յորոց վերայ կամահարութեամբ գործեալ է 'ի ստորոտս առ աղբերաւն նստարանս, և 'ի վերայ քարաժայռին քանդակ խաչից բազմաթիւ, և առ տեղեաւն մարգագետին գեղազուարճ։ Իսկ ջուրն բղխեալ անտի երթայ խառնի 'ի գետ ձորոյն զոր ասացաք։

Ի սահմանին Խլաթայ բազում գիւղորէք են, յորս բազմամարդ է գիւղն Թեղուտ ժամու հեռի 'ի ծովեզրէն 'ի մէջ դաշտին, և քառորդաւ հեռի 'ի նըմանէ 'ի բարձու 'ի լանջակողմն Նեմրութայ է մենաստանն կոչեցեալ Թեղուտայ սուրբ Յովհաննէս. որոյ ամենայն շինուածքն քարեղէն են, զի առատ է անդ քարն և 'ի յարգի ամենայն ուրեք։

Նեմրութ.— Լեառն երկայնանիստ որ հանդէպ Գրգուռաւ կցելով ընդ նմա սահման հատանէ ընդ դաշտավայրն Մշոյ և ընդ Ռահվայն մեծ՝ յերկրին Բզնունեաց։ Ըստ լայնանիստ դիրից նորա նոյնպէս է և գագաթն մեծատարած, երկայնաձիգ, համակ փոսացեալ որպէս զբաժակ հրաբղխի, և կցի դա յարևելից հիւսիսոյ ընդ լերանցն Քօսուրայ։ Ի գագաթան նորա և 'ի շրթունս փոսոյն են լիճք մանունք եօթն, յորս մեծագոյն որ 'ի հարաւակողմանն կայ, և յորմէ ընդերկրեայ ճանապարհաւ իջանէ ջուրն 'ի դաշտն Մշոյ, գործեալ զակն Մեղրագետոյն։ Դալարազգեստ է լեառնդ և դիւրելանելի գրաստու, և թէպէտ ոչ բարձր որպէս զՍիփան և զՎարագ՝ այլ պահէ ընդ երկար զձիւն։ Սասանութիւն և պատառուած լերինդ 'ի Գ թուի՝ յիշատակի 'ի կիսեղծ արձանագրի եկեղեցւոյ Հարմունջ գեղջ։ Ստորոտք նորա յարևմտից կուսէ ձգին 'ի ձորադաշտն Ռահվայ, յարևելից դարաձև ընտեալ հասանեն մինչև 'ի ծովափնն։ Յայսմ կողմանս են երկու գիւղորէք, առաջինն Ջրհոր առ Գրգուռաւ, և վերոյ քան զնա յարևելից հիւսիսոյ առ ստորոտիւ Նեմրութայ՝ գիւղն Շամիրամ ասացեալ՝ բնակեալ 'ի սակաւուց տանց. առ որով 'ի ձորակի միում 'ի ներքուստ մեծամեծ վիմաց բղխէ ջուր պատուական և առատ։

Հանդէպ Շամիրամայ 'ի հարաւոյ 'ի ստորոտ Նէմրութայ են երեք մեծամեծ բլուրք 'ի մի կարգ շարեալք. 'ի գագաթն միջնոյն է աւերակ ամրոցի, զոր Շամիրամայ բերդ անուանեն։ Ի դոյզն մնացորդաց բերդին երևի տակաւին զի կրկնապարիսպ էր, մին 'ի գագաթան բլրոյն, և երկրորդն փոքր մի ուրոյն ընկողիւք նորա շրջապատեալ, և 'ի մէջ բերդին աւերակ տանց բազմաց։ Ոչ ոք 'ի գիւղականաց կարողացաւ հաւաստել մեզ զժամանակ կործանման ամրոցին։

Իջեալ 'ի Նէմրութայ և ուղևորեալ ընդ ծովափն կոյս յետ Զարկոնից և Կծուակայ, առ որով հրուանդան ոչ փոքր 'ի ծովն կոյս, ընդառաջէ Ծղակ, ոչ իբրև գետակային հրուանդան 'ի ծովն, այլ ցամաքակղզի մեծ և դուրան երկիր. եկեղեցի գեղջն՝ սակաւ ամօք յառաջ հարուստ միջոցաւ հեռի էր 'ի ծովէ, արդ որմունք նորա կոծին յալեաց նորին։ Վերոյ քան զնա է վանք Աստուածածնի փոքր և անշուք, նոյնպէս մօտ 'ի ծովափն։ Այսպէս յայսկոյս ցամաքակղզւոյն. իսկ յայնկոյս նորա էր յառաջագոյն գիւղն Աղաւ կոչեցեալ. և այսօր ողողեալ 'ի ծովէ՝ եկեղեցին ևեթ կղզիացեալ կայ անմերձենալի։ Այս կողմն ծովեզերին որ յոյժ դուրան է՝ խորեալ է 'ի ծովէ բազում ասպարիզօք, և բազում ուրեք չամբք են 'ի տեղւոջն և եղեգնուտ։

Ի Ծղակայ մինչև ցԿարմունջ ընդառաջ լինին և այլ գիւղօրէք անբնակք 'ի մարդկանէ և 'ի սպառ կործանեալք, ոմանց կանգուն կացեալ եկեղեցւոյն, և այդ ամենայն վասն առնլոյն 'ի ծովէ։ Կարմունջ բազմաբնակ է, և երկիրն պարարտ յոյժ, և գեղազուարճ ծառաստանօքն և գետովն անուանի եղեալ։ Ի շրջանակի կամարի միոյ որ 'ի կողմանէ ծովուն՝ կայ արձանագիր քիւֆի տառիւք։

Ի հարաւակողման ստորոտի Նէմրութայ դէպ 'ի կողմն Դատվանայ ընդ երկայնութիւն ձորամիջոյն են Ըղտուքարեր ասացեալքն, քարինք կրկնապատիկ մեծամեծ քան զփիղս, թուով աւելի քան զվաթսուն, շարեալ մի զհետ միոյ իբրև զկարաւան, զորս կոչեն ուղտերամակս Նէմրութայ անիծիւք 'ի քար դարձեալս։ Զրոյցք են առ բնակիչս վասն լերին Նէմրութայ և Ըղտուքարերաց, եթէ Նէմրութ ոմն թագաւոր հզօր բռնակալեալ զբազումս 'ի գաւառաց կողմանցն հարաւոյ, և անտի այսր եկաւորեալ, և կամեցեալ զի ամենքեան զնա Աստուած գիտասցեն, շինէ դաստակերտս 'ի գագաթան լերինդ ահեղ բարձրութեամբ. ուր ամենայն առաղձք շինուածոյն պատրաստեալ, և երամակ ուղտուցդ առաջս բեռնաւորեալ 'ի ծովեզրէն Դատվանայ ածէին 'ի լեառնն։ Իբրև յաւարտել եհաս շինուածն ահեղ 'ի հիացումն տեսողաց, կամեցեալ նորա տպաւորել 'ի միտս ամենեցուն եթէ ինքն իսկ իցէ աստուածն և չիք այլ ոք Աստուած յաղթող քան զնա, ելեալ 'ի տանիս շինուածոյն լարեաց զաղեղն 'ի վեր՝ զի զԱստուած սպանեալ ինքն միայն կացցէ. իսկ Աստուծոյն ճշմարտի տեսեալ զամբարտաւանութիւն նորա, առեալ 'ի ծովէ ձուկն մի մեծ և կալաւ հանդէպ նետին Նէմրութայ, ընդ որ հարեալ և հոսեալ արեանն վերուստ 'ի վայր, կարծեաց անօրէնն և կարծեցոյց զամենեսեան եթէ ահա սպանաւ աստուածն։ Մինչդեռ յայնպիսի անօրէն խորհուրդս զուարթանայր ինքն և ամենայն որ 'ի զնին կային իւրացն, շարժեցաւ բարկութիւն Աստուծոյ. և 'ի կայծականց թօթափելոց յերկնից անդէն և անդ ուղտերեամակքն 'ի քար դառնան 'ի տեղւոջ

իւրեանց, և ինքն հանդերձ շինուածովքն գետնատայք եղեալ 'ի գագաթն լե-րինն, և ջուր բխեալ 'ի ներքուստ յորդառատ՝ ծածկեալ անհետ առնէ զկիսա-տակս անօրինին։ Այսոքիկ են ահա լիճքն որ անդ. և զրոյցք Ըղտուքարերացն և թէ զինչ և որպիսի ոք էր Նէմրութն։

Լուիցուք և զմիւս աւանդելն զոր ասեն զՇամիրամայ, զոր և Համառօտ բա-նիւ յիշէ Խորենացի ասելով «Ուլունք 'ի ծով Շամիրամայ»։ Թագուհին Շամի-րամ որ մի 'ի հզօր և 'ի մեծագործ ինքնակալացն էր, շրջագայեալ, ասեն, եր-բեմն զբօսանաց աղագաւ յերկրին Վասպուրականի՝ տեսանէ ուրեք մանկտիս խմբեալ 'ի մի. և մերձ եղեալ առ նոսա տեսանէ զի գտեալ նոցա ուլունս 'ի գետնի՝ 'ի գնին կան նոցին. իսկոյն ծանուցեալ զպատուականութիւն նոցա՝ ա-նու 'ի ձեռաց մանկանցն և պարգև տուեալ արձակէ զնոսա։ Ուլամբքն այնո-քիւք սկսանի Շամիրամ մոգել և կախարդել, և ըստ ապականեալ սրտի իւրոյ զամենայն չարութիւն գործել ընդ երկիրն համօրէն. զոր կամէր առ ինքն կոչել 'ի լրումն տռփանացն՝ զօրութեամբ ուլանցն ոչ ինչ դժուարէր, և զոր կամէր կորուսանել՝ և յայնմ յաջողէր անաշխատ, մինչև սատանել ամենայն ումեք և չկարել ճիկ հանել։ Ծերոյ ուրումն որ երթևեկէր առ նա և ամենայն իրաց նորա հմուտ և իբր խորհրդական էր, բազում ժամանակս խորհելով 'ի միտ թէ զիարդ զերծուցէ զերկիրն 'ի ձեռաց նորա կամ 'ի զօրութենէ ուլանցն, յաւուր միում մինչդեռ յԱրտամետ քաղաքին էր ընդ թագուհւոյն, ժամ դիպող գտեալ՝ յա-փըշտակեալ 'ի ձեռաց նորա զուլունսն փախչի։ Զայրացեալ Շամիրամայ և 'ի ցասման մեծի եղեալ յարձակի զհետ նորա, և չկարացեալ հասանել՝ առ ան-հնարին կատաղութեանն զգէստս պարապիկ գործեալ, քանզի յոյժ երկայն և թաւ էին, և ապառաժ մի ահեղ մեծութեամբ եդեալ 'ի նմա արձակէ զհետ ծերոյն. և առ մեծի բռնութեանն չերծեալ հերացն 'ի գլխոյն՝ և ապառաժն մեծ գլորեալ անկանի 'ի փոս մի առ Արտամետաւ, զոր և ցուցանեն մինչև ցայսօր։ Իսկ ծերն առեալ զուլունսն փախչի 'ի ծովեզերս Գաւառանայ և անդ արկանէ 'ի ծով, և զերծանի երկիրն առ հասարակ 'ի մոգական չարութենէն Շամիրամայ։ Այսուասիկ զրոյցքն «Ուլունք 'ի ծով Շամիրամայ»։

## ՎԱՆԱՅ ԾՈՎ ԵՒ ԿՂԶԻՔՆ Ի ՆՄԱ

Ծովս Վանայ յարևմտից յարևելս երկարաձգեալ, առատ Գաւառան զեղջս և 'ի հանդիպոյ Վան քաղաքաւ սահմանի ըստ երկայնութեան։ Առ ժամանակօք Խո-րենացւոյն, որպէս ինքն ասէ յաշխարհագրութեան իւրում, երկայնութիւն նորա էր հարիւր մղոն և լայնութիւն վաթսուն. սակայն Իբր 'ի հազար չորեքհարիւր ամաց հետէ յորում աւանդեալ են չափքդ՝ առաւելու յոյժ այժմու տարածու-թիւն նորա. քանզի 'ի բազում գետոց մանունց և մեծամեծաց որ մտանեն 'ի նմա հարկ է աճել և բարձրանալ և ողողել զեզերս իւր, ուր դաշտավայր են տեղիքն. քանզի և չիք ուրեք տեղի թէ ջուրցն ելեալ անցանիցեն յայլ գաւառ։

Պատմեն ցայսօր ականատեսք 'ի ծերոց բազում ապարէզս ընթացեալ նորա յայլ և այլ կողմանս եզերացն և ողողեալ զանդս և գիւղօրէս ։ Այս յայտնի տեսանի ամենեցուն զի 'ի հարաւ կոյս Աղթամարայ կղզւոյն ուր մեծագործ շինուածքն կային և քաղաքացեալ տեղիքն՝ առ հասարակ տառն 'ի ծովէ. և բերդն Արճիշոյ 'ի հիւսիսոյ կուսէ 'ի ցամաքի կառուցեալ՝ սակաւ ամօք յառաջ ողողեալ 'ի ծովէ՝ արդ կղզիացեալ կայ 'ի նմա. դարձեալ Կտուց կղզի որ երբեմն ընդ ցամաքի կցեալ՝ այսօր երկմարդաչափ խորութեամբ լցեալ է ջուրն զճանապարհն. Պատմի յոմանց վասն պակասելոյ ջուրց ծովուս՝ թէ նախ քան զմեկնել Յունաց 'ի կողմանց աստի՝ 'ի հարաւային եզերս նորա ընդ երկրեայ գաղտնի ճանապարհաւ, չգիտեմ 'ի նախնեաց բացեալ թէ գործեալ 'ի բնութենէ, հոսեալ ջուր ծովուն և ընդ ճանապարհ գաւառին կարճիքանայ անցեալ բաժանէր յայլ գաւառս, որով հաւասարակշիռ մնայր նա ։ Այլ 'ի մեկնել նոցա՝ առ չարութեան, ասեն, բեռինս բրդոյ մեծամեծս հնարիւք լցեալ 'ի մուտս նորա, արգելին զընթացս ջրոյն, և մուտքն անհետ եղեն. և անտի և այսր աճեաց և աճէ միշտ ։ իսկ որք առաւել մանր զննեալ են՝ ասեն, եթէ ամս եօթն միանգամայն աճէ և 'ի միւս եօթն ամսն նուազէ. սակայն աճումն առաւելու քան զնուազումն ։

Խորայատակ է ասեն ծովս, թէպէտ և չէ չափեալ ցարդ ստուգիւ ։ Յեզերսն ուր անընդմիջաբար ամբարձեալ կան քարալերինք որպէս 'ի հարաւային կողմանս՝ խորին են յոյժ. այլ ծանծաղ են ուր դաշտավայրքն սահման հատանեն ։ Ջուր նորա յոյժ աղի և բորակային, զի և բորակ բազում ելանէ անտի, ունի և զօրութիւն 'ի բաց մաքրելոյ զաղտս 'ի զգեստուց, զոր 'ի լուանալն և 'ի շփել փրփրի իբրև զօճառ ։ Այլ հարկ է յետ միանգամ լուանալոյ անցուցանել և ընդ քաղցր ջուր, ապա թէ ոչ փտեցուցանէ ։

Տեսակ մի մանր ձկան բերէ ծովս զոր տառեխ անուանեն, մեծութեամբ մէզիտ ձկան, և է առատ յոյժ յամարայնի, և որսորդութիւն նորա այսպէս ։ Ձկունքն քանզի յասացեալ եղանակին խուռներնթաց դիմեն 'ի գետս կոյս, որսորդացն կողովս եդեալ 'ի բերան գետոյն՝ 'ի դառնալ նոցա 'ի ծովն արգելեալ լինին 'ի նոսա. և են կողովքդ կրկնատակ գործեալ, արտաքինն ըստ սովորութեան, իսկ ներքինն քաղելով 'ի կուսաց՝ 'ի մի ծակ անձուկ աւարտի. ընդ որ սրընթաց մըտեալ ձկանն չկարէ այլ ևս զերծանել անտի ։ Այս որսորդութիւն լինի յամենայն կողմանս ծովեզերին ուր առուակ մի ջրոյ գտանիցի. այլ առատօրէն 'ի գետն Մարմետու ։ Ապխտեն զնա և աղեն սաստիկ, և բեռինս բեռինս ցրուեն ընդ ամենայն Քրդաստան. և առ դիւրագին լինելոյ կարծեմ ընդունելի եղեալ, և ոչ եթէ քաղցրաճաշակ ինչ է ։

Ադրամար. — Բազում ինչ զկղզւոյս պատմի յայլ և այլ գիրս նախնեաց, այլ ճոխաբար քան զայլս գրեաց Թովմա արծրունի, մինչդեռ չէին և պայծառ էր տեղիս առ արծրունի Թագաւորօք, մանաւանդ առ Գագկաւ, որում ժամանակակից էր և նա ։ Այլ առաւել քան զգրեալսն 'ի նմանէ լիակատար պատմի 'ի հին կոնդակի վանացն, սկիզբն առնելով 'ի ժամանակաց անտի կռապաշտութեան, անուանեալ նորա և զալ Թադէի առաքելոյ և լուսաւորել զբնակիչս

նորա և զշրջակայ գաւառացն որ 'ի ցամաքի, և մեծագործ դաստակերտըն Գագ-կայ և ընդարձակ տարածութիւն կղզւոյն, հանդերձ այլովք ևս բազմապատիկ հանդամանօքն: Սակայն այդ ամենայն իսպառ անհետացեալ՝ սակաւ ինչ մնա-ցեալ է 'ի նախնի շինութեանց անտի: Քանզի ըստ Արծրունւոյն պատմութեան թէպէտ և Գագիկ հինգ կանգնաչափ 'ի վեր քան զմակերևոյթ ծովուն լցեալ զխորսն մեծամեծ քարամբք ընդարձակեաց զկղզին, ածեալ և պարիսպ և նա-ւահանգիստ յօրինեալ և կառուցեալ զհրաշակերտ տաճարն և զայլ պէսպէս



Ս. Խաչ Աղթամարայ.

չինուածս, այլ ծովուն հեռաղետէ աճեցեալ և անցեալ քան զհինգ կանգնաչափ բարձրութիւնդ ողողեաց զամենայն և կործանեաց ։ իսկ որ քան զայնուիկ բարձրագոյն էին շինեալք 'ի վերայ ապառաժին բարձու՝ մնացին և մնան մինչև ցայսօր ։ Արդ 'ի դաստակերտաց Գագկայ անկործան կայ եկեղեցին սրբոյ Խաչի, զոր զարմանալի նկարագրութեամբ ստորագրէ Արծրունին, զշուրջանակի արձանսն արտաքին որմոցն և զներքին նկարէն պատկերսն, զաղօթից տեղի Թագաւորին 'ի բարձու 'ի վերայ հարաւային դրանն. որք թէպէտ անեղծ կան առ հասարակ, այլ զձև արձանացն իմանալի է ըստ ախորժակաց ժամանակին տափակաձև բարձրաքանդակ ըստ ամենայն մասանց մարմնոյ, ոչ մի ինչ կենդանանմանութիւն ունելով, գուցէ առ մեծի աշխատութեան արհեստաւորին՝ որ զշրջապատ տաճարին ելից նոքօք, յոյժ զարմանալի երևեալ է պատմողին ։ փոքր է եկեղեցիս և բոլորշի անկիւնաւոր, անխին և միագմբէթ և բարձր ։ Ի հարաւոյ կուսէ արտաքին որմոյն մօտ առ տանիսն է հին և կիսեղծ արձանագիրս խոշորատառ.

· · · ԽԱՐՀԱԿԱԼ ԹԱԳԱ
ԽՈՐՈՒԹԵ · · · ·
ՀԱՅԿԱԶԵԱՆ
· · · ՅԻ ԶԳՈՒՄԲԷԹ
· · · ՀԱՅՈՑ

Առ հարաւային դրամբն կից եկեղեցւոյն է սիւնաւոր զանգակատունն Նորաշէն, ընդ որ լինի մտանել 'ի տեղի աղօթից Թագաւորին զոր ասացաք. զի բուն սանդուղք ելից 'ի նմա ոչ երևին այժմ ։ իսկ առ արևմտեան դրամբն է ժամատուն ընդարձակ, նոյնպէս Նորաշէն. այլ զժամերգութիւնն 'ի տաճարի կատարեն, որոյ առ նոյն դրան 'ի մէջ ժամատանն 'ի ձախմէ է վէմ անտաշ, զորմէ կարծեն գերեզման լինել Գագկայ ։ կան այլ ևս երկու և երեք անշան մատուռնք ամայիք ։ Ամենայն կղզին քանզի ապառաժ է՝ աներեր է 'ի բուսոց ։ Ի հարաւային ծայր կղզւոյն է և այլ մատուռն 'ի փոքր ամրոցի. անշան և մատուռն և ամրոցն փլեալ, որ նախ միահետ կից էր ընդ կղզւոյն և արդ առեալ 'ի ծովէ կըղզիացեալ կայ ։ Շինուած մենաստանին կամ սենեկացն Նորաշէն է և անշուք, որպէս զայլոց մենաստանաց. այլ վասն բարձրութեան կղզւոյն՝ օդաբեր և զովացուցիչ ։ Ըմպելի ջուր կղզւոյս որպէս և Լմայն և կտուցայ՝ անձրևային է, շինեալ վասն այնր ջրամբարս լայնայատակս, զորս 'ի ձմերան լնուն ձեամբ մինչև 'ի վեր և յամարայնի ցուրտ ըմպեն ։ Առ ժամանակօք յետնոյ Խաչատուր կաթողիկոսի՝ բացին և ջրհոր մի յապառաժ վայրի առ ծովեզերբն և ել ջուր պատուական. զի ջուր ծովուն անցեալ ընդ աւազս և ընդ խիճս և մերկացեալ 'ի դառնութենէն՝ իսպառ քաղցրանայ 'ի ջրհորի ։ Էին 'ի կղզւոջս տունք աշխարհականաց սակաւք, զորս առ հասարակ երարձ անտի նա ինքն Խաչատուր կաթողիկոս, և բնակիչքն ցրուեցան 'ի գիւղորէս Գաւաշու, և զտունսն կործանեցին ։

ի գերեզմանատան գաւթին յանուանէ գերեզմանք կաթողիկոսաց ոմանց խա-չաքարիւք, և են այսոքիկ.

Թվ. ՊԺԳ: Հայոց կաթողիկոս տէր Ղազարիայ կարողու-թեա̃ն ա̃յ եւ աջողութ̃ նորին կանգնեցի զխաչս բարեխօս առ ա̃ծ հոգւոյ իմոյ

խաչս բարեխօս առ ա̃ծ վ̃ն փրկութ̃ հոգւոյն խաչատուր կաթողիկոսի. Թվ. ՌՄԿԳ

խաչս բարեխօս է առ ա̃ծ վ̃ն փրկութեան յոհաննէս կա-թողիկոսին ՌՄՂԲ

կարապետ կաթողիկոս ՌՄԽԸ

Սեպաձև արձանագրութիւն յԱղթամար կղզւոջ է 'ի վերայ սատար բոլորշի վիմի եղելոյ 'ի բացի առ հարաւային դրամբ եկեղեցւոյն, գրեալ յերկոսին ե-րեսսն. (Թիւ Է և Ը.)

Առտէր.— Ժամու և աւելի ևս 'ի բացէ կայ յԱղթամարայ կղզիս այս փոքր քան զնա. որ յառաջն չէին էր անապատական կենօք կրօնաւորաց, որ հաստա-տեցաւն 'ի ձեռն անուանի Ցակոբայ վարդապետի Բատականցւոյ, և այժմ՝ իսպառ ամայի կայ և անբնակ 'ի մարդկանէ, եկեղեցւոյն որմոցն ևեթ կանգուն մնա-ցեալ: Այս կղզի ընդ իշխանութեամբ է Աղթամարայ, և խոտս հնձեն անտի: Ի կղզւոջ աստ սահ երևել Տիրամօրն աստուածորդւոյն հանդերձ՝ առ Նարեկա-ցին Գրիգոր մինչդեռ ջերմագին աղօթէր սա 'ի քարանձաւ ճգնարանին իւրում, զորմէ լիակատար ասացաք 'ի տեղւոջն:

Լիմ և Կտուց անապատքն.— Կտուց կղզի հեռի է 'ի վանայ չորս ժամու, և Լիմ 'ի Կտուցայ՝ հինգ: Կտուց փոքր մի մեծ է քան զԱղթամար և մօտ 'ի ցա-մաքն. իսկ Լիմ հնգապատիկ և աւելի ևս մեծ քան զԿտուց: Դուրան է Լիմ և բազում մասամբ մշակեալ յանձանձրոյթ աշխատութենէ Գէորգայ վարդապե-տի առն խստակեցի. իսկ Կտուց բազում ուրեք բերէ զնմանութիւն Աղթամա-րայ բարձրութեամբ ապառաժիցն. և յերկոսին անապատս նշխարք բազում են: Եկեղեցիք կղզեացս նորաշէն են, ոչ աւելի քան զերկերիւր ամաց, և տա-ճարաւորք երկոքեան և նմանաձևք իրերաց. Կտուցայն յանուն սրբոյ Կարապե-տի, և Լմայն՝ սրբոյն Գէորգայ, մատունս 'ի նշխարաց նոցա ունելով ամփոփեալ 'ի գերեզմանի 'ի մէջ տաճարացն: Խաչվառք խորանացն ոսկեզօծք և փառահեղք և ամենայն սպասքն մաքուրք և փայլուկք, և կարգ աստուածային պաշտամանցն անթերի և անխափան, նա և առաւելութեամբ իսկ. զորոյ զնմանն չէ ուրեք տեսանել 'ի Հայաստան աշխարհի: Կարգ սաղմոսերգութեանցն որպէս կար-գեալ սահմանեցաւ 'ի նախնեաց՝ 'ի սոսա անթերի կատարի, եօթնիցս յաւուր պաշտել անխափան զժամերգութիւն և զութ կանոնս սաղմոսացն բաժանեալ 'ի նոսա, իսկ յուրբաթու ինն կանոն. և զգիշերայինն հսկմունսն տէրունական տօ-նից ըստ ցուցակին անխափան կատարեալ առանց իրիք նուազութեան և ան-

ի գերեզմանատան գտանին յանուանէ գերեզմանք կաթողիկոսաց ոմանց խաչաքարիւք, և են այսոքիկ.

Թվ. ՊԺԳ: Հայոց կաթողիկոս տր. Զաքարիայ կարողութե՛ն տյ եւ աջողութ՛ նորին կանգնեցի զխաչս բարեխօս առ տած հոգւոյ իմոյ

խաչս բարեխօս առ տած վն փրկութ՟ հոգւոյն խաչատուր կաթողիկոսի. Թվ. ՌՄԿԳ

խաչս բարեխօս է առ տած վն փրկութեան յոհաննէս կաթողիկոսին ՌՄՂԲ

կարապետ կաթողիկոս ՌՄԽԸ

Սեպաձև արձանագրութիւն յԱղթամար կղզւոջ է 'ի վերայ սատար բոլորշի վիմի եդելոյ 'ի բացի առ հարաւային դրամբ եկեղեցւոյն, գրեալ յերկոսին երեսսն. (Թիւ Է և Ը.)

Առտէր.— Ժամաւ և աւելի ևս 'ի բացէ կայ յԱղթամարայ կղզիս այս փոքր քան զնա. որ յառաջն չէն էր առապատական կենօք կրօնաւորաց, որ հաստատեցան 'ի ձեռն անուանի Ցակոբայ վարդապետի Բասականցւոյ, և այժմ՝ իսպառ ամայի կայ և անբնակ 'ի մարդկանէ, եկեղեցւոյն որմոցն ևեթ կանգուն մնացեալ: Այս կղզի ընդ իշխանութեամբ է Աղթամարայ, և խոտս հնձեն անտի: Ի կղզւոջ աստ ասի երևել Տիրամօրն աստուածորդւոյն հանդերձ՝ առ Նարեկացին Գրիգոր մինչդեռ ջերմագին աղօթէր նա 'ի քարանձաւ ճգնարանին իւրում, զորմէ լիակատար ասացաք 'ի տեղւոջն:

Լիմ և Կտուց անապատքն.— Կտուց կղզի հեռի է 'ի վանայ չորս ժամաւ, և Լիմ 'ի Կտուցայ՝ հինգ: Կտուց փոքր մի մեծ է քան զԱղթամար և մօտ 'ի ցամաքն. իսկ Լիմ հնգապատիկ և աւելի ևս մեծ քան զԿտուց: Դուրան է Լիմ և բազում մասամբ մշակեալ յանձանձրոյթ աշխատութենէ Գէորգայ վարդապետի առն խստակեցի. իսկ Կտուց բազում ուրեք բերէ զնմանութիւն Աղթամարայ բարձրութեամբ ապառաժիցն. և յերկոսին անապատդ նշենիք բազում են: Եկեղեցիք կղզեացդ նորաշէն են, ոչ աւելի քան զերկերիւր ամաց, և առաճարաւորք երկոքեան և նմանաձևք իրերաց. Կտուցայն յանուն սրբոյ Կարապետի, և Լմայն՝ սրբոյն Գէորգայ, մասունս 'ի նշխարաց նոցա ունելով ամփոփեալ 'ի գերեզմանի 'ի մէջ տաճարացն: Խաչվանք խորանացն ոսկեզօծք և փառահեղք և ամենայն սպասքն մաքուրք և վայելուչք, և կարգ աստուածային պաշտամանցն անթերի և անխափան, նա և առաւելութեամբ իսկ. զորոյ զնմանն չէ ուրեք տեսանել 'ի Հայաստան աշխարհի: Կարգ սաղմոսերգութեանցն որպէս կարգեալ սահմանեցաւ 'ի նախնեաց՝ 'ի սոսա անթերի կատարի, եօթնիցս յաւուրն պաշտել անխափան զժամերգութիւն և զուգ կանոնս սաղմոսացն բաժանեալ 'ի նոսա, իսկ յուրբաթու ինն կանոն. և զգիշերայինն հսկմունսն աէրունական տօնից ըստ ցուցակին անխափան կատարեալ առանց իրիք նուազութեան և ան-

ձանձրոյթ։ Եւ ըստ յաւելեալ սակաւ ժամուց առ երկարաձիգ ժամերգութեանն՝
առանձնանան 'ի սենեակս իւրաքանչիւր յընթերցումն հոգևոր մատենից. սա-
կաւս յոյժ շրջին 'ի կղզւոջն զբօսանաց աղագաւ, քանզի և 'ի կանոնէ արգե-
լուն։ Ի մսեղինաց և յըմպելեաց հատեալ են զամս ողջոյն, և զամենայն օր եր-
կուշաբաթի պահեն իբրև զայլս 'ի պահոց, բաց յինանց. միանգամ ևեթ յա-
ւուրն ճաշեն 'ի սեղանատան ամենեքեան 'ի միասին։ Բազումք են 'ի նոսա որք
չելանեն արտաքոյ կղզւոյն և մխիթարեալ կան անապատական կենօք։ Ջհիւրս
մեծարեն յոյժ և ընդ ամենեցուն սիրով վարին. քաղցր են և բանք նոցա և
վարք, զի 'ի հանապազորդեան խառակեցութենէ և յընթերցմանէ հոգևոր մա-
տենից՝ մահացեալ է 'ի նոսա հին մարդն։ Կնոջ մարդոյ ամենևին իսկ արգե-
լեալ է մտանել 'ի կղզին. և ոչ մանուկ որ դեռաբոյս և անմօրուս կարող է մը-
տանել և կրօնաւորել. այլ հարկ է այնպիսւոյն կալ ամս ինչ 'ի դրսի տանն,
զոր ունի իւրաքանչիւր կղզի հանդէպ իւր յեզերս ծովուն, զի անդ մօրուացն
աճեալ ապա մտցեն 'ի ներքս յընկերութիւն կրօնին։ Իւրաքանչիւր կղզիադ-
անապատաւորաց են քառասուն կամ յիսուն անձինք, կէս կարգաւորք և այլք
յեղբայրական կարգէ, և զգեստ նոցա ցփսի խոշոր։ Բազումք անուանի գտան
'ի նոսա 'ի խառակեցութեան, յորոց վերջինն եղև 'ի Լիմ Գէորգ վարդապետ
զոր 'ի վերն յիշեցաք. և ըստ պատմելոյ ականատեսից՝ անցոյց քան զամենեսեան։

# ՀԱՑՈՑ ՁՈՐ

Ի հարաւոյ կուսէ լերին Վարագայ անցեալ ընդ ելևէջս ձորոց բարձանց և իբրև ժամս հինգ՝ լինի իջանել 'ի Հայոց ձոր գաւառ երկայնաձիգ և լայնարձակ, գետոյ ընդ մէջ անցանելով. այլ ձոր կոչեցաւ զի երկուստեք լերամբք սահմանի: Զիք 'ի Հայաստան աշխարհի ցանկալի վայր հնագոյն և որ յանուանէ յիշատակի մինչև ցայսօր՝ քան զձորս զայս, յաղագս մեծի կառոյն զոր մղեաց Հայկն Նախահայր ազգիս ընդ Բելայ: Եւ առաւել ցանկալի 'ի մեծի ձորիդ՝ 'ի գագաթան երկայնաձիգ լերին միոյ զատուցելոյ յամենայն յայլոց լերանց՝ 'ի միջոց դաշտավայրին առընթեր Աստուածաշէն գեղջն, է դաստակերտ աւերակ Հայկայ բերդ կոչեցեալ: Թէպէտ և տարածութեամբն ոչ երևելի, զի ըստ չափոյ երկայնութեան գագաթան լերինն հիմնացեալ է, սակայն որ միանգամ ընդ ահեղ ստուարութիւն տաշածոյ քարանցն հայի՝ հիացեալ ահաբեկի: Զգիտեմ արդեօք այս իցէ Խորենացւոյ ասացեալն դաստակերտ Հայկայ, զի այլուր 'ի ձորին ոչ ուրեք երևի աւերակ այլ. և թուի այդ անշուշտ ձեռագործ դիւցազինն: Սակաւ ուրեք երևին մնացորդք բերդին մինչև 'ի չորս կարգ քարանց ահեղից. և որ փլեալ են, ոմանց խորտակեալ և այլոց անեղծ մնացեալ հոսեալ ընդ զառիվայր լերինն, չգիտեմ յորոց անագորոյն ձեռաց, և ուրեք կուտեալ զմիմեամբք, առ յուսահատութեան արդեօք թողեալ անփոյթ զղուղնաքեայ մնացուածս, և բնութեան գոգցես խնայեալ 'ի նա՝ նշխար անձկալի հայրենասիրացս պահեաց: Ի միջավայր բերդին երևի մինչև ցայսօր փոս փորեալ յապառաժ վիմի 'ի ջրամբար արդեօք թէ յայլ ինչ պէտս՝ չէ յայտ:

Իջեալ 'ի Հայկայ բերդէն և շրջեալ ընդ երեսս ձորոյն՝ երևին աստ և անդ անշուք մենաստանք կոչեցեալ Խէքուց վանք, Հերմերու վանք, Մարիանոսի վանք: Առ երկրորդաւս է լճակ պղտոր ջրոյ որ յերկրաշարժութենէ լեալ է, և տեղին փոս էր յառաջագոյն և ջուրն ելից զնա:

Ի հիւսիսակողմն ձորոյն հեռի 'ի վանաց Խէքուց երկու ժամաւ՝ է անապատն Աբրահամու աշակերտին Ղևոնդեանց, զորմէ գեղեցիկս նկարագրէ Եղիշէ: Ամայի է մենաստանն, աննշան և անբնակ. գերեզման երանելւոյն առընթեր եկեղեցւոյն արտաքոյ ամենևին անշուք. այլ յիշատակաւն ցանկալի յոյժ և անապատն և շրջակայ վայրքն ամենայն:



# ՑԱՆԿ

## ՏԵՂԱԳՐՈՒԹԵԱՆՑ

---

## ՓՈՔՐ ԱՍԻԱ



## ՄԵԾ ՀԱՅՔ

# ՑԱՆԿ

## ԱՇԽԱՐՀԱԳՐԱԿԱՆ ԱՆՈՒԱՆՑ*



* Համառօտքդ նշանակեն. աւ. աւան. բ. բերդ. գ. գիւղ. գւ. գաւառ. լ. լեառն. ծ. ծանօթութիւն. հր. հրուանդան. ս. սուրբ. վ. վանք. տ. տես. ք. քաղաք:

| ԷՋ | ՏՈՂ | ՎՐԻՊԱԿՔ | ՈՒՂԻՂ |
|---|---|---|---|
| 42 | 12 | Իսկ | Իսկ |
| 42 | 27 | քրիստոնէից | քրիստոնէից |
| 43 | 16 | մանաւանդ | մանաւանդ |
| 55 | 31 | ΤΗΣ | ΓΗΣ |
| 61 | 15 | Կոկիսոն, որպէս կարծեմ, ուր | Կոկիսոն, յանուն տեղւոյն՝ ուր |
| 105 | 15 | որդւոյ | որդւոյ |
| 112 | 9 | կարդացք | կարդայք |
| 123 | 14 | վերսային | վերստին |
| 140 | 37 | Խուլ-ջուրն | Խուլ-Ջուրն |
| 143 | 33 | պատանի | զատանի |
| 176 | 14 | Թուրքայ | Թուրքաց |
| 180 | 3 | խաչերեոին | խաչերեաին |
| 196 | 34 | Եր- րեւեալ | ե- րեւեալ |
| 213 | 17 | հինգերորդ | հինգերորդ |
| 226 | 20 | գարնայն | գարնայնի |
| 233 | 33 | սրրոյ | սրբոյ |
| 250 | 6 | Դոփլի | Դոփլան |
| 251 | 13 | գեղջնայսպէս | գեղջն այսպէս |
| 252 | 4 | Սուրէ | Սուրէ |
| 264 | 38 | րազում | բազում |

